ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՂԶ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

ՀԱՏՈՐ Բ.

ԳՐԵՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

Մխիթ. Ուխտէն



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1963

# GESCHICHTE DER ARMENISCHEN KULTUR-VEREINE

II. BAND

VON

P. EPHREM POGHOSSIAN
MECHITHARIST



WIEN
MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI
1963

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՀԱՏՈՐ Բ.

ԳՐԵՑ

**Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1963

ԱՐՏԱՏՊՈՒԱԾ «ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ»Է՛Ն

| Տարի | Թիւ | Էջ |
| --- | --- | --- |
| 1958 | 1— 4 | 118—143 |
| | 5— 9 | 313—320 |
| | 11—12 | 555—570 |
| 1959 | 1— 4 | 133—151 |
| | 5— 8 | 295—312 |
| | 9—11 | 443—460 |
| | 12 | 563—572 |
| 1960 | 1— 3 | 137—154 |
| | 4— 6 | 287—311 |
| | 7— 9 | 445—469 |
| | 10—12 | 611—627 |
| 1961 | 1— 4 | 160—185 |
| | 5— 9 | 366—376 |
| 1962 | 1— 4 | 130—148 |
| | 5— 8 | 305—313 |
| | 9—12 | 499—505 |
| 1963 | 1— 3 | 141—152 |
| | 7 —9 | 421—435 |

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«*Հայ Մշակութային Ընկերութիւններու Պատմութեան*» ընդարձակածաւալ նիւթին նուիրուած այս *Երկրորդ Հատորը* չկրցաւ պահել իր *սկզբնական* ծրագիրը, որ էր ըլլալ «*Հայաստանի* եւ *Անատոլուի* Ընկերութիւններու» *միացեալ* Հատորը (Տե՛ս *Պատմութիւն Հայ Մշակութ. Ընկերութիւններու*, Հատոր Ա. վիեննա 1957, էջ 14)։ Հարկ եղաւ չափազանց ընդարձակ նիւթը *երկու մասի* բաժնել. — Նախ լոյս հանել «*Հայաստան*»ի բաժինը իբրեւ գործիս *Բ. Հատոր*, յետոյ «*Անատոլու*» բաժինն ալ առանձին Հատոր մը կազմել՝ իբրեւ գործիս *Գ. Հատորը*։

Ասիկա լոկ թեթեւացումի եւ «տեխնիկ» աշխատանքներու դիւրացումի համար տեղի ունեցաւ։

Հատորս կը պարունակէ *Թրքա-Հայաստանի քաղաքներու եւ գիւղերու* Մշակութային Ընկերութիւնները այնքան՝ որքան կըրցած ենք տարիներու պրպտումներով հաւաքել։ Աշխարհագրական բաժանումը խիստ գիտական չէ, բնականաբար։ Ո՞վ կրնայ այսօր գծել «Թրքա-Հայաստան»ի զուտ գիտա-

կան եւ ճշգրիտ սահմանը: Նիւթիս համար անհրաժեշտ ալ չէր, կը կարծենք, այդքան խստապահանջութիւն մը:

Բացի *Նիւթերու Ցանկէ* մը՝ հարկաւոր համարեցանք տալ նաեւ *Տեղանուններու Ցանկ* մը, այսինքն՝ *քաղաքներու* եւ *գիւղերու Անուանացանկ* մը, որով կարող կ'ըլլայ ընթերցողը դիւրաւ գտնել որեւէ ուզուած *քաղաքի* մը եւ *գիւղի* մը Մշակութ. Ընկերութիւնները: Օրինակ. մէկը կ'ուզէ գտնել «*Բիւրակն*» *գիւղի* Մշակ. Ընկերութիւնները. եթէ չի գիտեր թէ *ո՞ր քաղաքին* գիւղն է՝ դժուարաւ պիտի կարենայ գտնել՝ եթէ *Տեղանուններու Ցանկ* մը գոյութիւն չունենայ:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿ

# ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐՈՒ ՑԱՆԿ

Էջ

# Վ Ա Ն

## 1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844—1845)

Վանի *հնագոյն ընկերութիւնները* Պոլսոյ *մէջ հիմնուած են։ Ասիկա առաջին ընկերութիւնը կը թուի ըլլալ։ Կազմուած է Պոլիս իբր 1844—1845ին՝ հետեւեալ պարագաներու մէջ. Պոլիս գաղթած Վանեցիներ Խասգիւղի Ս. Ստեփանոս եկեղեցւոյ գաւիթը հաւաքուելով՝ ընթերցումներ կ՚ընեն հին հայ պատմագրքերէ եւ հեղինակներէ, որոնք վարձքով կ՚առնէին։ Ահա այս* ընթերցողներէն *կը կազմուի* Ընթերցասիրաց Ընկերութիւնը։ *Պատմողն է մին այդ հին* ընկերներէն — *Տէր Դիոնեսիոս — որ յետագային եղած է արդիւնաշատ ուսուցիչ-մտաւորական մը։ Նա կը գրէ «...Ագրիպասի ուսման վառ եռանդը օրըստօրէ կ՚արծարծուէր... Տիրացու Մանուէլը երբ կը սկսի անոր հետ ուսումով պարապիլ՝ օրէօր երկուստեք մտերմութիւնը կ՚աւելնայ։ Խասգիւղի Ս. Ստեփանոս եկեղեցիին գաւիթը անոնց համար կիրակնօրեայ ուսումնարան կը դառնայ ցերէկնապահուն... Այդ միջոցին*

ձեռքերնիս իբրեւ ընթերցանութեան գիրք ունէինք Ագաթանգեղոս պատմագիրքը... առած էինք... 15 օրուան պայմանաժամով եւ 10 ղրշ. վարձքով: Եռանդով կը կարդայինք... պայմանաժամը լրացած էր... տէրը խստիւ կը պահանջէր իր գիրքը... կ'առնէ կը տանի: Այդ միջոցին Մոմճեան Մկրտիչ... կ'առնէ գիրքը եւ ընթերցասէրներուն կու տայ խոստանալով (տիրոջ) որ ինչքան մնայ՝ օրական մէկ մէկ ղրշ. ինքը պիտի վճարէ: Մեծ շնորհք մըն էր ասիկա մեր Ընկերութեան համար, բայց յիշեալ բարձր անձը խոստացաւ Վենետիկի «Բազմավէպ» ամսաթերթն ալ մեզ ղրկել: Ասիկա ալ մեծ ուրախութիւն էր մեր ուսումնասէր Ընկերութեան համար[1]:

Տ. Դիոնեսիոս յետոյ երկու անգամ կը յիշէ ամբողջական անունը Ընթերցասիրաց Ընկերութեան[2]: Նա կը գրէ. «Թօփուզեան Յակոբ վրդ. եւ Շարանեան Շարան՝ Ընթերցասիրաց Ընկերութեան հետ խորհրդակցելով՝ Կրօնական ժողովին ներկայացուցին Լիմ Անապատի վանահայր Տիրոյեան Գաբրիէլ վրդ.ը[3]»:

Այս իրողութիւնները տեղի կ'ունենան Մատթէոս Չուխաճեան Պատրիարքի (1844—1848) շրջանին՝ 1846էն առաջ:

---

[1] Աշխատանք, վան 1914, էջ 1053:
[2] Անդ, էջ 1683 եւ 1691:
[3] Անդ, էջ 1691:

## 2. ԱՐԾՐՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

*Պոլսոյ մէջ գտնուող* Վանեցի պանդուխտներ՝ *իրենց հայրենի քաղաքին մէջ կանոնաւոր դպրոց մը հիմնելու եւ անոր վարժապետներու թոշակները ապահովելու համար* 1847 ամառը *Պոլսոյ մէջ կը հիմնեն* Արծրունեաց Ընկերութիւնը։ *Այս հիմնարկութեան քաջալերող կ'ըլլայ նոյն ժամանակի Պոլսոյ Պատրիարք* Մատթէոս Արքեպ. Չուհաճեան, *որ իր կողմէ* 500 *ղուրուշ կը նուիրէ իբրեւ բաժանորդագին նոյն Ընկերութեան։ Այս առթիւ կը գրէ օրուան հայ թերթը. «Բարձր Սրբազանը իւր սովորական չնաշխարհիկ ազգասիրութեամբը ստորագիր հանդիսացաւ արդէն* 500 *ղուրուշ նուիրելով ազգօգուտ փափաքելի գործոյս յառաջադէմ զարգացմանը համար... Սրբազան հօր այսպիսի ազգու յորդորանօքն ու վեհանձնական ձեռնտուութեամբը Վանեցիք... յօժարամիտ սիրով փութացան ժողվելու առ այժմ իրենց մէջ* 8000 *դահեկանի չափ ի նպաստ ազգօգուտ գովելի Ընկերութեան*[4]»։

*Զմիւռնիոյ հայաթերթը Ընկերութեան հիմնումը յիշելէ վերջ՝ կու տայ նաեւ նոյնին* Նպատակը. «...*Ընկերութեան կառավարիչները նոյն դրամով եւ այսուհետեւ ազգասէրներէն ժողվելու նպաստիւքը հոգ պիտի տանին* Վանի մէջ բարեկարգ դպրատուն մը

---

[4] Հայաստան, Կ. Պ. 1847., Թ. 59, *Օգոստ.* 9։

հաստատելու, վարժապետաց ամսականները հատուցանելու եւ աղքատ աշակերտաց պիտոյքը ճարելու[5]»:

*Թէ Ընկերութիւնս Վանի եւ շրջակայքի մէջ ի՛նչ գործունէութիւն ու կրթական արդիւնք ունեցած է՝ կը պատմէ Հայ թերթը.* «*Արծրունեաց Ընկերութիւնը*... այս օրերս քաղաքիս (*Վան*) մէջ ընդարձակ Մայր դպրոցի մը շինութեան ձեռք զարնելէն ետեւ՝ յատկապէս Շատախի եւ Մոկաց գաւառն ալ գործակատարներ խաւրելով իւրաքանչիւր գաւառին մէջ մէկ մէկ դպրոց հաստատեր է... *Ընկերութիւնը* Այգեստան *կոչուած տեղը, որ Վանէն մէկ ժամու չափ հեռու զուարճալի տեղ մըն է*, գիշերով ցերեկով ուսումնարանի մը շինութեան ձեռնամուխ եղեր է *որ ասդին անդին գտնուած ծաղկոցներուն մէջէն արդէն հասարակ կարդալ գրել սորվողները հոն ընդունի... Վերջապէս Արծրունեաց Ընկերութիւնը իւր այս ազգային գործերը մշտնջենաւոր յարատեւութեամբ անխափան պահելու եւ տնանկ աղքատները եւ որբերը խնամելու համար սնտուկ մը հաստատեր է Վանի մէջ*[6]»:

*Երկրին մէջ Ընկերութիւնը քաջալերող եղած է* Յակոբ վրդ. Թօփուզեան:

1850*ին Ընկերութիւնը պաշտպան եւ հո–*

---

[5] Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1847, *թ*. 292:

[6] Հայաստան, 1849, *թ*. 174:

գաբարձու է Վանի հինգ դպրոցներու[7], որոնցմէ մէկն է Յիսուսեան կոչուած դպրոցը, որուն քննութեան առթիւ Մուհամմէտ փաշա 10 ոսկի նուէր կու տայ Ընկերութեան եւ ուսուցիչներու[8]» :

Ընկերութիւնը 1851 Փետրուարին կը վերակազմուի եւ այդ առթիւ Պատրիարքը, յատուկ կոնդակով մը կը քաջալերէ ու կը յանձնարարէ բոլորին Ընկերութեան անդամագրութիւնը: Ընկերութիւնը կ'ունենայ 12 հոգիէ կազմուած Վարչութիւն մը, որուն անդամներն են. Հայրապետ Սապոնճեան (Նախագահ), Յարութիւն Պուռնազեան, Աբրահամ Եղիազարեան, Յակոբ Թովմասեան, Յակոբ Գասպարեան, Աւետիս Քարաօղլանեան, Մկրտիչ Իսքենտառեան, Կարապետ Մանուկեան, Պօղոս Տէր Յովհաննէսեան, Կարապետ Աստուածատուրեան, Սարգիս Վարդանեան, Աբրահամ Սինանեան:

Պոլսոյ մէջ Ընկերութեան կեդրոնն էր Եաղճի Խանը[9]:

### 3. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1853)

Վանի մէջ երկրագործութիւնը ծաղկեցնելու համար Ընկերութիւն մը կազմուած է 1853ի սկիզբները: Նախաձեռնարկ եղողները

---

6 Անդ, Թ. 56:
7 Անդ:
8 Հայաստան, 1851, Թ. 59:

Արծրունեաց Ընկերութեան անդամներն եղած են։ Ընկերութիւնը Պոլսոյ մէջ հիմնուած է։ Անդամավճարն էր 250 ղրշ.։ 1853 Փետր. 14ին արդէն 11 հոգի 120 բաժին գրուած ըլլալով՝ ունէին 30,000 դահեկանի գումար մը[10]։

Մասիս[11] ալ կը յիշէ Ընկերութիւնս. կու տայ առաջին բաժանորդներուն ցանկը, որոնցմէ Շարան Աղա վերատեսուչը, Մարտիրոս Խալեճեան գանձապետն է Ընկերութեան։ Կենդրոնն էր Մահմուտ փաշա՝ Եըլտըզ Խան։

Ո՛չ Նոյեան Աղաւնի եւ ոչ ալ Մասիս յիշած են Ընկերութեան անունը։ 11 տարի վերջ, Պոլսոյ Սէր անունով թերթն է որ առաջին անգամ կու տայ Ընկերութեան անունը։ Սէր կը գրէ. «Երկրագործական Ընկերութիւն, որ ի Պոլիս գտնուող Վանեցիքն են կազմեր եւ արդէն բաւական դրամագլուխ պատրաստեր, որով Ընկերութեան համար հողը պիտի գնեն Վանայ մէջ եւ Թթենի կամ ուրիշ կերպ օգտակար բոյսեր ու տունկեր մշակեն[12]»։

Մասիսի մէջ Վանեցի մը կը գրէ 1855ին. «Անկէ իբր երեք տարի յառաջ... Վան քաղաքի բարենախանձ երեւելիներէն ոմանք Ընկերութիւն մը հաստատեցին մետաքսի եւ

10 Նոյեան Աղաւնի, Կ. Պ. 1853, Թ. 49։
11 1853, Թ. 55։
12 Սէր, Կ. Պ. 1864, Թ. 24։

ափիոնի մշակութիւնը իրենց հայրէնի երկրին մէջ ծաղկեցնելու նպատակաւ... *Այս Ընկերութիւնը փութացաւ անմիջապէս* 14 *հազար հատ* թթենի մատաղատունկ *Պրուսայէն Վան փոխադրել ու ընդարձակ այգի մը գնելով՝ զանոնք տնկել... Անոնցմէ ի զատ գրեթէ* 40 *հազար հատի չափն ալ սերմնացանութեամբ յառաջացան... անցեալ տարի* խաշխաշի *մշակութիւնը յաջողութեամբ ի ծայր կատարման հասնելով՝ փորձի համար քիչ մը* ափիոն *մայրաքաղաքս բերուեցաւ*, որուն խիստ ընտիր ըլլալը *հմուտ անձինքներէ հաստատուեցաւ... այս անգամ Վանէն լուր առինք թէ* 50 *տրամ* շերամի սերմէն, 50 *հոխայ ընտիր ու պարարտ* խոզակ *առնվեր է... արժան կը համարիմ... շնորհակալութիւն մատուցանել Ընկերութեան մեծապատիւ հոգաբարձուներուն, որոնք գոգցես վերին նախախնամութեան ազդեցութենէն շարժեալ՝ այս ամենաօգտակար գործին ձեռք զարկին եւ մեզի առաջնորդ եղան* հանգիստ եւ դիւրին ճամբով ապրուստ եւ բարեկեցութիւն գտնելու[13]...»:

### 4. ՑԻՍՈՒՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (իբր 1853)

*Վանեցի* Տէր Դիոնեսիոս, *հին ուսուցիչ եւ վարժարաններու տնօրէն՝ իր յուշերը գրի կ՚առնէ* 1913—1914*ին*: *Այդ յուշերուն*

---

[13] Մասիս, 1855, *Թ*. 237:

մէջ խօսելով Վանի Ցիսուսեան վարժարանի վրայ՝ կը յիշատակէ նաեւ անոր համանուն «Ցիսուսեան Ընկերութիւնը»։ Առանց ճըշդելու՝ հիմնումը կը համարի 1855էն շատ առաջ, նախաձեռնութեամբ Հայրապետ Պէյ Սապօնջեանի եղած։ Նպատակն եղած է վարժարանի նիւթականը հոգալ [14]։

Երկար կեանք ունեցած չէ եւ գործունէութիւնը չի յիշուիր։

5. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Մահտեսի Գրիգոր Իսաքճանեան, Վանեցի, նախաձեռնարկ կ՚ըլլայ 1857ին նոր Ընկերութիւն հաստատելու, որուն նպատակն է. «...իրենց բարեբեր եւ ընդարձակ երկրին մէջ թթենի մշակելով՝ մետաքսագործութեան բազմաշահ արուեստ աւելի տարածել [15]»։

Ընկերութեանս անունը կը մնայ անծանօթ։

6. ԳԻՆԵՀԱՍԻՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1864)

Կը յիշուի 1864 Օգոստոսին եւ կ՚ըսուի թէ «մօտ տարիներս հիմնուած է եւ կարծեմք դեռ կը շարունակվի [16]»։

---

[14] Աշխատանք, Վան 1914, էջ 1767։
[15] Մասիս, 1857, Թ. 302։
[16] Արծուիկ Տարօնոյ, Տարօն 1864, Թ. 23, Օգոստ. 1։

7· ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1864)

*Կը յիշուի նախորդին հետ նոյն աղբիւրէն լոկ անունով։*

8· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1864)

Տարօնոյ Արծուիկի *վերյիշեալ տեղիքին մէջ յիշուած է միայն։*

9· ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Հաւանօրէն այս Ընկերութիւնն է որ կ'ակնարկուի* Սէր *թերթին մէջ* 1863*ի* սկիզբը, *ուր կը կարդանք· «կը լսենք թէ Վասպուրական գաւառի յատուկ վարժարան մը բանալու Ընկերութիւն մը կազմուեր է անձնանուէր Վանեցիներէ սա պայմանագրով, Վասպուրական աշխարհի մէջ ուսումնական յառաջադիմութիւնն արծարծելու համար* նորահաստատ *Ընկերութեանս խնամոցը տակ* Վասպուրական դպրոց *մը կանգնելու եւ* շաբաթական քսան փարա *ձեռնտուութիւն հատուցանելու*[17]»։

*Սէր չի տար Ընկերութեան* անունը։ Մամուլի[18] *կը պարտինք անունի յիշատակութիւնը* — Վասպուրական *Ընկերութիւն*։ *Ընկերութեան հիմնումը եղած է* 1862*ի*

---

[17] Սէր, Կ· Պ· 1863, Թ· 2, *Յունուար* 8։
[18] Կ· Պ· 1870, Թ· 85, էջ 677։

վերջը ։ Այն պաշտպանը եղած է Վանի դպրոցներուն, բայց իրանուն դպրոց կանգնած չէ, որքան գիտենք ։

### 10. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—1863)

Յիշուած է 1864ին միայն անունով եւ կ'ըսուի թէ «մօտ տարիներս» եղած է հիմնումը[19] ։ Հայրենիք[20] կը ճշդէ, ըսելով թէ 1871էն 8 տարի առաջ հիմնուած է ։ 1871 Ապրիլին անուանափոխութեամբ «Ընթերցասիրաց Ընկերութիւն» կը կոչուէր եւ կը հանդիպէր խոչընդոտներու[21] ։

### 11. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863—1864)

Հիմնադրութեան տարին եղած է 1863—1864ը ։ Հիմնադիրն է Սարգիս Գնունի, Վանի Էրէրին գիւղէն անուանի գրագէտ մը[22] ։

1878ին պաշտպանն է Յիսուսեան եւ Շուշանեան երկսեռ վարժարանին[23] ։

### 12. ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Տարօնոյ Արծուիկի մէջ[24] թղթակից մը Վանէն կը գրէ 1864 Յուլիսին. «Նահապետական Ընկերութիւն, զոր նոր կազմելու կը

---

19 Տարօնոյ Արծուիկ, անդ ։
20 Հ. Պ. 1871, Թ. 44 ։
21 Անդ ։
22 Արարատ, Վաղարշապատ 1889, էջ 298 ։
23 Մասիս, 1878, Թ. 2130 ։
24 1864, Թ. 23 ։

ձեռնարկէին *եւ այս պիտի լինի ընդհանրական պայման*․ Ամէն ընկեր կը պարտաւորվի վանայ մէջէն եղած զգեստեղէնները հագնիլ, ուրիշ վաճառներ չառնել»։

13․ ՈՒՍՈՒՄՆԱՇԱՀ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Կը յիշուի* 1865 *Յունիսին*։ *Թղթակից մը կը գրէ Վանէն*․ «*Քանիմ ուսումնասէր պատանիներ նոր Ընկերութիւն մի կազմեր են տեղս*՝ Ուսումնաշահ *անունով*, *որոց գործն է* տուներու մէջ գտնուած կամ ձեռքէ ծախուած գրեանք զնել եւ թերթեւ շահով վաճառել, իսկ պիտանի եւ հազուագիւտ եղած գրեանք կը պահեն իբրեւ ի զարդ ազգային Թանգարանի․․․ *Որոշեալ տեղ մի ունի այս Ընկերութիւն*, *ուր ամէն Կիրակի կը ժողովին*․․․ *ուսումնական առարկաներու վրայ կ'աշխատին*, միմեանց հաղորդելով իրենց գիտցածներ[25]»։

14. ԱՆԴՐԱՆԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Կազմուած է* Յիսուսեանի *ուսուցիչ* Սարգիս Գնունիի *նախաձեռնութեամբ Քաղաքամէջ*[26]։ — 1873*ին տակաւին գործօն է*[27]։

---

25 Տարօնոյ Արծուիկ, 1865, *Թ*․ 43։

26 *Համբարձում Երամեան*, *Յուշարձան Ա*․ *Աղեքսանդրիա* 1929, *էջ* 44 *եւ* 88։

27 Ասիա, *Կ*․ *Պ*․ 1873, *Թ*․ 38։

15. ԱՐԾՐՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Ցայնկյանները Թաղի վարժարանին նախկին աշակերտներէն կազմուած է առաջնորդութեամբ* Վարդան Երամեանի*։ Նպատակն էր.* Իրերօգնութեամբ զարգանալ[28]։

16. ՔԱՋ-ԱՐԾՐՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

1870 Յունուարին *կը յիշուի նախ սա ձեւով.* «Նորակազմ Արծրունեաց Գաւառական Ընկերութիւն[29]»։ *Յետոյ* 1872*ին.* «Քաջ-Արծրունեան Ընկերութիւն[30]»։ — *Հիմնուած է* Ս. Յակոբի *Թաղին մէջ* Տիգրան Ամիրճանեանի *աջակցութեամբ*[31], *նպատակ ունենալով.* «Ընթերցանութիւնն ժողովրդեան ռամիկ մասին մէջ տարածել[32]»։ — Աշխատանքի *մէջ յիշուած Ընկերութիւնը հաւանօրէն սոյն կ'ակնարկուի եւ ոչ թէ նախորդ Ընկերութիւնը*[33]։

17. ՍԱՆԴԽՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնուած է Պոլիս* 1870 *Փետրուար* 14*ին*։ *Նպատակն է. Վանի մէջ* Սանդխտեան աղջկանց վարժարան մը բանալ։ *Իր կնիքին վրայ կը կարդացուի.* Ընկերութիւն Սան-

---

[28] *Համբարձում Երամեան, անդ, էջ* 43—44 *եւ* 88։

[29] Ծիածան, *կ. Պ.* 1870, *Թ.* 73։

[30] Փող, *կ. Պ.* 1872, *Թ.* 199։

[31] *Համբարձում Երամեան, անդ, էջ* 88։

[32] Ասիա, 1873, *Թ.* 38։

[33] *Տե՛ս* Աշխատանք, *Վան* 1914, *էջ* 1775։

դուխտեան վարժարանին վանայ 1870։ *Առաջին Տնօրէն Ժողովի անդամներն են. Ղեւոնդ Վ. Բերդալեմեան, Յովսէփ Փէրհիզեան, Վարդան Պապիկեան, Գէորգ Աճէմեան, Սարգիս Նալպէնտեան, Պետրոս Գափամաճեան։ Ընկերութեան եւ վարժարանի* «Սանդուխտ» *յորջորջումը Մկրտիչ Արքեպ. Խրիմեան Պատրիարքէն է, որ քաջալերողն եղած է թէ՛ Ընկերութեան եւ թէ վարժարանին*[34]»։

*Ընկերութեան անդամավճարն է կէս օսմ. ոսկի եւ արդէն* 1870 *Փետր.ին գրուած էին* 110 *բաժին։ Ընդհ. Ժողովի դիւանը կը կազմէին. Մելքոն Պարթեւեան, Զաքար Համբարձումեան, Աստուր Պէյլէրեան, Աբրահամ Սօլախեան*[35]։

*Ընկերութիւնը կ'ունենայ նաեւ Գործադիր Ժողով մը Վանի մէջ, որ Պոլսոյ Հիմնադիրներու նիւթական նպաստով* 1870 *Յուլիս* 25 *Ս. Սանդուխտի տօնին օրը հանդիսական բացումը կ'ընէ* Սանդխտեան աղջկանց վարժարանին, *որ քիչ ժամանակէն կ'ունենայ* 150 *աշակերտուհի։ Թղթակիցը կը գովէ Վանեցիներու մեծ եռանդն ու շահագրգռութիւնը իրենց նորաբաց աղջկանց վարժարանին հանդէպ. կը շեշտէ Վանեցի* հայ տիկնոջ

---

34 *Տե՛ս Ընկերութեանս հիմնումի մասին մանրամասնութիւն՝* Մասիս 1870, թ. 952։ — Ծիածան, 1870, թ. 92։

35 Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1870, թ. 1173։

գուրգուրանքը Սանդխտեանի աղջիկներուն վրայ, որոնք, կ'ըսէ, ստէպ այցելութեամբ կը քաջալերեն զանոնք ուսման ու բարեկըր– թութեան: — Վարժարանի Տնօրէնութիւնը յանձնուած է Տէր Դիոնեսիոս Քահանային [36]: — Վարժարանի բացումին համար վարձուած էր Մանողլանց տունը իր պարտէզով, ուր կը մնայ վարժարանը իր առաջին տարիներուն [37]:

1872ին Սանդխտեան վարժարանի 2000 դահեկան կը նուիրէ Ոստանիկ Տէր Մարգարեան [38]: Այդ տարին Ընկերութիւնը ունէր 18,818 ղրշ. գումար մը, որով Վան կը ղրկէ գրքեր ու վարժարանի այլ պիտոյքներ [39]:

1875ին աշակերտներու թիւը բարձրացած է 200ի: Տփղիսի Մեղուի խմբագրութիւնը կոչով մը նպաստ խնդրած ըլլալով՝ կը հաւաքուի 341 ռուբլի: Ընկերութիւնը կը ձգտի սեպհական շէնքի տէր ըլլալ. Ատենապետն է Յովսէփ Փէհրիզեան եւ Ատենադպիրը Խաչատուր Սաֆրաստեան [40]:

1876ին 1000 ռուբլի կը նուիրէ Մկրտիչ Սանասարեան՝ Սանդխտեան վարժարանին կալուած մը գնելու համար: Յետոյ այդ նուիրատուութիւնը կը բարձրացնէ 2000 ռուբլիի՝ սեպհական հող գնելու եւ շէնք շի–

---

36 Մասիս, 1871, Թ. 1074:
37 Օրագիր, Կ. Պ. 1870, Թ. 238:
38 Մասիս, 1872, Թ. 1318:
39 Անդ, Թ. 1372:
40 Մասիս, 1875, Թ. 1635:

նելու համար։ Ասկէ զատ 10,000 ռուբլի ալ կը նուիրէ՝ իբրեւ անձեռնմխելի գումար մը, որպէս զի տոկոսներով վարժարանը կառավարուի[41]։

Սանդխտեան վարժարանը 1881ին Նորաշէնի մէջ է. ուսման նիւթերն են՝ Հայերէն, Կրօն, Հայոց Պատմութիւն, Թուաբանութիւն, Աւեղնագործութիւն։ Ընկերութիւնը 1882—1885ին կը դադրի միւս Ընկերութիւններուն հետ։ Վարժարանը կը շարունակուի Հոգաբարձուներով։ 1912ին ունի 223 աշակերտ, 9 դասարանով եւ 13 ուսուցիչով[42]։

Սանդխտեանի բարերար մ'եղած է նաեւ Գրիգոր Սերեպրենիկեան, որ 12,000 ռուբլի նուիրած է[43]։

### 18. ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հր. Բագրունի կը գրէ. «1871 Թուին Առաջնորդ. Տեղապահ Պօղոս վրդ. Մելիքեանի օրով Նորաշէնի ծխական վարժարան աւարտող աշակերտներէն Խաչատուր Սաֆրաստեան, Գրիգոր Պապիկեան, Սարգիս Աճէմխաչոյեան, Յովհ. Նալեան եւ ուրիշ—

---

41 Անդ., 1876, Թ. 1906։ — Թէրճ. էփքեար, 1882, Թ. 1420։ — Աշխատանք, 1914, էջ 1775, 1815—1816։

42 Մասիս, 1881, Թ. 2936։ — Աշխատանք, Վան 1912, Թ. 82։

43 Աշխատանք, 1914, էջ 1840։

ներ Նորաշէնի վարժարանը բարձրացնելու համար Ընկերութեան մը հիմը կը դնեն, պատրաստելով յատուկ կանոնագրութիւն եւ արձանագրութիւններ։ Քոլոզ (Յովհաննէս) վարժապետը իր վարկին դէմ նկատելով այդ ձեռնարկը... բոլոր հաշուետետրները... վառարան նետելով կը վառէ... Երիտասարդաց խումբը... կը ջանայ դուրսէն ընկերներ գտնել Միութիւնը ընդարձակելու համար եւ գեղեցիկ առաջադրութիւններով... կը հիմնեն Հայկազնեան Ընկերութիւնը, որուն նպատակն էր ուրոյն վարժարան մը բանալ, ծխականներու ոչ-նախանձելի վիճակը բարձրացնել եւ միաժամանակ երիտասարդ սերունդին մէջ նախաձեռնութեան ոգին արթնցնել։ «Հայկազնեան Ընկերութիւնը» երեք ամիսի չափ գաղտնի կը մնայ։ Գործը կանոնաւոր հիմքերու վրայ դնելու համար կ՚ընտրեն Վարչական եւ Ուսումնական Մարմիններ։ Վարչական Մարմնի անդամներն էին. Փանոս Գափամաճեան, Միսաք Շատուրեան, Կարապետ Սաֆրաստեան, Սարգիս եւ Աբրահամ Արարքցեաններ։ Իսկ Ուսումնական Մարմնի անդամներն էին. Պետրոս Գափամաճեան, Խաչատուր Սաֆրաստեան, Սիմէոն Գինէչեան, Սարգիս Աճէմխաչոյեան եւ ուրիշներ։ Ընկերութիւնը առաջին առթիւ 30,000 ղրշ. պատրաստի գումար մը ձեռք կը բերէ եւ Վարչական Մարմինը Առաջնորդ. Տեղապահին երթալով՝ նոր

դպրոցի մը Ծրագիր–կանոնագիրը կը ներկայացնէ եւ վաւերացնել տալով՝ 1872 Վարդանանց տօնի Հինգշաբթի օրը նման չտեսնուած հանդէսով մը հիմը կը դրուի Հայկազնեան վարժարանին Պարոնիկեանենց տանը մէջ [44]» :

Ընկերութիւնը Պոլսէն ուսուցիչներ կը բերէ Մարտիրոս Բիւզանդեան եւ Մելքոն Պարթեւեան՝ ամսական 200ական դուրուշով : Վարժարանը կ'ունենայ 150ի չափ աշակերտ, որոնք իրենց ուսերուն ու օձիքներուն վրայ «Հ. Վ.» սկզբնատառերը կը կրէին [45] :

Մասիս [46], Օրագիր [47] եւ Ասիա [48] յիշած են Ընկերութիւնս :

1877ին կը դադրի Ընկերութիւնը. դպրոցի հողը կը ստանձնէ իր նախկին աշակերտներու կազմած «Հայրենասէր Սանուց Ընկերութիւնը» : — Թէոդիկի [49] տուած ծանօթութիւնը թերի է :

## 19. ԲԱՐԵՐԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Կազմուած է 1871ի սկիզբները Վանի Այգեստանի մէջ Ս. Մատթէոսեան դպրոցի հողն ստանձնելու համար : 5 ուսուցիչ կը

[44] Աշխատանք, Վան, 1914, էջ 1875:
[45] Անդ :
[46] 1872, Թ. 1223: — 1873, Թ. 1404:
[47] 1873, Թ. 932:
[48] 1874, Թ. 46:
[49] Ամէնուն Տարեց. 1912, էջ 382:





վարժէ Գաղղիերէնի, Հայերէնի, Երաժշտութեան եւ Ընթերցանութեան համար: Դպրոցին Տնօրէն կը կարգէն Տէր Դիոնեսիոսը: 12 հոգիէ բաղկացած Հոգաբարձութիւն մը կը կառավարէ բոլոր գործերը: Ընկերութիւնը կ'ունենայ 170 անդամ: Կը հոգայ նաեւ աղքատ եւ որբ աշակերտներու զգեստ եւ գրենական[50]:

## 20. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Այգեստանի մէջ եղած Նորաշէնի դպրոցի 300 աշակերտներու կրթութիւնը ապահովելու համար 24 հոգի քովէքով գալով 1871 Դեկտ.ին հիմը կը դնեն Ուսումնասիրաց Ընկերութեան: Նպատակի մասին կը գրէ Թղթակիցը. «...Դպրոցի ո եւ իցէ թերութիւնները լեցնելու եւ նորա տխուր վիճակը բարւոքացնելու» համար[51]: Թղթակիցը ցաւ կը յայտնէ որ Ընկերութիւնը իր հալածիչները կ'ունենայ: Երամեան[52] ալ կ'աւելցնէ որ Գոլոզ Յովհաննէս վարժապետ շատ ալ հաշտ չէր...

## 21. ԻՐԱՒԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1873)

1873 Մարտ 17 եւ 20 թուակիր թղթակցութիւններ Վանէն կ'իմացնեն թէ «ժամա-

---

[50] Հայրենիք, 1871, Թ. 42, Ապրիլ 2:
[51] Մասիս, 1872, Թ. 1214:
[52] Համբարձում Երամեան, Յուշարձան Ա., էջ 88:

ճակէ մ'ի վեր յիշեալ քաղաքին մէջ ժողովրդական մեծ շարժում մը կը տեսնուի ազգային ընկերութիւններ կազմելով՝ ընթերցանութիւնը ժողովրդեան ռամիկ մասին մէջ տարածելու եւ դպրոցաց օգնելու» *համար*։ *Թղթակիցը կ'աւելցնէ թէ մինչեւ* 1873 *Վանի մէջ հիմնուած են* երեք *ընկերութիւններ, որոնցմէ մէկն է* «Իրաւասէր» *ընկերութիւնը*[53]։

*Նոյնը կը հաստատէ ուրիշ Վանեցի մը* միեւնոյն շրջանի *համար գրելով*. «Միաժամանակ սկիզբ կ'առնէին իւրաքանչիւր եկեղեցւոյ ծոցին մէջ, *զարգացողական նպատակաւ* Ուսումնասիրաց *կամ* Ընթերցասիրաց *երիտասարդական Միութիւններ*[54]»։

*Այդ ատեն Վանի* մէն մի թաղը *իր յատուկ Միակութ. Ընկերութիւնը ունեցած է, որոնց մասին ոչ թէ մանրամասնութիւն, այլ եւ ոչ իսկ Ընկերութիւններու անունը եւ զոնէ հակիրճ տեղեկութիւն մը հաղորդուած է*։

22. ԱՌԱՔԵԼԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1873)

*Հաւանօրէն* 1872—1873*ին հիմնուած է։ Կը յիշէ* Ասիա[55]։ *Երկար կեանք եւ գործունէութիւն ունեցած է, զի* 1879*ին տակաւին թատերական ներկայացումներ կու տայ*[56]։

---

[53] Ասիա, 1873, Թ. 38։
[54] *Երամեան, անդ, էջ* 79։
[55] 1873, *Թ.* 38։
[56] Մասիս, 1879, *Թ.* 2282։

*Նպատակ ունի Աւանց եւ Շահպաղ գիւղերու մէջ դպրոց բանալու*[57]:

23. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1873)

*Լոկ անունով յիշուած է* 1873*ին*[58]:

24. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Կազմուած է* 1875*ի առաջին ամիսներուն: Հիմնադիրներն են. Սահակ Գալճեան, Մելքոն Պարթեւեան եւ Նշան Շիրվանեան, որոնք նպատակ ունեցած են Վանի մէջ գի*-շերօթիկ վարժարան *մը բանալ: Վարժարանը կը յաջողին բանալ* 1875 *Յուլ.* 21*ին, ուր կ'ուսուցանէին. Հայերէն, Հայոց Պատմութիւն, գաղղիերէն, տաճկերէն, թուաբանութիւն, աշխարհագրութիւն, տոմարակալութիւն, գրահաշիւ, գեղագրութիւն, Սրբազան Պատմութիւն: Վարժարանը կ'ունենայ թէ՛ գիշերօթիկ եւ թէ արտաքին աշակերտ: Ընկերութիւնը իր վարժարանին անուն մը չի տար. կը խոստանայ* անո՛ր անունով *յորջորջել, որ Ընկերութեան նուիրէ* 100 *օսմ. ոսկի*[59]: *Նուիրատուութիւն մ'եղած չէ. վարժարանը իր Ընկերութեան անունով կոչուած է*[60]:

---

57 *Անդ.*, *Թ.* 2407:
58 Ասիա, 1873, *Թ.* 38:
59 Մասիս, 1875, *Թ.* 1733:
60 Թէրճ. էֆքեար, 1881, *Թ.* 1276:

*Ժամանակակից մը կը պատմէ որ* Ս. Յակոբի *եւ* Ցիսուսեանի *բարձրագոյն կարգի աշակերտներ* Ուսումնատարածի մէջ *դրկուած են եւ իրեն հետ հոն դասախօսած են Տիգրան Ամիրճանեան եւ Խաչատուր Դարբինեան*: 1876 *Դեկտ.* 1*ի* խորհրդաւոր *հրդեհը վերջ տուած է թէ՛ Ընկերութեան եւ թէ վարժարանին*[61]:

25. ԿՐԹԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Վանէն յօղուածագրի մը համեմատ՝ հիմնուած է բողոքականութեան հոսանքին դէմ մրցելու համար: Բողոքականութեան մուտքը Վանի մէջ եղած է* 1872*ին*[62]: *Վերոյիշեալ յօղուածագիրը առանց ճշդելու* հիմնումի թուականը՝ *կը շարունակէ Ընկերութեան մասին գրել. «Նպատակ դրած է* կիրակի օրերը սուրբ պահել, Ս. Գրոց վրայ հրապարակային դասախօսութիւններ սարքել՝ *մրցելու համար* «Ժողովարաններու» դէմ[63]: — *Ընկերութեան առաջին յիշատակութիւնը եղած է* 1878 *Յունիսին, երբ կը համաձայնի գործել միւս Ընկերութիւններու հետ*[64]:

---

61 *Համբարձում Երամեան, Յուշարձան, անդ*, *էջ* 90:

62 *Անդ, էջ* 91—92:

63 Մասիս, *Կ. Պ.* 1882, *Թ.* 3145:

64 Մասիս, 1879, *Թ.* 2265:

Հիմնուած է 1875ին Արաբուցի մէջ, նախաձեռնութեամբ Տէր Դիոնեսիոսի[65]: Երամեան հիմնադիր կը համարի Տէր Դիոնեսիոս, Տէր Թովմաս, Հայրապետ Ճանիկեան եւ Պետրոս Գափամաճեան[66]:

## 26. ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1876)

Հիմնադիրն է աչքառու Համբարձում Երամեան, որ կը գրէ. «...պատանութիւնը խաղերէ (նարտ, թղթախաղ) եւ զանազան մոլութիւններէ զերծ պահելու եւ անոնց համար բարոյացուցիչ զբաղում մը ստեղծելու դիտումով կազմեցի 1876ին Բարեսիրաց Միութիւնը՝ ինձ յանձնուած իբր 40 հոգինոց դասարանի աշակերտներէն... իբր միջոց ընտրեցինք Գրադարան, կիրակնօրեայ լսարան եւ թատրոն: Այս Միութիւնը խանդավառ ընդունելութիւն գտաւ նաեւ ծնողական շրջանակներու մէջ, ուստի կիրակնօրեայ լսարանը կը յաճախէին չափահասներ իսկ[67]»:

Միութիւնը երկար ապրեր ու գործեր է. 1879ին թատերական ներկայացում կու տայ[68]: 1912ին գործող «Բարեսիրական Ընկերութիւնը[69]» շարունակութի՞ւնն է նոյնին:

---

65 Թէոդիկ, Ամէն. Տ. 1912, էջ 382:
66 Երամեան, անդ, էջ 114:
67 Անդ, էջ 95:
68 Մասիս, 1879, Թ. 2282:
69 Տե՛ս Աշխատանք, 1912, էջ 1104:

27. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

*Կազմուած է* 1876*ին Վանի* Հայկազնեան վարժարանի *աշակերտներէն՝ նպատակ ունենալով*. «Ընթերցարան հաստատել, կիրակի օրերը (*ձրի*) դաս տալ եւ յատուկ լսարան մը բանալով՝ առեւտրականութիւններ ընել [70]»: — *Մկրտիչ Փորթուգալեանի առաջնորդութեամբ* 1876 *Նոյ*. 1*ին կը բանան* լսարանը: 1877*ին ունին նաեւ* Ընթերցարան-Թանգարան: *Լսարանը բաց է երկու շաբաթը անգամ մը, իսկ Ընկերութիւնը ստացած է շատ մը գրքերու նուէրներ, ինչպէս կը հաղորդեն Ընկերութեան Վարիչները՝ Յովհաննէս Ա. Թէրլէմէզեան (նախագահ), Մկրտիչ Ա. Թէրլէմէզեան (քարտուղար) եւ Սահակ Մանասեան (դրապահ)* [71]:

*Ընկերութիւնս* «Հայկազնեան Ընկերութեան» *դադարումէն* (1877) *վերջ կը ստանձնէ պաշտպանութիւնը* Հայկազնեան վարժարանի [72]:

28. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Մկրտիչ Փորթուգալեանի առաջարկով կը հիմնուի* 1877 *Փետր.ին*: *Նպատակը*. «*Վանէն ուշիմ եւ յարմար պատանիներ ա-*

---

[70] Մասիս, 1877, Թ. 1998:

[71] *Անդ*, Մանզ. էփրեար, 1877, Թ. 3413: — Թէրճ. էփրեար, 1879, Թ. 55:

[72] Թէրճ. էփրեար, 1881, Թ. 1276:

առքել Եւրոպայի երկրագործական վարժարանները եւ նոցա միջոցով երկրագործութիւնը ծաղկեցնել Վասպուրական աշխարհին մէջ. հողեր գնել եւ ընկերութեամբ պաշտպանել երկրագործութեան յառաջդիմութիւնը հարստահարիչներու եւ յափշտակիչներու դէմ»։ Ընկերութեանս թեւթիկունք կանգնած են 1877ին կանգուն եղած վեց ընկերութիւններ[73]։

29. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

1878 Յունիսին յիշուած է իբրեւ ոչ-նոր ընկերութիւն, որ պատրաստ է գործակցիլ ուրիշ ընկերութիւններու[74]։ 1879ին կը բանայ լսարան մը[75]։

30. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Հաւանօրէն կազմուած է 1877ին, ինչպէս «Հայկականը»։ Կը ձգտի դպրոց բանալ Հայոց Ձորի գիւղերէն Իշխանի Գոմ գիւղի մէջ[76]։

31. ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Հիմնուած է 1878 Փետրուարին՝ Նորաշէնի երիտասարդներէն։ Հանդիպած է շատ

---

73 Մանզ. Էփճեար, 1877, Թ. 3413։
74 Մասիս, 1879, Թ. 2265։
75 Թէրճ. Էփճեար, 1879, Թ. 551։
76 Մասիս, 1879, Թ. 2407։

մը խոչընդոտներու[77]։ Ա. տարեդարձը կը տօնուի մեծ ոգեւորութեամբ[78]։

### 32. ԱԶԳԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Կազմուած է* 1878 *Փետրուար* 14*ին՝ Արարուց Թաղի* Ս. Մատթէոսեան *վարժարանի նախկին սաներէն*[79]*։ Գլխաւոր հիմնադիր կը յիշուին Մարկոս Նաթանեան, Պօղոս Նաթանեան եւ Խաչատուր Մանդակունեան*[80]*։ Նպատակն եղած է. «Հայ ժողովրդեան մէջ ազգային զգածումը արծարծել*[81]*։ Կը հոգայ նաեւ աղքատ աշակերտներու գրենականները*[82]*։*

*Նպատակին հասնելու համար բացած է* 1. Լսարան՝ *բանախօսութիւններու*, 2. Խօսարան՝ *վիճաբանութիւններու*, 3. Դասարան՝ *ձրի ուսում ջամբելու*, 4. Թանգարան-Ընթերցարան՝ *ընթերցումի համար*[83]*։*

1878*ին Վանի մէջ կային աւելի քան* 10 *Մշակութ. Ընկերութիւններ։ Ազգին մեծագոյն օգուտին համար անոնցմէ* տասը *իրենցմէ երկ-երկու երեսփոխան կ՚ընտրեն եւ Ընկերութիւններու այդ ներկայացուցիչներէն կը կազմուի* «Ընկերութեանց երես-

[77] *Անդ՝* 1878, *Թ.* 2216։
[78] Թէրճ. Էֆքեար, 1879, *Թ.* 568։
[79] *Անդ՝* 1880, *Թ.* 839։
[80] *Երամեան, անդ, էջ* 114։
[81] Թէրճ. Էֆքեար, 1881, *Թ.* 1096։
[82] *Անդ՝* 1880, *Թ.* 838։
[83] Թէրճ. Էֆքեար, 1881, *Թ.* 1096։

փոխանական ժողով» *մը, որուն նպատակը կ'ըլլայ* «Ազգային բարոյական եւ մտաւորական օգուտները խորհիլ եւ գործել»։ *Այդ միութեան մասնակցող Ընկերութիւններն են*. 1. Անդրանիկ, 2. Առաքելեան, 3. Արծրունեաց, 4. Կրթասէր, 5. Հայկական, 6. Հայրենասէր, 7. Մամիկոնեան, 8. Ուսումնասէր, 9. Քաջ-Արծրունեան, 10. Ազգանուէր [84]։

33. ԽՆԱՄԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է* 1878 *Յուլիս* 13*ին*։ *Գաղափարողը եւ գլխաւոր հիմնադիրն է աչաղուրկ* Համբարձում Երամեան՝ *իրեն օգնական ունենալով* Ս. Յակոբի *երիտասարդները*։ *Նպատա՞կը*. — Տնանկ ընտանիքներու սնունդ, զգեստ եւ գործ հայթայթել. *որբ եւ աղքատ ուշիմ մանուկներ կրթելով՝ վարժապետացու եւ քահանայացու պատրաստել*[85]։ *Գործադիր ժողովի Ատենապետն էր Համբարձում Երամեան, Ատենադպիրը՝ Մարտիրոս Կիւլխմեան*։ *Անդամավճարն էր* 2½ *ղուրուշ* [86]։

*Ընկերութիւնը կ'որդեգրէ* 15 *անօգնական եւ կարօտ մանուկներ եւ կը դաստիարակէ* Ս. Յակոբի *ծխական դպրոցին մէջ*։ *Այդ մանուկները* 1878—1879*ին կը կո*–

84 Մասիս, 1879, Թ. 2265։
85 *Երամեան, անդ, էջ* 116։
86 Մասիս, 1879, Թ. 2388։

*չուէին Խնամատարի* սաներ *եւ ոչ թէ* որ-բեր, *որոնք պարկեշտ ընտանիքներու քով տեղաւորուած՝ Խնամատարի թոշակներով կը հոգացուէին, զի Խնամատարը գիշերօթիկ հաստատութենէ աւելի կը նախընտրէր ընտանեկան միջավայրը:*

*Խնամատար Ընկերութեան հիմնումէն քիչ վերջ* «Բաց-Արծրունեան» *Ընկերութիւնը իր ամբողջ կազմով* կը միանայ Խնամատարին՝ *անոր թողլով իր գոյքերը եւ Ս. Յակոբ եկեղեցւոյ ծոցին մէջ կառուցած իր հաւաքատեղին*

*Խնամատարին առաջին եւ միայն բարերարը կ'ըլլայ Վանի ռուսական Հիւպատոս՝* Կոստանդ Կամսարական, *որ ամսական* մէկ ոսկի *վճարելէ զատ՝ սան մըն ալ կ'որդեգրէ* [87]:

1880 *Սեպտ.ին Խնամատարի* 15 *սաները կը փոխադրուին* Կարմրուոր *Ս. Աստուածածնի վանքը, ուր կը բերուին նաեւ* 10 *նոր որբեր, որով* 1880 *Սեպտեմբերին բացումը կը կատարուի* Որբանոցին: 1881 *Յունուարին Որբանոցը Այգեստան կը փոխադրուի: Նոյն տարւոյ Մայիսին դարձեալ Կարմրուոր, ուր կը մնայ մինչեւ* 1882*ին Սեպտեմբեր, երբ Խնամատար Ընկերութիւնը* կը լուծուի՝ *ըստ պետական հրամանի:*

*Համբարձում Երամեան, որ մինակ մնա-*

---

87 Թէրճ. Էֆքեար, 1881, *Թ.* 1187: — *Յուշարձան, անդ, էջ* 116—117:

ցած էր Խնամատարի Որբանոցի Վարչութեան մէջ՝ իբրեւ միակ Վարիչ՝ Որբանոցը դարձեալ Այգեստան կը փոխադրէ 1882 Հոկտեմբերին։ 1883էն կը սկսի նաեւ թոշակաւոր աշակերտ ընդունիլ, որով աշակերտութեան թիւը կը բարձրանայ հարիւրէ աւելի եւ վարժարանը կ'ըլլայ իննամեայ ծրագրով դասարանական վարժարան մը։ 1908էն քիչ վերջ աշակերտութեան թիւը հասած էր 400ի. տարեկան պիւտճէն 1200 ոսկիի բարձրացած էր, իսկ վարժարանի մակարդակը՝ 1886էն սկսեալ՝ Վանի բարձրագոյն կրթական հաստատութիւնը։ Մինչեւ 1888 գիշերօթիկ սաներու կէսէն աւելին շրջանաւարտ կ'ըլլայ, մնացածը արհեստաւորներու քով կը տեղաւորուի, որով այդ տարիէն վերջ վարժարանը կը վերածուի ցերեկօթիկ վարժարանի եւ ընդունուած քանի մը գիշերօթիկներն ալ ընտանիքներու քով կը տեղաւորուին։ 1904էն վերջ վարժարանը կոչուած է Երամեան վարժարան[88]։

34. ՑԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879 Փետր. 8ին։ Հիմնադիրները 10 հոգի են, որոնցմէ կը յիշուին. Մկրտիչ Փորթուգալեան, Տիգրան Ամիրճանեան, Հայրապետ Ճանիկեան, Կարապետ եւ

---

[88] Տե՛ս Ցուցարձան, անդ, էջ 148—172։ — Աշխատանք, 1912, թ. 86։ — Դաշինք, Իզմիր 1914, թ. 1503։

*Մարկոս Նաթանեան*: *Ամսական անդամա-վճարն է* 5 *դահեկան*: *Ընկերութեան նպա-տակներէն մին է*. խօսարանի *միջոցաւ ժո-ղովուրդին կամքը ամփոփել եւ ներկայացնել ուր որ անկ է*: *Կը բանայ* Լսարան *եւ կը ջա-նայ բանակցութիւններով երկրին եւ ժողո-վուրդին յառաջադիմութեանը սատարել*: *Իր շուրջ կը գտնէ հետաքրքրութիւն ու համա-կրանք*: 80*ական թուականներու ազգային հանդէսներու կազմակերպիչն է*: *Կ՚ունենայ աւելի քան* 100 *բաժանորդ* [89]:

35. ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

1880*ի սկիզբը կազմած են* Սանդխտեան վարժարանի սանուհիները [90]: *Ուրիշ ծանօ-թութիւն կը պակսի*:

36. ԲԱՐԵԴԷՏ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Հիմնած է Համբարձում Երամեան՝ շա-հակցական նպատակով*: *Բացած է առեւտրա-կան խանութ մը*, *զոր կը վարէ Նշան Գրա-ւէֆերեան*: *Ընկերութիւնը երկար կեանք չ՚ունենար* [91]:

37. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Մ. Պ. Հայկունի Վանէն կը տեղեկագրէ* 1880 *Հոկտ. 23ին*. «*Վասպուրականի Հայ*

---

[89] Թէրճ. էֆքեար, 1879, *Թ*. 545: — *Երա-մեան*, *անդ*, *էջ* 118—119:

[90] Թէրճ. էֆքեար, 1880, *Թ*. 838:

[91] *Երամեան*, *Յուշարձան*, *անդ*, *էջ* 98:

երիտասարդութիւնը... գործակցութեամբ մի քանի յառաջդիմասէր երիտասարդութեան անցեալ Կիրակի Այգեստանի մէջ մի Ընթերցարան բացաւ, ուր Հայերէն եւ օտար լեզուաւ լրագիրներ կը գտնուին: Ընկերութիւնը մտադիր է շուտով օգտակար գրեանք ալ հաւաքել ընթերցասիրութիւնը ծաւալելու ժողովրդեան շրջանին մէջ[92]»: — Անունը չի տար սակայն Ընկերութեան, որ շատ հաւանականութեամբ Ընթերցասիրաց ըլլալու է: Ուրիշ տեղ չէ յիշուած:

38. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1881)

Կը յիշուի 1882 Մարտին լոկ անունով[93]:

39. ՈՒԽՏԱՊԱՀԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1882—1883)

Կազմած են Վանի Եպիսկոպոսներն ու վարդապետները՝ պաշտպանելու համար Վանի վանքերն ու անոնց կալուածները ոտնձգութիւններու դէմ[94]:

40. ՍԱՆՈՒՀԵԱՑ ԿՐԹԱՍԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1890)

Կազմուած է «Սանդխտեանի» անդրանիկ աշակերտուհիներու նախաձեռնութեամբ՝ երբ Սանդխտեան վարժարանը Յովնանեանեանց տանը մէջ էր[95]: Նպատակն էր. «Նիւ-

---

92 Մասիս, 1880, Թ. 2799:
93 Մասիս, 1882, Թ. 3135:
94 Թէրճ. Էֆքեար, 1884, Թ. 2202:
95 Տե՛ս այս մասին Աշխատանք, Վան 1914, էջ 1816:

*թափէս բարձրացնել դպրոցը եւ միեւնոյն ժամանակ բարձրագոյն կարգերու աղջկանց մէջ մտցնել կարուձեւի եւ ձեռագործի դասերը»: Միութեան հիմնադիրն ու Ատենապետն է Տիկին Իսկուհի Խրիմեան, որ Եղիսաբեթ եւ Մարինէ Աճէմեաններու, Մարգարիտ Պապիկեանի եւ ուրիշներու հետ գորգագործութեան կը ձեռնարկէ: Սանուհեաց Միութիւնը* 1894*ին դպրոցին կը նուիրէ երկու ընկոյզի փայտէ թաւշապատ բազկաթոռ եւ մէկ թիկնաթոռ, նոյնպէս* 10 *աշակերտուհիի համար գրասեղան ու աթոռ եւ մեծ, սիրուն գորգ մը՝ Վարագի վանքին*[96]:

### 41. ՎԱՆԱՑ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Հիմնուած է* Եգիպտոս 1899 *Մայիսին*, Վարագայ վանքի Որբանոցին նպաստելու համար [97]:

### 41ա. ՎԱՆԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1903)

*Հիմնուած է Ամերիկա* 1903 *Մայիս* 1*ին՝ նպաստելու համար Վանի եւ շրջակայից մէջ ուսման եւ կրթութեան: Իր Կանոնագիրը ունի* 16 *Յօդուած* (*Տպ. Բոստոն* 1904):

### 41բ. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907?)

1912*ին* Մանկապարտէզ *ունի. կը հրա–*

---

96 *Անդ*:

97 Բիւզանդիոն, 1900, *Թ.* 983, *Յունուար* 16:

*տարակէ* Լոյս Ամսօրեայ (*Տե՛ս* Աշխատանք, *էջ* 1104)։

42. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

Մանզումէի էֆքեար[97] *իր* «*Ազգային*» *բաժնի մէջ* 1908 *Յունուար* 13*ին կը ծանուցանէ*. «*Վանի մէջ տիկիններու եւ օրիորդներու նախաձեռնութեամբ* «Որբախնամ» *Ընկերութիւն մը կազմուած է օգնութիւն հասցնելու համար տեղւոյն բազմաթիւ անտէր ու անօգնական թշուառ որբուկներուն*»։ — *Կը թուի թէ* 1907*ի վերջերը հիմնուած է*։

43. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* Պոլիս 1908 *Յուլիս–Օգոստոսին*[99]։ *Ուրիշ տեղեկութիւն չունինք*։

44. «ԾՈՎԱԿ» ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է Վանի մէջ հաւանօրէն* 1908*ի* գարնան, *զի Պոլսոյ Վանեցիները* վանի «Ծովակ»ին մէկ ճիւղը կը կազմեն 1908*ի* աշնան[1]։ — *Ի նպաստ Միութեան վիճակահանութիւն մը կազմակերպուած է* 1909*ին*[2]։

45. ԿԱՆԱՆՑ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կը կոչուի նաեւ* «Վասպուրականի Հայ

---

[98] 1908, *Թ*. 2318։
[99] Մանզ. էֆքեար, 1908, *Թ*. 2207։
[1] Աշխատանք, 1912, *Թ*. 67։
[2] Ազատամարտ, *Կ*. *Պ*. 1909, *Թ*. 60։

կանանց Միութիւն»: *Հիմնուած է* 1909 *Մարտին: Աշխատած է օգտակար ըլլալ մտաւորապէս* հայ կնոջ մտաւոր զարգացման: *Կը սարքէ լսարաններ: Նիւթապէս նպաստած է Կիլիկեան աղէտեալներուն եւ տեղւոյն Սանդխտեան վարժարանին*[3]:

### 46. ՎԱՐԱԳԱՅ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*«Վարագայ Սանուց Միութեան» Գանձապահ՝ Գարեգին Մխիթարեանց կը ծանուցանէ. «Վանայ մէջ կազմակերպուած է «Վարագայ Հայրիկին Սաներու Միութիւն»ը, նպատակ ունենալով... վերահաստատել մեր «Արծիւ Հայրիկի» տպարանը, անոր յիշատակը յաւերժ անմահացնելու համար*[4]»:

### 47. «ՎԱՍՊԻ» ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911—2)

*Գրական–գեղարուեստական երեկոյթներ կը սարքէ*[5]:

### 48. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Պոլսոյ Վանեցի երիտասարդներ* 1912*ի սկիզբները հիմնած են այս Միութիւնը՝ նպատակ ունենալով. «Զարկ տալ վասպուրականցիներու մտաւոր, բարոյական եւ*

---

[3] *Անդ*, 1910, թ. 235:
[4] Յառաջ, *Կարին* 1910, թ. 49:
[5] Աշխատանք, 1912, թ. 80:

ֆիզիքական զարգացման, արթնցնելով անոնց մէջ ինքնազարգացման եւ նախաձեռնութեան ոգին[6]»։

Արտամետի մէջ բացած է «Արծիւ» Գրադարանը 200 կտոր գրքերով· հրապարակ հանած է Վան քաղաքի բաց-քարտը[7]։ — Միութիւնը ճիւղեր ունի Բակուի, Արտամետի եւ Ալիւրի մէջ։ Պոլսոյ մէջ ունի 50 անդամ։ Ունեցած է իր Կանոնագիրը։ Գրադարան հիմնած է նաեւ Նոր գիւղի եւ Ալիւրի մէջ[8]։

49· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՄԱՐՄԻՆ (1912)

Ցայնկոյսներու մէջ 1913ին կը յիշուի Աղքատախնամ Մարմին մը, որ 2 գորգ-գործել տուած է եւ վիճակահանութեան դրած՝ ի նպաստ Ցայնկոյսներու երկսեռ աղքատիկ ուսանողներու[9]։

50· ՍԱՆԴԽՏԵԱՆ ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

Նախաձեռնող հիմնադիրն է Տիկ. Իսկուհի Երիմեան, որ կը գրէ 1914 Յունուարին՝ խօսքը Սանդխտեանի նախկին սանուհիներուն ուղղելով· «...Իմ սիրելի ընկերուհիներս· ուրիշներ պատճառ եղան մեր ուսման, բայց մենք թերացած ենք մեր

6 Վանտոսբ, Վան 1912, էջ 319։
7 Աշխատանք, 1912, Թ. 1029։
8 Անդ, 1914, էջ 1830։
9 Անդ, 1913, էջ 1732։

*պարտականութեան մէջ... մեր մայր Վար-ժարանը նուիրապէս ճնշուած է... մեր պարտքն է* հնարաւոր եղած միջոցներով օգնել անոր: *Այս պարտականութեան զգա-ցումով խումբ մը նախկին ընկերուհինե-րով* «Սանդխտեան Սանուհեաց Ընկերու-թիւն» *անունով Միութիւն մը կազմե-ցինք... ձեռք ձեռքի տալով օգնելու մեր մայր վարժարանին*[10]»:

51. ՎԱՆԻ ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1916)

*Կը յիշուի* 1916 *Սեպտեմբեր–Հոկտեմ-բերին եւ ունի էջմիածնի մէջ՝* 1000 *ռուբլի ի պահ դրուած*[11]: *Պոլսո՞յ մէջ էր իր կեդ-րոնը:*

52. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուելու սկսած է* 1918 *Դեկտ.ին*[12]: *Կը հրատարակէ.* «Յիշատակագիր Վանայ ինքնապաշտպանութեան դէպքերու[13]»: 1921 *Ապրիլին* կը վերակազմուի *եւ* 80 *ժողովա-կաններ կ'ընտրեն հետեւեալ Վարչական ան-դամները. Յովհաննէս Թէրլէմէզեան, Միհրդատ Աւագեան, Արաէն Թէրլէմէզեան, Շաւարշ Յակոբեան, Արշաւիր Սօլաքեան,*

---

[10] Աշխատանք, 1914, *էջ* 1786, *Յունուար* 18:
[11] Արարատ, *Վաղարշապատ* 1916, *էջ* 627:
[12] Ժամանակ, 1918, *թ.* 3406:
[13] *Անդ*, 1919, *թ.* 3574:

Գեղամ Երամեան, Գրիգոր Պէօզիկեան, Միհրան Ծիտեճեան, Արշաւիր Հիւսեան: Դիւանը կը կազմեն. Պրոֆ. Յովհաննէս Յակոբեան (Ատենապետ), Արտակ Դարբինեան (Բ. Ատենապետ), Օգսէն Սարաճեան (Ա. Ատենադպիր), Միհրան Գալիկեան (Բ. Ատենադպիր[14]):

Ամերիկայի Վանեցիները երկար ատեն միասին կը շարունակէին գործել Միութեան շուրջ. վերջին տասնամեակներուն պառակտուած են, դժբախտաբար. երկու պարբերական կը հրատարակեն Վարագ եւ Արծուի Վասպուրականի[15]:

*

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԷՐԷՐԻՆ ԳԻՒՂ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1855)

Բզնունեաց ծովուն եզերքը գտնուող Վանի Էրէրին Գիւղը 1855ին 60 տուն հայ բնակիչ ունէր եւ գուրկ դպրոցէ: Պոլիս պանդխտած Էրէրինցիներ 1855ին Ընկերութիւն մը կը հիմնեն՝ գիւղին մօտ եղող Ս. Սահակ Պարթեւ վանքը նորոգելու եւ գիւղին մէջ ալ դպրոց մը բանալու համար: «Արդարեւ, կը գրէ Արծուի Վաս-

---

14 Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1921, Թ. 771:

15 Տե՛ս Արծուի Վասպուրականի, 1956, էջ 261—263:

պուրական[16], *պիտի զարմանայ ընթերցողը, յիշեալ գիւղացւոց վրայ, որ մեծ խոհեմութեամբ հաստատեցին իրենց* Ընկերութեան *հիմն*, վեց հազար դուրուշ դրամագլուխ դնելով ապահով տեղ մը *Վանեցի Սարոնձեան Հայրապետ Աղային պաշտպանութեան ձեռքով, որուն շահ միայն բաւական է իրենց աղքատ դպրոցին ծախքը հոգալու*»:

## ՀԱՅՈՑ ՁՈՐ

### 1. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Պոլսոյ մէջ հիմնուած է՝ Հայոց Ձորի գիւղերու դպրոցներուն նպաստելու համար*[17]:

## ՔԵՐՑ ԳԻՒՂ

### 1. ԵՐՈՒԱՆԴՈՒՆԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հայոց Ձորի (հին Երուանդունեանց) գիւղախումբերուն կը վերաբերի* Քերց, *որ կը գտնուի Ռշտունեաց նահանգին Արտոս լերան ստորոտը*: 80 *տունէ բաղկացած զուտ հայաբնակ այս գիւղին մէջ* դպրոց մը բանալու համար *Պոլիս գտնուող նժդեհ Քերցցիներ* 1879 *Ապրիլ* 15*ին* Երուանդու-

---

[16] 1855, *Թ*. 4, *էջ* 64:

[17] *Գաղութահայ Տարեգիրք, Պուքրէշ* 1941, *էջ* 113:

նեանց Ընկերութիւնը *կը հիմնէ։ Անդամավճարն է՝ շաբաթական* 1 *դահեկան*[18]։

## ԱԼԻՒՐ ԳԻՒՂ

### 1. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Պոլսոյ* Արարատեան Ընկերութեան *գիւղին մէջ բացած դպրոցի աշակերտները* 1877*ի առաջին ամիսներուն* Սանուց Ընկերութիւնը *կը կազմեն առաջնորդութեամբ իրենց Զաքար վարժապետին եւ* «Կիրակի օրերը գիւղացիները ժողվելով Արարատեան վարժարանը՝ կը դասախօսեն նոցա, ատենաբանութիւններ կը լինին եւ Ազգ. Պատմութենէ *կամ ուրիշ դիւրահասկնալի գրքերէ հատուածներ կը կարդացուին հրապարակով*[19]»։

Մասիսի *մէջ*[20] *թղթակից մը կը գրէ.* «*Ալիւր... մի Միութիւն կազմուած է գիւղի երիտասարդներէն, որք առ այժմ* դպրոցի անմիջական պիտոյքները կը հոգան... *իրենց* Ընկերութիւնը ճիւղեր ունի շրջակայ գիւղեր»։ — 1882*ին կը ջանան մատենադարան մը կազմել*[21]։

---

18 Հայրենիք, *Կ. Պ.* 1879, *Թ.* 522։ — Մասիս, 1879, *Թ.* 2320։

19 Մանզ. Էփքեար, 1877, *Թ.* 3442։

20 1880, *Թ.* 3110։

21 Մասիս, 1882, *Թ.* 3198։

## ԹԱՂ ԳԻՒՂ

### 1. ԸՆԹԵՐՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

«Սմբատ» Վանէն կը գրէ 1879 Ապրիլ 13ին. «Տատախ գաւառի Թաղ Գիւղին մէջ Ընթերցասէր անուն Ընկերութիւն մը կազմուեր էր որ իր օրինաւոր գործունէութեամբ տեղական կառավարութեան առջեւ այնչափ կարեւորութիւն ստացեր է, մինչեւ գիւղերային պահնորդաց պատուիրուած է չձերբակալել ամէն անոնք, որ նոյն Ընկերութեան սենեակը դաս առնելէն կը դառնան եւ որք կը ճանչցուին ծոցերնին գիրք ունենալով: Յիշեալ Ընկերութեան նպատակն է ուսանիլ եւ ուսուցանել[22]»:

## ԴՈՆԱՇԷՆ ԳԻՒՂ

### 1. ԱՍՓԱՆԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Պոլսոյ Դոնաշէնցիներէն հաստատուած է 1879 Դեկտ. 2ին: Մկրտիչ Յ. Պինաեանց իր մէկ ծանուցումին մէջ[23] ասկէ աւելի տեղեկութիւն չի տար Ընկերութեան մասին, որուն նպատակը, անտարակոյս, գիւղի դպրոցին նպաստելն եղած է:

---

22 Թէրճիւմանը Էֆքեար, 1879, Թ. 568:
23 Լրագիր, Կ. Պ. 1879, Թ. 1141:

## ՇԱՀՊԱՂ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904—1909)

*Այս անունով ընկերութիւններ կազմած են Շահպաղցիներ Պոստոնի, Սենթ-Լուիզի, Գրանիտ-Սիթի եւ Մելֆորդի մէջ՝ իրենց գիւղի դպրոցին նիւթապէս օժանդակելու համար*[24], *որոնց հիմնումի թուին մեզ անծանօթ է:*

## ՄՈԿՍ

1. ՁԼՈՒՏ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910?)

1913*էն* քանի մը տարի առաջ *հիմնուած եւ* 1913*ին դադրած է*[25]:

2. ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910?)

*Վերինին պէս* 1913*էն քանի մը տարի առաջ հիմնուած է* Մոկսի գիւղախումբերուն մէջ[26]:

3. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնուած է* 1913 *Մարտի սկիզբը: Նպատակը. «Դպրոցը իր կոչման բարձրութեան վրայ պահել. գրենական անհրաժեշտ պիտոյքներ հայթայթել*[27]»:

---

24 Աշխատանք, 1912, *էջ* 1838:

25 *Անդ*, 1913, *էջ* 1405:

26 *Անդ*:

27 *Անդ*:

## ԿԵՄ ԳԻՒՂ

### 1. ...ՄԻՈՒԹԻՒՆ (1911—1912)

Կը յիշուի 1912ի գարնան. ունէր 50 լիրայի գումար մը եւ կ'ուզէր գրադարան մը հիմնել[28]:

## ԱՒԱՆՑ ԳԻՒՂ

### 1. ՇՈԳԵՆԱՒԱՑԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

Վանի Աշխատանքի[29] թղթակիցը կը գրէ. «Գիւղիս նաւավար դասակարգը սկիզբ է դրած Շոգենաւային Ընկերութեան մը հաստատման: Այդ Ընկերութեան նպատակը պիտի ըլլայ Վանի ծովին վրայ 40—50 ձիու ուժ ունեցող երկու շոգենաւեր բանեցնել: Ընկերութեան դրամագլուխը 15,000 ոսկի գումարի մը պիտի հասնի, որպէս զի պաշտօնապէս կառավարութեան կողմէ վաւերացուի»:

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

### 1. ՎԱՍՊ. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906)

Գահիրէաբնակ Վասպուրականցիք 1906 Յուլ. 1ին հիմնած են «Վասպուրականի Դպրոցասիրաց Ընկերութիւն»ը՝ նպատակ

---

28 Աշխատանք, 1912, թ. 70:

29 1914, էջ 1794:

ունենալով Վանի չրջակայ հայարնակ գիւղե-րուն մէջ դպրոցներ հաստատել: Անդամակ-ցութեան ամսական բաժինն է 2 ղրչ.: Ընկե-րութիւնը 1906 Սեպտ.ին բանակցութեան կը մտնէ Վանայ Սռաջնորդարանի հետ երկու կրթարան հաստատելու համար:

Ընկերութեան Դիւանը.

| | |
|---|---|
| Ա. Բժշկ. Շապոյեան | Ատենապետ |
| Յ. Փէհրիզեան | Ա. Ատենադպիր |
| Մ. Սոսոյեան | Բ. Ատենադպիր |

Գործ. Ժողովը.

| | |
|---|---|
| Ս. Խաչատուրեան | Ատենապետ |
| Միք. Նաթանեան | Ատենադպիր |
| Գ. Իսապուլեան | Գանձապահ |
| Ղ. Ճիզմէճեան | Հաշուակալ |
| Ա. Այվազեան | Հաւաքիչ |
| Վ. Մոմճեան | Խորհրդական |
| Ի. Տէր–Արթինեան | Խորհրդական |

(Ազատ Բեմ, Փետրուար 1906, Թ. 41):

2. ՊԱՇՏՊԱՆՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Պոլսոյ մէջ հիմնուած է Մկրտիչ Եպ. Խրիմեանէ՝ Վանի մէջ տպարան եւ գիչերօթիկ վարժարան բանալու համար [30]:

3. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Վարագ վանքի Սամուլը վերահաստատելու եւ դպրոցին ընթացքը կանոնաւորելու համար կը հիմնուի 1868ի սկիզբը [31]:

---

[30] Մասիս. էֆէմերի, 1873, Թ. 2408:
[31] Անդ, 1868, Թ. 756:

# ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԱՐԱՐՔ ԳԻՒՂ

### 1. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1797)

*Վանի* Արարք Գիւղի *պանդուխտներ* 1797*ին Պոլսոյ Եօրկանճիներու շուկային մէջ Ընկերութիւն մը կը հիմնեն* 5 *կամ* 10 *դրշ. անդամավճարով. գոյացած գումարով* 2 *սենեակ կը գնեն* Ալի փաշա *եւ* Լէպլէպիճի խաներու *մէջ. այս սենեակներու եկամուտով իրենց գիւղի եկեղեցւոյն համար զգեստ եւ անօթ կը գնեն եւ* 5—6000 *դրշ. ալ դրամ կը ղրկեն գիւղը՝ դպրոց մը շինելու համար. յետոյ Պոլսոյ մէջ դեռ* 2 *սենեակ ալ կը գնեն՝ վերջինը* ձամլը խանի *մէջ։ Ընկերութիւնը գիւղի եկեղեցւոյն նորոգութեան համար* 15,000 *դրշ. կը տրամադրէ։*

1874*ին տակաւին գոյութիւն ունէր այս Ընկերութիւնը, սակայն գիւղի մէջ եղող հակառակորդներ կ՚ուզեն յափշտակել Ընկերութեան ինչքը. «...կ՚ուզեն բռնութեամբ մեր* ութսուն տարուան նախնեաց ու հաստատած Ընկերութիւննիս ձեռքերնէս յափշտակել[32]...» *կը գրեն Պոլսոյ Արարքցիք։*

## ԻՇԽԱՆԻ ԳՈՄ ԳԻՒՂ

### 1. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Նախաձեռնարկ կ՚ըլլան Իշխանի Գոմցի Յովհաննէս Սահակեան եւ Մանուկ Կիւլե–*

---

[32] Նոր Դար, *Կ. Պ.* 1877, *Թ.* 2092։

*մէրեան, որոնք Պոլսոյ մէջ* 6000 *ղրշ. կը հանգանակեն եւ գիւղի մէջ դպրոց մը կը բանան, յետոյ Պոլիս վերադառնալով՝ Վանեցիներու օժանդակութեամբ Ընկերութիւնը կը հիմնեն՝ դպրոցին գոյութիւնը պահպանելու համար: Տնօրէն ժողովը կը կազմեն Մ. Գասպար, Մ. Մանուկ, Մ. Յովհաննէս, Մխիթար, Զաքար Տէր Խաչատուրեան, Մանուկ Մուտոյեան եւ Մկրտիչ Գաւոյեան*[33]:

## ԲԱՂԷՇ

### 1. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

1869 *Ապրիլ 28ին Ընկերութեան անդամները Բաղէշէն կը գրեն. «Ընկերութեանց* անդրանիկն *է* Հայրենասիրաց *խոնարհ եւ աղքատ* Ընկերութիւնս, *որ* վեց տարի յառաջ սկսած *եւ փոքրիկ դրամագլուխ մը ձեռք բերածին պէս* երկու տարի *յառաջ* Թաղի-գլուխ *ըսուած թաղն* իր ծախքով եւ իր խնամակալութեան ներքեւ տկար սեռին դպրոց մը բանալով, *յորում կ՚ուսանին այժմ յիսուն հատ աղջկունք.* աղքատ ու անկարող աղջկանց համար ալ հանդերձ. դասագիրք *նմանապէս Ընկերութեան սընտուկէն կը հոգացուի: Այս տարի քննութեան հանդէս կատարելով երբօր դարմանալի յառաջադիմութան մէջ տեսանք, տա-*

[33] Հայրենիք, Կ. Պ. 1876, Թ. 293:

զօրինակ ուրախութեամբ մեր սրտեր լեցուեցան եւ խնդակցութիւնիս հանդերձ շնորհակալութեամբ յայտնեցինք վարժապետ շնորհապարդ Տէր Պօղոս քահանային [1]» :

1867 Մարտ 30 թուականով թղթակից մը, Կարնէն, ըսելէ յետոյ թէ «Բաղէշ քաղաքը քանի տարիէ ի վեր... կը կեղեքուի իր շրջապատ բնաւոր քիւրտերէն»՝ զարմանք կը յայտնէ որ Բաղէշցիք Հայրենասիրաց Ընկերութեան «Ծախիք Թանգարան (Ընթերցարան) մը բացեր են [2]» : — Ընկերութեան վարչական անդամն է Յովհաննէս Յարութիւնեան Խէնչէրեան [3] :

## 2. ՂԵՒՈՆԴԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863—1864)

Հնութեան կարգով երկրորդը կը համարուի եւ կազմուած է Բաղէշ քաղաքի Էվվէլ Մէյտան թաղին մէջ: Ունեցեր է մեծերու համար կիրակնօրեայ եւ երեկոյեան դպրոց մը [4] : Այդ դասատուութիւնները անձամբ կ'ընեն Ընկերութեան Վարիչ երկու եղբայրներ՝ Մարտիրոս եւ Գրիգոր Մ. Վարդանեան Յովսէփեանց [5] :

---

1 Մասիս, Կ. Պ. 1869, Թ. 381 :
2 Մասիս փոքր, Կ. Պ. 1867, Թ. 28 :
3 Անդ, Թ. 102 :
4 Մասիս փոքր, 1869, Թ. 381 :
5 Մասիս, 1867, Թ. 821 :

### 3. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Հիմնուած է Բաղէշի* Ծապրկորու *Թաղին մէջ*, 1869 *Ապրիլէն* երկու տարի առաջ։ *Բացած է* մանչերու դպրոց մը, *ուր* 80 *աշակերտ կար* 1869*ին եւ «այս օրուան օրս տեղւոյս հինգ եկեղեցեաց դպրոցներէն եւս յառաջադիմութեան մէջ կը գերազանցէ*[6]»։

### 4. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՕՐԻՈՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Կազմուած է* 1867*ին ամառը։ Հիմնադիրներն են «ազգասէր արհեստաւորներ», որոնք «Թաղին առհասարակ որբ, աղքատիկ եւ հարուստ աղջկանց դաստիարակութեան համար վարժարան մ'ի վարձու բռնած եւ Սահրադեան Տէր Մովսէս ուսեալ քահանայն եւս դաստիարակ կարգած է անոնց, որք հասարակ ընթերցանութեան եւ գրելու վարժութեան մէջ արդէն իսկ մանչ տղաքներէն աւելի աշխոյժ եւ յաջողակութիւն կը ցուցնեն։ Ընկերութիւնս* աղքատիկ ու որբ աղջկանց ձրի դասագրքեր եւ հանդերձներ եւս կը շնորհէ[7]»։ — *Ընկերութիւնը մատադիր է Բաղէշի մէջ* 1868*ին* աղջկանց վարժարան մը շինել[8]։ 1869*ի սկիզբը ունէր* աղջկանց դպրոց մը, *ուր կը յաճախէին* 60*էն աւելի աղջիկներ. ուսուցիչն է* Տէր Մովսէս[9]։

---

6 Մասիս փոքր, 1869, *Թ*. 381։

7 Մասիս, 1867, *Թ*. 821։

8 *Անդ*։

9 Մասիս փոքր, 1869, *Թ*. 381։

5· ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Հաստատուած է* Փոսիկ — աղբիւր *Թաղին մէջ: Հիմնադիրներն են՝ Խաչմանուկ Վարդանեան եւ Յովհաննէս Գրիգորեան*, *որոնք* ընթերցարան *մը բացած են*[10]: 1867*ի վերջերը կամ* 1868*ի սկիզբը կը բանայ նաեւ* աղջկանց դպրոց *մը*[11]:

6· ԱՐՇԱԿՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Կազմուած է քաղաքին* Թարանչի *կոչուած Թաղամասին մէջ եւ բացած է* մանչերու դպրոց մը[12]:

7· ԴՊՐՈՑԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Թղթակից մը* 1867 *Հոկտ· 3ին Բաղէշէն կը գրէ·* «···Դպրոցասիրական Ընկերութեան *հաստատութիւնն առհասարակ արժանի պատիւ կ'ընծայէ մեր* Սալնոյ Ձորոյ *բարենախանձ հասարակութեան*, *որոյ արդեամբք քաղաքիս* չորս *Թաղից Ս· եկեղեցեաց եւ Ամլորդւոյ վանից ծոցեր գտնուած* արական հինգ դպրոցաց ամբողջ ծախսերը կը մատակարարին ու կը հոգացուին[13]»:

8· ԲԶՆՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867—1868)

*Հիմնուած է քաղաքին* Ամլորդւոյ *Թաղին մէջ*: 1869*ին* կիրակնօրեայ ընթերցարան *մ'ունէր*[14]:

---

10 Մասիս, 1867, *Թ*· 821:
11 Մասիս փոքր, *անդ*:
12 Մասիս փոքր, *անդ*:
13 Մասիս, 1867, *Թ*· 821:
14 Մասիս փոքր, *անդ*:

### 9. ԳՈՄԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՎԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867—1868)

*«Հայրենասիրաց Ընկերութեան» ճիւղն է: Ս. Աստուածածնայ վանքը քաղաքին եւ* Գումս *գիւղին մէջտեղն ըլլալով՝ Ընկերութիւնը ուզեր է* գիշերօթիկ վարժարան մը *բանալ* վանքին մէջ: *Սակայն վանքի վանահայր* Վարդան վարդապետը *ընդդիմացած ըլլալով՝ Ընկերութիւնը ջանացած է գոնէ նոյն թաղի եւ գիւղի տղոց համար* ցերեկեայ դպրոց *մը բանալ*[15]:

### 10. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Հիմնուած է Բաղչէի* Գումաց Սալանճոր գաւառի մէջ: *Հիմնադիրները* 40 *հոգի են: Նպատակն եղած է* երկսեռ աշակերտաց համար դպրոց մը բանալ: *Ընկերութիւնը կը յաջողի դպրոցը բանալ եւ կը կոչէ զայն* Ս. Աստուածածնի *անունով: Նպաստ եւ օգնութիւն ձեռք բերելու համար կը տպագրէ* 1, 2 *եւ* 5 *ղուրուշնոց տոմսակներ, որոնցմէ կ'ուղարկէ նաեւ Պոլիս: Ընկերութեան Գործադիր Յանձնաժողովի անդամն է* Խաչատուր Մամիկոնեան, *որուն մէկ թղթակցութենէն կը ստանանք այս տեղեկութիւնները:*

### 11. ՀԱՅԿԱԶԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—1869)

*Կը յիշուի* 1874*ին, երբ արդէն լուծուած է*[17]:

---

15 Մասիս փոքր, *անդ*:
16 Արարատ, *Կ. Պ.* 1869, *Թ.* 13:
17 Մասիս, 1874, *Թ.* 1584:

## 12. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Թղթակցութիւն մը Բաղէշէն* 1869 *Դեկտ.* 12 *թուականով՝ կ'իմացնէ թէ Ընկերութիւններ* միացած են. *թէ որո՞նք՝ չ'ըսեր: Այդ առթիւ կը տեղեկացնէ թէ կազմուած է ճիւղ մը Պոլսոյ* «Անձնուէր Ընկերութեան[18]»: — *Բաղէշցի Բարսեղ Հայկունի վարդապետեան մեծ վշտով կը տողէ* 1874*ին.* «*Անկից իբր* 4—5 *տարի յառաջ իմ հայրենեացս՝* Բաղիշոյ մէջ՝ Ընկերութիւնք, Թանգարանք, թաղական դպրոցք, *ազգասիրական եւ հայրենասիրական շարժմունք, յառաջդիմական գեղեցիկ տեսարան մը կը ներկայացընէին. ամեն անհատ գոգցես ելեքտրական մղում մի ունէր առ լոյս եւ յառաջադիմութիւն: Կիրակնօրեայ Ընթերցարանք լեցուն էին ամեն կարգի անձերով, երիտասարդութիւնը ջերմ զգացմամբ կը գործէր... Ամեն թաղերու անկիւնները բարոյականութեան դասեր կ'աւանդուէին... Ծերոց մրմունջներ՝ փառք եւ գոհութիւն կ'երգէին որ այսպիսի դարու մի հասան... իմ հայրենակցացս առաջին եռանդուն եւ գործունեայ ջանքն եւ անձնուիրութիւնն...* երբ այսօրեայ անտարբեր, թոյլ եւ մեղկ վիճակի հետ բաղդատեմ, ոչ միայն ինձ, այլ եւ ամեն զգայուն հայ անհատին վիշտ կը պատճառէ... *կը թողում յիշել Արշակունեանց, Վարդանանց, Ղեւոնդեանց,* Հայկազեանց եւ Անձնուէր Ընկե-

[18] Մասիս, 1870, *Թ.* 953:

բութիւնք, *յորոց ոմանք* 2 *եւ* ոմանք 4 *տարի շարունակելէն ետքը* կործանեցան...[19]»:

### 13. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

1878 *Նոյ.* 23*ին* «նորոգ հաստատեալ» *է եւ միակ յոյսն է Բաղէշի*, «*եթէ յարատեւութիւն գտնէ* այսպիսի աղմկալից ժամանակի մը մէջ...[20]»: 1879*ին կը բանայ* կիրակնօրեայ դպրոց մը «*ամեն կարգի արհեստաւոր ազգայնոց գրել եւ կարդալ նաեւ ուսում սորվեցնելու համար*»[21]:

### 14. ԿՐՕՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—1879)

*Կը յիշուի* 1879 *Յուլիսին*[22]: *Թղթակիցը կը շեշտէ*. «*Քաղաքիս մէջ ժողովրդական եւ Կրօնասիրական անուամբ երկու Ընկերութիւնք կան*, *որոց նպատակը գովելի է*, սակայն առնց դէմ արգելք յարուցանողները անպակաս են»[23]:

### 15. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Թղթակիցը կը գրէ Բաղէշէն*. «...*Աղաթօն էֆ քաղաքս եկաւ*, *վարժարանաց վիճակը քննելով՝ հարուստներն յորդորեց որ* կեդրոնական դպրոց մը բանան, *որով նոքա տարօրինակ բաղձանքի գալով՝* «Վարդա-

---

[19] Մասիս, 1874, *Թ.* 1584:
[20] Լրագիր, *Կ. Պ.* 1878, *Թ.* 872:
[21] Հայրենիք, *Կ. Պ.* 1879, *Թ.* 566:
[22] Հայրենիք, 1879, *Թ.* 543:
[23] *Անդ*:

նանց» *անուն* Ընկերութիւն *մը հիմնեցին բաժանորդագրութիւնը* 25 *ղրուշ ողջ դրամ լինելով. ամէն կարգի ազգայինք սիրով մանակցեցան. բաժանորդաց թիւը* 400*ի հասաւ. Դպրոցական մանկտին այս շարժումէն ոգեւորեալ բերկրեցաւ: Եւ ահա քանի մը շահու խնդիր երեւան ելլելով, այս ազնիւ գործը* խափանեցաւ...»[24]:

16. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ-ԱՐԵՒԵԼԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Պոլսոյ համանուն Ընկերութեան* ճիւղ մը *կը հիմնեն Բաղէշի մէջ* 1879 *աշնան՝ քաջալերուելով Պոլսոյ Ընկերութեան Բաղէշի մէջ բացած* «կեդրոնական դպրոց» *ի արդիւնքէն*[25]: — *Հաւանօրէն այս Ընկերութիւնը կ՚ակնարկէ «Մկօ» կոչելով* «Դպրոցասիրաց Ընկերութիւն», *որուն նպատակն եղած է «դպրոցների ծախսը հոգալ*[26]»:

17. ՀԱՍԱՐԱԿԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Մելքոն Վ. Թաջբերունի կը գրէ Բաղէշէն. «...քաղաքիս արհեստաւոր ազգայինք ...ընդ նախագահութեամբ Սողոմոնեան պերճիմաստ Գրիգոր պատուելւոյ* Հասարակաց *անուն* Ընկերութիւն *մը կազմեցին, որոյ նպատակն է* Աղքատին օգնել ի նեղ ժամա-

24 *Անդ*:
25 Հայրենիք, 1879, *Թ*. 573:
26 Արձագանք, *Թիֆլիս* 1882, *էջ* 545:

նակիս… ամսական չորս արծաթ մէճիտ բաշխել աղքատաց… քաղաքական եւ կրօնական եղծմանց դէմ բողոքել [27]»․

*Կը բանայ դպրոց մը* Կարմիրակ եկեղեցւոյ քով աղքատ տղաքներու համար [28]։

### 18․ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1895)

*Թղթակից մը* 1895 *Հոկտ․* 1 *Թուականով կը գրէ․ «Բաղէշի նոր սերունդին մէջ կազմուած* Ընթերցասիրաց Ընկերութիւնը *ջանքեր կ՚ընէ որպէս զի իր կազմակերպելիք* ընթերցարանը ու կիրակնօրեայ դասախօսութիւնները յաճախելի *ըլլան նաեւ բողոքականներու»* [29]։ *Հաւանօրէն* 1895*ի* առաջին *ամիսներուն հիմնուած է*։

### 19․ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1895)

*Պոլսոյ* Հայրենիքին *կը գրեն Բաղէշէն*․ «Հինգ խորան *եկեղեցիին քահանայ Տէր Գէորգ Մարտիրոսեանի յորդորանքով կիները կազմեցին կրթական* «Հայուհեաց Ընկերութիւն» *մը, որուն Ատենապետ ընտրուեցաւ* Տիկ․ Իսկուհի Իւթիւճեան, *քաղաքիս Թաղապետութեան կողմէ կարգուած մանկաբարձուհին։ Մուշէն վարժուհի մը ուզած են, որուն հասնելուն պիտի բացուի*

---

27 Հայրենիք, 1880, *Թ*․ 595։

28 *Անդ*, *Թ*․ 597։

29 Հայրենիք, 1895, *Թ*․ 1313։

աղջկանց վարժարան մը[30]»: Ընկերութեան շաբաթական բաժնեվճարն էր 10 փարա[31]:

20. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է 1910 Փետրուար 12ին 22 բաղէշցիներէ: Նպատակն է, «Քաղաքիս դպրոցական անկերպարան եւ արգահատելի վիճակը բարելաւել»: Կ'ընտրուի 9 անձէ կազմուած առժամեայ Վարիչ Մարմին մը: Գոլարնակ Բաղէշցիներ խոստացած էին որ եթէ Բաղէշի մէջ Ընկերութիւնը կազմուի՝ իրենք տարեկան 30 լիրա պիտի տրամադրեն Ընկերութեան[32]:

21. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Կը յիշուի 1910ին լոկ անունով[33]:

22. ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է Բաղէշի Կեդրոնական դպրոցի բարձրագոյն աշակերտներէն՝ նպատակ ունենալով. «Զարկ տալ աշակերտներու ինքնազարգացման, արծարծել ընթերցասիրութեան ոգին եւ դպրոցի չքաւոր աշակերտներուն նիւթական օժանդակութիւն հասցնել: Կը բաժանորդագրուին Հասկերին. կ'ապսպրեն մանկական — պատանեկան գրքեր. 50 ղուրուշ հաւաքած են հայ բանտարկեալներուն համար[34]:

---

30 Անդ, Թ. 1309:
31 Անդ, Թ. 1313:
32 Յառաջ, Կարին 1910, Թ. 15:
33 Ազատամարտ, Կ. Պ. 1910, Թ. 447:
34 Անդ, 1911, Թ. 513:

### 23. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1910)

*Կազմուած է* Փրէզնոյի *մէջ, տարին անծանօթ մեզ, կը յիշուի* 1910*ին*[35]:

### 24. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1913)

*Այս ալ* Նիւ Եորքի *մէջ կազմուած է, գուցէ մէկ եւ միեւնոյն Ընկերութեան ճիւղերն են: Սարքած է հանդէս եւ ունեցած* 155 *դոլար հասոյթ*[36]:

### 25. ՏԱՐՕՆ–ՍԱԼՆՈՅ ՋՈՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Բաղէշցի եւ Մշեցի Հայերը իրենց գիւղացիներով Պոլսոյ մէջ* 1918 *Դեկտ.ին կը կազմեն միացեալ Ընկերութիւն մը՝* «Տարօն–Սալնոյ Ջոր Միութիւն» *անունով՝ նպատակ ունենալով* որբերն ու աքսորեալները պաշտպանել[37]: *Միութեան առաջին Ընդհ. Ժողովը տեղի կ'ունենայ* 1918 *Դեկտ.* 29*ին*[38]: *Իր* Դիւանը *կը կազմէին.*

| | |
|---|---|
| *Հ. Անտոն Վ. Ջնտոյեան* | *Նախագահ* |
| *Տօքթ. Բ. Մանուկլեան* | *Ա. Ատենապետ* |
| *Կ. Բիւրքճեան* | *Բ. Ատենապետ* |
| *Հր. Երմոյեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Պ. Ճանեան* | *Բ. Ատենադպիր* |

---

[35] Ազատամարտ, *Կ. Պ.* 1910, *Թ.* 447:
[36] *Անդ*, 1913, *Թ.* 5334:
[37] Ժամանակ, 1918, *Թ.* 3383:
[38] *Անդ*, *Թ.* 3398:

Գործ. Ժողով

| | |
|---|---|
| Կ. Վրդ. Պատուհասեան | Ա. Ատենապետ |
| Մանուկ Ասլանեան | Բ. Ատենապետ |
| Պօղոս Հաճեան | Ա. Ատենադպիր |
| Վարդան Պետոյեան | Բ. Ատենադպիր |
| Սարգիս Պաէյեան | Հաշուակալ |
| Պ. Բենիամին Պետրոսեան | Անդամ |
| Հ. Արսէն Վրդ. Ջնտոյեան | Անդամ |
| Տիկին Աղաւնի Ադամեան | Անդամ [39]: |

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ
## ԽԻԶԱՆ ԳԱՒԱՌ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Հիմնուած է Պոլիս, Գասըմ փաշա*, 1877 *Մարտ* 1*ին: Նպատակն է*. «խիզանի գաւառի մէջ երկսեռ վարժարան մը բանալ եւ եթէ նիւթական վիճակը ներէ, խիզանի գիւղերուն մէջ ալ նախակրթարաններ հաստատել»: *Ընկերութիւնը ունի իր Կանոնագիրը բաղկացած* 20 *Յօդուածներէ, հրատարակուած* Հայրենիքի *մէջ*[40]: *Ընկերութեան բաժնեգինն է շաբաթական* 20 *փարա* (*Յօդ*. 3). *Ընկերութիւնը ունի Ընդհ. եւ Գործադիր Ժողով* (*Յօդ*. 10). *առաջինը կը կազմեն բոլոր անդամները, իսկ երկրորդը* 15 *անձեր* (*Յօդ*. 11 *եւ* 12):

---

[39] *Տեղեկագիր Հայրենակցական Միութեանց*, *Կ. Պ*. 1921, *էջ* 15:

[40] 1877, *Թ*. 328:

Ընկերութիւնը ժիր գործունէութիւն ունեցած է իր սկզբնաւորութեան մէջ. արդէն 1878ին Հայրենիք կը դրկէ Պաղտասար Երէցեան եւ 1878 Դեկտ. 1ին կը բանայ իր առաջին դպրոցը Խակեւ գիւղին մէջ, որ կ'ունենայ 55 աշակերտ՝ Խակեւէն, Խարխոցէն եւ Պռօշէնցէն, ինչպէս նաեւ քանի մը գիշերօթիկ Սպարկերտէն[41]: Ընկերութիւնը կը ջանայ նաեւ իր դպրոցի աշակերտներուն մէկմէկ հագուստ շինել[42]: Այդ առաջին ծախքերն ընելէ վերջ՝ Ընկերութիւնը 1878ին ունէր 3178 դրշ. պատրաստ դրամ[43]: Իր նպատակին հասնելու համար Ընկերութիւնը թատերական ներկայացումներ կը սարքէ[44]: Ընդհ. Ժողովի Ատենապետն էր Խ. Յ. Խարաճ, իսկ Գործ. Ժողովի Ատենապետը՝ Ա. Թրնկըրեան, Ատենադպիրը՝ Վ. Յ. Մարգարեան:

Ընկերութիւնը իր երկրորդ դպրոցը կը բանայ Խիզան գաւառի Եղեգիս գիւղին մէջ 1879ին, որ 1880ին վերջը ունէր 150 աշակերտ[45]: Վանի մէջ Ընկերութիւնը ունէր օժանդակ ճիւղ մը[46]: 1882 Յունիս 1ին կը բանայ երրորդ դպրոցը Հայոց Ձորի Անգղ գիւղին մէջ, որ Վանէն 4 ժամ հեռու է[47]:

41 Մասիս, 1879, Թ. 2454:
42 Անդ, Թ. 2498:
43 Մասիս, 1878, Թ. 2194:
44 Անդ՝ 1879, Թ. 2260:
45 Թէրճէմանը Էֆքեար, Կ. Պ. 1881, Թ. 1023:
46 Մասիս, 1882, Թ. 3220:
47 Անդ, Թ. 3235:

*Ըստ* Մասիսի *տեղեկատուին*[48] *Ընկերութիւնը* չորրորդ *դպրոց մ'ալ բացած է* Խարխոց գիւղին *մէջ*: — 1883էն *վերջ Ընկերութիւնը կը կորսնցնէ իր աշխոյժը*:

2. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1916)

*Կազմած են* Նիւ Եօրկաբնակ *Խնդանցի-ներ*[49]:

## ԴՈՒԼԹԻԿ (ԽՈՒԼԹԻԿ) ԳԻՒՂ

1. ԵՂԲԱՅՐԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Կազմուած է* 1884*ի առաջին ամիսնե-րուն* Պոլսոյ *մէջ*: *Իր կանոնագիրը հաստա-տել կու տայ* 1884 *Ապրիլին*: *Նպատակն եղած է հայրենի գիւղին մէջ* դպրոց մը բանալ[50]:

2. «ԱՆԴՐԱՆԻԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908 *Օգոստ*. 3*ին* Պոլիս: *Իրենց նպատակն է*. «*Թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս զարգացնել գիւղի մէջ գտնուած վարժարանները եւ եկեղեցիները*[51]:

3. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած կ'երեւայ* 1909*ի սկիզբները*:

---

48 Մասիս, 1883, *Թ*. 2442:
49 Արարատ, *Էջմիածին* 1916, *էջ* 181:
50 Փունջ, *Կ*. *Պ*. 1884, *Թ*. 1886:
51 Մանզումէի Էֆքեար, 1908, *Թ*. 2195:

Ազատամարտ[52] 1909 *Նոյեմբերին կը գրէ.* «*Պոլիս բնակող Խոլթիկ գիւղացիք իրենց մէջ* Կրթասիրական Միութիւն *մը կազմե-լով եւ փոքրիկ ամսավճարներ տալով՝ տա-րեկան կարեւոր գումար մը կը ղրկեն* իրենց տեղի դպրոցին» : — *Ընկերութեան անունն է* «Կրթասիրաց Ընկերութիւն», *որ* 1918*ին կը վերակազմուի* այս անունով, *կ'ունենայ* 50 *անդամ, Գործ. Մարմինը կը կազմեն՝ Մի-սաք Պաղտասարեան, Գրիգոր Երէցեան եւ Պետրոս Ճանիկեան*[53] :

4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Հաստատուած է* Նիւ Եորք*ի մէջ : Դիւա-նին անդամ էր*, 1955*ին*, *Լեւոն Սէֆէրեան : Կը ջանար պատրաստել Յիշատակարան Գիրք մը Խոլթիկի մասին :*

## ՌՆՏՈՒԱՆ

1. ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Հիմնուած է* 1885 *Հոկտ.ին : Հիմնադիրն է* Կարապետ վրդ. Մալխասեան : *Կը նպաստէ Վարժարանին*[54] :

---

[52] 1909, *Թ.* 125 :

[53] Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ.* 628 :

[54] Մասիս, 1886, *էջ* 951 :

## ՄՈՒՇ (Տարօն–Տուրուբերան)

### 1. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ (1853—1854)

*Պոլսոյ* Մասիս 1857 *Յունուար* 3 *թուականով կը գրէ.* «*Մշու* Ս. Կարապետի վանքին մէջ չորս տարի *ձրի վարժապետութիւն ընող արժանապատիւ Տ. Մամբրէ վարդապետը*... Մուշ եղած ժամանակը... *քաղաքին մէջ յանուն* Սրբոց թարգմանչաց *Ընկերութիւն մը կազմեր էր եւ* դպրոց մը բացեր. *ուր կանոնաւոր հայկաբանութեան դասատուութիւն կ'ըլլայ* մինչեւ հիմայ» (Մասիս, *կ. Պ.* 1857, *թ.* 258), *այսինքն՝* 1857 *Յունուար*:

*Ընկերութեան հիմնումի թուականը կը թուի թէ* 1853—1854 *ըլլալու է*: — *Յաջորդ նոյնանուն Ընկերութիւնը կապ չունի անոր հետ*:

### 2. ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

*Մուշի այս Ընկերութիւնը հիմնուած է* 1856 *Յունիս–Յուլիսին*: *Հիմնադիրն է* Վարդան Մամիկոնեան՝ «*Մուշ գաւառի ազգ. գործակատար*», *որ* Երկոտասան Առաքելոց վանքին *վարժարանը բարեկարգելու եւ անոր նիւթական եկամուտ մը ապահովելու համար կը հիմնէ* «Սրբոց թարգմանչաց Ընկերութիւնը», *որուն կը գրուին անմիջապէս* 65 *անդամ*: *Քանի չափ աշակերտ կ'ընտրէ*

*վերոյիշեալ անձը՝ վարժարանին մէջ կըր-թուելու համար* (Մասիս, 1856, *թ.* 237):

3. ԽՈՐԵՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1863)

*Հիմնումի տարին անծանօթ է: Կը յի-շուի առաջին անգամ* 1863 *Մայիսին «Տարօնոյ Արծուիկ»ի մէջ* (Արծուիկ Տարօնոյ, *Մուշ* 1863, *թ.* 4, *էջ* 15) *եւ կը թուի թէ շատ* հին չէ, *զի Սրուանձտեանց (թերթին խմբագիրը) կը շեշտէ թէ* «Այսօր *Մշոյ մէջ*... Ընկերութիւններ կան՝ խորէնեան ընկերութիւն...»:

*Ընկերութիւնս իր «յատուկ դպրոցն» — հաւանօրէն «Խորենեան» — ունեցած է, զոր իր միջոցներով կը «խնամակալէր»* (Արծուիկ Տարօնոյ, *անդ* 1865, *էջ* 54):

4. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1863)

«Արծուիկ Տարօնոյ» (1863, *էջ* 15) *կը յիշէ Ընկերութիւնս լոկ անունով:*

5. ՄՈՒՇԵՂԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1863)

*Հաւանօրէն* Վերին թաղի *«Մուշեղեան» վարժարանի սաները հիմնած են Ընկերու-թիւնս. այդ պարագային շատ հին ըլլալու է վարժարանի բացումին թուականը: Կը յի-շուի* 1863*ին* (Արծուիկ Տարօնոյ, *անդ*):

6. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Հաւանօրէն* դադրած էին *հին «Սուրբ Թարգմանչաց Ընկերութիւնները»* 1863*ին*,

երբ կը հիմնուի «Թարգմանչաց Ընկերութիւն»ը (Արծուիկ Տարօնոյ, անդ)։

Այս վերջին երեք ընկերութիւնները պաշտպանն էին Մուշ քաղաքի զանազան թաղերու դպրոցներուն (Արծուիկ Տարօնոյ, 1863, էջ 16)։

## 7. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Հիմնուած է 1864 Յունուար 9ին (Մասիս, 1872, Թ. 1204)։ Հիմնադիրներն են Մուշի վերին թաղի երիտասարդները։ Ընկերութեանս մասին խօսած է «Արծուիկ Տարօնոյ» իր 1865 տարւոյ թիւ 37ին մէջ (Հմմտ. Արծուիկ Տարօնոյ, 1865, էջ 54), որ Վիեննայի հաւաքածոյին մէջ կը պակսի։ Թերթը կը գրէ որ «Բարեսիրաց Ընկերութիւն». այս անդրանիկ կամ մայր ընկերութիւնն է Մշոյ։ Սա եղած է առիթ եւ բարենախանձ օրինակ Մշոյ հայ հասարակութեան» (Արծուիկ Տարօնոյ, 1865, էջ 54)։ «Անդրանիկ» կամ «մայր» ընկերութիւն կոչուելուն պատճառն է իր ժամանակին առաջնորդող դեր խաղալուն. զի իրմէ առաջ այնքան ընկերութիւններ գոյութիւն ունեցած են։

1872ին իր 8ամեակը կը տօնէ աննախընթաց հանդիսութեամբ (Մասիս 1872, թիւ 1204)։ 1879ին կը վերակազմուի։ Կը մտադրէ բանալ վարժարան մը։ Գեղամ Տէր Կարապետեան կը խնդակցի ընկերութեան աշ-

խուժայումին վրայ եւ կը մաղթէ որ ուրի։ Ընկերութիւններ ալ վերակազմուին (Հայրենիք, Կ. Պ. 1879, Թ. 549)։ Ընդհ. Ժողովի Դիւանը կը կազմէին.

* Թադէոս Աստովմեան, Ատենապետ
  Բենիամին Ա. Սէրունի, Ատենադպիր

Ընկերութեան բարեբարձերէն կը յիշուին՝ Յակոբ Տիրացուեան եւ Յակոբ Ծերունեան։ 1879ին Սեմալ Գիւղին մէջ դպրոց մը կը բանայ (Մասիս, 1879, Թ. 2498, 1880, Թ. 2555)։

1880 Դեկտ. 25ին կը միանայ Խորենեան եւ Ուսումնասիրաց Ընկերութիւններու հետ՝ կազմելով նոր Ընկերութիւն մը, ինչպէս պիտի տեսնենք վարը։

## Ց. ԽՈՐԵՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—1865)

Հիմնուած է Մուշի Զորդյ թաղի մէջ եւ տարբեր է նախորդ «Խորենեան»էն (Տե՛ս Արծուիկ Տարօնոյ, 1865, էջ 54)։ — Կը ջանային կազմել նաեւ «Խորենեան Ընթերցարան» մը (Արծուիկ Տարօնոյ, անդ, էջ 56)։ — Տրապիզոնցի Սանփան Յակոբեան Հայրենիքի մշտական բաժանորդութիւնը կը նուիրէ Ընկերութեան (Հայրենիք, 1871, թիւ 49)։

Ընկերութիւնը 1872ին ունի իւրանուն դպրոց մը (Մասիս, 1872, Թ. 1204)։

9· ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—1865)

*Հիմնադիրներն են Մուշի* Զիկրաշինութաղեցիները *եւ տարբեր է նախորդէն* (Արծուիկ Տարօնոյ, 1865, *էջ* 54)։

10· ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—1865)

*Հիմնուած է Մուշ քաղաքի* Վերին թաղի *մէջ*։ *Իր «գլխաւոր անդամ, յորդորիչ եւ* կանոնագիրն» *է* Տէր Յակոբ քահ· Թէշիշեան (Արծուիկ Տ·, *անդ*, *էջ* 54—55)։

*Այս վերջին* 3 *Ընկերութիւններու մասին կը գրէ օրուան թերթը· «Այս ամէն Ընկերութիւններ* յատուկ յատուկ սենեակ ունին, ուր կը ժողովին, նիստ կ'ընեն, յատուկ տօմար, տօմարակալ, արկղ, գանձապետ, ժողով, ատենապետ ունին որոշած։ Տուրքեր շաբաթական են, բաժին բաժին որոշած, շաբաթ մինչեւ 10 փարա տուօղն ալ կրնայ ընկեր գրուիլ։ *Նպատակնին է՝ ազգի օգտին մատակարարել որ՝* դպրոցին գիրք եւ ուրիշ պէտքեր գնել, *որ՝* աղքատներ հագցնել, անճար պարտապաններ ազատել··· *իւրաքանչիւր Ընկերութեան* 40, 70, 90 *եւ աւելի բաժանորդներ ունի···»* (Արծուիկ Տարօնոյ, 1865, *էջ* 54)։

11· ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Մուշէն կը գրեն· «Մուշ Աւանի»* Սուրբ Մարիանէի *Թաղեցի ազգասէր երիտասարդներն ալ* Հայրենասիրաց Ընկերութիւն *մը*

*կազմած են՝* հոգ տանիլ նո՛յն թաղի դպրատան, դարմանել աղքատ ու անապաւէն տղաքներ եւ ձրի գրքեր շնորհել աղքատ մանկանց» (Արծուիկ Տարօնոյ, 1865, *էջ* 56)։

12. ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1869)

*Հիմնադրութեան թուրին անծանօթ է. կը յիշուի* 1869 *Հոկտ.ին։ Հիմնադիրն է Մուշ դաղթած Ակնցի* Միսաք Թիմուրեանց (Մասիս, 1873, *Թ.* 1403)։

13. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Պոլսոյ *պանդուխտ Մշեցիները հիմնած են* 1870*ին*։ 1875*ին կը շինէ ընկերութեամբ Խալիտ Աղայի* խան մը։ 10% *շահը կը նուիրէ վարժարանի մը։ Ամէն տարի խնջոյք մը կու տայ իր անդամներուն*։ 1882*ին դեռ կանգուն էր* (Հայրենիք, 1874, *Թ.* 223։ — Լոյս, *Կ. Պոլիս* 1882, *Թ.* 254)։

14. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԴՊՐՈՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Կազմուած է* 1873*ի դարնան վերջերը։ Տնօրէն ժողովը կը կազմէին.*

*Պետրոս Ասաքելեան*
*Գասպար Տէր Դաւիթեան*
*Յովհաննէս Ամատունի*
*Կարապետ Փօթիկեան*

*Ընկերութեան նպատակն է.* Ս. Թարգ-

մանչաց Կեդրոնական Ուսումնարան մը հիմնել, *որպէս զի Մուշի եւ գիւղերու ուսումնատենչ տղոց բարձրագոյն կրթութիւն մը տայ* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1873, *թիւ* 2266)։

15. «ՏԱՐՕՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* Պոլիս *նժդեհ Մշեցիներէ՝ նպատակ ունենալով* «Տարօնոյ դաստիարակութիւնն ընդհանրացնել՝ *գործակցութեամբ Դպրոցասիրաց – Արեւելեանի*» (Թերճեմանը էֆքեար, *Կ. Պ.* 1880, *Թ.* 792)։ *Հիմնումի թուականը հաւանօրէն* 1879 *Նոյեմբեր–Դեկտեմբերն է, զի կը յիշուի* 1880 *Յունուար* 10*ին եւ արդէն ունի իր* Կանոնագիրը։ *Վարչական Մարմինը կը կազմեն.*

*Ատենապետ՝ Անտոն Ռ. Խաչուկեանց*

*Ատենադպիր՝ Նիկողայոս Միլլէթպաշեան* (Մասիս, 1880, *Թ.* 2527։ — *Տե՛ս նաեւ Թ.* 2582)։ *Ընկերութիւնը ունեցած է դրօշարան մը* (Լոյս, 1882, *Թ.* 224)։

16. ՆՈՐ–ՀԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնադիրն է* Աստուածատուր (Հայրենիք, 1879, *Թ.* 585։ — Մասիս, 1880, *թիւ* 2555)։

17. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած էր արդէն* 1879 *Նոյեմբերին* (Հայրենիք, 1880, *Թ.* 585)։

18. ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնադիրներն են՝* Յովհաննէս, Մկրտիչ եւ Յակոբ (Մասիս, 1880, *Թ.* 2555)։

19. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կը յիշուին միայն հիմնադիրները.* — Ղազար եւ Պօղոս (Մասիս, *անդ*)։

20. ԻՐԱԽԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կը յիշուի լոկ հիմնադիրը՝* Յարութիւն (Մասիս, *անդ*)։

21. ՏԱՐՕՆՈՅ ՀԱՅՈՑ ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ (1880)

1880 *Դեկտ.* 25*ին Մուշի* Բարեսիրաց, Խորհենեան *եւ* Ուսումնասիրաց *Ընկերութիւնները միանալով՝ կը կազմեն «Տարօնոյ Հայոց Միացեալ Ընկերութիւնք»ը, որուն Տնօրէն ժողովը կը կազմեն.*

*Մ. Յ. Սարգսեան, Ատենապետ*

*Կարապետ Պ. Թերզեան, Ատենադպիր* (Մասիս, 1881, *Թ.* 2862, 2874)։

22. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Մուշի Առաջնորդ Ներսէս Խարախանեանի յորդորներով գաղթական Մշեցիներ* Մանիսայի *մէջ* 1908*ին կը հիմնեն Ընկերութիւն մը՝ ի նպաստ* Ս. Կարապետի *վանքի* Որբանոցին։ *Դժբախտաբար Ընկերութեան*

անունը *չի յիշուիր* (Ազատամարտ, *Կ. Պ., Թիւ* 213)։

### 23. ՏԱՐՕՆՈՅ ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնումը եղած է Սահմանադրութեան հռչակումէն քիչ յետոյ, իբր* 1908 *Դեկտեմբերին*։ 1909 *Փետր. 5ին կրնայ իր առաջին ներկայացումը տալ Դուրեանի «Արտաշէս Ա.»ը բեմ հանելով։ Հետզհետէ կու տայ կանոնաւոր ներկայացումներ՝ դժուարին թատերախաղերով ալ։ Լաւ կազմակերպուած վարչութիւն ունեցած է* (Յառաջ, *Կարին* 1910, *Թ.* 94)։

### 24. ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է Ամերիկա՝* իսկ Պրովիդենս *քաղաքի մէջ՝ նպատակ ունենալով* Մամուլ մը հիմնել Տարօնի մէջ (*Կ. Սասունի, Պատմութիւն Տարօն Աշխարհի. Պէյրութ* 1957, *էջ* 1082, 1085)։

### 25. ՏԱՐՕՆ-ՍԱԼՆՈՋՈՐԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* Պոլիս 1909*ի* գարնան։ *Հիմնադիրներն են. Գեղամ Տէր Կարապետեան, Մխիթար Շեխիկեան, Արտաշէս Ֆերահեան եւ Կարօ Սասունի*։ Կանոնագիրը *կազմած է Գեղամ Տէր Կարապետեան, զոր չենք տեսած։ Միութիւնը օգնած է երկրի կարիքնե-*

րուն եւ ունեցած ճիւղեր (Կ. Սասունի, անդ, էջ 1084—1085)։

Ինչպէս կը տեսնուի՝ Միութեանս հիմնադիրները Մշեցի-Տարօնցիներ են, հետեւաբար Միութիւնս որեւէ կապ չունի նոյնանուն Միութեան հետ, որ կը կազմուի 1918ին Մշեցիներէ եւ Բաղէշցիներէ՝ բոլորովին տարբեր նպատակով։

Միութիւնս տեւած է մինչեւ 1914։

### 26. ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմած են 25—30 երիտասարդներ Մուշի մէջ։ Ունեցած են Ծրագիր-Կանոնագիր մ'ալ, զոր առիթ չենք ունեցած տեսնելու (Տե՛ս Ազատամարտ, 1910, Թ. 221)։

### 27. ՏԱՐՕՆԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Փրէզնոյի մէջ Մշեցի գաղթականներ հիմնած են 1910ին «Տարօնի Կրթասիրաց Ընկերութիւն»՝ նպատակ ունենալով Մուշի մէջ բարձրագոյն վարժարան մը բանալ (Ժամանակ, Կ. Պ. 1913, Թ. 1615)։

### 28. ՍԱՀԱԿ-ՄԵՍՐՈՊ ԿՐԹ. ԳԻՒՂ. ՄԻՈՒԹԻՒՆ (1913—1914)

Հաւանօրէն 1913ի վերջը կամ 1914ի սկիզբը կազմուած է Տուրուբերանի «Սահակ-Մեսրոպեան Կրթական Գիւղատնտեսական Միութիւնը», որ 1914 Մարտին կը ջանար իր

կանոնագիրը *հաստատել տալ* (*Ժամանակ*, 1914, *թ.* 1744)։

29. ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (...1917)

*Կազմուած է* Տփղիսի *մէջ պանդուխտ Մշեցիներէ եւ օգտակար եղած է Թրքահայ փախստականներուն* (Հայաստան, *Թիֆլիս* 1917, *թ.* 61)։

30. «ՍԱՍՈՒՆ» ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1917)

*Տփղիսի մէջ կազմուած է «Տարօն-Տուրուբերան»ի կից*։ 1917*ին իր Վարչական կազմն էր*.

*Շ. Ամիրեան*, *Նախագահուհի*

*Ս. Մելիք-Սարգսեան*, *Քարտուղարուհի*
(Հայաստան, *անդ*)։

31. «ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ» ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1917)

*Հիմնուած է* Բաքուում *«ի նպաստ Թրքահայ փախստական ժողովրդի Փիզիքական գոյութեան»* (Հայաստան, *անդ*)։

32. ՏԱՐՕՆ-ՍԱՍՆՈՅ ՋՈՐ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Հիմնուած է* 1918*ի զինադադարէն անմիջապէս վերջ Պոլսոյ մէջ* Մուշի *եւ* Բաղէշի *շրջաններու վերապրողներու միջեւ կապ հաստատելու, անմիջական պահանջներ գո–*

հայնելու, իրար օգնելու եւ հայրենիքի վերաշինութեան համար։ Կ՚ունենայ չուտով Տրագիր-Կանոնագիր մը 19 Յօդուածներէ բաղկացած եւ 1919ին Պոլիս տպուած։

33. ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918—1919)

Պոլսոյ մէջ կազմուած է Մշեցիներէ՝ մեծ կազմակերպութեամբ բոլոր Մշեցիները իրար զօդելու, ամէն կերպով իրար օգնելու համար։ Միութիւնը տուած է իր անդամներուն «ինքնութեան վկայագիր» մը, ինչպէս կը ցուցնէ 1922ին տպուած տետր մը։ Այս Միութիւնը ունեցած է ամէն կողմը իր ճիւղերը։ Պարիսի մէջ եղածը կազմուած է 1925ին՝ ունենալով Տրագիր-Կանոնագիր եւ ուրիշ քաղաքներու մէջ իր ճիւղերը (Տե՛ս Յառաջ, Փարիզ 1952, Թ. 2253)։

Այս անունով Ամերիկայի մէջ կազմուածը 1917էն է Մոնտանա նահանգի Գրանիտ Սիտի քաղաքի մէջ սկիզբ առած։ Հիմնադիրներն են Արիս Տէր Իսրայէլեան, Հայկ Մալոյեան, Հրանդ Փարիզեան։ Միութիւնը հետզհետէ կ՚ուռճանայ, կ՚աճի ու կը զարգանայ եւ շատ մը ճիւղեր կ՚արձակէ։ Իր գործունէութեան պսակը կ՚ըլլայ լոյս ընծայելով հոյակապ Հատոր մը. — Պատմութիւն Տարօնի Աշխարհի, Պէյրութ 1957, ուր (էջ 1081—1125) ընդարձակ խօսուած է Միութեան մասին։

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ՋՐԻԿ ԳԻՒՂ

#### 1. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

1863 *Մայիսին «նոր կազմվեր» է Ընկերութիւնս՝ իր «Ջանքն ու նպատակն» ըլլալով «Վարժարան հաստատել գիւղին մէջ»* (Արծուիկ Տարօնոյ, *Մուշ*, 1863, *Թ*. 4)։

*Ընկերութիւնը կրցեր է շուտով բանալ իր դպրոցը* (*Անդ*, 1865, *Թ*. 38)։

### ԿԱՐՍ ԳԻՒՂ

#### 1. ՂԵՒՈՆԴԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Ճիւղ մըն է* Բաղէշի *մէջ եղած համանուն Ընկերութեան* (Մանզ. էփքեար, 1870, *Թ*. 1452)։

### ՎԱՐԴԵՆԻՍ ԳԻՒՂ

#### 1. ՂԵՒՈՆԴԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Կազմուած է նպատակ ունենալով դպրոց մը բանալ* (Մանզ. էփ. 1870, *Թ*. 1452)։

### ԱՐԴՕՆՔ ԳԻՒՂ

#### 1. ՂԵՒՈՆԴԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է քաջալերութեամբ Բաղէշի համանուն Ընկերութեան։ Նպատակն եղած է դպրոց մը բանալ Գիւղին մէջ* (*Անդ*)։

## ՃԻԱՐԷԹ ԳԻՒՂ

### 1. ՎԱՀԱՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* 1879 *Փետրուարին։ Հիմնադիրն է* Պետրոս Սիւտճեան, *որ ուսուցիչ կը վարձէ դպրոցին համար Զաքար Տ. Ղազարեան եւ տեսուչ՝ Գասպար Տ. Դաւիթեան* (Հայրենիք, 1879, *թ.* 509, 1880, *թ.* 585)։

## ՂԷՅՊԵԱՆ ԳԻՒՂ

### 1. ՄՈՒՇԵՂԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կը յիշուի* 1879 *Նոյեմբերին* (Հայրենիք, 1880, *թ.* 585)։

## ԿՈՒՐԱՒՈՒ ԳԻՒՂ

### 1. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կը յիշուի* 1879 *Նոյեմբերին եւ արդէն բացած է դպրոց մը* (Հայրենիք, *անդ*)։

## ԽԱՍԳԻՒՂ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

*Հիմնած են* Ամերիկաբնակ *Խասգիւղցիները եւ* 12 *տարի հոգացած են իրենց Գիւղի դպրոցին ծախքերը, ուր կ'ուսանին* 200 *աշակերտներ։* 1911*ին ունէր* 200 *անգլիական՝ դպրոցի նոր շէնք մը շինելու համար* (Ազատամարտ, 1911, *թ.* 678)։

## ՊՈՒԼԱՆԸՔ–ՀԱՐՔ ԳԱՒԱՌ

### 1. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կը յիշուի* 1879 *Նոյ.* 16*ին։ Դպրոցներ բացած է զանազան Գիւղերու մէջ* (Հայրենիք, 1880, *Թ.* 585)։

## ԿԱՐԻՆ

### 1. ԱՐԾՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԴՊՐԱՏԱՆ ԿԱՐՆՈՅ (1851)

*Մեզի ծանօթ* Կարնոյ *հնագոյն եւ հաւանօրէն առաջին մշակութային Ընկերութիւնն է ասիկա, որ յորջորջուած է Բարձր Հայքի հին* Արծն *քաղաքի անունով։ Ընկերութեան հիմնադիրն է Կարնոյ Առաջնորդ՝* Գրիգորիս Վրդ. Զօրաքաքելեան (*վախճանած՝* 1859*ին*), *որ զայն հիմնած է* 1851*ի վերջերը։ Այս մասին թղթակից մը* 1852 *Յունուար* 1*ին Կարնէն կը տեղեկագրէ Իզմիրի «Արշալոյս Արարատեան»ի, գրելով թէ Գրիգորիս վրդ.ը հազիւ Կարին հասած՝ ձեռք զարկաւ տեղւոյս դպրոցի բարեկարգութեան, «բայց գիտնալով որ առանց Ընկերութեան այսպիսի ազգասիրական եւ ամենահարկաւոր գործ մը կա՛մ գլուխ չկրնար ելթալ, կա՛մ ելթայ ալ նէ չկրնար մշտնջենաւորիլ, ուստի դպրատան հոգաբարձուներ որոշեց յարգի անձինքներէն, իսկ Ընկերութեանը անունը դրաւ* Արծնեան Ընկերութիւն

Դպրատան Կարնոյ ։ *Եւ խոկոյն մէկ չարթուան մէջ* 400 *բաժին գրուեցան շատ անձինք․ իւրաքանչիւր բաժինն է վաթսունական փարա ամսական»* (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1852 *թ․* 408 ։ — *Հմմտ․ Մասիս*, *Կ․ Պ․* 1852 *թ․* 2 ։ — Նոյեան Աղաւնի, *Կ․ Պ․* 1853 *թ․* 68) ։

Բօսեան (*Հ․ Յակոբ Ծ․ Վ․ Բօսեան, Բարձր Հայք, Ա․ Վիեննա* 1925, *էջ* 245) սխալմամբ *Ընկերութեանս ծագումը* 1856*ին դնելով՝ կ՚ըսէ որ* երեք տարի (1856—1859) միայն *կեանք ունեցած է ։ Մինչդեռ Ընկերութիւնը* 1851*էն սկսած՝ երկար տարիներու գործունէութեամբ Կարնոյ կրթական գործին մեծապէս սատարած է ։ Արծնեան Ընկերութիւնը* ամենաերկարատեւ *Ընկերութիւնն է Կարնոյ Ընկերութեանց մէջ* ։

1858*ին հայ թերթ մը կը վկայէ թէ «Արծնեան ընկերութեան» «մեծաջան արդիւնքն» է Կարնոյ հնագոյն վարժարանի* (Արծնեան) *յառաջդիմութիւնը* (Արծուի Վասպուրական, *Վան* 1858, *էջ* 155) ։ Արծուի Վասպուրականի (*անդ*, 1864, *էջ* 128) *համեմատ «Արծնեան Ընկերութիւնը» ունեցած է* Ընթերցասիրաց Թանգարան *մը, որուն վերատեսուչն էր* Պետրոս Օձնեցի ։ *Չենք գիտեր թէ ե՞րբ բացած է Ընկերութիւնը իր «Ընթերցասիրաց Թանգարան»ը ։ «Թանգարան»՝ հոս* Գրադարան-Ընթերցարան *հասկնալու է* ։

1868*ի ատենները Ընկերութիւնը եւ իր Ըն-*

թերթարանը թոյլցած ըլլալով՝ հարկ կը տեսնուի վերակազմութեան մը: 1868ի ամրան «խումբ մը ազգայինք իրարու աջակցելով» Ընկերութիւնը կը վերակազմեն նոր Տնօրէն վարչութեամբ, որ հետեւեալն է.

Համազասպ քահ. Կարնոյ — Նախագահ
Համազասպ Պալլարեան — Ատենապետ
Մկրտիչ Խաչիկեան — Ատենադպիր

Նորակազմ Ընկերութիւնը մեծ հանդէսով ու ճառախօսութիւններով 1868 Հոկտեմբեր 20ին բացումը կը կատարէ նաեւ իր ընթերցարանին եւ կը ջանայ օրուան բոլոր հայերէն թերթերը ձեռք բերել Պոլսոյ իր գործակատար Տրդատ Ներկիզեանի միջոցաւ (Մասիս, Կ. Պ. 1868 Թ. 874, 897: Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1868 Թ. 826): Մասիսի այս մասին 1869 Յունիս 9ին թղթակցութեան մը մէջ յայտնի կերպով կը շեշտուի. «Բարձր Հայոց Կարին քաղաքը մէկ քանի տարիէ ի վեր սկսած է բաւական խլրտիլ յառաջադիմութեան շաւղին մէջ... այս կենդանութիւնը 8 ամիսէ մը վեր Կարնոյ մէջ Արծնեան անուն Ընթերցարան մը եւ համանուն Ընկերութիւն մը յարուցանելու առիթ եղաւ...» (Մասիս, 1869 Թ. 926):

1869ի գարնան Ընկերութիւնը կը բանայ կիրակնօրեայ դասընթացք մըն ալ որուն կը յաճախեն 30—40 հոգի (Անդ):

*Ընկերութիւնը իր Ընթերցարանի կապակ-ցութեամբ կոչուած է նաեւ «Արծնեան* Ըն-թերցարանի *Ընկերութիւն»* (Մանզումէի էֆքեար, 1891 *թ*. 997):

1869*ին՝ Ընկերութեան օժանդակու-թեամբ Կարնոյ մէջ դպրոց մը կը բանայ Տէր Գրիգոր քահանայ* (Մամուլ, *Կ. Պ*. 1889 *էջ* 173):

2. ԱՐՇԱՐՈՒՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Պոլսոյ* Արեւելք *թերթին մէջ «Սկանակ Բանաւէր» կը գրէ որ Կարնոյ մէջ* 1861*ին կազմուած է Ընկերութիւն մը՝ «քաղքին մէջ* Ընթերցարան *բանալու եւ ուսման ճաշակը տարածելու» նպատակով* (Արեւելք, *Կ. Պոլիս* 1898 *թ*. 3854): Արեւելք*ի յօդուածագրին ան-ծանօթ եղած է սակայն* 1861*ին հիմնուած Ըն-կերութեան* անունը: *Անծանօթ մնացած է նաեւ Հ. Յ. Քօսեանի* (*Բարձր Հայք, անդ, էջ* 245): *Ընկերութեան անունը աւանդուած է սա-կայն Մուշի մէջ լոյս տեսնող ժամանակակից հայ թերթը* — Արծուիկ Տարօնոյ, *որ Կարնէն ստացած թղթակցութեան մը մէջ*, 1883*ին*, *կ՚իմացնէ թէ «Կարնոյ մէջ ազգասէր երիտա-սարդաց շնորհիւ Վարդանանց տօնախմբու-թեան օրը*, 1863 *Փետր*. 7*ին*, *այդօրուա* Ըն-թերցարան *բացուեցաւ* Արշարունի Ընկերու-թեան *անուամբ...»* (Արծուիկ Տարօնոյ, 1863 *թ*. 7, *էջ* 26):

*Ժամանակակից ուրիշ թերթ մը* — Մէր — *Կարնէն* 1864 *փետր.* 27*ին գրուած թղթակցութիւն մը կը հրատարակէ, ուր կ'ըսուի.* «*Կարնոյ Գաւառական Ժողովի ազգասէր անդամները, գլխաւորութեամբ* Յակոբ Յովասափեանի՝ սկզբնապատճառ եւ հիմնադիր եղած են Արշարունի Ընկերութեան Ընթերցարանին» (Մէր, *Կ. Պ.* 1864, *էջ* 24)։ Մէր*ի համեմատ Ընկերութեան* նպատակն *է.* «Գիտութիւնը եւ ընթերցասիրութիւնը ծաւալել հասարակութեան մէջ ի ձեռն ձրի վերծանութեան ազգային պատմագրոց եւ ազգօգուտ պարբերականաց» (*Անդ*)։

*Ընկերութեան բացած Ընթերցարանը ունի* 12 *Յօդուածներէ բաղկացած* կանոնագրութիւն *մը, որ հրատարակուած է* Արծուիկ Տարօնոյ*ի մէջ* (1863, *էջ* 28—29) *ուր Յօդուած* 2. *կ'ըսէ.* «*Ընկերութեան նպատակն ըլլալով* ընթերցասիրութեան միջոցաւ Կարնոյ Ազգայնոց առաջնորդել դէպ ի յառաջադիմութիւն, *ամէն Հայու համար բաց պիտի ըլլայ միշտ Ընթերցարանը*...։

*Ընկերութիւնս կը յիշուի նաեւ* «Արշարունեաց» (Մասիս, 1863 *թ.* 580)։ — Արծուիկ Տարօնոյ, 1863 *թ.* 7) *եւ* «Արշարունեան» (Արծուիկ Տարօնոյ, *անդ*) *ձեւով*։ — *Իր գոյութիւնը կը պահէր տակաւին* 1878*ին* «Արշարունեան Ընկերութիւն» *յորջորջմամբ* (Լոյս, *Կ. Պ.* 1878 *թ.* 769։ — 1864 *Սեպտեմբերին Պոլսէն Կարին այցելող մը՝ Արշարունի Ըն-*

*կերուժեան Ընժերցարանին մէջ կը գտնէ* 14 հայերէն թերթ, *ինչպէս նաեւ* Մէնմուայր փինուն *եւ* Courier *եւ կը գրէ որ* «Այս Թանգարանը (*Ընժերցարան*) գրեթէ ընդհանրութեան իբրեւ դպրոց կը ծառայէ. բոլոր Կարնեցւոց բերնէն գովութիւն եւ շնորհակալութիւն լսեցի այս մասին» (Պեզասեան Թոշնիկ, *Կ. Պ.* 1864, *էջ* 175):

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

«*Սկսնակ Բանասէր*», *որ հին հայ Ընկերութիւններու համառօտ ցանկ մը տուած է՝* 1898*ին կը գրէ որ Կարնոյ մէջ գոյութիւն ունեցող* Գայիանեան աղջկանց *վարժարանին նիւթապէս նպաստելու համար* 1862*ին Կարնոյ մէջ կը հիմնուի* Ուսումնասիրաց Ընկերութիւնը, *որ իր գոյութիւնը մինչեւ* 1880 *պահած է* (Արեւելք, 1889 *Թ.* 3854):

*Հարցական կը մնայ սակայն «Գայիանեան վարժարանի» մը գոյութիւնը Կարնոյ մէջ* 1862*էն* առաջ, *զի գիտենք թէ*, 1864*ին ցաւ կը յայտնուի որ Կարին* աղջկանց վարժարան բնաւ չէ ունեցած (*Տե՛ս* Արծուի վասպուրականի, *Վան* 1864, *էջ* 135): Մասիս (1864 *Թ.* 637) *կը գրէ որ Կարնոյ մէջ աղջկանց վարժարան* չկայ *եւ կ'ուզեն հիմնել*:

4. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

1864 *Ապրիլ* 5*ին Կարնոյ մէջ* 1000 *հոգիի ներկայութեան դպրոցական հանդէս մը տե-*

ղի կ'ունենայ, քննութեան ենթարկելով Արծնեան ժառանգաւորաց վարժարանի սաները, որմէ վերջ կը ճառախօսէ վաստակաւոր ուսուցիչ Կարապետ Մ. Զաքարեանց՝ իրեն նիւթ առնելով աղջկանց վարժարանի մը պէտքը: Ճառախօսը սրտառուչ բառերով կը պարզէ աղջկանց կրթութեան անհրաժեշտութիւնը ընտանեկան, ամուսնական եւ տնտեսական կեանքի մէջ: Կը գովէ Կարնեցիները, որ հոգ տարած են ունենալու արական սերունդի կրթութեան համար դպրոցներ: Բայց, կ'աւելցնէ, մեծ թերի մը եղած է աղջկանց կրթութեան մասին անփութութիւնը: Կ'առաջարկէ անմիջապէս հիմնել յատուկ Ընկերութիւն մը, որուն միակ նպատակն ըլլայ աղջկանց վարժարան մը բանալ: Ճառախօսը կ'առաջարկէ նաեւ որ բացուելիք վարժարանը Հռիփսիմեանց վարժարան կոչուի: Ընկերութեան տարեկան բաժանորդագինը կ'որոշուի 5 ղրուշ: Կ'առաջարկուի որ Ընկերութիւնը երեք տարիի չափ շարունակուի, «որպէս զի ազգային սնտուկը իր ուժը ունենայ կամ Ընկերութեան տուրքէն դրամագլուխ մը պատրաստուի»: Հասարակութիւնը ծափահարութեամբ կ'ընդունի այս առաջարկը եւ անմիջապէս բազմաթիւ անձեր կ'արձանագրուին Ընկերութեան բաժանորդ: Քաղաքին Առաջնորդ Յարութիւն Արքեպ. Վեհապետեան 20 բաժին կը գրուի՝ օրինակ հանդիսանալով իր ժողովուրդին:

Այս եղելութիւնը աւանդած են Արծուի Վասպուրականի (1884, էջ 127—137), Սէր (1864, էջ 38) եւ Մասիս (1864 Թ. 637), ժամանակակից թերթերը՝ Կարնէն եղած թղթակցութիւններով, սակայն մոռցուած կամ անտես առնուած է յիշել կազմուած Ընկերութեան անունը որ ուրիշ կողմէ ալ անծանօթ է։

### 5. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Կարնոյ մէջ ալ ունեցած է իր ճիւղը Պոլսոյ «Անձնուէր»ը, հիմնուած 1860ին։ 1869 գարնան կազմուած է Կարնոյ մէջ։ 1869 Յուլիսին Պոլսոյ Մամուլ թերթը կը գրէ որ Կարնոյ մէջ ալ իր հալածողներն ունի «Անձնուէր Ընկերութիւն»ը, ակնարկելով նոյն Ընկերութեան Եւդոկիոյի ճիւղին կրած հալածանքներուն (Մամուլ, Կ. Պ. 1869, էջ 248)։

«Արծնեան Ընկերութեան» Տնօրէն ժողովը նախաձեռնող եղած է Կարնոյ մէջ «Անձնուէր Ընկերութեան» ճիւղ մը բանալու (Հմմտ. Մասիս, 1869, Թ. 926)։

### 6. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Պոլսոյ փոքր Մասիսին թղթակիցը՝ Զարմայր Մկրտիչ Յ. Աղապալեանց կը գրէ 1869 Յուլիս 17ին. «...քաղաքիս մէջ քանի մը ազգասէր երիտասարդ արհեստաւորներ «Ուսումնասիրաց» Ընկերութիւն մը հաստատած են, որոյ նպատակն է՝ աղքատ եւ ան–

կարող ուսանողաց ձրիապէս գիրք, թուղթ եւ պիտոյք մատակարարել» (Մասիս Օրաթերթ, *Կ. Պ.* 1869, *Թ.* 400):

*Հաւանօրէն* 1869*ի առաջին ամիսներուն հիմնուած է:*

7. ԱՐՀԵՍՏԱՒՈՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնուած է* 1870*ի սկիզբը: Հիմնադիր նախաձեռնողն է* Մկրտիչ Աղապալեան: *Նպատակն է «փոքրիկ խնայողութիւններով արհեստաւորաց օգնական վարպետներուն (խալֆա) դրամագլուխ պատրաստել»* (Արեւելք, *Կ. Պ.* 1899, *Թ.* 4165): *Առաջին ամիսներուն արդէն ունեցած է* 6—700 *անդամ: Շաբաթական բաժնեգինն է* 20 *փարա: Ունեցած է իր Կանոնները: Գործադիր Մարմինը կազմած են* 12 *հոգի: Շուտով բացած է* 2 խանութ: *Բաւական օգտակար եղած է ժողովուրդին* (Մանզումէի էֆքեար, 1870, *Թիւ* 1233): *Ընկերութիւնս հին* «կոոպերատիւ» *մըն է:*

8. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Կարնոյ մէջ* 1880*էն առաջ գոյութիւն ունեցած է* Վարդանանց Ընկերութիւն *մը, որուն ծագումը, հիմնադիրը եւ նպատակը անծանօթ են: Միայն Պօլսոյ* Մասիսն *է որ կը յիշատակէ Ընկերութիւնս, ըսելով թէ* 1880*ին «Վարդանանց Ընկերութիւնը» միանալով ուրիշ երեք Ընկերութիւններու հետ՝*

կը կազմեն միացեալ Ընկերութիւն մը՝ «Բարձր Հայոց Միութիւն» անունով (Մասիս, 1880, Թ. 2758)։

9. ԴՊՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Տակաւին մինչեւ 1880 գոյութիւն ունեցած է Կարնոյ «Դպրաց Ընկերութիւնը», որուն ծագումի մասին ոչ մէկ աղբիւր գտած ենք։ Կը յիշուի 1880ին, երբ կը միանայ ուրիշ Ընկերութիւններու հետ (Մասիս, անդ)։

10. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Կը յիշուի 1880ին իբրեւ նախկին, հին Ընկերութիւն մը, որ կը միանայ ուրիշ երեք Ընկերութիւններու հետ։ 1880ին դեռ գոյութիւն ունէր (Տե՛ս Մասիս, 1880, Թ. 2758)։

11. ԸՆԿԵՐԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

Հիմնուած է 1873ի գարնան։ Իր վարչութիւնը կը կազմէին 1879ին.

Աղեքսանդր Տ. Ներսէսեան — Ատենապետ
Գրիգոր Մըսրեան — Ատենադպիր

Այս վարչութիւնը Կարնէն կը գրէ 1879 Ապրիլ 9 թուականով. «Մեր Ընկերութիւնը, որ վեց տարիներէ ի վեր կազմուած է այս քաղաքիս մէջ, իր զաւակաց դաստիարակութեան գեղեցիկ նպատակէն եւ քաղաքիս մէջ բարի օրինակ մը եւ դպրոցաց համար մրցման ասպարէզ մը բանալէ զատ ուրիշ որ եւ իցէ նպատակի ծառայած չէ» (Մասիս, 1879, Թ. 2310)։

Ընկերութիւնը իւր «Ընկերական վարժարանը» բացած է 40 աշակերտով. 1879ին վարժարանը ունէր 70—80 աշակերտ (Անդ)։ 1878ին այդ վարժարանը ութը դասարան ունէր — անշուշտ աշակերտներու մեծ թիւով մը — եւ Կարնոյ բարձրագոյն վարժարանը կը համարուէր, որուն «խնամքը եւ պահպանողութիւնը գտնվում է մի առանձին Ընկերութեան վրայ» (Մշակ, Թիֆլիս 1878 Օգոստ. 24)։

## 12. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

1874ի գարնան Կարնոյ մէջ Ընկերութիւն մը կազմուած է՝ նպատակ ունենալով նորագոյն մեթոտով դպրոց մը բանալ եւ բարձր ուսում ու կրթութիւն աւանդել։ Ընկերութեան հիմնումի մասին Թղթակից մը Կարնէն հետեւեալը կը գրէ. «...փոքրաթիւ լուսամիտ խումբ մը իրենց զաւակաց ապագան չապաննելու համար Ընկերութիւն մը կը կազմեն եւ անկախ դպրոցի մը հաստատութեան կը ձեռնարկեն» (Արեւելեան Մամուլ, Զմիւռնիա 1874, էջ 242)։ «Հայկունի» ստորագրող ուրիշ Թղթակից մ'ալ 1874 Օգոստոսի սկիզբը կը գրէ. «Ասկէ իբր 3—4 ամիս յառաջ... Կարնոյ լուսաւորեալ մասն տեսնելով որ ազգային հին դպրոց միայն բաւական չէ... խորհեցաւ եւ 40 անձերէ բաղկացեալ Ընկերութիւն մի կազմեց եւ ազատ ընդարձակ սենեակներ պարունակող տուն մի

վարձեց ուսումնարանի համար, որոյ ի գործադրութիւն եւ իւրաքանչիւր ոք աշակերտի 6 օսմանեան լիրայ կը վճարէ... 3 ուսեալ դաստու բերած է Պոլսէն... Այն նորակազմ Ընկերութիւն ունի 6 անձերէ բաղկացեալ Տնօրէն խորհուրդ մը, որ աշալրջութեամբ եւ ազգասիրական ոգւով դպրոցի յառաջդիմելուն եւ ուսանող մանկտւոյն զարգացման համար երկեր եւ ջանքեր կը դնէ եւ բարեկարգութեան կը հսկէ...» (Օրագիր, Կ. Պ. 1874, Թ. 1321):

Դժբախտաբար երկու թղթակիցներն ալ անյիշատակ թողած են Ընկերութեան անունը:

13. ՍԻՍԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874—1878)

Հ. Ց. Քօսեանի համեմատ (Բարձր Հայք, Ա., էջ 212), Կարնոյ մէջ 1874—1878ի շրջանին հաստատուած է «Սիսական Ընկերութիւն»ը՝ «արհեստաւորաց ուսում աւանդելու նպատակաւ»: Ուրիշ տեղ չենք գտած յիշատակութիւն մը:

14. ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Հիմնուած 1878 Ապրիլի սկիզբը՝ կ'ունենայ իր թատերախումբը եւ կու տայ ներկայացումներ՝ 1878 Ապրիլ 23ին եւ յետոյ: Փափաքելով ունենալ սեպհական թատերասրահ՝ 1878 Մայիս–Յունիսին կը ձեռնարկէ յատուկ թատրոնի շէնքի մը շինու-

*թեան։ Շինութեան վայր կ՚ընտրուի Կարնոյ Մաքսի ետեւի բազմահայ թաղը։ Շինութիւնը կ՚աւարտի Յուլիսին վերջը։ Շինութեան ծախք կ՚ըլլայ* 1000 *ռուբլի* (Փունջ, *Կ. Պ.* 1878, *Թ.* 1285, 1300, 1305։ — Մշակ, *Թիֆլիս* 1878, *Թ.* 144։ — Մասիս, 1878, *Թ.* 2171, 2350)։

### 15. ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Ընկերութեանս հիմնումի մասին կը տեղեկագրէ* 1878 *Հոկտ. 7ին Կարնէն գրուած նամակ մը, որ կ՚իմացնէ թէ Կարնոյ մէջ ջանք կ՚ըլլայ* «Կրթական» *անունով Ընկերութիւն մը հիմնել, որուն նպատակն է.* «Նախակրթական դպրոց մը հաստատել քաղաքիս մէջ, Ընթերցարան բանալ եւ Պոլսէն Մամուլ մը բերել տալով՝ ազգային լրագիր մը հրատարակել» (Փունջ, 1878, *Թ.* 1321)։ *Ընկերութեան բաժնեգինն էր մէկ քառորդ արծաթ մէճիտ։*

### 16. ԱԶԳԱՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Պոլսոյ մէջ* 1879*ին հիմնուած* «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» *մէկ ճիւղը կը կազմուի Կարնոյ մէջ* 1880 *Յունիս–Յուլիսին։* 1880 *Յուլիս* 26*ին Կարնէն կը տեղեկագրեն.* «*Կարնոյ մէջ* Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան մէկ ճիւղը բացուեր է *շնորհիւ Գեր. Առաջնորդին*» (Փունջ, 1880, *Թ.* 1493)։

Ընկերութեանս գործունէութիւնը մինչեւ 1908 անծանօթ է։ 1908ին կը վերակազմուի «Ազգանուէր Հայուհեաց Միութիւն» անունով եւ կ'ունենայ օգտաշատ գործունէութիւն (Տե՛ս Յառաջ, Կարին 1909, Թ. 3, 1911, Թ. 30)։ 1910ին իր ծախքով Պոլսոյ էսայեանի մէջ կը տեղաւորէ Օր. Երանուհի Մոմճեանը սա՛ պայմանաւ որ վերադարձին Կարնոյ մէջ ուսուցչութեան պաշտօն վարէ (Անդ, 1910, Թ. 59)։ Միութիւնը Կարնոյ Հռիփսիմեան Վարժարանի մէջ լրացուցիչ դասընթացք մը կը բանայ իր Վարժուհինեց (Յառաջ, 1910, Թ. 72)։ Այդ ատեն Միութեան Վարչութիւնը կը կազմէին.

Ե. Տիգրանեան — Ատենապետ
Ա. Դարբինեան — Ատենադպիր

17. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Կազմուած է 1880ի ամրան։ Հիմնադիր անդամ է Նշկեան ընտանիքը։ Տեղեկատու Թղթակիցը կը գրէ 1880 Սեպտ. 27ին. «Այժմ այս գաղթական ընկերութիւնը 10 տունէ պիտի բաղկանայ եւ 10 բաժնի վրայ պիտի գործէ ամեն բաժին 1000 օսմ. լիրայով, որով խիստ պարզ, գեղեցիկ շէնքեր պիտի ունենան եւ պիտի ապրին հոն կէս նահապետական եւ կէս ընկերական կենօք եւ օրինօք... Եւրոպայէն եւ Ամերիկայէն պիտի ապսպրեն հերկող, ցանող եւ քաղող մեքենաներ... Բասեանի կողմերը անցեալ շաբթու

*Ընկերութեան հիմնադիրներն գացին այցելել եւ տեսնել*, յարմար եւ օդաւէտ երկու գեղեր տեսած են, զորս գնելու կ'աշխատին...» (Թերճեմանը էֆքեար, *Կ. Պ.* 1880, *Թիւ* 939, 945):

### 18. ԲԱՐՁ ՀԱՅՈՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

1880 *Հոկտ.* 18*ին Կարնէն կը գրեն Պոլսոյ* Մասիս *թերթին*. «*Քաղաքիս* «Վարդանանց», «Ուսումնասիրաց», «Դպրաց» *եւ* «Ընթերցասիրաց» *նախկին չորս Ընկերութիւնները քաջ համոզուած լինելով այն ճըշմարտութեան թէ* «*միութիւնը զօրութիւն է*», *բաւական ժամանակէ ի վեր մտադիր էին միութիւն մը կազմել իրենց մէջ, սակայն իրաց պարագաները չէին ներեր այդ: Վերջին տարիներս առաջարկութեամբ եւ յորդորանօք քաղաքիս Նորընտիր Առաջնորդ Գեր. Օրմանեան Մ. Հօր, չորս Ընկերութիւնք յաջողեցան իրենց մտադրութեան մէջ եւ կազմեցին Ընկերութիւն մի* «Բարձր Հայոց Միութիւն» *անուամբ, որոյ* Կանոնները *կը խոստանամք յառաջիկայ առթիւ ձեզ յղել ի տպագրութիւն*» (Մասիս, 1880, *Թ.* 2758): — Մասիս*ի յաջորդ թիւերուն մէջ չգտանք Միութեան* Կանոնները:

*Միութեանս գործունէութեան մասին կը գրեն* 1881*ին*. «*Եթէ կայ քաղքիս մէջ մխիթարիչ եւ յուսատու կէտ մը, այն ալ* «*Բարձր Հայոց Միութիւնն*» *է, որ յարատեւ*

գործունէութեամբ զօտեպնդ. կ'աշխատի ի բարոյական եւ նիւթական զարգացումն համբուեան : Ընթերցարան մը հաստատած է , ուր կը գտնուին հայերէն , թրքերէն եւ գաղղիերէն լրագիրք : Կիրակնօրեայ դպրոց հաստատած է ի դիւրութիւն ուսումնասիրաց , յորում հայերէն , թրքերէն , գաղղիերէն , թուաբանութիւն , եւ այլն , կը դասախօսեն փափաքող ազգայնոց , մանաւանդ արհեստաւորաց : Որոշուած եւ ձեռնարկուած է արդէն հասարակային Մատենադարանի մը հաստատութեան ալ» (Փունջ , 1881 , թ. 1544) :

1881ին Կարին հանդիպող ուղեւոր մը կը պատմէ որ «Բարձր Հայոց Միութիւնը» իր Ընթերցարանին ճակատը մեծ տառերով «Ընթերցարան Միութեան Բարձր Հայոց» գրած ըլլալուն՝ Կարնոյ կուսակալը գայթակղեր եւ «Բարձր Հայոց» բառերը ջնջել տուեր է» (Մասիս , 1881 , թ. 2832) :

## 19. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891—1892)

Կարնոյ Հայ Կաթողիկէ աղքատ մանուկներու դաստիարակութիւնը ապահովելու համար Վահան Գ. Շապանեան՝ հաւանութեամբ Կարապետ Եպս. Քչուրեանի 1891—1892ին կը հիմնէ Աղքատասիրաց Ընկերութիւնը , որուն մասին կը գրէ նա. «...պարտ անձին համարեցինք Աղքատասիրաց Ընկերութիւն մը կազմել , որոյ նպատակն է նախակրթարան մը բանալ եւ նախնական ու-

սումներն մայրենի լեզուով դաս տալ··· *ի սէր ազգութեան եւ յանուն մարդկութեան սրտառուչ ձայնով հրաւիրեցինք բոլոր ազգը եւ խնդրեցինք որ մէյ մը դարձնեն աչերնին այն խեղճ արարածներուն վրայ»* (Մէճմուայը Ախպար, *Կ. Պ.* 1892, *Թ.* 2275) : *Ընկերութիւնը առաջին առթիւ հանգանակութիւն մ'ընելով՝* 2078 *ղուրուշ կը հաւաքէ* (*Անդ*) :

20· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1895)

*Ըստ Հ. Յ. Քօսեանի* (*Բարձր Հայք, Անդ, էջ* 246) *Կարնոյ մէջ* 1895*ին հաստատուած է* Ընթերցասիրաց Ընկերութիւն *մը, «որ առանձին տեղ մը վարձելով եւ հատորաւոր գրքեր ճարելով ժողովրդեան ընթերցանութեան նիւթ կը մատակարարէր : Այս Ընկերութիւնը տեւական գոյութիւն ունէր մինչեւ* 1914» :

21· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1900)

*Հիմնումի թուականը անծանօթ է մեզ :* 1900*ին աղքատ աշակերտներու զգեստ կը շինէ եւ անօգնական ընտանիքներու կը նպաստէ վարձագինի եւ հացագինի համար* (Արարատ, *Վաղարշապատ* 1900, *էջ* 248) :

22· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1904)

*Կազմած են Հայ Կաթողիկէներ* 1904 *Յուլիս* 4*ին՝ «ընտիր կանոններով»* (*Քօսեան*,

անդ, էջ 458 ծանօթ.), որոնք մեզ անծանօթ են:

## 23. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908 Յուլ. 11ի Սահմանադրութեան յաջորդ օրերուն կազմուած է «Հայ Երիտասարդական Միութիւնը (Համմ. Գործ, Թիֆլիս 1908, Թ. 2): Գործերու անսպառ տենչով վառուած այս Միութեան առաջին գործը (Գործ, անդ, Թ. 24) կ'ըլլայ Կարնոյ մէջ Ընթերցարան մը բանալ եւ նիւթ հայթայթել ժողովուրդի լուսաւորութեան համար: Ընթերցարանին կը յաջորդէ յատուկ Լսարանը՝ բացուած արդէն 1908 Օգոստոսին: Առանցմէ ոչ նուազ կարեւոր ազդակ մը — Հայ Բեմը — չի վրիպիր Միութեան ուշադրութենէն: Կը կազմուի Թատերախումբ մը իր ուրոյն ու մնայուն վարչութեամբը, որ կը կազմակերպէ յաճախակի ներկայացումներ 1908էն սկսած: Միութիւնը կը ջանայ մինչեւ իսկ գոյութիւն տալ Կարնոյ մէջ սեփական Թատրոնի շէնքի մը (Յառաջ, Կարին 1911, Թ. 24):

Սակայն Միութեան այրող փափաքն էր մանաւանդ Մամուլ մը հիմնել իր գաղափարներու տարածման եւ տեղական ու գաւառի հայ ժողովուրդին հետ դիւրաւ շփման ու հաղորդակցութեան մէջ մտնելու համար: «Յառաջ» կ'ըլլայ Միութեան «օրկանը», որուն առաջին թիւը լոյս կը տեսնէ 1909

Մայիս 31ին Միութեան սեպհական տպարանին մէջ: Շրջապատի հազար ու մէկ դժուարութիւնները նկատի առնելով՝ հասկնալի կ'ըլլայ թէ ո՛րքան մեծ յաջողութիւն մ'էր ասիկա: Ու արժանի գնահատանք մըն է Միութեան սքանչելի կազմակերպութեան համար շեշտել թէ 1909—1914 անընդհատ կրցած է Միութիւնը լոյս հանել իր թերթը՝ երկու անգամ խափանումի ենթարկուելով հանդերձ եւ ստիպուած ըլլալով անուն ու խորագիր փոխելու:

Միութեան Ծրագիրը կ'ընդգծէ. «Հայ Երիտասարդական Միութիւնը ըլլալով զուտ կուլտուրական ընկերակցութիւն մը՝ իր ուժերը պիտի ամփոփէ միայն կուլտուրական շրջանակի մէջ»: «Կարնոյ Հայ Երիտ. Միութիւնը իբրեւ ոչ-կուսակցական Ընկերակցութիւն՝ չէզոք կը մնայ քաղաքական հարցերու նկատմամբ, սակայն իր անդամներն ազատ են համոզումի համաձայն ոեւէ աշխարհահայեացք ընդգրկելու» (Յառաջ, 1910, թ. 50):

Միութիւնը կը գործէ, ուրեմն, Մամուլով, Գրադարանով, Ընթերցարանով, Թատրոնով, Երեկոյեան Վարժարանով եւ Լսարանով (Անդ, թ. 51): Իր Կանոնագիրը՝ բաղկացած 45 Յօդուածէ՝ հրատարակուած է Յառաջի մէջ (անդ, թ. 73), որմէ կը տեսնենք թէ Միութեան կրնայ անդամակցիլ ամէն հայ՝ 18 տարեկանէ վեր (Յօդ. 1). ան-

*դամավճարն է* 40 *փարա* (*Յօդ*. 2)․ *Միութիւնը ունի Ընդհ. ժողով, Ներկայացուցչական ժողով, Վարիչ Մարմին եւ Մասնախումբեր* (Յառաջ, *անդ*)։

24․ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908*ին նախ* «Սանասարեան Ակումբ» *անունով կը հիմնուի* (Գործ, 1908, *Թ*. 2), *քիչ վերջ կը ստանայ* «Սանասարեան Աշակերտական Միութիւն» *անունը* (Արարատ, *Վաղարշապատ* 1909, *էջ* 534)։ 1909*ին կը փորձէ հրատարակել* խմորատիպ *թերթ մը*՝ «Սիրտ» *անունով*։ 1911*ին* տպագրութեամբ *լոյս կը հանէ զայն* 60 *փարա հատավաճառով* (Յառաջ, 1911, *Թ*. 21)։ 1911*ին վերջերը կը լուծուի Միութիւնը* (*Անդ*, *Թ*. 105)։ *Կ՚երեւայ թէ յետոյ դարձեալ* վերակազմուած է *որ* 1914*ին կ՚ըսուի թէ լոյս կը հանէ իր թերթը*՝ «*Սիրտ*» (*Տե՛ս* Ժամանակ, *Կ*. *Պ*. 1914, *Թիւ* 1775)։ *Տեսած ենք փոքրադիր սիրուն* «*Սիրտ*»*ը*։

25․ ԿԱՐՆՈՅ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնած են Կարնեցի պանդուխտներ* Բոստոնի (*Ամերիկա*) *մէջ* 1908*ին*։ *Հիմնադիրներն են*․ *Սեդրակ Թոքաճեան*, *Մկրտիչ Ճամլեան*, *Գրիգոր Աղաճանեան*, *Մարտիրոս Ճիւանեան*, *Արամ Յակոբճանեան*, *Արտաշէս Սահակեան*, *Սեդրակ Պօղոսեան*, *Տիգրան Նալպանտեան*, *Վահրամ Փէլէկեան*, *Վահ-*

*բամ Ալպէրտեան : Իր նպատակն էր . «Օգնել եւ զարկ տալ հայրենիքում մշակոյթի բարգաւաճման, ուսման եւ գիտութեանց զարգացման» : Իր առանձին գուրգուրանքին ու խնամքին առարկայ ըրած է Կարնոյ Հռիփսիմեանց Վարժարանը* (Հայրենիք, *Օրաթերթ* 1958, *Թ.* 14.171) : 1915*ին Միութիւնը* 460.30 *ռուբլի նպաստ կը զրկէ հայ գաղթականներուն* (Արարատ, 1915, *էջ* 426) :

1916*էն վերջ Միութիւնը իր յորջորջումը փոխելով՝ կը կոչուի* «Կարնոյ Հայրենակցական Միութիւն» *եւ կը շարունակէ եռանդով իր գործունէութիւնը՝ ամէն կողմ օգնութեան ձեռք երկարելով* : 1958 *Դեկտ.* 7*ին Միութիւնը կը տօնէ իր* 50ամեակը (Հայրենիք, *անդ*) :

*Ընկերութիւնը մերթ կոչուած է նաեւ* Կրթասիրաց Ընկերութիւն (Յառաջ, *Կարին* 1913, *Թ.* 4) :

26. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Կարնոյ Հռիփսիմեան վարժարանը* 1871*ին բացուած է* (Մանզ. Էփքեար, 1871, *Թիւ* 1586) : *Ատկէ մինչեւ* 1908 *մօտ* 40 *տարուան շրջան մըն է . չենք գիտեր թէ որեւէ Սանուհեաց Ընկերութիւն մը կազմուա՞ծ է* : 1908*ի ամառը կը հիմնուի* «Հռիփսիմեան Օրիորդաց Միութիւնը» (Գործ, *Թիֆլիս* 1908, *Թ.* 24) : *Դժբախտաբար քանի մը դպրոցական հանդէսէ զատ կարեւոր գործունէութիւն մը*

չենք գտներ իր մասին։ 1911ին կը լուծուի՝ իր դրամը «Տասը փարանոց» Ընկերութեան յանձնելով (Յառաջ, 1911, Թ. 1)։

27. ԿՐԹԱՍԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Հիմնուած կ՚երեւայ 1909ի սկիզբը (Յառաջ, 1911, Թ. 3)։ Կը յիշուի արդէն 1909 Յունիսին, բայց իր գործերն անծանօթ են։

28. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Կազմուած է հաւանօրէն 1909ի սկիզբը։ Յունիսին միայն անունով կը յիշուի (Յառաջ. 1909, Թ. 3)։

29. ՋԱՆԱՍԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Կարնոյ իգական Ընկերութիւններու միացումին համար 1909 Յունիս 18ին ժողով տեղի կ՚ունենայ Արծնեան Վարժարանի սրահին մէջ, ուր 500 անձեր ներկայ կ՚ըլլան։ Երուանդ հակիրճ ճառով մը կը պարզէ կիներու համերաշխօրէն գործելու անհրաժեշտութիւնը եւ կը յորդորէ որ բոլոր Ընկերութիւնները միանան։ Կը քննուի նոր Կանոնագիր մը եւ անոր համեմատ տեղի կ՚ունենայ Վարչութեան ընտրութիւնը։ Քուէարկութեան կը մասնակցին 200 Տիկիններ եւ Օրիորդներ։ Կ՚ընտրուին հետեւեալ Վարչական անձերը. Տիկիններ՝ Ծ. Տէր Սարգսեան, Ն. Ումիկեան, Ա. Պալայեան, Ա. Կիրակոսեան, Մ. Փնջոյեան, Տ. Արուլեան։

Օրիորդներ՝ Ա. Դարբինեան, Ա. Այվազեան, Ե. Մոմճեան, Հ. Հազարապետեան, Ց. Եղիայեան:

Միացեալ՝ այս Ընկերութեան անունը կը դրուի «Ջանասէր հայուհեաց Միութիւն» (Յառաջ, 1909, Թ. 7): Միութեան առաջին արդիւնքը կ'ըլլայ կարուձեւի արհեստանոց-դպրոց մը բանալ, որուն 1909 Հոկտ.ի սկիզբը կ'աշակերտին 40 աղջիկներ, որոնցմէ 15ը ձրի, իսկ 25ը թոշակաւոր (Անդ, Թ. 37): Միութիւնը կ'ունենայ նաեւ կանանց յատուկ ընթերցարան մը: 1909 Նոյեմբերին կը հաստատէ նաեւ «լուացքի տուն» մը՝ գոհացուցիչ պայմաններով լուացք լուալու, օւլայելու, արդուկելու, եւ այլն (Անդ, Թ. 53):

### 30. «ՋԱՆՔ» ՍՊԱՌՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Բաժանորդական Ընկերութիւն մ'է «Ջանք»ը, կազմուած 1909 Սեպտ.ին: Բաժնեգինն է մէկ մէճիտ: Կը յիշուի լոկ իր Կանոնագիրը եւ կ'ըսուի թէ մեծ ծրագիրներ ունեցած ըլլայ (Անդ,, Թ. 32): Ահա իր առաջին Դիւանը.

Անդրանիկ Բլքեան — Ատենապետ
Մ. Սապոնճեան — Ատենադպիր
Գերենիկ Դարպասեան — Գանձապահ

### 31. ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Կարնոյ Հայ կաթողիկէ երիտասարդութիւնը կազմած է 1909ին այս Ընկերութիւնը

(Յառաջ, անդ, թ. 42), որուն գործունէութեան մասին բնաւ առիթ չենք ունեցած կարդալու։

32. ՀԱԿԱԼՔՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Կը հիմնուի 1910 Յունուարի սկիզբը եւ կ՚ունենայ առժամեայ Կանոնագիր մը 11 Յօդուածով։ Ընկերութեան կրնան անդամակցիլ անոնք, որ կը հրաժարին ոգելից ըմպելիքներէ (Յօդ. 1—2)։ Ընկերութեան անդամը պարտի կրել իր վրայ Ընկերութեան յատուկ նշանը (Յօդ. 4)։ Անդամ կ՚ըլլան 15 տարեկանէն վեր եղողները, որոնք պարտին 2 դրուշ կանխավճար ընել եւ ամսական 20 փարա վճարել (Յօդ. 5—7)։ Ընկերութիւնը առանձին բաժանում մը ունի, որուն անդամակցողները կը պարտին ձգել գլանիկն ու խաղը (Յառաջ, 1910, թ. 6, 7, 14)։

33. «ՀԵՇՏ-ԱՄՈՒՍՆԱԿԱՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Յառաջ (1910, թ. 36) կը գրէ 1910 Մայիսին. «Քանի մը երիտասարդներու նախաձեռնութեամբ կազմուած է տեղս «Հեշտ-Ամուսնական» Ընկերութիւն մը, որու անմիջական նպատակն է դիւրացնել հարսանիքները՝ շռայլ ու անպէտք ծախսերէ ազատելով։ Ընկերութիւնը ընդունելով նաեւ Հակալքոլական Ընկերութեան ուղղութիւնը՝ աշխատելու է մեղմացնել օղիի պատճառած

*անմխիթար հետեւանքները: Ընկերութեան անդամներու թիւը հասած է մօտ 100ի»:*

34. «10 ՓԱՐԱՆՈՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է* 1910 *Սեպտ.* 1*ին*: 1910 *Սեպտ.* 24*ին կը գրէ տեղական թերթը. «Ազգային վարժարաններու չքաւոր աշակերտներուն օգնելու համար կազմուած է* «10 փարանոց Ընկերութիւն *մը, որու անդամավճարն է ամսական առնուազն* 10 *փարա* (Յառաջ, 1911, *Թ.* 7):

35. ԳՐԱԿԱՆ–ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* 1911 *Յունուարին: Առաջին ժողովը Հոփսիմեան Վարժարանին մէջ տեղի կ'ունենայ Յունուար* 30*ին, ուր կը կարդացուի Նախագիծ–Կանոնագիրը* (Յառաջ, 1911, *Թ.* 8): *Միութեան* նպատակի *մասին կը գրէ Մկրտիչ Պարսամեան.* «...զբաղիլ զուտ գրական եւ գեղարուեստական նիւթերով, *ազատել միտքը քաղաքական մտահոգութիւններէ ու միջոց տալ նուիրուելու բոլոր այն ուղղութիւններուն, որոնք կոչումն ունին բաւարարելու հոգեկան ու մտաւորական պահանջները*» (Շանթ, *Կ. Պ.* 1911, *էջ* 80: — *Հմմտ.* Յառաջ, 1911, *Թ.* 128):

36. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմը կը դրուի* 1911 *Հոկտ.ի սկիզբը՝ նպատակ ունենալով. «Աջակցիլ կրթական*

մարմիններուն, ազգային վարժարաններն աւելի ու աւելի բարձրացնելու համար» (Յառաջ, 1911, Թ. 91)։ Քաղաքական ժողովը կը հաստատէ Ընկերութեան կանոնագիրը (Յառաջ, 1912, Թ. 180), որ չէ հրատարակուած։ Տնօրէն ժողով կը կազմէին. Արսէն Աւետիքեան, Բարսեղ Տ. Ազարեան, Դոկտ. Եղիշէ Տ. Մկրտիչեան, Դոկտ. Հրանդ Միսաքեան, Միսաք Աղապալեան, Մուշեղ Մեսրիկեան, Միսաք Սոպաճեան, Յարութիւն Ալճուխեան, Ռուբէն Լեփեան, Օննիկ Բամպուգճեան (Անդ, 1911, Թ. 103)։

37. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

Կը հիմնուի 1911 Հոկտեմբերին։ Նպատակն է. «Նպաստել Կարնոյ Ազգ. Վարժարաններուն» (Յառաջ, 1911, Թ. 101)։ Ունեցած է կանոնագիր, զոր չենք կրցած տեսնել։

38. ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

Կազմուած է 1912 Յունիսին։ Յուլիսին ունէր արդէն 100 անդամ եւ ցոյց կու տար տենդոտ գործունէութիւն (Յառաջ, 1912, Թ. 79)։ Որքան կ'երեւայ՝ նոյն Միութիւնը նախ կոչուած է «Կարինի Երիտասարդներու Մարմնամարզական Ակումբ» (Մարմնամարզ, Կ. Պ. 1912, էջ 237)։

39. «ԳԱՐԾ» ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

Կը կազմուի 1913 Յունուարի սկիզբը։ Իր բաժիններու թիւն էր 100։ Վարչութեան

*Ատենապետն էր՝* Խ. Փաստրմաճեան (Յառաջ, 1913, *Թ.* 8)։ 1913*ի վերջը Ընկերութիւնը լաւ գործի վրայ է. ունի Վարչ. Մարմիններ. կ'ընէ նոր ձեռնարկներ, Ընդհ. Ժողովքէն երեք անգամ բացակայողը կը տուգանուի* 5 *ղուրուշի. իր Դիւանը կը կազմէին. Ա. Թաժոյեան* (*Ատենապետ*), *Մ. Մարանճեան* (*Ատենադպիր*) (Յառաջ, 1914, Թ. 4)։

## 40. ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Ա. Համաշխարհային պատերազմէ վերջ Պոլսոյ մէջ գտնուող Կարնոյ եւ շրջակայքի Հայերը* 1919 *Յունուարին գումարումներ կ'ունենան՝ Միութիւն մը կազմելու համար։ Գ. գումարումին մասնակից են ներկայացուցիչներ՝* Կարնէն, Բաբերդէն, Երզնկայէն, Խնուսէն, Տայքէն եւ Քղիէն։ *Ժողովքը կ'ընտրէ առժամեայ Վարչութիւն մը հետեւեալ անձերէն.*

Կարին

*Արամ Վտարանդի*

*Արշ. Երկանեան*

*Միք. Ինճիճեան*

Բաբերդ

*Ս. Սիմոնեան*

*Վրթ. Մարտիկեան*

Երզնկա

*Ն. Տ. Ստեփանեան*
*Շարամ Գազանճեան*

Խնուս

*Մ. Զաքարեան*

Տայք

*Հ. Քերովբէ Վ. Յովհաննեան*

Քղի

*Երկու ներկայացուցիչներ*

*Ընդհ. Ժողովի Դիւանը կը կազմուի հետեւեալներէ.*

*Հմայեակ Խօսրովեան* *Ա. Ատենապետ*
*Սողոմոն Տ. Ազարեան* *Բ. Ատենապետ*
*Տիգրան Ամսեան* *Ա. Ատենադպիր*
*Օր. Երանուհի Մոմճեան* *Բ. Ատենադպիր*
(Ճակատամարտ, կ. պ. 1919, *թ.* 55):

*Միութիւնը կ'ունենայ զանազան Յանձնախումբեր, օրինակ՝ Ելեւմտական Յանձնախումբ* (Ժամանակ, 1919, *թ.* 3471):

*Առժամանակեայ Վարչութիւնը գործերը կը վարէ մինչեւ* 1920 *եւ կը հրաժարի: «Օգոստ.* 15*ին գումարուած Ընդհ. Ժողովը կ'ընտրէ նոր Վարչութիւն մը յաջորդ անձերէն. Հայկ Սերենկիւլեան, Միքայէլ Ինճի–*

ճեան, Թադէոս Չիլինկիրեան, Ազարիկ Գոդմալեան, Արամ Ազամեան, Հայկ Մանկասարեան, Հրանդ Դարպասեան, Կամսարական Զաքարեան, Վահան Տապալեան (Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1920, Թ. 561)։

1921ին Ընդհ. Ժողովի Դիւանը կ'ընտրուի.

Գարեգին Խսարովեան Ատենապետ
Խսրով Պալայեան Ատենադպիր

Միութիւնը յետոյ կ'ունենայ ճիւղեր Ֆրանսայի, Լիբանանի եւ Ամերիկայի մէջ։

(Անդ, 1921, Թ. 896)։

*

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԿԱՆ ԳԻՒՂ

#### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1879)

Կարնոյ Կանի Գիւղը 1879ին 350 ընտանիքէ բաղկացած զուտ Հայութիւն մը կար՝ ունենալով նաեւ քանի մը Թուրք ընտանիքներ։ Գիւղը ունեցած է Մշակութ. Ընկերութիւն մը, որուն հիմնումի տարին եւ այլ պարագաները անծանօթ են։ 1879ին խռովութիւններ պատահած եւ մասնութիւններ եղած են, որոնց մէկ արձագանգը կը կար-

*դանք. «...մատնութիւն մի եղաւ թէ Հայ*է Ընկերութիւն կազմած են... *Կանայ Վարժապետը երէկ ձերբակալուելով բանտարկուեցաւ եւ* Ընկերութեան սնտուկը *կառավարութենէն կնքուելով՝ Կարին բերուեցաւ*» (Մասիս, 1879, *Թ*. 2441)։

2. ՍԻՍԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

1911 *Փետրուարին կը տեղեկագրուի Կանէն. «Վերջերս գիւղիս երիտասարդներու միահամուռ ջանքերով հիմնուեցաւ գիւղացիական Միութիւն մը, որ իրեն նպատակ է դրեր նպաստել գիւղացիներու տնտեսական եւ կուլտուրական զարգացմանը։ Ընտրուած է* 12 *հոգինոց Մասնախումբ մը*» (Յառաջ, 1911, *Թ*. 14)։

*Ընկերութեան անունն է* Սիսական Ընկերութիւն, *որ* 1913 *Դեկտ.* 22*ին գիւղի աղջկանց վարժարանի բացումի հանդէսին առթիւ թէյասեղան մը կու տայ* (*Անդ*, 1913, *Թ*. 140)։

3. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնումի մասին լուսաբանութեան մը չենք հանդիպիր։ Կը յիշատակուի* 1913 *Դեկտեմբերին* (Յառաջ, 1913, *Թ*. 140)։ *Հաւանօրէն* 1913*ին հիմնուած է*։

## ՋԻՖԼԻԿ ԳԻՒՂ

### 1. ...ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կարնոյ Յառաջ կը գրէ 1910 Մարտ 23ին. «Կը լսենք թէ Ջիֆլիք Գիւղի բնակիչները Պր. Վտարանդիի դասախօսութեան վրայ կազմած են Միութիւն մը, որ մինչեւ յառաջիկայ Սեպտ. պիտի կառուցանէ համայնական աշխատանքով վարժարանի յատուկ նոր շէնք մը երկու բաժանումով... Նոյնպէս գիւղական համայնքը յանձն առած է համայնական ջանքերով մշակել եկեղեցւոյ պատկանող երկուք ու կէս սոմարնոց արտերը եւ արդիւնքը յատկացնել դպրոցին» (Յառաջ, 1910, թ. 22)։

## ԿԷԶ ԳԻՒՂ

### 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է հաւանօրէն 1910ին սկիզբները։ Ապրիլ 25ին կու տայ թատերական ներկայացում մը։ Կը ներկայացուի Ա. Ահարոնեանի «Ռաշիտ» ողբերգութիւնը։ Ներկայացումը կը թողու խոր տպաւորութիւն։

Միութիւնը կրցեր է ունենալ Գրադարան-Ընթերցարան մը դպրոցին մէջ, ուր կիրակի օրերը ընթերցումի դիւրութիւն կ՚ընծայուէր, իսկ անգրագէտներուն միջոց՝ ուսանելու։ Միութեան ջանքերով արտի մը եկամուտը կը յատկացուի դպրոցին (Անդ՝ թ. 32)։

## ՁԻԹՈՂ ԳԻՒՂ

### 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած կը թուի* 1910*ի սկիզբները*: 1910 *Մայիս* 9*ին կը ներկայացնէ Ահարոնեանի «Ուխտաւորը», «Միհրդատ» ողբերգութիւնը եւ զաւեշտ մը: Ներկայացումին փութացած են մօտաւոր գիւղերէն ալ: Տեղի ունեցած են նաեւ մեներգ եւ խմբերգներ: Հասոյթը —* 5 *եւ մէկ քառորդ ոսկի — յատկացուած է Գիւղի Գրադարան–Ընթերցարանին: Մօտակայ գիւղացիներ խնդրած են որ թատերախումբը իրենց Գիւղերուն մէջ ալ ներկայացում տայ* (Յառաջ, 1910, *թ*. 37):

## ԴՈՒՆԻԿ ԳԻՒՂ

### 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Կը յիշուի* 1914 *Յունուարին, երբ արդէն իր Գրադարանը ունի, որուն ի նպաստ, հարանտեսի մ'առթիւ, տասուկէս ղուրուշ կը հաւաքէն Միութեան անդամները* (Յառաջ, 1914, *թ*. 6):

*

## ԵՐԶՆԿԱ

### 1. ՍՈՒՐԲ ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1848)

Երզնկայի *հնագոյն մշակութային Ընկերութիւնը հիմնուած է* 1848*ին, քաղաքին*

մէջ, ինչպէս կը պատմէ ժամանակակից հայ թերթը. «Ազնուամեծար Ազգասէր անձ մը անցեալները Երզնկայ գտնուելով, նոյն քաղաքին մէջ խիստ ազգօգուտ բարեկարգութիւններ հաստատել տուեր է իր բարեպաշտ եւ ուսումնասիրական յորդորանօքը եւ դրամական նուիրաց քաջալերութեամբը: Նախ եւ առաջ Սուրբ Ներսիսեան անուամբ Ընկերութիւն մը կարգադրեր է եւ անոր մշտնջենաւոր եկամուտ անօրիներ է, որուն արդեամբը մանկանց եւ աղջկանց դպրատուններ պիտի կառավարուին: Ասոնց մէջ բատ կարի արժանաւոր դաստատուներ եւս կարգեր է եւ դպրատանց հոգաբարձութիւնը յիշեալ Ընկերութեանը յանձներ է, որ նոյն քաղաքին մէջ գտնուած հայազգի ուսումնասէրներէն եւ երեւելիներէն բաղկացեալ է... այս պատուական անձը Միսաքեան յարգամեծար Գէորգ աղան է» (Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա 1849, Թ. 330, Փետր. 4):

Ուրիշ ծանօթութեան չենք հանդիպած: Մինչեւ 1856 որեւէ նոր Ընկերութիւն չի յիշուիր:

## 2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

Այս Ընկերութիւնը Պոլսոյ մէջ հիմնուած է, հաւանօրէն 1856ի սկիզբները: Յիշատակութիւնը կ'ըլլայ 1856 Սեպտ. 28ին, Երզնկացի Թադէոս Ս. Բագրատունիի կողմէ, որ կը գրէ. «...Երզնկայու վիճակն ալ

*Գերապ. Տէր Գրիգորիս Սրբ. Արքեպ.ին ար-ժան հոգողութեանն յանձնուիլը՝ նոյն երկ-րին ժողովրդեանը մեծ ուրախութեան առիթ եղաւ... Արդէն դեռ նոյն վիճակը չդարձած, Նորին Ս. Հայրութեան խրախուսանօքը եւ իւր բարեխնամ հովանաւորութեանը ներքեւ* Կ. Պոլիս *բնակեալ Երզնկացի ժողովուրդը իրենց երկրին վիճակը լաւցնելու եւ իրենց զաւակունքը բարոյականութեան ու գիտու-թեան մէջ կրթելու համար՝* Ընկերութիւն *մը կազմեցին՝ ամեն մէկ բաժինը* 50 *ղու-րուշի եւ քանի մը աւուր մէջ* 200 *բաժինէն աւելի հաւաքուեցաւ ջանիւք Երզնկացի Տ. Ստեփաննոս բարեջան քահանային: ...Այս Ընկերութեան գլխաւոր եւ առաջին նպա-տակն է...* քաղաքին մօտը գտնուած Շողա-կաթի Ս. Աստուածածնայ վանքին մէջ ազ-գային վարժարան մը հիմնել եւ անոր մէջ թէ՛ քաղաքէն եւ թէ շրջակայ գիւղերէն տղայք հաւաքելով կրթել եւ գիտութեան քաղցր ճաշակը անոնց հաղորդել. *Նմանա-պէս քաղաքին դպրոցներուն վիճակն ալ լաւցընել ու բարեկարգել...»* (Մասիս, *Կ. Պ.* 1856, *Թ.* 245):

*Դժբախտաբար չէ յիշած Ընկերութեան* անունը:

### 3. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856—1859)

1859 *Յունիս* 2 *Թուականով Երզնկայէն կը գրեն.* «...ընդհանուր երզնկայեցւոց

խնդրանօքն *Հաստատուած* Լուսաւորչեան *սիրայօղ* Ընկերութիւնը *իր յանձն առած ազգային պարտաւորութիւնը ամենայն սիրով կատարելով՝* կարողացաւ մեր երկրին մէջ զարթուցանել ընթերցասիրութիւնը, որով հիմայ եւ ոչ մէկ ազգային մը կը գտնուի քաղաքիս մէջ որ այս Ընկերութեան տարեկան բաժանորդագրուած չըլլայ...» (Մասիս, 1859, *Թ*. 388)։

*Ընկերութիւնը պաշտպանն է Երզնկայի* Լուսաւորչեան դպրոցին, *որուն աւագ ուսուցիչն է*, 1859*ին*, Թադէոս Մ. Ս. Բագրատունի (*Անդ*)։

4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Մասիս *թերթի բաժանորդներու ցանկին մէջ* Երզնկան *ալ կը գտնուի հինէն ի վեր, մերթ այս եւ մերթ այն անհատին անունով*։ 1862 *Ապրիլ* 21*էն սկսած Երզնկայի բաժանորդն է* «Ընթերցասիրաց Թանգարան»*ը, որ ուրիշ բան չէ, եթէ ոչ* «Ընթերցասիրաց Ընկերութեան» *Թանգարան* – Ընթերցարանը (*Հմմտ*. Պեզասեան Թոչնիկ, 1864, *էջ* 106)։

5. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863—1864)

*Կը յիշուի* 1864 *Մայիս* 24*ին, երբ Ազգ. Սահմանադրութեան տարեդարձը կը տօնախմբէ մեծ հանդիսութեամբ, Եփրատի ափին*, 20 *վրաններու տակ ու* 500*է աւելի հանդիսականներու ներկայութեամբ* (*Տե՛ս* Արծուիկ Տարօնոյ, 1864, *Թ*. 23, *էջ* 91)։

*Բարեկարգ վիճակի մէջ է Ընկերութիւնը եւ կը դադրի 1864ին* (Պեգասեան Թռչնիկ, 1864, *էջ* 141)։

1866*ին Վարչութիւնը կը կազմէին*·
*Յարութիւն Գասմաճեան Ատենապետ*
*Սիմէոն Մ. Խաչատուրեան Ատենադպիր*
(Մասիս *փոքր*, 1866, *Թ*. 67)։

6. ԹՈՒԲԷՆԵԱՆՑ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Կը կազմուի* 1864*ի Յունիս–Յուլիսին* (Պեգասեան Թռչնիկ, 1864, *էջ* 141)։

7. ԱՂՔԱՏԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1868)

1868*ին կը յիշուի եւ կ՚ըսուի թէ* «ի վաղուց անտի շարունակութիւնը արժանի է գովութեան» (Մասիս *Փոքր*, 1868, *Թ*. 192)։

8. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԸՆԿԵՐԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ (1870)

*«Սկսնակ Բանասէր» միայն կը յիշէ* (Արեւելք, 1898, *Թ*. 3854)։

9. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Լոկ անունով կը յիշէ «Սկսնակ Բանասէր»* (Արեւելք, *անդ*)։

10. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Ընկերութեան Ատենապետ*՝ Յարութիւն Ս. Ղազանճեան 1871 *Մայիս* 27*ին կ՚աւետէ*

Պոլսոյ Փունջին Երզնկայէն. «Անչափապէս ուրախ եմ եւ ի սրտէ զգածեալ՝ զի բարեբախտութիւն կ'ունենամ աւետել Ձեր Ազգասիրութեան Անձնուէր Ընկերութեան ճիւղի մը քաղաքիս մէջ կազմութիւնը, որոյ նպատակը արդէն ազգին ծանօթ է եւ բաղձալի։ Քաղաքիս զգայուն երիտասարդութիւնը բաւական ժամանակէ ի վեր Անձնուէր Ընկերութեան պատուական անունը եւ օգտաշատ գործունէութիւնը լսելով ի հեռուստ՝ յանհնարիս կը տոչորէր չկրնալով որ եւ է կերպիւ նորա մասնակցելու յաջողութիւնը գտանել. բայց այսօր, փառք Երկնից, հնչեց այն բարեդէպ վայրկեանը, յորում ազգասիրութեան իղձը եւ ուսման ծարաւը վերջապէս ծնան այն սերտ միութիւնը, որ թմբրեալ միտքերն իսկ ի խորոց զարթուցանելով միացուց քաղաքիս երիտասարդական խումբը անձնուիրութեան փառաւոր դրօշին ներքեւ, ջանադրութիւն ուխտելով այն մեծ գործին, զոր ստանձնած է քանի մը տարիէն ի վեր Անձնուէր բազմարդիւն Ընկերութիւնը...» (Փունջ, 1871, Թ. 674)։

Ընկերութեան Վարչութիւնը կը կազմեն 1871 Դեկտ.էն.

| | |
|---|---|
| Յարութիւն Ղազանճեան | Ատենապետ |
| Մ. Յակոբ Բենիրճեան | Ատենադպիր |
| Յակոբ Մ. Մ. Փափազեան | Տեսուչ |
| Մ. Համբարձում Սիւրմենեան | Համարակալ |
| Մ. Շաւարշ | Համարակալ |

(Փունջ, 1872, Թ. 707)։

*Ընկերութիւնը* 1000 *ղրշ.ի դեղք եւ գրենական կ'ապսպրէ Պոլսէն* (Փունջ, 1871, *Թ.* 687)։

*Լաւ սկսուած այս Ընկերութիւնը՝ չ'ունենար յարատեւութիւն* (*Տե՛ս* Փունջ, 1872, *Թ.* 755, 769. 1874, *Թ.* 914։ — Հայրենիք, 1872, *Թ.* 131, 139)։

### 11. ԵԿԵՂԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1877—1878)

*Կը յիշուի իբր միակ Ընկերութիւն Երիզայի*, 1878*ին*, *Պատրիարքական կոնդակին մէջ* (Լոյս, *Կ. Պ.* 1878 *Թ.* 76)։ *Ե՞րբ հիմնուած է՝ չ'ըսուիր։ Հաւանական կը թուի որ գոնէ* 1877*ին սկիզբ առած ըլլայ*։ 1881*ին դադրած է եւ* Յ. Շաւարշ *կ'առաջարկէ* «Վերահաստատել *Եկեղեաց Միութիւն անուն Ընկերութիւնն եւ արդիւնքը միմիայն Քրիստինեանի (աղջկանց վարժարան) յատկացնել*» (Մասիս, 1881 *Թ.* 3079)։ *Երզնկայի Առաջնորդ՝ Դիմաքսեան Սրբազան կը գովէ Շաւարշի առաջարկը եւ անմիջապէս բաժանորդութիւն մը բանալով՝* 60 *հոգի կ'անդամակցին՝ մէկ բաժինն ըլլալով* 40 *փարա։ Գործ. ժողովը կ'ընտրուի.*

*Յ. Շաւարշ*
*Ա. Քաջբերունի*
*Հ. Սիւրմէնեան*
*Ս. Ամատունի*

(Մասիս, *Անդ*)։

12․ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է Պոլիս* ։ *Հիմնադիրն է* Կ․ Ս․ Ղազանճեան (Մանզումէի էֆքեար, 1878 *Թ*․ 3760) ։ *Հիմնումի թուականն է* 1878 *Փետրուար—Մարտ* (Փունջ, 1878 *Թ*․ 1265) ։ *Յունիսին արդէն ունի իր* Կանոնագիրը *եւ Գործադիր Ժողովը, որ կը կազմեն*․

*Վ․ Ալթունեան* — *Ատենապետ*
*Գ․ Սէյլխեան* — *Ատենադպիր*
*Ա․ Եփրանեան* — *Գանձապետ*
*Մ․ Դնպրեան* — *Անդամ*
*Յ․ Մարկոսեան* — *Անդամ*

13․ ՔՐԻՍՏԻՆԵԱՆ ՍԱՆՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* 1879 *Յունիս* 1*ին* ։ *Հիմնադիրներն են Երիզայի* Քրիստինեան վարժարանի *Սանուհիները*, *նպատակ ունենալով*․ «Աղքատիկ աշակերտուհեաց դպրոցական պիտոյքները հոգալէ զկնի, տարին մի անգամ անպաշտպան մնացող աշակերտուհիքը զգեստաւորել եւ Թանգարան մի հաստատել Քրիստինեան վարժարանին մէջ» (Հայրենիք, 1881 *Թ*․ 730) ։

*Միութեան Տնօրէն Ժողովը կը կազմեն* 1881*ին*․

*Օր․ Նեվրիկ Մ․ Միքայէլեան Ա․ Ատենապետ*
*Օր․ Նոյեմի Վ․ Քաջեան Բ․ Ատենապետ*
*Օր․ Թագուհի Աշըգեան Ա․ Ատենադպիր*
*Օր․ Շահանդուխտ Գունտախեան Բ․ Ատենադպիր*

Օր․ Գայիանէ Ղազանճեան Ա․ Հաշուակալ
Օր․ Սրբուհի Փափազեան Բ․ Հաշուակալ
Օր․ Արտաշամա Ճ․ Դանիէլեան Գանձապահ

Անդամավճարն է տարեկան մէկ դահեկան։ Անդամուհիներու թիւը բարձրացած էր 1881ին՝ 102ի։ 13 բարերարուհիներ Միութեան կը նուիրեն մանուսա, պասմա, խասա, մաքարա, ամելիք եւ այլն։ Միութիւնը 20 աղքատ աշակերտուհիներու դպրոցական պիտոյքը կը հոգայ եւ զգեստները կը շինէ (Հայրենիք, Անդ)։

## 14․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

1879 Յունիս 23ին «Նորոգ կազմեալ» է եւ ունի Գործ․ Ժողով․ Կիրակի օրերը Եփրեմեան մասնաւոր դպրոցը հաւաքուելով՝ դասախօսութիւն կ՚ընեն․ կը ջանան «Թատրոն մը կառուցանել», որուն համար տոմսեր կը գնեն․ ունին 200 ոսկի (Մասիս, 1879 Թ․ 2372)։

Մ․ Փորթուգալեան այցելելով Երզնկա՝ 1879 Նոյեմբերին կը գրէ որ «Թատերական Ընկերութիւն կազմուած եւ մի թատրոն կառուցուած է» (Մասիս, 1879 Թ․ 2482)։ Սխալ է այդ տեղեկութիւնը։ Թատերական Ընկերութիւն չունի Երզնկա 1879ին։ Թատրոն կառուցանողն է Ուսումնասիրաց Ընկերութիւնը, ինչպէս կը գրէ «Պարոյր» 1879 Սեպտ․ 29ին․ «Ուսումնասիրաց Ընկերութիւնը կը ջանայ մինչեւ մէկ ամիս Թատրոնի շինու-

թիւը աւարտել, *որպէսզի սկսի Ազգ. ներկայացուցիչներ տալ»* (Մասիս, 1879 *Թ.* 2483)։ *Ընկերութեան անդամները քար եւ աղիւս կը կրեն՝ օր առաջ աւարտելու համար Թատրոնի շինութիւնը* (Հայրենիք, 1879 *Թ.*562)։

*Ընկերութիւնը կը բանայ* կիրակնօրեայ վարժարան *եւ* Լսարան (Մասիս, *Անդ*)։

*Յիշատակութիւն չկայ թէ* Ուսումնասիրաց *Ընկերութիւնը նաեւ* Թատերական *Ընկերութիւն կոչուի*։

15. ՄԻՈՒԹԻՒՆ ԲԱՐՁՐ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵԱՑ (1880)

*Կը հիմնուի* 1880 *Օգոստոս* 30*ին*։ *Տարաթական բաժանորդագրութիւնն է* 40 *փարա*։ *Մինչեւ Սեպտ.* 26 *ունեցած* է 250 *անդամ* (Թերճէմանը էֆքեար, 1880 *Թ.* 951, 1015)։ 1881*ի սկիզբը ունէր* 1000 *բաժանորդ* (Մասիս, 1881 *Թ.* 2828)։ *Ընկերութեան գաղափարը Առաջնորդ Հմայեակ Սրբ. Դիմաքսեանինն է. Պոլսոյ Պատրիարքը քաջալերութեան կոնդակ կը գրէ, իսկ Միութիւնը* 1880 *Նոյեմբերին «սկսած է կանգնել իւր գաւառական* Թանգարանն, *որ պիտի հաւաքէ* Ազգ. ամէն տեսակ հնութիւնք եւ գրեանք..» (Թերճ. էֆ. 1880 Թ. 985)։

16. ԱԶԳԱՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Պոլսոյ համանուն Ընկերութեան մէկ ճիւղը կը կազմուի Երզնկայի մէջ* 1880 *Դեկտեմբերին*։ *Ժամանակակից թերթի մը թղթակի-*

ցը կը պատմէ․«Երեքշաբթի օր Քրիստինեան Վարժարանի մէջ 80էն աւելի պատուաւոր գերդաստաններէ Հայ կանայք եւ օրիորդք ներկայ եղած էին, նաեւ երկու իտալացի տիկիններ… ներկայ եղողները բաժանորդագրութեան ցանկ մը բանալով՝ ամէնքն ալ իրենց անունն նշանակեր են…» (Թրճ․ Էփք․ 1880 Թ․ 1015։ —Մասիս, 1881 Թ․ 2835)։

### 17․ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

Երզնկայի մէջ 1879ին հիմը դրուած է փայլուն ապագայ մ'ունեցող վարժարանի մը, որուն անունն է «Ընկերական Վարժարան» (Տե՛ս իր մասին Մասիս, 1881 Թ․ 2870 եւ Հողդար, Սեբաստիա 1914 Թ․ 7)։ Այդ Վարժարանի Սաները 1880ին կը կազմեն Սանուց Միութիւն անունով Ընկերութիւն մը, նպատակ ունենալով «կարեւոր գրեանց Թանգարան (Գրադարան) հաստատել, Կիրակի օրեր գումարուիլ եւ ուսումնական նիւթոց վրայ վիճաբանել» (Մասիս, 1881 Թ․ 2872)։

Միութեան դրամագլուխն է 25 ոսկի (Անդ)։

### 18․ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

Կազմած են Ընկերական Վարժարանի Սաներն ու ուսուցիչները։ Իրենց նպատակն է․ 1․ Սաներու եւ Պաշտօնէից մէջ փոխադարձ ճշմարիտ մտերմութիւն, անկեղծութիւն եւ յարգութիւն հաստատել, ծառայա-

*կան երկիւղն ու հնազանդութիւնը բառնալով.* 2. *Աշակերտք ազատութեան ու համարձակութեան վարժեցնել.* 3. *Աշակերտաց վարուց եւ բարուց ուղղութեան համար հարկ եղած միջոցներն խորհիլ ու գործադրել»* (Մասիս, 1881 *Թ.* 2872)։

### 19. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ (1891)

*Կազմուած է* 1896էն 5 *տարի առաջ եւ ունեցած է հոգը «կարօտ ազգայիններու համար նպաստ հաւաքելու եւ բաշխելու»* (Արեւելեան Մամուլ. *Զմիւռնիա* 1896, *էջ* 329)։ Աղքատախնամը *այդ իր ստանձնած պաշտօնը «Կատարած է անսգիւտ պարտաճանաչութեամբ ու յաջողութեամբ», ունենալով գործող անդամներ.* Հայրապետ Գալփայեան եւ Խաչիկ Սահակեան (*Անդ*՝ 329—32)։

### 20. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1900—1907)

*Կազմութեան թուականը մեզ անծանօթ է։ Սիւրմէնեան (Երզնկա, Գահիրէ* 1947 *էջ* 231) *եւս չի կրնար ճշդել։ Նա կը գրէ, «Կըրթասիրացը կազմուած է* Սահմանադրութենէն առաջ, Եզնիկեան Վարժարանի Սաներու կողմէ։ *Ունէր իրեն յատուկ Գրադարանը, գրքերը ձրիաբար կը տրամադրէր երիտասարդութեան ընթերցումի համար։ Անոնց մէջ կը յիշուին Սեպուհ Խանճեան, Ռուբէն Անդիկեան»։*

21· ԵԿԵՂԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* 1908*ի Սահմանադրութե-նէն անմիջապէս յետոյ (Միւրմէնեան, Անդ)։*

22· ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

230 *երիտասարդներու կողմէ հիմնուած է* 1908*ին։ Նպատակն է․ Զարկ տալ կրթա-կան գործին՝ բանալով Գրադարան-Ընթեր-ցարան* (Գործ, *Թիֆլիս* 1908 *Թ*․ 17)։

23· ԵԿԵՂԵԱՑ ԿՐԹԱՍԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

1909*ին «Կրթասիրաց» եւ «Եկեղեաց» Միութիւնները միանալով՝ կը կազմեն* «Եկե-ղեաց Կրթասէր Միութիւն»*ը, որ կ'ու-նենայ* 400—500 *անդամներ, որոնցմէ կը յի-շուին․ Գուրգէն Լալեան, Դերենիկ Ճիզմէ-ճեան, Գեղամ Սահակեան։ Միութիւնը ու-նէր Գրադարան—Ընթերցարան, Լսարան եւ Թատրոն՝ առանձին Յանձնաժողովներով* (Բիւզանդիոն, 1910 *Թ*․ 4103)։ —*Միւրմէ-նեան, (Անդ)։*

*Թղթակից մը*, 1910*ին — Միւրիմացու-թեամբ — կը գրէ որ «Եկեղեաց» եւ Թա-տերասիրաց» Միութիւններու միաւորումով կը կազմուի* Եկեղեաց-Թատերասէր Մի-ութիւն»*ը* (Յառաջ, *Կարին* 1910 *Թ*․ 80,89)։

1914*ին Երզնկայի գլխաւոր Մշակ․ Ընկե-րութիւնն է* (*Տե՛ս* Հողդար, *Սեբաստիա* 1914 *Թ*․ 79)։

24. Հ. Բ. Ը. Մ.Ի ՄԱՍՆԱՃԻՒՂ (1910)

*Կազմուած է* 1910 *Մարտին սկիզբը*։ Մարտ 25*ին կ'ունենայ իր անդրանիկ նիստը եւ կ'ընտրէ հետեւեալ Վարչ. Ժողովը*.

*Երուանդ Վրդ. Փերտահճեան, Յարութիւն Լեփեան, Տօքթ. Տիգրան Փափազեան, Գրիգոր Լեփեան, Ղազար Մոմճեան, Միսաք Սիւրմէնեան, Խաչիկ Ալթունեան* (Բիւզանդիոն, 1910 *Թ*. 4103)։

25. ԵՐԶՆԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏՈՒՆԸ (1910)

1910 *Մարտի սկիզբները կազմուած է՝ նպատակ ունենալով. Աղքատներուն նիւթական եւ բարոյական վիճակը բարձրացնել՝ աշխատութեան միջոցաւ* (Յառաջ, *Կարին* 1910 *Թ*. 37)։ *Ընկերութեան մուտքի վճարքն է* 10 *ղուրուշ, իսկ ամսական անդամավճարը* 2 *ղուրուշ*։ *Գործ. Մարմինը կը կազմեն*.

*Տօքթ. Խ. Պարթեւ* *Ատենապետ*
*Ռ. Տըմպրեան* *Ատենադպիր*
(Յառաջ, *Անդ*)։

26. ԿՐՕՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Կը, յիշուի* 1910 *Հոկտ*. 9*ին* (Յառաջ 1910 *Թ*. 80)։ *Ունի* Լսարան, (*Անդ Թ*. 89)։

27. ՀԱՅ ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է*1911 *Մարտի սկիզբը*, «*որ* ինքնազարգացման զանազան ճիւղերու հետ *մըդում պիտի տայ նաեւ մարմնամարզի, ա–*

*ողջապահութեան եւ կազդուրիչ զբօսանքներու* (Մարմնամարզ, *Կ. Պ.* 1911, *էջ* 160: –Ազատամարտ, 1911 *Թ.* 542):

28. ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1914)

*Երիզայի Կեդրոնական Վարժարանի Սաները կազմած են* «Սանուց Միութիւն» *մը, որ* 1914*ին ունէր իր Գրադարանը՝* «*Ս. Սահակեան*» *անունով եւ ունեցած գրքերուն թիւը՝* 200 (Հողդար, 1914, *Թ.* 7):

29. ԵԿԵՂԵԱՑ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կը կոչուի նաեւ* «*Եկեղեցւոյ* վերաշինութեան *Միութիւն*»: *Հիմը կը դրուի* 1919 *Օգոստոսին Պոլսոյ մէջ* (Ժամանակ, 1919 *Թ.* 3588): 1921*ին Ատենապետն է Հայկ Արամ Տ. Խաչատուրեան եւ Ատենադպիր՝ Տ. Դանիէլեան* (Թէոդիկ, *Ամէն. Տարեցոյցը* 1921, *էջ* 306: –*Հմմտ.* Ժողովուրդի Ձայնը, 1921 *Թ.* 893):

*

ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ՄԵՂՈՒՑԻԿ ԳԻՒՂ

1. ԱՏՈՎՄԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1868)

*Կը յիշուի* 1868 *Ապրիլ* 18*ին իբրեւ* «Բարեկարգ Ընկերութիւն» (Երիզա, *Կ. Պ.* 1868, *էջ* 78):

## ՄԱՀՄՈՒՏԻԷ ԳԻՒՂ

### 1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1912)

*Կը յիշուի* 1912*ին* ։ *Հիմնած են Դիտրոյ-տի* (*Ամերիկա*) *գաղթական Մահմուտիկցի-ները*, *որոնք Գիւղի դպրոցի վերաշինութեան համար* 77 *տալեր կը հանգանակեն* (Ազատա-մարտ, 1912 *Թ*. 865) ։

## ԿԻՒԼԻՃԷ ԳԻՒՂ

### 1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմած են Ամերիկա գաղթած Կիւլի-ճէցիներ*, 1910*ին* ։ 1914*ին ունէր* 40 *անդամ*՝ 800 *տալեր դրամագլուխով* ։ *Ամէն տարի Գիւ-ղի դպրոցին համար գումար մը կը ղրկէ* ։ *Գիւղին մէջ ալ ունի մասնաճիւղ մը*, *որ բա-ցած է սպառողական խանութ մը*, *որմէ տա-րեկան կը գոյանայ* 20—25 *ոսկի* (Յառաջ-Երկիր, *Կարին* 1914 *Թ*. 8) ։

*

## ԽԱՐԲԵՐԴ

### 1. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

Խարբերդի *հնագոյն մշակութային Ընկե-րութիւնն է այս*, *հիմնուած* 1847*ի վերջերը*, *այն է*՝ 1848 *Յունուարէն* «քանի մը ամիս ա-ռաջ» (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1848 *Թ*. 303) ։ *Հիմնումը եղած է Պոլսոյ Պատ-*

*ըխարքի յորդորներով եւ Խարբերդի Առաջնորդ Գէորգ Վարդապետին ջանքերով, իր նպատակն ըլլալով.* «Խարբերդ քաղաքի Խուլէի Ս. Գէորգ վանքին մէջ բարեկարգ դպրոց մը հաստատել. նմանապէս Չմշկածագի եւ Կապան — Մատենի եւ այլ գեղօրէից դպրատունները ...բարեկարգել» (*Անդ*)։ *Բացուելիք դպրոցին ուսուցիչ կը կարգուի Ամասիացի Յովհաննէս, իսկ Գէորգ Վրդ.* 10,000 *ղուրուշի գիրք կը դնէ։ Ընկերութեան Պոլսոյ ներկայացուցիչն է ծանօթ պատմագէտ Աւետիս Պէրպէրեան, իսկ Ընկերութեան տարեկան բաժնեգինը՝* 50 *ղուրուշ* (*Անդ*)։

2. ԵՂԲԱՅՐԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1865)

*Ծագումը անծանօթ։ Կը յիշուի* 1866*ի* սկիզբը՝ *Ազգ. Սահմանադրութեան եւ Առաջնորդի կապակցութեամբ* (Մասիս, *Կ. Պոլիս.* 1866 *Թ.* 733)։

3. ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1865)

*Կը յիշուի վերինին հետ,* 1866*ին* (Մասիս, *անդ*)։ 1872*ին կը գործէ* (Մանզ. Էֆքիար, *Կ. Պ.* 1872 *Թ.* 1837)։ 1879*ին պաշտպանութեան տակ ունի դպրոց մը, որուն յառաջդիմութեան համար միջոցներ կը խորհի* (Մասիս, 1879 *Թ.* 2372 *եւ* 2402)։

4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860—1865)

*Այս երեք հայ Ընկերութիւնները միասին* 4 *հայ թերթերու մէջ բողոքագիր նամակ մը*

*կը հրատարակեն՝ փափաք յայտնելով որ Խարբերդցի եւ առաջնորդական փոխանորդ Պետրոս Վարդապետ Խարբերդի Առաջնորդ ընտրուի* (Մասիս, *անդ*)։

5. ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Հիմնուած է* 1865 *Հոկ.* 1*ին*։ *Իր երկրորդ տարեկիցի հանդէսը կը տօնէ* 1867 *Հոկ.* 1 *ին պատարագով, ճառախօսութեամբ, երգով եւ թատերական ներկայացումով*, «Խարբերդի մէջը առաջին լինելով՝ *անհրաժեշտ պարտք կը զգամ իմ ջերմագին շնորհակալիքներս հրապարակաւ յայտնելու նոյն Ընկերութեան*», *կը գրէ Արխատակէս Վրդ. Տ. Սարգսեան Խարբերդէն* 1867 *Նոյ.*12*ին* (Մասիս, 1867 *Թ.* 826)։

*Ընկերութիւնը կը յաջողի շուտով բանալ իր* համանուն վարժարանը՝ *տալով անոր* բարձրագոյն կրթական յարկի մը նկարագիրը, *ինչպէս կը տեսնուի իր երկրորդ տարեկիցի հանդէսէն* (*Տես* Մասիս, 1867 *Թ.* 826)։

*Ընկերութիւնը կազմողներն եղած են* «200–300ի *չափ* աղքատ անձինքներ, որոնցմէ բան չէր յուսացուեր *եւ կարգ մը նախապաշարեալ անձանց* ծաղու նիւթ եղաւ ի սկզբան, *ծաղրը յետոյ* նախանձու եւ ատելութեան փոխուեցաւ, *զի այս* անձնշան մարդիկներն եղան ազգի յառաջդիմութեան համար դիւցազնական նիգեր թափող… *Այս Ընկերութեան* նպատակն *ըլլալով ազգին* յառաջ–

դիմութիւնն ու լուսաւորութիւնը... *առաջին անգամ բաւականացաւ* փոքրիկ սենեակներու մէջ ուսումն եւ կրթութիւն մատակարարել հայ աղջկանց եւ տղայոց... *Այս տարի* ... *գգաց* երկսեռ վարժարանաց նորոգ շինութ-լու *կարեւորութիւնը* ... *ձեռք ձեռքի տուին Սմբատեանք եւ* ...մեծ աշխատութեամբ բարձրացուցին սոյն ուսման տաճարը» (Մանզումէի էփքեար, Կ. Պ. 1868 *Թ*. 817)։

*Թէեւ վարժարանը «երկսեռ» կ'ըսուի՝ սակայն միեւնոյն չէնքին վերի յարկը մանչերու եւ վարինը աղջկանց յատկացուած է՝ զատ զատ մուտքի եւ ելքի դռներով*. 1868*ին վարժարանը ունէր* 150 *աշակերտ—աշակերտուհի* (Մանզումէ, *անդ*)։

1869 *Հոկտ*. 5ին *Ընկերութեան* չորրորդ *տարեդարձը կը տօնեն* 2000 *հանդիսականներով*, Սմբատ Թագաւորի *ոսկեզօծ պատկերով եւ* հայ ազգային դրօշակով։ *Տեղի կ'ունենան ճառեր, երգեր, ներկայացում* (Սմբատ Առաջին, 5 *արարով*) եւ տրամախօսութիւն (Մանզ. էփքեար, 1869 *Թ*. 1075)։

*Հնադոյն Թերթերու ժամանակակից այս աղբիւրները ձեռքի տակ չունենալով*՝ «Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը»*ի հեղինակը* Պր. Վահէ Հայկ *Ընկերութեան հիմնումի տարին կը կռահէ* «1865*ին* կամ տարի մը վերջը» (*Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը, Նիւ Եորք* 1959, *էջ* 403)։ *Ընկերութեան անուան* («Սմբատեան») ծագումն ալ մութի մէջ

կը մնայ», *կ'ըսէ* (Անդ), *մինչդեռ ինչպէս տեսանք* (Մանզ. էփէմեր, 1869 Թ. 1075) Բագրատունեանց «Սմբատ» թագաւորին *անունով հիմնուած է Ընկերութիւնս*։

1874ին *Ընկերութեան վարժարանի մանչերու բաժինը կու տայ* 2 շրջանաւարտներ *բարձրագոյն կարգէն*։ *Նոյն* 1874ի *Հոկտեմբերին կը բանայ Ընկերութիւնը* Արհեստաւորներու վարժարան մը՝ 40—45 *աշակերտներով* (Հայրենիք, Կ. Պ. 1875 Թ. 231)։

*Յաջորդ* 1875—76 *տարիներուն Ընկերութիւնը կը բանայ բարձրագոյն վարժարան մը*, *որ* 1878ին «Ուսումնարան» *եւ* «Ճեմարան» *կը կոչուի*։ *Ահա ասոր նկարագրութիւնը* Պօղոս Վրդ. Նաթանեանէն, *որ* 1878ին *այցելած Խարբերդ՝ անձամբ տեսած է*. «*Քաղաքին մէջ կայ մի փառաւոր* Ճեմարան *գետնայարկ (երկյարկանի) բարձր դիրքով, բայց գեղեցիկ զարդարեալ դրասեղաններով եւ Հայաստանի պատկերներով*։ *Ճեմարանի վերնայարկը փոքրիկ սենեակ մ'ալ ունի*, իգական սեռի *յատկացեալ*... *Այս Ճեմարանի մէջ հասարակ ընթերցանութիւն բնաւ չ'աւանդուիր*, *որովհետեւ քաղաքի միւս նախակրթական դպրոցներէն քննութեամբ հոն* Ուսումնարան *կ'առնուին*։ *Աշակերտուհիք յիսունի չափ են*... *Օրիորդաց վարժուհին Պոլսեցի Խասգիւղի Որբանոցէն է*... *Սոյն երկսեռ* Ուսումնարանին *նիւթական եւ բարոյական մատակարարութիւնք* երկու հարիւր յիսուն

անդամներէ բաղկացեալ Սմբատեան Ընկե-
րութենէն կախում ունին: *Արդարեւ այս Ըն-
կերութիւն իր անուան արժանի է իւր գործ-
քով. ունի* քսան անդամէ բաղկացեալ վարչա-
կան մի ժողով: *Իր եկամուտն է իւրաքանչիւր
բաժանորդաց ոմանց հինգ, ոմանց երեք եւ
ոմանց երկու Օսմ. ոսկիներուն տոկոսեաց
չափը... Ամէն Կիւրակէ ճեմարանի մէջ դաս-
տիարակութեան վրայօք ատենախօսութիւնք
կը լինեն եւ ազգային սրտառուչ երգեր կ'եր-
գուին* նուագարաններով...» (*Պօղոս Ծ. Վ.
Նաթանեան, Արտօսր Հայաստանի. Կ. Պ.*
1879, *էջ* 123—125):

*Ընկերութիւնը կը շարունակէ իր կրթա-
կան գործը*: 1879*ին* Մասիսի *թղթակիցը
կը գրէ Խարբերդէն*, «Սմբատեան Ընկերու-
թեան դպրոցէն զատ դպրոց չկայ գովու-
թեան արժանի» (Մասիս, 1879 *Թ*. 2263): *Իր
դպրոցներուն համար տարեկան* 10,000 *ղրշ.
ծախք կ'ընէ*:

1880*էն սկսած կը տկարանայ Ընկերու-
թիւնը. կազմալուծուելու վտանգին կ'են-
թարկուի*: 1883*ին քայքայուած է Ընկերու-
թիւնը, ինչպէս կը տեղեկագրէ թղթակից մը*
1883 *Փետրուար* 20 *թուականով*. «*Խարբեր-
դու Հայ երիտասարդութիւնը գրեթէ մեռեալ
է... սատ ոչինչ կայ քաղաքերական բայց ի*
խարբերդու երբեմն պարծանքն եղող *եւ* այժմ
կազմալուծեալ վիճակի մէջ եղող Ընկերու-
թիւն *մը*, *որ* Սմբատեան *անուամբ ծանօթ է*:

*Այս Ընկերութիւնն ... երբեմն ձեմարան ա-նուան արժանի վարժարան մը հաստատելու եւ բաւական ժամանակ զայն կանգուն պահե-լու կարող եղած է ...»* (Մասիս, 1883 *Թ*. 3420) ։

1887*ին Թղթակից մը կը գրէ որ «... Մի-ութիւնը* ցրուած լինելով ... *շատ հայա-ծանք, շատ Թշնամիներ ունեցաւ Սմբատեան Ընկերութիւնը* չորպանի *դասու մը կողմէ, ամէնէ վերջ* ինկաւ *ալ ...»* (Արեւելք, *Կ. Պ*. 1887 *Թ*. 1016) ։

*Սակայն Ընկերութիւնը սիրող «նոր ու-ժեր եւ նախկին գործիչք մէկտեղ գալով՝ ա-մեն բան ի լաւն շրջեցին ... կազմեցին նոր խորհուրդ ու ժողով* հիմնագրի մը համա-ձայն, որով սովորաբար կը վարէին յառաջ ... *բացին* աղջկանց վարժարան մը, *ունեցան ... իբր քառասուն աղջիկ վարժուհույ մը խնա-մոքն»* (*անդ*) ։

*Ասկէ կը տեսնուի Թէ Սմբատեան Ընկե-րութիւնը ունեցած է* Հիմնագիր *մը, այ-սինքն՝* Կանոնագիր, *որ կը գծէր Ընկերու-Թեան վարչական եւ անդամական պայմանនե-րը ։ Դժբախտաբար հրատարակուԹեան չէ տուած Ընկերութիւնը իր այդ «Հիմնագիր»ը, որ մեզի անծանօԹ կը մնայ ։*

1887*էն վերջ մերԹընդմերԹ կը յիշուի «Սմբատեան Ընկերութիւն»ը* (*Հմմտ*. Արաքս, *Ս. Պետերբուրգ* 1888, *էջ* 42 ։ –Հայրենիք, *Կ*.

*Պ*. 1888 *Թ*. 2398) *մինչեւ 1890ական թուականները եւ ի վերջոյ կը դադրի*։

### 6. ԽԱՐԲԵՐԴՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1867)

*Կազմած են Խարբերդի Բողոքականները կրօնա-բարոյական եւ կրթական նպատակով* (Մասիս, 1881 *Թ*. 2837)։

### 7. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Պոլսոյ* Մամուլ (1869, *էջ* 399) 1869 *Դեկտեմբեր* 6 *թուականով կը տեղեկացնէ*. «Տարի մը կայ *որ Խարբերդի մէջ ալ* Անձնուէր Ընկերութեան *ճիւղ մը բացուեր էր... ազդասէր անձի մը կողմանէ* 1000 *ղրշ. նուիրուեր է*։

### 8. ՄԻՈՒԹԻՒՆ (1871)

1871*ին Խարբերդի եւ Գիւղերու Ընկերութիւնները կը կազմեն* «Միութիւն» *անունով Ընկերութիւն մը*։ *Անա ժամանակակից թերթին հաղորդած տեղեկութիւնը այս մասին*. «*Խարբերդի ազգայինք, գիւղացի, քաղաքացի եւ թէ բոլոր ազգային Ընկերութիւններն ամենայն սիրով միանալով ... հանրագիր ղրկեր են Պատրիարքարան ... *Միութիւն *անունով* նորակազմ Ընկերութեան *նկատմամբ*» (Հայրենիք, 1871 *Թ*. 49: —*Հմմտ*. Հայրենիք, 1872 *Թ*. 83)։ *Նախագահն է* Գէորգ Ճափարեան (*Անդ*)։

## 9. ՓԱՆՈՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ծանօթ է թէ Պոլսոյ մէջ շատ մը Ընկերութիւններ կազմուած են Հայաստանի կրթական գործին օժանդակելու համար: Հայաստանի մէջ միայն մէկ հատ Ընկերութիւն կազմուած է որ նպատակ ունեցած է Պոլսահայ վաժարանի մը նպաստել: Այդ Ընկերութիւնն է «Փանոսեան Ընկերութիւն»ը, որ Խարբերդի մէջ Յովհաննէս Գ. Եազըճեանի նախաձեռնութեամբ 1871 Սեպտեմբերին հիմնուած է, նպատակ ունենալով Կարապետ Փանոսեանի բացած Ագապեան աղջկանց վարժարանին օժանդակելու, ինչպէս կը գրէ ինքը՝ Եազըճեան. «Երկու շաբաթէ հետէ նուաստիս տնօրէնութեանը ներքեւ Փանոսեան Ընկերութիւն մի կազմուած է քանի մի ուսումնատենչ երիտասարդներէ բաղկացեալ, որոյ նպատակն է ի նպաստ Ագապեան գանձանակին ստակ եւ հնագոյն մագաղաթեայ գրեանք հաւաքել» (Հայրենիք, 1871 Թ. 70: Հմմտ. Արարատ, Կ. Պ. 1871 Թ. 23):

## 10. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1879)

1879ին Խարբերդի մէջ կան «Տիկնայց Ընկերութիւններ» (Մասիս, 1879 Թ. 2289), որոնց անունները չեն յիշուիր: Անոնցմէ մէկը հաւանօրէն «Հայաստանի Կանանց Ընկերութիւն»ն է, զոր հիմնած են Բողոքականները եւ որ կը յիշուի 1881ին (Մասիս, 1881 Թ. 2837) իբրեւ ոչ նոր Ընկերութիւն մը:

*Անատոլագիր Թղթակիցը կը գրէ որ* 1879*ին* հին ու նոր *Ընկերութիւնները կը ջանան վարժարան մը բանալ* (Մասիս, 1879 *Թ*. 2289) ։ *Չ'բսուիր սակայն թէ որո՞նք են այդ* հին ու նոր *Ընկերութիւնները* ։ *Ուրիշ տեղիքներէ կ'իմանանք թէ* շատ մը Ընկերութիւններ կազմուած են Խարբերդի եւ Գիւղերու մէջ, որոնք անյիշատակ մնացած են ։

11. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875—1878)

1847*ի «Արամեան»ը չատոնց դադրած էր անչուչտ, քանի որ* ոչ մէկ յիշատակութիւն *կ'ըլլայ յաջորդ տարիներուն մէջ մինչեւ* 1878, *այն է՝* 31 *տարի վերջ* ։ 1878*ին* Պօղոս Վ. Նաթանեան *Խարբերդի Ս. Յակոբ Թաղին մէջ կը գտնէ* «Արամեան Ընկերութիւն» *մը*, 100 *անդամէ բաղկացած, որ Թաղին վարժարանին հոգն ստանձնած է* (*Պօղոս Ծ. Վ. Նաթանեան, Արտօսր Հայաստանի, Կ. Պ.* 1879, *էջ* 123) ։ *Թէ ե՞րբ եւ ուրկէ՞ հիմնուած է — չունինք ծանօթութիւն ։ Չենք կարծեր թէ որեւէ կապ ունենայ այս Ընկերութիւնը* 1847*ի «Արամեան»ին հետ եւ հաւանօրէն հիմնուած է* 1875—1878 *միջոցին* ։

12. ԱՆԱՆՈՒՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Մասիսի (1879 *Թ*. 2289) *Թղթակցին համեմատ* 1879*ին հիմնուած են* նոր Ընկերութիւններ, *ինչպէս տեսանք* ։ *Այդ Ընկերութիւններէն մին կը համարինք* «Անանուն»

*Ընկերութիւնը*, *զոր կը յիշէ* Տօքթ. Կ. Յ. Փաշայեան *իր* 1888*ին Խարբերդ այցելու-թեան առթիւ*: *Նա կը գրէ*. «Անանուն» *Ըն-կերութիւն մը կայ*, *որ Կեդրոնական Վար-ժարանին կը նպաստէ*, *որուն գլխաւոր գոր-ծիչն է* Թորոս էֆ. Տէմիրճեան, *ազգասէր վաճառականը* (Հայրենիք, 1888, *էջ* 324):

13. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—1880)

*Հիմնած են Լուսաւորչական*, *Բողոքական եւ Ասորի երիտասարդներ*: «*Դոքա ունին*, *կը գրէ Յարութիւն Գ. Տօն–Աթոսեան* (Բիւ-րակն, *Կ. Պ.* 1883, *էջ* 250), *մի նպատակ եւ մի խորհուրդ* ի զարգացումն յառաջդիմու-թեան ազգի մարդկան: 1883*ին Ընկերութեան նոր նախագահն է* Աւագեան (*Անդ*):

*Իսկ ուրիշ Թղթակից մը* 1883 *Փետր.* 20 *Թուականաւ կը տեղեկագրէ Խարբերդէն*. «*Այս Ընկերութեան անդամները կը կազմեն Լուսաւորչական եւ Բողոքական Հայ երիտա-սարդներ*. *Նպատակն է պատանեաց եւ երի-տասարդաց լաւ դաստիարակութիւնը*» (Մա-սիս, 1883 *Թ.* 3420):

14. ԿՐԹԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Հիմնուած է* 1880*ի վերջը*, *ինչպէս կը տեղեկացնէ Թղթակից մը*՝ 1885 *Յունուար* 12 *Թուական նամակով*. «*Բողոքական երիտա-սարդաց Ընկերութիւն մը*՝ Կրթասէր *անու-նով*, որ չորս տարի առաջ սկիզբ առած է

ճանի մը երիտասարդներու նախաձեռնու-թեամբ, *անցեալ շաբաթ... մեծ բազմու-թեամբ* իր չորրորդ տարեդարձի հանդէսը կատարեց... *Այս այժմ երիտասարդները* նպատակ *կը ճանչնան իրենց... աղքատ դպրոցականաց թօշակ եւ դասական պի-տոյք մատակարարել...»* (Արեւելք, Կ. Պ. 1885 Թ. 325)։

15. ՀՈԳԵՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1886)

*Հիմնումի ճիշդ տարին յիշուած չէ։ Հիմնած են* Ս. Ստեփանոս թաղեցիք (Արե-ւելք, *Կ. Պ.* 1887 *Թ.* 1016)։ *Նպատակն է*. *«Լուսաւորչական կրօնի պայծառութեան նը-պաստել, սակայն մեծ արդիւնք մ'ունեցած չէ»* *կը գրէ Տօքթ. Փաշայեան* (Հայրենիք, 1888, *էջ* 324)։ *Կը ջանար* քարոզիչ եկեղե-ցական *ունենալ* (Արեւելք, 1887 *Թ.* 1016)։

16. ԽՆԱՄԱԿԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1886)

*Ընկերութեանս անունը որոշ յիշուած չէ. կ'ըսուի* .«Խնամակալ Ընկերութիւն Սինա-մուտ Թաղին մէջ» (Արեւելք, 1887 *Թ.* 1016)։ *Ընկերութեանս ձգտումն էր* «Վարժոց մը պահել» (Անդ)։

17. «ԿԱՃԱՌ ՀԱՅԿԱԿԱՆ» (1888)

*Միութիւն մըն է՝ հիմնուած* Ուստրի (*Ա-մերիկա*) *մէջ։ Իր անդրանիկ Վարչութիւնը կը կազմեն.*

| | |
|---|---|
| *Սարգիս Ռատիկեան* | *Ատենապետ* |
| *Տօնապետ Պետիկեան* | *Ատենադպիր* |
| *Յակոբ Ռատիկեան* | *Գանձապահ* |
| *Կարապետ Թոգաճեան* | *Խորհրդական* |
| *Կարապետ Թաչճեան* | *Խորհրդական* |

*«Կաճառ Հայկական»ը թէեւ իր մէջ ոչ-խարբերդցիներ ալ ունէր, սակայն հիմնադիրներն եւ մանաւանդ առաջին Վարչութիւնը զուտ խարբերդցիներէ կը բաղկանար (տե՛ս Վահէ Հայկ, Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը, Նիւ Եորք* 1959, էջ 987):

*Սխալ է սակայն Պր. Վահէ Հայկի կարծիքը թէ «Կաճառ Հայկական»ը զուտ ազգային նկարագրով կազմուած* առաջին միութիւնն էր որ երեւան եկաւ հայ գաղթականութեան կեանքին մէջ» (Անդ): *«Կաճառ Հայկական»էն* ԱՌԱՋ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ ՀԻՄՆՈՒԱԾ ԷԻՆ *առ նուազն* ՀԻՆԳ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (*Տե՛ս մեր յօդուածը՝* Հայրենիք, *Բոստոն* 1954 *Թ.* 12, 818—819):

*Միութիւնս ունեցած է իր* Կանոնագիրը, *զոր առիթ չենք ունեցած տեսնելու: Կանոնագրին Ա. յօդուածը կ՚ըսէ. «Կաճառ Հայկական Ուսդրի անուն Ընկերութիւն մը կազմուած է, որուն նպատակն է լոկ բարեգործական ի նպաստ Լուսաւորչական Հայոց»* (Արեւելք, Կ. Պ. 1888 *Թ.* 1481): *Ընկերութեան անդամները կը գրեն որ «ամեն ջանք ի գործ կը դնեմք որ ժողովուրդն պահէ իւր*

ազգութիւն, իւր կրօն եւ իւր (Թրքական) Հպատակութիւն» (Անդ)։

18. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

Կազմուած է Ուստրի մէջ 1891 Օգոստոս 16ին եւ ուրիշ քաղաքներու մէջ ունեցած է ճիւղեր։ Առժամանակեայ Գործ. Մարմինը կազմած են.

Գէորգ Կիրակոսեան Գանձապահ
Խաչ. Մանուկեան Ատենապետ
Մինաս Գ. Արոյեան Ատենադպիր
Կարպ. Տ. Մկրտիչեան
Խաչեր Տիւլկէրեան
Մկրտիչ Թեվրիզեան
Յարութիւն Տինճեան
Կարապետ Պապայեան
Յակոբ Սողիկեան
Կարապետ Թաչճեան
Պաղ. Թաչճեան
} Խորհրդականներ

(Վահէ Հայկ, Խարբերդ, անդ, էջ 1014)։

1892 Դեկտեմբեր 17ին Ուստրի մէջ գումարուած Ընդհանուր անդամական ժողովը կը քննէ Ընկերութեան սկզբնական նպատակը. կը կազմէ նոր Ծրագիր—Կանոնագիր մը. կ՚ընտրուի Գործադիր Մարմին 15 անձերէ. անդամատուրքը կ՚որոշուի ամսական 10 սենթ։

1895ի ջարդէն վերջ Ամերիկայի Խարբերդի Գիւղերու Ընկերութիւնները միանա—

*լով այս «Կրթասիրական»՝ կը կազմեն* «Խարբերդի Կրթասիրաց Միացեալ Ընկերութիւն»*ը*։ 1926*ին ծնունդ կ'առնէ համամիութենական ուրիշ գեղեցիկ գաղափար մը՝ բոլոր Ընկերութիւններու միացումով կազմել Հա*մախարբերդցիական Միութիւնը։ *Բաղկացուցիչ բոլոր Ընկերութիւնները պահելով հանդերձ իրենց անջատ գոյութիւնը՝ կը միանան մեծ մասով եւ կը կազմեն* Համախարբերդցիական Միութիւնը, *որ* 1929*ին Հայաստանի մէջ հիմը կը դնէ* Նոր—Խարբերդ *քաղաքին, որուն մէջ կ'ունենան գիւղեր իրենց անունով Թաղամաս կամ փողոց եւ կամ որեւէ յիշատակութիւն* (*Տե՛ս այս մասին Վահէ Հայկ, Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը. Նիւ Եորք* 1959, *էջ* 1014—72)։

19. *Ե. Ք.* ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Հիմնուած է Խարբերդի «Եփրատ Գոլէճ»ի շրջանակին մէջ եւ «այլ եւ այլ տարիներու մէջ* 30—80 *ուսանողներ անդամակցած են»* (Եփրատ, *Խարբերդ* 1911, *էջ* 94)։ *Տեւած է* 1911*էն վերջ ալ։ Հաւանօրէն նոյն է ատոր հետ «Երիտասարդաց Քրիստոնէական Ջանից Ընկերակցութիւն»ը* (*Տե՛ս Վահէ Հայկ, Խարբերդ, անդ, էջ* 356)։

20. ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1897)

*Կազմուած է* Ուստրի *մէջ եւ* 1897—98*ին նպաստ կը ղրկէ* Խարբերդի Խուլէվանճի Ագ–

գային Որբանոցին (Արեւելք, 1899 թ. 3917)։ *Սոսյց չենք թէ Խարբերդցիներո՞ւ Ընկերու-թիւն է* (*Տե՛ս Սերոբ Եպիսկոպոս Ամերիկա-հայ Տարեցոյց. Պոստոն* 1913, *էջ* 41)։

21. ՏԻԿՆԱՆՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1897—1898)

*Խարբերդի Ազգ. Որբանոցին մէջ Միու-թիւնս երկու որբեր որդեգրած ըլլալով՝ «Որբախնամ Միութեան» հետ իբր տարեթո-չակ կը նուիրէ, 1897—8ին, 1926 ղուրուշ եւ-այդ աոթիւ կ՚ըսուի թէ* Ուստրի *մէջ հիմ-նուած է* (Արեւելք, *անդ*)։

22. «ԱՐԱՔՍ» ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908*ին, նպատակ ունենա-լով իգական սեռի Փիզիքական, իմացական ու բարոյական կրթութեան զարկ տալ։ Ու-նի* 7 *Ցանձնախումբեր։ Անդամներու թիւը՝* 100։ *Ընկերութեան շնորհիւ շատ մը կիներ ու աղջիկներ կարդալ, գրել, ձեւել, արդուկել ու ձեռագործել սորված են, աղքատներ նը-պաստաւորուած ու մանուկներ ձրի դաս-տիարակուած են* (Եփրատ, *Խարբերդ* 1913, *էջ* 315)։ *Ընկերութիւնը* 1911*ին իր* Մանկա-պարտէզն *ունէր* (*Անդ՝ էջ* 298)։

23. «ԱՐՇԱԼՈՅՍ» ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հաւանօրէն «Արաքս»ի պէս* 1908*ի վեր-ջերը հիմնուած՝* 1911*ին ունէր իր* Մանկա-պարտէզը *Խարբերդի մէջ* (Եփրատ, 1911 *էջ*

298) ։ 1910 *Դեկտեմբեր* 18*ին կը մասնակցի Մատթէոս Իզմիրլեան Կաթողիկոսի համար սարքուած սգահանդէսին* (Եփրատ, 1910, *էջ* 387) ։

24. ՆՈՐ ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909*ի սկիզբները* ։ *Իր* Կանոնագիրը *հաստատել կը ջանայ* 1909 *Սեպտեմբերին* (Ժամանակ, *Կ. Պ.* 1909 *Թ.* 263) ։ *Ընկերութեան Ընդհանուր Ժողովը* 1910 *Յունուարին կ՚ընտրէ հետեւեալ Վարչ. Ժողովը. Գ. Վարդիկեան, Ս. Թէվրիզեան, Մեսրոպ Ժամկոչեան, Սարգիս Գէորգեան, Գար. Կոստանեան, Մելքոն Լիւլէճեան, Տ. Գարաճեան, Յ. Իսրայէլեան* (Ժամանակ, 1910 *Թ.* 371) ։

*Նորակազմ Ընկերութեան առաջին կըրթական գործը կ՚ըլլայ բանալ* ձեմարան մը աղջկանց համար, *որուն վարժուհիները կ՚ընծայէ «Եփրատ Գոլէճ»ը* (Ժամանակ, 1909 *Թ.* 361) ։ *Քիչ ետք կը բանայ թատերական բեմ մը եւ կու տայ ներկայացումներ՝ նպաստելով վարժարաններուն* (Եփրատ, 1909, *էջ* 140) ։ *Տնօրէն Խորհուրդը* 1911*ին կը վկայէ որ Ընկերութիւնը բացած ու կազմած է* Գրադարան, Ընթերցարան, Լսարան, Թատրոն, Խօսարան, Գիշերադպրոց եւ համանուն բարձրագոյն վարժարան (Ազատամարտ, *Կ. Պ.* 1911 *Թ.* 716) ։

## 25· ՆԵՐՍԷՍԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909*ին*, *թէեւ կը յիշուի* 1910 *Փետրուարին* (Ժամանակ, 1910 *Թ*· 392) ։ *Մանրամասնութիւնք անծանօթ են* ։

## 26· «ԵՓՐԱՏ»Ի ԸՆԹԱՑԱՒԱՐՏՈՒՀԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1909—1910)

*Հիմնուած կը թուի* 1909*ի վերջերը կամ* 1910*ի սկիզբը*· *զի կը յիշուի* 1910 *Մայիսին* (Եփրատ, 1910 *էջ* 233) ։

## 27· ԱԶԳԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Գ*· *Զուլումեան կը գրէ* 1911 *Մայիսին սկիզբը*· «Վերջերս *ձեռնարկ մը եղաւ*, *որուն կոչումն է սահմանին մէջ ծառայել դժբախտ դասակարգի մը բարելաւութեան*··· *բարեացակամ անձեր*···. *դրապէս գնահատեցին*··· *բարերարական այս* նորակազմ Ընկերութեան *իրաւունքը*··· Ազգատախնամ Ընկերութիւնը *միայն*, *որ կրնայ առողջ ու փրկարար ուղղութիւն մը տալ ազքատը սիրելու ընկերական վեհ գործին* ···» (Եփրատ, 1911, *էջ* 139—40

## 28· ՈՐԲԵՐՈՒ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

*Հիմնուած է* 1912*ի սկիզբը Խարբերդի Որբանոցին որբերէն*, *որոնք ստանձնած են որբի մը ամբողջ տարեկան ծախքը հոգալ* (Եփրատ, 1912, *էջ* 63) ։

29· ՃԵՄԱՐԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912—1913)

Հայ գրի գիւտի *Ցոբելեանի տօնախմբութեան առթիւ*, 1913*ին*, *Խարբերդի Հայութիւնը «ի պատիւ եւ յաւերժացում մեծ Տօնին* Հայկական Ճեմարան *անուն «Գոլէճ» մը կը բանայ եւ «մեծահանդէս շքով ու խանդավառութեամբ» տօնող մարմիններու շարքին մէջ կը նշմարենք նաեւ «*Ճեմարան Միութիւն»*ը, որ գուցէ* 1912—13*ին* կ*ազմուած է* (Ժամանակ, 1913 *Թ*· 1606)։

30· ԿԱՆԱՆՑ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՄԱՐՄԻՆ (1914—1915)

1915 *Ցունուար Թուական նամակով Խարբերդի Առաջնորդ Պաակ Ծ· Վ· կը հաղորդէ Պատրիարքարան· «Աննեցուկ ընտանեաց օգնելու համար կազմուած է* Կանանց Աղքատախնամ Մարմին *մը, որ լաւագոյն օժանդակութիւն մը կ՚ընծայէ եւ գնահատելի ծառայութիւն մը»* (Ժամանակ, 1915 *Թ*· 2064)։

31· «ԵՓՐԱՏ» ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Խարբերդ նահանգի վերապրողները* Պոլսոյ *մէջ* 1918 *Դեկտեմբերին կը կազմեն* «Եփրատ» Հայրենակցական Միութիւնը, (Ժամանակ, 1919 *Թ*· 3390)։ *Միութեանս նպատակն է· «իր շուրջը հաւաքել Պոլիս եւ շրջականները գտնուող բոլոր հայրենակիցները· ներկայ պարագաներու ստիպողականութեան տակ միասիրտ համագործակցութիւն մը ստեղծելու ջանադրութեամբ»* (Ժամանակ, 1919 *Թ*· 3404)։

*Միութիւնը իր* Ծրագիր – կանոնագիրը *կը հրատարակէ* 1919*ին* (*Տե՛ս* Ժամանակ, *անդ եւ առանձին հատորիկով մը*՝ *կ. պ.* 1919), *որ ունի* 9 *Յօդուած*, *որոնցմէ* առաջի-նը *տուինք վերը*: *Միութեան անդրանիկ Վարչութիւնը կը կազմէին*՝ Ն. Քիւրքճեան (*Առենապետ*) *եւ* Վ. Երէցեան (*Ատենադպիր*) (Ժամանակ, *անդ*): *Միութիւնը չուտով կ'ու-նենայ ճիւղեր եւ Մասնաճիւղեր* (Ժամանակ, 1919 *Թ.* 3556, 3634, *եւ այլն*):

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՄԵՋԻՐԷ (ԲՈՒՐԱՍՏԱՆ)

*Խարբերդի դաշտին մէջ շինուած այս քա-ղաքը*, *որ Խարբերդէն մէկ ժամ հեռու կը գտնուի եւ կուսակալանիստ է*՝ *Խարբերդի կը վերաբերի եւ երբեւ իր մէկ մասը կը հա-մարուէր*: *Իր հայկական յորջորջումն է* «Բուրաստան» (Մասիս, *կ. պ.* 1879 *Թ.* 2259):

### 1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Կազմուած է*1868 *Սեպտեմբերին*: Չոր-րորդ *տարեդարձը կը տօնէ* 1872 *Սեպտեմբե-րին*. «*Ուր արմօնիքով երգեր երգուեր*, *ճա-ռեր կարդացուեր են*... *հայերէն ու տաճկե-րէն առենաբանութեամբ*» (Հայրենիք, *կ. պ.* 1872 *Թ.* 123): *Կը յիշուի նաեւ* 1871*ին* (Հայ-րենիք, 1872 *Թ.* 83):

### 2. ՀԱՅՐԵՆԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է* 1869*ի վերջերը, որուն բարեսէր անձ մը* 500 *ղրշ. կը նուիրէ* (Մամուլ, Կ. Պ. 1869, էջ 399)։

### 3. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (…1878)

*Պօղոս Վ. Նաթանեան* 1878*ին Մեզիրէի մէջ կը գտնէ* «Արամեան Ընկերութիւն» *մը, որ բացած էր* Ընթերցարան *մը։ Անշուշտ* 1878*էն առաջ հիմնուած էր։ Իր մասին ուրիշ տեղեկութիւն չենք գտներ։*

### 4. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Թղթակից մը* 1879 *Փետրուար* 3 *թուականով կը գրէ.* «*Մեզրէ*… երկու Ընկերութիւններ *միանալով՝ նոր Ընկերութիւն մը կազմեցին* Արարատեան *անուամբ եւ ամեն կերպ լրագիրներ բերելու որոշում ըրին*» (Մասիս, 1879 *Թ.* 2263)։

Հին Ընկերութիւնները *անունով չեն յիշուիր։ Ուրիշ թղթակից մը մասամբ լուսաբանելով՝ կ'ըսէ որ* «Անձնուէր Ընկերութեան անունը փոխուելով՝ *այժմ* Արարատեան անունը կը կրէ» (Մասիս, 1879 *Թ.* 2334)։ *Նոյն թղթակիցը – Կիրակոս Ս. Ղազարեան – քիչ ետք կը տեղեկագրէ.* «*Մեզրէի Արարատեան Ընկերութիւնը խիստ լաւ կ'աշխատի։ Տեառնընդառաջի օրը մեծ հանդէսով մը բացաւ* աղջկանց վարժարանը, *որ այժմ* 60*էն աւելի աղջիկ կը յաճախեն՝ երկու*

*մասնաւոր վարժուհեաց եւ մէկ քահանայի դասատուութեամբ...»* (Մասիս, 1879 Թ. 2283 եւ Թ. 2289)։

*Արարատեանի վարիչներն են.*
*Նշան Ց. Արփիարեան Ատենապետ*
*Տիրին Մ. Գույումճեան Ատենադպիր*

(Մասիս, *անդ*)։

5. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Թղթակիցի մը խօսքերէն դատելով՝ հիմնուած կ'երեւայ* 1884*ի Յուլիսէն առաջ* (Արեւելք *Կ. Պ.* 1885 *Թ.* 430)։

6. ԱԶԳԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—1885)

*Կը յիշուի* 1888*ի գարնան եւ հաւանական է որ հիմնուած ըլլայ* 1884—5*ին, զի կը յիշուի «Ուսումնասիրաց»ի հետ, որոնք երկուքն ալ* տկարացած են 1888էն առաջ *եւ Տ. Ղեւոնդ Սրբ. Տիչմանեան Առաջնորդին ձեռօք կը միանան*, «ի մի կը ձուլուին»։ Այս միացեալ Ընկերութիւնը — *չ'ըսուիր թէ ի'նչ* անուն *կը կրէ — կը բանայ մանչերու* Կեդրոնական վարժարանը՝ *«քաջահմուտ եւ բարոյական տէր դասատուաց խնամոց ներքեւ»* (Հայրենիք, 1888, *էջ* 323։ —*Հմմտ.* Արաքս, *Ս. Պետերբուրգ.* 1888, *էջ* 42)։

7. «ՍԱՆԴԽՏԵԱՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885—1886)

*Հիմնումի տարին կը համարինք իբր* 1885 – 6։ 1888*ի գարնան կը տեղեկագրուի.*

«Մեզրայի Հայերը ունին նաեւ իգական սեռէ բաղկացեալ մի «Սանդխտեան» Ընկերութիւն, որ բացած է աղջկանց համար մի վարժարան, վկայեալ վարժուհեաց խնամոց ներքեւ եւ ունի 80 աշակերտուհի» (Հայրենիք, 1888 էջ 323)։

8. ՇՐՋԱՆԱԽԱՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

Կազմուած կ'երեւայ 1908–9։ 1909 Հոկտեմբեր 1ին ունի իր Ծրագիրը՝ 10 Յօդուածէ բաղկացած։ Միութիւնը կազմողներն են Մեզիրէի «Կեդրոնական—Երկսեռ վարժարաններու Շրջանաւարտները»։ Ծրագիրը հըրատարակած է Ազատամարտ (1909 Թ. 106), ուր ոչ մէկ ծանօթութիւն հիմնումի մասին։ Միութեան Գործ. Մարմնի Դիւանը կը կազմեն.

| | |
|---|---|
| Լ. Հէքիմեան | Ատենապետ |
| Տիգ. Սարգիսեան | Ատենադպիր |
| Յ. Պօյաճեան | Գանձապետ |

ՀԻՒՍԷՅՆԻԿ ԳԻՒՂ

1. ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

Կը յիշուի առաջին անգամ 1871ին, երբ կը մասնակցի Հիւսէյնիկի մէջ «Սմբատեան Ընկերութեան» վեցամեայ տօնախմբութեան եւ ունի իր դպրոցը (Հայրենիք, 1871 Թ.77)։ Նոյն տարին միանալով 9 Ընկերութիւններու՝ կը կազմեն «Միութիւն» անունով Ընկերութիւն մը (Հայրենիք, 1872 Թ. 83)։

Հիւսէյնիկի «Հայկեան»ը հիմնուած է 1865 Մարտին: 1872 Մարտի 5ին կը տօնախմբէ իր եօթներորդ տարեդարձը՝ ներկայացնելով Իզմիրի Հաշտենից Վասպուրական Ընկերութեան անդամ Միրզա Վանանդեցիի «Մեծն Ներսէս Հայաստանի Բարերար» Ողբերգութիւնը, զոր դպրոցի տնօրէն Սարգիս Ալխայեան համառօտած էր: Հանդէսին ներկայ են 5000 հոգի: Տեղի կ'ունենայ երգ, արտասանութիւն, ճառ, ատենաբանութիւն եւ ներկայացում: Շինուած է յատուկ ծաղկազարդ կամար մը: Ընկերութեան համար հանգանակութիւն ընելով՝ կը հաւաքուի 2000 ղուրուշ (Հայրենիք, 1872 Թ. 97):

Ընկերութիւնը 1879ի սկիզբը վերակազմուելէ վերջ (Մասիս, 1879 Թ. 2263, 2283) դպրոցը կանգուն կը պահէ երկար ատեն: Կը ջանայ նաեւ Գիւղին մէջ աղջկանց վարժարան մը բանալ (Մասիս, 1879 Թ. 2334):

Գրիգոր Յ. Նաճարեան կը համարի թէ Ընկերութեան նախնական անունը «Անձնուէր» Ընկերութիւն եղած ըլլայ եւ յետոյ փոխուած «Հայկեան»ի (Տե՛ս Պայքար, 1952 Մայիս 12–28): Հնութեան մէջ յիշատակութիւն մը գտած չենք «Անձնուէր» յորջորջումին եւ հաւանական չենք համարիր այդ կարծիքը: Ինչպէս տեսանք՝ արդէն 1871ին կը յիշուի միայն «Հայկեան». յետոյ 1872ին դարձեալ «Հայկեան», առանց որեւէ յիշատակութեան «Անձնուէր»ի կամ փոփոխութեան մը:

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնուած է* 1870 *Յունուարին՝ տեղւոյն Բողոքականներէն, որոնք* 1883 *Յունուար* 5*ին Ընկերութեան 13*րդ *տարեդարձը կը խմբեն հանդէսով մը* (Բիւրակն, *Կ. Պ.* 1883, *էջ* 249–50)։

3. ԿԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—1875)

*Կազմած են Հիւսէյնիկի Բողոքական կիները՝ իբրեւ օժանդակ Ընկերութիւն «Ուսումնասիրացին»* (Բիւրակն, *անդ*)։ *Չի ճըշդուիր հիմնումի տարին*։

4. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է թելադրութեամբ Մկրտիչ Փորթուգալեանի եւ նախագահութեամբ Գըրիգոր Թերզեանի։ Նպատակն է. «Հիմնել Լուսաւորչական աղջկանց դպրոց մը Հիւսէյնիկի մէջ»* (*Վահէ Հայկ, Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը. անդ՝ էջ* 744–5)։

1888*ին կը յիշուի իբրեւ* «գլխաւոր Ընկերութիւն Հիւսէյնիկի» (Արաfս, *Ս. Պետերսբուրգ* 1888, *էջ* 42)։

5. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1882)

*Հիմնած են* Ուստրի (*Ամերիկա*) *գաղթական Հիւսէյնիկցիք՝ նպատակ ունենալով «տարեկան* 200 *տոլարով աջակցիլ Գիւղին դպրոցներուն»* (*Տե՛ս Վահէ Հայկ, Խարբերդ*,

անդ՝ էջ 752)։ 1895էն վերջ Ընկերութեան անունը կը փոխուի «Կրթասիրաց»ի եւ կ՚ունենայ մասնաճիւղեր (Տե՛ս նաեւ Մանուկ Գ. Ճիզմէճեան, Խարբերդ եւ իր զաւակները. Ֆրէզնօ 1955, էջ 276, ուր Ընկերութեան անունը սկիզբէն ի վեր ծանօթ է «Կրթասիրաց» տիտղոսով)։

1919ին Ընկերութեան անունը կը վերածուի «Վերաշինաց»ի, որ կը նպաստէ հայ գաղթականներու. 1929ին կը գործակցի Համախարբերդցիական Միութեան 3400 դոլարով՝ շինելու համար Նոր — Խարբերդը (Վահէ Հայկ, անդ)։

6. ....ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Կազմած են Հիւսէյնիկցի քանի մը դըրամատէրներ «հազար ոսկի դրամագլխով յատկապէս Խարբերդցի հայեր Ամերիկա ղըրկելու նպատակաւ..» (Արեւելք, Կ. Պ. 1888 Թ. 1421)։ Ընկերութիւնը ունի իր գործակատարները Ամերիկայի մէջ (անդ)։

7. ԳՐԱՍԷՐ ՄԱՆԿԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893—1894)

Կը կազմուի դպրոցի Տնօրէն Համբարձում Երամեանի առաջնորդութեամբ եւ նորահաս պատանիներու մասնակցութեամբ։ Նպատակն է. «պահել Գրադարան մը... հոգալ կարօտ աշակերտներու Թոշակները եւ դպրոցական պէտքերը» (Վահէ Հայկ, անդ, էջ 745)։

*Յետոյ կոչուած է* «Գրասէր խնամակալութիւն» *եւ* 1905*ին կը վճարէ* 45 *մանչ եւ* 20 *աղջիկ աշակերտներու դպրոցական թոշակն ու գրենականները* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1905 *Թ.* 1208):

*Անշուշտ սխալագրութիւն է Ճիզմէճեանի քով (անդ՝ էջ* 72) *Ընկերութեանս անունը գրուած* «*Գթասէր*» *Ընկերութիւն եւ* «*Գթասէր*» *Խնամակալութիւն*:

## ՄՕՐԵՆԻԿ ԳԻՒՂ

1. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Կը յիշուի* 1871*ին* (Հայրենիք, 1872 *Թ.* 83), *բայց հնագոյն է, ինչպէս իրեն հետ յիշուած (անդ) միւս* 9 *Ընկերութիւնները*:

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Հիմնուած է Ամերիկայի մէջ: Նպատակն եղած է օգնել Գիւղի կրթական գործին (Տե՛ս այս մասին Ճիզմէճեան, Խարբերդ, անդ, էջ* 288—9): *Ընկերութեանս հիմնումը* 1890*ին դրած է Մուշեղ եպիսկոպոս (Ամերիկահայ Տարեցոյցը, Պոստոն* 1912, *էջ* 177):

## ՀԱՊՈՒՍԻ ԳԻՒՂ

1. ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Խարբերդ քաղաքի մէջ* 1865*ին հիմնուած* «*Սմբատեան Ընկերութիւն*»*ը օրինակ*

առնելով՝ Հապուսի Գիւղի հայերն ալ նոյնանուն Ընկերութիւն մը կը հիմնեն, որ 1871ին կը յիշուի (Տե՛ս Հայրենիք, 1872 Թ. 83), բայց չենք կրցած ճշդել հիմնումի տարին։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879?)

Հիմնումը կրնայ 1879ին ըլլալ, երբ Խարբերդի Գիւղերը իրարու հետ կը մրցին նոր Ընկերութիւններ կազմելու եւ դպրոցներ բանալու (Մասիս, 1879 Թ. 2283)։ Անկա հիմնողներն են Գիւղի Լուսաւորչական Հայերը։

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—1890)

Հիմնած են Հապուսիի Բողոքականները (Տե՛ս Վահէ Հայկ, անդ, էջ 941)։

4. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1890—1900)

Անկա միացումն է երեք նոյնանպատակ Միութիւններու, որոնք տարբեր շրջաններու մէջ կազմակերպուած էին երեք «տարբեր անուններու տակ» (Վահէ Հայկ, անդ, էջ 941)։ Ներկայիս ունի 7 Մասնաճիւղ։

5. ՎԵՐԱԾՆՆԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1917)

Կազմուած է Ամերիկա 1917 Մարտ 14ին (Անդ)։

## ՀՈՂԷ ԳԻՒՂ

1. ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

Կը յիշուի 1871ին ուրիշ 9 Ընկերութիւններու հետ, որոնց հնութիւնը կը բարձրանայ

*մինչեւ* 1865—6 (Հայրենիք, 1872 *Թ*. 83)։ *Ուրիշ ծանօթութիւն չունինք*։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Ամերիկայի մէջ* 1891 *Դեկտեմբեր* 25*ին հիմնած են Հողեցիք*։ *Հիմնադիրներն են Պօղոս Սիմոնեան*, *Գէորգ Թերզեան*, *Յակոբ Մաթոյեան*, *Պետրոս Արսլանեան*, *Կարապետ Տէրտէրեան*։ *Իրենց նպատակն է*. «*Հաստատել տղայոց եւ աղջկանց վարժարաններ*» (*Վահէ Հայկ*, *անդ*, *էջ* 877)։ 1921*ին կը կոչուի* «Հողէի Միացեալ Ընկերութիւն» *եւ կը հասնի ամէն կողմ ցրուած հայրենակիցներու օգնութեան*։ *Այս նպաստներու գումարը կ՚ըլլայ* 15,000 *դոլար*(*Անդ*)։

3. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1892)

*Հիմնած են Բողոքական Հողեցիները Ամերիկայի մէջ* (*Մուշեղ եպիսկոպոս*, *Ամերիկահայ Տարեցոյցը*, *էջ* 179)։

4. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1924)

*Կազմած են Մարսէյլի մէջ ապրող Հողեցիներ՝ նպաստերու համար համագիւղացի կարօտեալներու* (Յառաջ, *Փարիզ*, 1927 *Թ*. 501)։

5. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1927)

*Մարսէյլաբնակ Հողեցիները կազմած են* (Յառաջ, *Փարիզ* 1927 *Թ*. 376)։

## ԲԱՐՁԱՆՃ (ՓԵՐՁԵՆՃ) ԳԻՒՂ

### 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Ծանօթ չէ հիմնումի ճշգրիտ տարին. կը յիշուի* 1871*ին* (*Տե՛ս* Հայրենիք, 1872 *Թ.* 83):

### 2. ԼՈՒՍ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Հիմնուած է Փէլս* (*Ամերիկա*) 1891 *Սեպտեմբեր* 19*ին եւ ունեցած է ճիւղեր: Իր մէկ կարեւոր գործն եղած է հրատարակու-թիւնը* Մանուկ Ծերունի *գիրքը* — Բարջանճ, *զոր տեսնելու առիթ չենք ունեցած* (*Հմմտ. Ճիզմէճեան, անդ՝ էջ* 286 *եւ Վահէ Հայկ, անդ՝ էջ* 897):

*Երբեմն կը կոչուի նաեւ* «Դպրոցասիրաց» *Ընկերութիւն*:

### 3. ԲՈՂՈՔ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1894)

*Հիմնած են ամերիկաբնակ Բողոքական Բարջանճցիներ* (*Ճիզմէճեան, անդ՝ էջ* 269):

## ՍՈՐՍՈՐԻ (ՍԻՒՐՍԻՒՐԻ) ԳԻՒՂ

### 1. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Հաւանօրէն* 1865—6 *եղած է իր հիմնու-մը, քանի որ* 1871*ին կը յիշուի եւ իրեն հետ յիշուած* 9 *Ընկերութիւններէն ոմանց հնու-թիւնը կը բարձրանայ մինչեւ* 1865 (*Տե՛ս* Հայրենիք, 1872 *Թ.* 83):

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Կազմուած է Ամերիկայի մէջ եւ բացած Գիւղին մէջ դպրոց մը* (Զայն Հայրենեաց, *Նիւ Եորք* 1899 *Թ.* 3)։ *Ընկերութիւնը Գիւղին մէջ* 20 *անդամով ճիւղ մը կ'ունենայ* (*անդ*, *Թ.* 6)։

## ԵԴՄՆԻԿ ԳԻՒՂ

1. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Կը յիշուի* 1871*ին միայն* (Հայրենիք, 1872 *Թ.* 83)։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1912)

*Ամերիկայի մէջ հիմնուած է ի նպաստ Գիւղի դպրոցին* (Ազատամարտ, 1912 *Թ.* 958: — *Հմմտ.* Արարատ, *Վաղարշապատ*, 1915, *էջ* 932)։

## ԳՈՄՔ ԳԻՒՂ

1. ՍՄԲԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Դժբախտաբար միայն մէկ անգամ եւ լոկ անունով յիշուած է* (*Տե՛ս* Հայրենիք, 1872 *Թ.* 83)։

## ՔԵՍԻՐԻԿ ԳԻՒՂ

1. ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1870)

1872*ին այս Ընկերութեան անդամները կը մասնակցին Մեղրէի «Անձնուէր Ընկե–*

բուԹեան» հանդէսին (Տե՛ս Հայրենիք, 1872 Թ. 123)։ Ծագումը հնագոյն ըլլալու է։

«Թորգոմեան»էն վերջ, մինչեւ 1888 ուրիշ քանի մը Ընկերութիւններ կազմուած են, կ՚ըսուի (Հմմտ. Ծաղիկ, Կ. Պ. 1893 Թ. 7), բայց իրենց անունները յիշուած չեն։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Նպատակն եղած է «արդի պահանջմանց համեմատ դպրոց բանալ եւ բարձր դասատուններ բերել տալ» (Ծաղիկ, Կ. Պ. 1893 Թ. 7)։ Հիմնուած է 1888 Օգոստոս 24ին Ուստրի մէջ։ Մեծապէս օգտակար եղած է Գիւղի կրթական վերելքին։ Իր նպաստներով Միգիրճի մէջ փոքր եւ յարակից երեք խանութ կը գնեն, որոնց հասոյթով դպրոցը կը պահէ իր գոյութիւնը (Վահէ Հայկ, անդ՝ էջ 882)։ — 1915էն վերջ Ընկերութեան անունը կը վերածուի «Քեսիրիկի Ընդհ. Ընկերութեան» (Տե՛ս նաեւ Ճիզմէճեան, անդ, էջ 292)։

## ԽՈՅԼՈՒ-ԹԼԿԱՏԻՆ ԳԻՒՂ

### 1. ՀԱՅ ԲՈՂՈՔ. ԵՐԻՏ. ԴԱՍՏ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Այսինքն՝ «Խոյլուի Հայ Բողոքական Երիտասարդաց Դաստիարակիչ Ընկերութիւն», զոր կազմած են 1878 Մայիս 30ին։ Ատոր մէկ ճիւղը կը հիմնեն յետոյ Ամերի–

կայի մէջ նպատակն ըլլալով. «Հաստատել Պոլսոյ մէջ քրիստոնէական երկսեռ դպրոց մը, ապահովելով դրամագլուխով ու նպաստել ապագայ սերնդեան բարոյական ու մտաւոր զարգացման» (Ճիզմէճեան, անդ, էջ 298–9)։ Իր կանոնագրին համեմատ ամէն անդամ պարտաւոր է վճարել մուտքի դրամ՝ 1 տոլար եւ ամսավճար՝ 5 սենտ (Անդ)։

2. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

Կազմուած է Պրաւիտենս 1891 Հոկտ. 18ին եւ մինչեւ 1914 ղրկած է Գիւղի դպրոցին 5000 տոլար (Անդ, էջ 298)։

3. ԲՈՂՈՔ. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

Կազմած են Լինի (Ամերիկա) մէջ։ 1912-ին կը ջանան միանալ այս երկու Ընկերութիւնները (Ազատամարտ, 1912 Թ. 958)։ 1926 Սեպտեմբեր 4ին կը միանան այս երկու Ընկերութիւնները եւ կը կոչուի «Խոյլու-Թլկատինի Վերաշինաց Միութիւն» (Ճիզմէճեան, անդ, էջ 299։ — Տե՛ս նաեւ Հայրենիք, Պոստոն 1956 Թ. 13,477)։

## ԲԱԶՄԱՇԷՆ ԳԻՒՂ

1. ՌՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Հիմնուած է Գիւղին մէջ 1888ին (Վահէ Հայկ, անդ, էջ 839)։

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1892)

*Կազմուած է*1892 *Սեպտեմբեր* 12*ին Ամերիկա (Ապտալ Գոլէճ Պօղոսեան, Բազմաշէնի ընդարձակ պատմութիւնը· Պոստոն, էջ* 172)։ *Ընկերութիւնը շինած է աղջկանց վարժարան մը Գիւղին մէջ* (*Անդ, էջ* 187)։

### 3. ՎԵՐԱՇԻՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1916)

*Ամերիկացի Բազմաշէնցիները հիմնած են օգնելու համար կարօտ վերապրողներուն* (*Ճիզմէճեան, անդ, էջ* 272)։

## ԴԱՏԵՄ ԳԻՒՂ

### 1. ՀԱՅ ԼՈՒՍ. ԵՐԻՏ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Հիմնուած է Ամերիկա* 1891 *Յունիս* 17*ին*։ *Հիմնադիրներն եղած են· Մանուկ Ղազարոսեան, Մկրտիչ Քէլէչեան, Կարապետ, Յակոբ եւ Պօղոս Հերոյեան, Սարգիս Հայթայեան, Յակոբ Խարայէլեան, Մարսուպ Հըջոյեան* (*Տե՛ս* Հայրենիք, *Պոստոն* 1942 *Թ.* 9116)։ *Նպատակն եղած է·* «Դպրոցի միջոցով օգնել Դատեմի երկսեռ պատանիներուն եւ ժողովուրդին մտաւոր զարգացման, ինչպէս նաեւ հոգեկան արթնութեան եւ սրտի ազնուացման սատար կանգնիլ» (*Գ. Մխիթարեան, Մեր Գիւղը Դատեմ· Պոստոն* 1958, *էջ* 59)։

*Ընկերութեան շօշափելի եւ շատ կարեւոր մէկ գործը կ'ըլլայ հրատարակութիւնը Դատեմ Գիւղի Պատմութեան .— Մեր Գիւղը՝* Դատեմ 1958, *խմբագրութեամբ Պ. Գուրգէն Մխիթարեանի* ։

## ԵՂԵԳԻ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1892)

*Հաստատուած է Ուստրի մէջ* 1892*ին՝ սատարելու համար Գիւղի մշակութային կեանքին, մանաւանդ դպրոցին* ։ 1915*էն վերջ կոչուած է* «Վերաշինաց» *Միութիւն եւ սիրայօժար տրամադրած է իր միջոցները թէ՛ Նոր–Խարբերդի եւ թէ Ներգաղթի* (*Վահէ Հայկ, անդ, էջ* 957) ։

### 2. ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1929)

*Կազմած են Մարսէյլի եղեգիցիները՝ առաջադրելով* «զարկ տալ մեր երիտասարդներու ինքնազարգացման, վառ պահել ազգային աւանդութիւնները, հետեւելով նահատակներու շաւիղին» (Յառաջ, *Փարիզ* 1929 *Թ.* 1024) ։

## ՇԷՆԹԻԼ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Հիմնած են ամերիկացի գաղթականները* Ուստր *քաղաքին մէջ* 1891 *Յունուար* 1*ին՝*

ունենալով իրենց Կանոնագիրը։ Կը նպաստեն Գիւղի դպրոցին մինչեւ 1915, որմէ վերջ նաեւ վերապրողներու կարիքներուն (Ճիզմէճեան, անդ, էջ 291—2)։

## ՎԱՐԴԱԹԻԼ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1892)

Կազմած են ամերիկաբնակ գաղթականները՝ օժանդակ հանդիսանալով Գիւղի կրթական գործին։ 1905ին կը վերակազմուի (Վահէ Հայկ, անդ, էջ 974—5)։

## ՔԷՕՐՊԷ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893)

Լովելի (Ամերիկա) մէջ հիմնուած է. 1904ին վերակազմուած եւ 1908էն վերջ բացած է աղջկանց դպրոց մը Գիւղին մէջ (Վահէ Հայկ, անդ՝ էջ 945)։

### 2. ՎԵՐԱԾՆՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1916)

Կը կազմուի Ամերիկա։ 1924էն վերջ կը միանան երկու անջատ Ընկերութիւնները (Ճիզմէճեան, անդ, էջ 274—5)։

## ԽՈԽ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1894)

Կազմուած է Ամերիկա գաղթած Խոխեցիներէ՝ ամէն կարելի օգնութիւն հասցնելով Հայրենի Գիւղին (Վահէ Հայկ, անդ էջ 230)։

## ԿԱՐՄԻՐ ԳԻՒՂ

1· ԼՈՒՍ· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1891—1895)

*Հիմնուած է Ամերիկա ·* 1916*ին* 885 *ռուբ-լի կը ղրկէ Հայ պաղթականներուն համար* (Արարատ, *Վաղարշապատ* 1919 *էջ* 11) ։

2· ԲՈՂՈՔ· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1891—1895)

*Հիմնումի տարիները չենք կրցած ճշդել տոր եւ նախորդինը ։* 1916*ին* 237 ռուբլի *ղրկած է Հայ պաղթականներու ի նպաստ* (Արարատ, անդ, էջ 175) ։

## ԾԱՏՈՒԿ ԳԻՒՂ

1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891—1895)

*Հիմնած են Ամերիկայի մէջ եւ* 1917*ին* 416 *ռուբլի ղրկած Հայ պաղթականներուն* (Արարատ, 1917, *էջ* 424) ։

## ԻՋՄԷ ԳԻՒՂ

1· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891—1895)

*Հիմնուած է Պրաւիդենսի* (*Ամերիկա*) *մէջ* (*Ճիզմէճեան*, *անդ*, *էջ* 279) ։

2· ԼՈՒՍ· ԵՒ ԲՈՂՈՔ· ՄԻԱՑԵԱԼ ՈՒՍՈՒՄՆ· ԸՆԿԵ-ՐՈՒԹԻՒՆ (ԻԲՐ 1903)

*Կազմած են ամերիկաբնակ Իջմէցիները եւ ունեցած են իրենց* Կանոնագիրը (*Տե՛ս Ճիզմէճեան*, *անդ*, *էջ* 279) ։

## ԾՈՎՔ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

*Հիմնած են 20 Ծովքեցիներ Ամերիկայի մէջ ,որոնց ղրկած դրամով կը շինուի Գիւղի դպրոցը (Ճիզմէճեան, անդ, էջ 290)։*

### 2. «ԾՈՎՔ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

*Հիմնած են Մարսէյլի մէջ 1925 Մայիս 10ին՝ ջանալով «ամփոփել դժբախտացած եւ վշտահար հայրենակիցները եւ... օգնել անոնց»* (Յառաջ, 1927 *Թ.* 338)։

## ԲԱՇԱՂԱԿ ԳԻՒՂ

### 1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893)

*Հիմնուած է Նիւ Եորկի մէջ 1893 Նոյ. 2ին։ Նախաձեռնողներն են Ա. Թփէնկճեան, Ա. Պօյաճեան, Կ. Արապեան (Ճիզմէճեան, անդ, էջ 278)։*

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893)

*Միեւնոյն Գիւղի պաղթականներէն կը հիմնուի եւ կը տեւէ մինչեւ 1924 (Ամերիկահայ Տարեցոյց, անդ, էջ 180)։*

### 3. ԲԱՇԱՂԱԿԻ ՀԱՅՈՑ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904)

*Նախորդ երկուքին միացումն է (Ամերիկահայ Տարեցոյց, անդ, էջ 180)։*

## ՇԷՅԽ ՀԱՃԻ ԳԻՒՂ

### 1· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

*Կազմած են Մարսէյլի պանդուխտները՝ շատ օգտակար ըլլալով իրենց վերապրող եղբարց (Վահէ Հայկ, անդ, էջ* 966)։

## ԱՂՆՅԻՔ ԳԻՒՂ

### 1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1896)

*Հիմնած են Ամերիկայի մէջ՝ իրենց Գիւղի կրթական մակարդակը բարձրացնելու համար։ Ընկերութիւնը «Դպրոցասիրաց Ընկերութեան» Բէնսի (Ֆրանսա) վարժարանին կը յատկացնէ* 300 *դոլար (Ճիզմէճեան, անդ, էջ* 280)։

## ՄՈՒՈՒԻ ԳԻՒՂ

### 1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է Ամերիկա* 1909 *Նոյ․* 1*ին։ Ունեցած է Կանոնագիր։ Նպատակն է Գիւղի դպրոցին օգնել (Ամերիկահայ Տարեցոյց, անդ, էջ* 183)։

## ՁՈՐ ԳԻՒՂ

### 1· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909 *Յունուար* 1*ին։ Նպատակն է՝ Գիւղի մէջ* Մուշեղեան *անունով*

*դպրոց մը չինել* (*Ամերիկահայ Տարեցոյց*, *անդ*, *էջ* 183)։

*

## ՔՂԻ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

*Կեղի – Քղի քաղաքի հնագոյն կրթական Ընկերութիւնը կազմուած է 1859ին Մամբրէ Վ. Մամիկոնեանի այցելութեան առթիւ եւ անոր ջանքերով։ Դժբախտաբար տեղեկատուն — Մելքոն վարժապետ Ճանթէմիրեան — մոռցած է յիշել Ընկերութեան* անունը, *դոհանալով «դպրատան Ընկերութիւն» բացատրութեամբ*։

*Ընկերութեան հիմնումի եւ նպատակի մասին կը գրէ նոյն թղթակիցը, պատմելով Մամբրէ Վ.ի գործունէութիւնը. «Մամբրէ Վարդապետը... սկսաւ... ժողովրդոց խաւարասիրութիւնը յանդիմանել ... ազդու փաստերով շարժեց բոլոր երկրացւոցս սիրտը.* շուտով մը սկսաւ յարժանաւոր տեղիս դպրատան պատրաստութիւններ տեսնուիլ։ Քղիի խասապայի ժողովուրդն անմիջապէս դպրատան Ընկերութիւն մը գրուելու ձեռնարկութիւն ըրին *եւ յաջողեցաւ որ հարիւր յիսունի չափ ազգատ տնուոր Խասապան մինչեւ քան հազար ղուրուշ գրուեցան* դըպրատան ծախքը եւ վարժապետի ամսականը վճարելու համար, դպրոցն ալ սկսան շինել» (Մասիս, 1859 *Թ.* 403)։

*Ուրիշ տեղեկութիւն գտած չենք*։

## 2· ԱՐՏԱՒԱԶԴԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է Պոլսոյ մէջ 1879ի սկիզբը։ Ժամանակակից թերթերէն* Թերճէմանը էֆքեար, Օրագիր, *եւ* Փունջ *կը հրատարակեն* 1879 *Մայիսին միեւնոյն ծանուցումը, ուր կ'ըսուի թէ Ընկերութիւնը* նորահաստատ *է։ Ահա* Օրագիրի *տեղեկութիւնը. «Հրաւէր առ Քղեցի ազգայինս. Քղիի նորահաստատ* Արտաւազդեան Ընկերութիւնը, *որոյ առժամանակեայ Գործադիր Ժողովը կազմուած է, իր առաջին նիստը պիտի ընէ յառաջիկայ Կիւրակէ Մայիս* 20, *ի ժամ* 7, *Ղալաթիոյ վարժարանը։ Կը հրաւիրուին համայն Քղիի ազգայինք ազգասիրաբար ներկայ գտնուիլ Ընկերութեան առաջին նիստին*, որոյ նպատակն է Քղիի ազգային մանկտւոյն գիտութեան կաթն ջամբել։ Օրակարգ. *Ա. Ընթերցումն եւ վաւերացումն* Կանոնագրութեան։ *Բ. Ընտրութիւն Դիւանի։ Գ. Որոշումն Ընկերութեան տարեկան բաժանորդագնի։ Ի դիմաց Գործ. Ժողովոյ՝* Յով. Սրապեան» (Օրագիր *Կ. Պ.* 1979, *Մայիս* 17)։

Օրագիրի *խմբագրութիւնը իր կողմէ կ'աւելցնէ. «Մեք եւս հարկ կը համարիմք Քղեցի ազգայնոց հետ, նաեւ մեր հասարակութեանը յանձնարարել սոյն* նորակազմ *Ընկերութիւնը, գիտնալով որ Քղի՝ Հայաստանի ամէնէն կեղեքեալ գաւառաց մէկն է, ուստի եւ ամէնէն աւելի ուսման, օգնութեան ու ձեռնտուութեան կարօտ»* (Օրագիր, 1879

*Թ*. 973: — *Հմմտ*. Թերճէմանը էփէ. 1879 *Թ*. 562: — Փունջ, 1879 *Թ*. 1375):

3. ԻՐԵՐԱՎԱՐԺ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Հիմնուած կ'երեւայ* 1881 *Յունուարին*: *Հիմնադիրն է* Տիգրան Փափազեան, *Պոլսոյ «Միացեալ Ընկերութեան» կողմէ դաստիարակ Քղիի մէջ: Ընկերութեան անդամը կը պարտաւորուի* իր գիտցածը ընկերին սորվեցնել:

*Փափազեան Ընկերութիւնը հիմնելէ անմիջապէս վերջը, այն է՝* 1881 *Փետրուարին սկիզբը, Քղիի մէջ կը բանայ նաեւ համանուն* Լսարան *մը, որուն առաջին ատենախօսը ինքը կ'ըլլայ*:

*Ասոնց մասին* Սարգիս Հ. Սրապեան *կը գրէ Քղիէն* 1881 *Փետր*. 15 *թուականով*. *«Ամսոյս սկիզբը Ասնիս մէջ* Լսարան *մը բացուեցաւ, շնորհիւ եւ ջահիւք Մեծ. Տիգրան էֆ. Փափազեանի, որ Միացեալ Ընկերութեանց դաստիարակներէն մին է աստ եւ որ իւր համբոյր բնաւորութեամբ ամէնուս համակրանաց արժանացած է: Սա անդստին զատաւս ոտք դնելէն ի վեր այս համոզմունքը գոյացած էր թէ երկիրը շուտ լուսաւորելու համար չէ բաւեր տղոց վարժարանը միայն, այլ պէտք է որ հասակաւորք ալ՝ մանաւանդ երիտասարդք՝ սրտի եւ մտքի զարգացուցիչ դրութեան մը մէջ լինին եւ ասոր համար ինչ որ կը խորհէր՝ զոր մտէն քննելու պատիւը կը վայելէի, յառաջ վարեց եւ անվեհեր կա-*

*մօք ի գլուխ հանեց* : Նա կազմեց Ընկերութիւն մը Իրերավարժ անուամբ , *որոյ գլուխն ինք պիտի գտնուի* եւ որոյ մէջ իւրաքանչիւր ոք իւր գիտցածը անխնայ ընկերին պիտի սովրեցընէ , ինքն ալ վերազուննէն սորվելով : *Յետ հաստատելոյ սոյն Ընկերութիւնը , անմիջապէս փութաց անոր անունով բանալ* Լսարանն *ալ , ուր քանի մը անգամ է յաջորդաբար ինք կ'առենախօսէ սրտառուչ կերպիւ ,* մինչեւ փղձկիլ բազմաց յարտասուս , *զոր նոյն իսկ ես իմս տամկոտ աչօք տեսայ : Ծաւալագոյն տարածուեցաւ Լսարանին համբաւն եւ բերկրութեամբ կը տեսնենք որ անոնք որ անտարբեր էին՝ եռանդով եւ սիրով կը յաճախեն»* (Մասիս , 1881 *Թ* . 2842) :

4. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (. . .1900)

*Ձենք կրցած ստուգել հիմնումի տարին : 1900ին կը ներկայանայ արդէն կազմալոյծ , որուն համար Թղթակից մը կը գրէ . «Ցաւով տեսանք որ տեղւոյս* Կրթասիրաց Ընկերութիւնը *կազմալուծուած է* առենէ մը ի վեր . . . *Առաջնորդարանի մասնաւոր ուշադրութիւնը կը հրաւիրենք Կրթասիրացի* վերակազմութեան համար» (Արեւելք , *Կ* . *Պ* . 1900 *Թ* . 4412) :

5. ԽՈՐՁԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1897)

*Կազմուած է* Վատերտաուն (*Ամերիկա*) , 1897 *Նոյ . 2ին նախ «Խորձեան Միութիւն» անունով , յետոյ կը կոչուի «Կրթասիրաց Մի-*

*ութիւն»* ։ *Բաժնեգինն է մէկ դոլար մուտք եւ 25 սենտ ամսավճար* (*Մուշեղ Եպիսկոպոս, Ամերիկահայ Տարեցոյց. Պոստոն* 1912 *էջ* 180)։

6. ԳՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1908)

*Անծանօթ է կազմութեան թուականը* ։ *Կը լուծուի* 1909 *Յուլիսին* (Յառաջ, *Կարին* 1909 *Թ*. 22)։

7. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1913)

*Կը յիշուի լոկ անունով* 1913*ին* (Յառաջ, 1913 *Թ*. 141)։

8. ՀԱՄԱՔՂԵՑԻԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (...1918)

*Հիմնուած է Ամերիկա* ։ *Հաւանօրէն Վատերտաունի «Կրթասիրացն» է, որ յետոյ վերածուած է* «Համաքղեցիական Միութեան», *որ կը յիշուի* 1919*ին* (Ժամանակ, Կ. Պ. 1919 *Թ*. 3603) *եւ* 1920*ին* (Ժողովուրդի Ձայնը, *Կ*. *Պ*. 1920 Թ. 565)։

9. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է Պոլիս*, 1919 *Փետր*. 23*ին*՝ 70 *անդամներով* (*Տեղեկագիր Հայրենակցական Միութեանց*. *Կ*. *Պ*. 1921, էջ 3։ —*Թէոդիկ, Ամէն. Տարեց*. 1921, *էջ* 307)։ 1919 *Յունուար* 9*ի Ընդհ*. *ժողովի մէջ Վարչութեան անդամ կ՚ընտրուին*. *Մ*. *Ղամպարեան, Մ*. *Մոսիկեան*, *Կ*. *Արսլանեան*, *Գ*. *Սէրվէրեան*, *Յ*. *Բամբալեան*, *Ս*. *Գուլյեան*, (Ժողովուրդի Ձայնը, 1921 *Թ*. 703)։

Միութեան Կանոնագիր—Ծրագիրը վաւերացուելէ վերջ՝ 1919 Յունիսին, կ'ընտրուի հետեւեալ Գործադիր Ժողովը.

| | |
|---|---|
| Ս. Մանուկեան | Ատենապետ |
| Արշամ Տիլպէրեան | Ատենադպիր |
| Փիլիպպոս Խթէնեան | Գանձապետ |
| Գասպար Կաճառեան | Անդամներ |
| Գրիգոր Սէրվէրեան | |
| Սարգիս Յովհաննէսեան | |
| Մանասէ Փոստոյեան | |
| Սեդրակ Մոսիկեան | |
| Պօղոս Արսէնեան | |

(Ժամանակ, 1919 Թ. 3570)։

Մայր Դիւանը կը կազմեն.

| | |
|---|---|
| Մանասէ Փոստոյեան | Ատենապետ |
| Գրիգոր Կարապետեան | Ատենադպիր |

(Տեղեկագիր, անդ)։

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԽՈՒՓՍ ԳԻՒՂ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—1870)

Պոլսոյ պանդուխտ Խուփսեցիները Ընկերութիւն մը հաստատած են 1869—70ին, որուն մասին միայն Պոլսոյ Սէր Օրագիրի մէջ հանդիպած ենք յիշատակութեան մը։ Թերթը 1870 Մայիս 7ին կը գրէ. «Մեր պանդուխտ ազգայիններէն 60 Քղեցիք Ընկերու-

թիւն մը կազմելով՝ զանազան վիճակահանութեանց թղթեր կ՚առնեն եղեր բաւական առենէ ի վեր: Այս անգամ Սաքսոնիայի վիճակահանութենէ անոնց վիճակաթղթին մէկը 40 հազար թալէր վաստկած ըլլալը բերկրութեամբ լսած ենք» (Սէր Օրագիր, Կ. Գ. 1870 Թ. 157):

1954ին այս տողերը Պարիսի Յառաջին (1954 Թ. 7346) մէջ գրելէ վերջ՝ Բոստոնի Հայրենիքին մէջ հաճոյքով կարդացինք լուսաբանութիւն մը Պր. Լեւոն Պարոնեանի կողմէ, որ կը տողէ. «1870ական թուականին դպրոցական կեանքը սկսած էր Պոլսոյ Հայ երիտասարդութեան մէջ... Այդ թուականին բաւական թուով Խուփսեցիներ կը գտնուէին Պոլիս. անոնք շատ կ՚ազդուէին Պոլսոյ ուսումնական շարժումէն ու կը կազմեն Խուփս Գիւղի մէջ Հայկական Ուսումնասիրաց Միութիւնը: Այս Միութիւնը քանի մը տարի գործելէ վերջ՝ կ՚ունենայ 223 օսմանեան ոսկի դրամագլուխ: 1879 թուին Խուփսի Հայկական Ուսումնասիրաց Միութիւնը կը դիմէ Արարատեան Ընկերութեան որ ընդունի Խուփսի երկսեռ դպրոցներու հովանաւորութիւնը: Արարատեան Ընկերութիւնը սիրով կ՚ընդունի Խուփսեցիներու առաջարկը՝ մէկ պայմանով, եթէ Խուփսեցիները յանձն առնեն նոր եւ արդիական ոճով դպրոց մը շինել Խուփսի մէջ: Պոլսոյ Խուփսի Ուսումնասիրաց Մասնաճիւղը կը տրամադրէ իր ունեցած բո-

*լոր դրամը դպրոցի շէնքի շինութեան...:* (Հայրենիք, *Բոստոն* 1954 Թ. 12,852):

*Հաւանական է որ Ընկերութեան անունը եղած ըլլայ* «Հայկական *Ուսումնասիրաց* Ընկերութիւն» *եւ ոչ թէ* Միութիւն. *զի այն ատենները* (1870*ին*) «*Միութիւն*» *տիտղոսը ցանցառ էր. կը գործածուէր աւելի՝* «*Ընկերութիւն*» *բառը:*

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910—1911)

*Հիմնած են պոլսաբնակ Խուփսեցիները՝ հաւանօրէն շատոնց դադրած ըլլալով հին Ընկերութիւնը: Անիկա ունեցած է իր* Կանոնագիրը (*չենք տեսած*), *որ Ազգ. Կեդր. Վարչութեան խառն ժողովէն հաստատուած է* 1911 *Հոկտ.* 26*ին: Իր կեդրոնն էր Ալալէմճեան Խան, ուր կը հաւաքուէին անդամները* 1912 *Մարտ* 11*ին՝ ընտրելու համար վարչական եւ հաշուեքննութեան մարմին մը* (Ժամանակ, *Կ. Պ.* 1912 *Թ.* 1051):

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910—1912)

*Կազմած են ամերիկաբնակ Խուփսեցիները՝ կեդրոն ունենալով Ֆէլլս (Միացեալ Ընկերութիւնք, անդ՝ էջ* 61)*: Ընկերութիւնը* 1919*ի ամառը* 30 *անգլ. ոսկի կը ղրկէ Պոլիս, Խուփս Գիւղի կարօտեալներուն* (Ժամանակ, 1919 *Թ.* 3598):

## ՀԷՐՏԻՖ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1905)

*Հիմնուած է* 1905 *Յունուար* 1*ին Պրաւիտենս* (*Ամերիկա*)։ *Իր Ծրագիր – կանոնագիրը ունի* 60 *Յօդուած, որոնցմէ առաջինը կը դնէ Ընկերութեան* նպատակը. «*Ընկերութեանս նպատակն է հաստատել երկսեռ նախապատրաստական դպրոց մը Քղիի Հէրտիֆ գիւղի մէջ* Սուրբ Լոյս *Վարժարան անունով, մատաղ սերունդի կրթութեան եւ դաստիարակութեան նպաստելու համար*» (*Ծրագիր-կանոնագիր Քղիի Հէրտիֆ Գիւղի Ս. Լոյս երկսեռ Վարժարանի Ուսումնասիրաց Ընկերութեան. Կ. Պ.* 1910, *էջ* 7)։ *Ընկերութեան կրնայ անդամակցիլ ամէն հայ*, «որ բարի վարուց եւ նկարագրի տէր է» (*Յօդ.* 2)։ *Անդամավճարն է*, *Ամերիկայի համար*, *մուտք* 5 *տալեր եւ ամսավճար՝* 25 *սենտ*, *իսկ Գիւղին մէջ՝ մուտք* 5 *ղրշ. եւ անդամավճար* 1 *ղուրուշ* (*Յօդ.* 5)։ *Ընկերութիւնը ունի Կեդր. Վարչութիւն*, *որ կ'ընտրուի Ընդհ. Պատգամ. Ժողովի կողմէ* (*Յօդ.* 9)։ *Ընկերութեան վարժարանը յաճախող սաները ձրի դաստիարակութիւն կ'ընդունին եւ իրենց գրենական պիտոյքները Ընկերութիւնը կը վճարէ* (*Յօդ.* 51 *եւ* 56)։

## ԱՊՈՂՆԱԿ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (?)

*Կը յիշուի* 1925*ին* (*Յ. Խաչմանեան*, *Ամերիկահայ Հանրագիտակ* 1925, *էջ* 495)։

## ԴԱՐՄԱՆ ԳԻՒՂ

1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (···1924)

*Կը յիշէ Ամերիկահայ Հանրագիտակ*, 1925, *էջ* 495։

## ԾԵՐՄԱԿ ԳԻՒՂ

1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (···1924)

*Կը յիշէ Ամերիկահայ Հանրագիտակ*, *էջ* 496։

## ՋԱՆԱԽՃԻ ԳԻՒՂ

1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (···1924)

*Կը յիշէ Ամերիկահայ Հանրագիտակ*, *էջ* 496։

*

## ԲԱԼՈՒ

1· ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860?)

*Հիմնուած է* Պոլիս *հաւանօրէն* 1860*ի տարիներ։ Առաջին անգամ կը յիշուի* 1867 *Յունիսին, երբ Ընկերութիւնը* 200 *դուրուշի նուիրատուութիւն մը կ՚ընէ Ազգ· Ս· Փրկիչ Հիւանդանոցին* (Մասիս, 1867 *Թ*· 80)։

*Կը թուի թէ շատ* հին է իր սկզբնաւորութիւնը, *զի կ՚ըսուի թէ «Ընկերութիւն, որ* սովորութիւն ունէր տարին անգամ մը պատարագ մատուցանել տալ, *այս Կիրակի ևս* իւր բարի սովորութիւնը *ի գործ դրաւ···»*

(Մասիս Փոքր, 1868 *Թ*. 171 *Մայիս* 27)։ *Կարծես* հին սովորութիւն մ'է *ունեցածը*։

2. ԱՆՁՆԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—1869)

*Հիմնուած տարին չի յիշուիր, բայց կը տեսնուի թէ* նորահաստատ *է* 1869*ին*, *երբ Բալուի նորընտիր Առաջնորդ Պետրոս Վ. Բաղուանեան «փութով կը ձեռնարկէ... Անձնանուէր Ընկերութեան* տարածմանը» (Մամուլ 1869, *էջ* 258)։

*Ընկերութեան Վարչութիւնը կը կազմեն.*

| | |
|---|---|
| *Յովհ. Մ. Տ. Գէորգեան* | *Ատենապետ* |
| *Մ. Պժեան* | *Ատենադպիր* |
| *Մկրտիչ Խոշմաթեան* | *Տեսուչ* |
| *Գ. Տ. Համբարձումեան* | *Գանձապետ* |

*Վարչութիւնը եռանդուն գործունէութիւն կ'ունենայ.* Ս. Սահակեան *վարժարանը կը բանայ* 120 *աշակերտներով եւ ուսուցիչով. հանդէս մը կը սարքէ եւ այդ առթիւ* 50 *բաժանորդ կ'արձանագրէ. Կիրակիները գիւղացի մէջ ճառախօսութիւն եւ բարոյական ընթերցումներ կը կազմակերպէ. կը չահի հասարակութեան համակրութիւնը* (Հայրենիք, 1872 *Թ*. 82)։

3. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Կազմուած է* Պոլսոյ *մէջ գտնուող Բալուցիներէ եւ Զարսանճագցիներէ* 1879 *Մարտէն* երկու տարի առաջ (Մասիս, 1879 *Թ*. 2315)։ «*Իրենց գաւառին ու գիւղօրէից վարժարան-*

*ները բարեկարգելու եւ նիւթապէս ու բարոյապէս օգնելու նպատակաւ»* (Փունջ, 1879 *Թ*. 1352):

*Պոլսոյ* Հայրենիք *կը գրէ. «Մայրաքաղաքս պանդխտող Բալուցի եւ Չարսանճագցի ազգայինք իրենց Հայրենեաց եւ աղքատիկ մանկտւոյն ապագայ պատրաստելու համար* Մեսրոպեան *անուն* Ընկերութիւն *մը կազմեր են, նպատակ ունենալով* Բալուի եւ Չարսանճախի միջեւ օդաւէտ եւ գեղեցկադիր տեղ մը կեդրոնական վարժարան մը բանալ, ուր պիտի ընդունուին երկու Գաւառի 150ի չափ գիւղերէն մանկտիք, որք ընթերցանութենէ աւարտած են: Ընկերութիւնն արդէն 300 բաժանորդ հայթայթած եւ 15,000 դրուշի գումար մը պատրաստած է: Իւրաքանչիւր բաժինը 5նոց թղթադրամ է» (*Հ*այրենիք, 1879 *Թ*. 509 *Մարտ* 7):

*Ընկերութեան Ընդհ. Ժողովի Ատենապետն է* Մ. Կիւրճեան (Մասիս, 1879 *Թ*. 2251):

1882*ին ղադրած է Ընկերութիւնը. Անդամոց* 280 *դրչ. հասոյթը եւ* փայտաշէն նաշարանը *կը յանձնէ «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ին* (Մասիս, 1882 Թ. 3125):

4. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԲԱԼՈՒԻ ՄԷՋ (1877—1878)

Պոլսոյ *մէջ* 1877*ին հիմնուած «Մեսրոպեան Ընկերութիւն»ը, որ՝ ինչպէս տեսանք՝*

*նաեւ* Զարասնեազցիներու *Ընկերութիւն էր՝ չէ կրցած հասնիլ իր նպատակին — Բալուի եւ Զարսանճագի մէջտեղ* կեդրոնական վարժարան մը բանալ — *եւ հաւանօրէն շուտով դադրած է : Կ'երեւայ թէ ատոր տեղ երկրորդ* «Մեսրոպեան Ընկերութիւն» *մը հիմնուած է բուն իսկ* Բալուի մէջ, *ուր* 1878*ին* Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ *թաղին մէջ* Ս. Լուսաւորչայ *անունով դպրոցի մը պաշտպանութիւնը ստանձնած է* Մեսրոպեան Ընկերութիւնը՝ *ջանալով որ հետզհետէ դայն բարեկարգեալ դպրոցներու կարգը անցնէ (Պօղոս Ծ. Վ. Նաթանեան , Արտօսր Հայաստանի , Կ. Պ. 1879 , էջ 33) : Այդ ատեն Ընկերութեան Ատենապետն էր* Պօղոս Աղա Պայրնտրեան *եւ Պօղոս Ծ. Վ. Նաթանեան կը տեսնէր Բալուի մէջ Ընկերութեան անդամները , որոնք «քաղաքի բոլոր հասարակութեան համակրանաց արժանի եղած էին , որովհետեւ ամէնքն ալ ձեռք ձեռքի տուած անդուլ կ'աշխատէին դպրոցաց բարեկարգութեան համար* (*Անդ* , *էջ* 35–6) :

*Այս Ընկերութիւնը իր վրայ առած էր նաեւ Նաթանեանի բացած* աջկանց դպրոցի *հոգը* (*Անդ* , *էջ* 36) :

5. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—1879)

*Հիմնած են Բալուի Բողոքականները եւ բացած վարժարան մը* (Հայրենիք , 1881 *Թ.* 909) :

### 6. ԿԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—1879)

Բուն տիտղոսը չէ յիշուած. հիմնած են
բողոքական Հայ կիներ եւ բացած աղջկանց
նախակրթարան մը (Հայրենիք, անդ)։

### 7. «ԵՓՐԱՏ» ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հիմնուած է Պոլիս 1919 Յունուարի
սկիզբը՝ գործունէութեան շրջանակ ունենա-
լով Խարբերդ, Արաբկիր, Ակն, Մալաթիա,
Բալու, Չարսանճագ քաղաքները եւ իրենց
շրջակայ գիւղաքաղաքներով ու գիւղերով,
360 անդամներով (Տեղեկագիր Հայրենակ-
ցական Միութեանց. Կ. Պ. 1921, էջ 3)։ —
Միութեանս նպատակն էր «իրենց անդարձ
կերպով կորսուած սիրելիները վերադառնելու
եւ վերապրողներու եղբայրական օգնութեան
ձեռք կարկառելու անդիմադրելի բաղձանքը»
իրականացնել։

## ՀԱՒԱՒ (ՀԱՊԱՊ) ԳԻՒՂ

### 1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Բաղուանեան Պետրոս նորընտիր Առաջ-
նորդի Բալու հասնելէ քիչ վերջ — 1869 —
«Նորին ազգու եւ սրտառուչ քարոզութեամբ
... գիւղիս դպրոցը բարեկարգելու նպա-
տակաւ Անձնուէր անուն մասնաւոր Ընկերու-
թիւն մը հաստատելու պատճառ եղաւ եւ
բնիկ գիւղիս բնակիչ Կատարիկեան Պր. Ան-
դրէաս ... դասատու կարգեց դպրոցիս սա՛
թէութեամբ որ ամէն Կիրակի օր դպրոցս

*բաց եւ ինքն ալ ներկայ գտնուի, որպէս զի ընթերցման փափաքող անձինք դպրոց յաճախելով ընթերցման զբաղին»* (Փունջ, 1870 *Թ*. 521)։

1883*ին տակաւին կանգուն էր Ընկերութիւնը եւ Գործ. Ժողովը կը կազմէին.*

*Վարդան Փաշալեան* *Ատենապետ*

*Խ. Մանիկեան* *Ատենադպիր*

*Մինչեւ* 1883 *ուրիշ* Ընկերութիւններ *ալ կազմուած են Հաւաւի մէջ զանազան նպատակներու համար* (Մասիս, *անդ*), *որոնց անունը չենք գտած որեւէ տեղ յիշատակուած*։

2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1878)

*Փօղոս Ծ. Վ. Նաթանեան* 1878*ին կը գտնէր Հաւաւի մէջ «մի բարեկարգեալ օրինաւոր* դպրոց, *որ* մասնաւոր Ընկերութեան մը *խնամոց ներքեւ է»* (*Արտօսր, անդ, էջ* 61)։

*Հաւանօրէն այս* անունով անծանօթ*մնացած Ընկերութիւնը նոյն չէր «Անձնուէր Ընկերութեան» հետ*։ *Այս Ընկերութիւնը գուցէ մէկն էր* Մասիսի *վերյիշեալ «ուրիշ Ընկերութիւններէն»*։

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907?)

*Նիւ Եորքի (Ամերիկա) մէջ հիմնած են Հաւաւցիները. ունէր* 100 *անդամ* (*Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ*. 1925, *էջ* 490)։

## ՍՂԱՄ ԳԻՒՂ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

«1888 *Թուականին* Պոլսոյ *Պէշիկթաշ արուարձանին մէջ կը կազմուի* 30–40 *տու-ներէ բաղկացեալ* Սղամ Գիւղի պանդուխտ-ներու *միջեւ* Ընկերութիւն *մը, ղեկավարու-թեամբ Մարտիրոս Ջանիկեանի անձնուէր աշխատութիւններուն: Աւելի նիւթական ծանրակշռութեամբ կ'ապահովէ Գիւղին վար-ժարանին* 40–50 *մանուկներու դաստիարա-կութիւնը*» (*Յարութիւն Քհն. Սարգիսեան, Բալու. Գահիրէ* 1932, *էջ* 271): 1895*էն վերջ կը լուծուի Ընկերութիւնը*:

### 2. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1923)

*Հիմնուած է* Հալէպի *մէջ եւ ապաստան հայրենի Գիւղի վերապրողներ: Հետզհետէ անդամները զանազան երկիրներ ցրուելով՝ Միութիւնը կը դադրի*: 1925 *Հոկտ.* 4*ին կը վերակազմուի* Մարսէյլի *մէջ եւ կը գործէ* (*Տե՛ս* Յառաջ, *Փարիզ* 1928 *Թ.* 552):

## ՍԱՔՐԱԹ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1905)

*Հիմնուած է Նիւ Եորք* 1905 *Սեպտ.* 1*ին*: *Նպատակն է* օգնել Գիւղի դպրոցին եւ հիմ-նել աղջկանց վարժարան մը: *Անդամակցու-թեան բաժնեվճարն է մուտք*՝ 1 *դոլար, ամ-սական*՝ 25 սենտ (*Մ. Եպիսկոպոս, Ամերի-*

կահայ Տարեցոյց, Պոստոն 1912, էջ 82)։ Ընկերութիւնը հայ գաղթականներու նպաստին կը յատկացնէ 715 ռուբլի (Արարատ, 1917, էջ 22)։

## ՆԵՐԽԻ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

Պրաւիտընսի մէջ 1907 Հոկտ. 4ին հիմնուած է։ Նպատակն է. Զարկ տալ Գիւղի կրթական գործին։ Անդամավճարն է մուտքի՝ 1 տոլար, ամսական՝ 25 սենթ։ Ընկերութիւնը Գիւղին մէջ դպրոցի շէնք մը շինած է եւ դպրոցի ծախքերը հոգացած մինչեւ 1915։ Անկէ վերջ կը շարունակէ օգնութիւն հասցնել վերապրողներու կարիքներուն (Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ, 1925, էջ 485—486)։

## ԽՈՇՄԱԹ ԳԻՒՂ

### 1. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1907—1908)

Կազմուած է Պրաւիդենս (Ամերիկա)։ Գործունէութեան մասին ծանօթութիւն չունինք։ Կը յիշուի 1908—12ին (Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ. 1912, էջ 61)։

### 2. ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

Կազմուած է Մարսէյլի մէջ։ 1927ին կու տայ թատերական ներկայացում եւ հասոյթը

*կ'ուղարկէ* Սուրիա՝ *կարօտ հայրենակիցնե-
րուն* (Յառաջ, *Փարիզ* 1927 *թ.* 493)։

## ԱՐԹԽԱՆ ԳԻՒՂ

1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1907—1908)

*Ամերիկայի* Գրանիտ Սիտիի *պանդուխտ գիւղացիները հիմնած են* (*Միացեալ Ընկերութիւնք Հայոց*, *Կ. Պ.* 1912, *էջ* 61)։

## ԽԱՄՇԼՈՒ ԳԻՒՂ

1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1907—1908)

*Գրանիտ Սիտիի մէջ հիմնուած է* (*Անդ*)։

## ՁԷԹ ԳԻՒՂ

1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

*Կազմուած է Մարսէյլի մէջ* 1926 *Հոկտ.* 7*ին «վառ պահելու համար հայրենասիրական զգացումներ»* (Յառաջ, *Փարիզ* 1928 *թ.* 537)։

## ՕՐԽՈՒ ԵՒ ԹԵՓԷ ԳԻՒՂԵՐ

1. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1927—1928)

*Հիմնած են Մարսէյլի մէջ* 1927*ի վերջը կամ* 1928*ի սկիզբը։ Նպատակն է.* Օգնել թշուառներուն (Յառաջ, 1928 *թ.* 553)։

## ԱՐՄԱՇ ԳԻՒՂ

### 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1928)

Կազմուած է Մարսէյլի մէջ: Իր նպատակն է. 1. Նիւթապէս եւ բարոյապէս սատար հանդիսալ Գիւղի կարօտեալներուն. 2. Ոյժ տալ ինքնազարգացման, 3. Վերաշինել Արմաշ գիւղ մը, երբ պարագաները թոյլ տան (Յառաջ, 1928 Թ. 678):

* * *

## ՉԱՐՍԱՆՃԱԳ (ԲԵՐՐԻ)

### 1. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Բալուցի եւ Չարսանճագցի պանդուխտներ Պոլսոյ մէջ հիմնած են այս Ընկերութիւնը իրենց երկու գաւառներու եւ գիւղերու դպրոցները բարեկարգելու համար (Փունջ, 1879 Թ. 1352):

Բալու եւ Չարսանճագ (Բերրի) իրարու մօտ ըլլալով՝ հասարակաց Ընկերութիւն մը կազմեր են: Որքան կ՚երեւայ՝ երկար տեւած չէ եւ 1877ի վերջը կամ 1878ին իրարմէ բաժնուած են՝ առանց իրենց նպատակին հասնելու, Բալուցիները՝ Բալու քաղաքին մէջ հիմնած են նոյնանուն Ընկերութիւն մը, իսկ Չարսանճագցիներու գործունէութիւնը յայտնի չէ: — Հիմնադիրներէն մին եղած է Մելքոն Կիւրճեան (Գաղութահայ Տարեգիրք, Գ. Պուքրէշ 1941, էջ 118):

2. ՄԱՏԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1884)

*Կազմած են «Միացեալ Ընկերութիւնք Հայոց» տեղական վարժարանէն ելլող աշակերտները իրր* 1880–4*ին։ Նպատակն է. «Մատենադարան մը հաստատել ի պէտս վարժարանէն ելնող ընթացաւարտ աշակերտաց... կը պատրաստէ յատուկ դրասենեակ մը իրր* ընթերցատուն» (Արեւելք, 1884 *թ.* 195)։

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908?)

*Հիմնած են Նիւ Եորքաբնակ Բերրիցիներ* (*Միացեալ Ընկերութիւնք Հայոց. Կ. Պ.* 1912, *էջ* 61)։ *Իր գործունէութեան մասին չունինք տեղեկութիւն*։

4. ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1922—1924?)

*Կազմուած է* Հալէպի *մէջ* (*Հմմտ.* Յառաջ, *Փարիզ* 1927 *թ.* 428։ — *Նոյն*՝ 1928 *թ.* 625)։ *Ունեցած է Գրադարան*։

5. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1927)

*Կը կազմուի* Մարսէյլի *մէջ։ Առաջին Վարչ. Մարմինը կ'ըլլայ.*

*Գ. Կոփոյեան*
*Ս. Պոյաճեան*
*Մ. Թաշճեան*
*Ս. Գրիգորեան*
*Ա. Նալպանտեան*
*Ս. Փիտէճեան*
*Տ. Զաքոյեան*

Նպատակն է․ «Ջանալ փրկել նոր սերունդը, որ մատնուած է արդէն ապազգայնացման վտանգին» (Յառաջ, 1927 Թ․ 4289։

1929ին Միութիւնը ունէր Մասնաճիւղեր Լիոնի, Վալանսի, Պոն դը Շէրիւի մէջ։ Իր Վարչութիւնը կը կազմէին․

Ս․ Քիւրճեան — Ատենապետ
Ծ․ Կոփոյեան — Ատենադպիր
Ա․ Գրիգորեան — Գանձապահ
Լ․ Մելիտոնեան
Տ․ Զաքոյեան — Խորհրդականներ
Մ․ Սողիկեան
Մ․ Քիւրքճեան (Յառաջ, 1929 Թ․ 847)։

6․ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1928)

Կազմուած կ'երեւայ 1928ի սկիզբը Մարսէյլի մէջ։ Ներկայացումներ կու տայ։ Կը ջանայ կազմել Գրադարան մը (Յառաջ, 1928 Թ․ 625)։

* * *

## ԶՄՇԿԱԾԱԳ

1․ ․․․ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

«Զմշկածագէն 1856 Նոյ․ 20 Թուով կը գրեն թէ այս քաղաքին Իւչպէկ անուն թաղին մէջ բարեւէր հայ ժողովուրդը Նոյ․ 1էն սկսեալ Ընկերութիւն մը հաստատեր է, մանչ եւ աղջիկ տղայոց դպրոցներ բանալու․․․ Հա–

*մար: Անկից դատ Ընկերութիւնը պիտի ջա-*նալ երկրագործութեան ամենապիտանի սկզբունքներն ալ սորվեցնել տալու, *ամէն ծախքերը հոգալով*» (Մասիս, 1856 *Թ.* 253):

*Դժբախտաբար Ընկերութեան* անունը *չէ յիշուած: Իր մասին ա՛լ չենք կարդար:*

2. ՈՒՍՈՒՄՆԱՏԵՆՉ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

*Ըստ* Պր. Ա. Ալպօյաճեանի (*Գաղութահայ Տարեգիրք, Բ. Պուքրէշ* 1940, *էջ* 81) *կազմուած է* Պոլսոյ *մէջ Չմշկածագցի պանդուխտներու կողմէ՝ իրենց ծննդավայրի քանի մը գիւղերուն մէջ դպրոցներ հաստատելու նպատակով: Գրքին մէջ* տարեթիւը սխալ տպուած է, *այսինքն՝* 1869, *որ պիտի ըլլայ* 1860:

3. ՊԱՐԹԵՒԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Ընկերութեանս հիմնումի* թուականի *մասին առանց ակնարկ մ'ընելու Համբարձում Յ. Սարըքէչիչեան* «Պարթեւեան Ընկերութեան» կանոնները *կը հրատարակէ* Մասիսի *մէջ* 1871 *Հոկտ.* 1*ին*, *ըսելով թէ այդ* կանոն*ները կազմած է* «Իւչ- Պէյ թաղի» *հասարակութիւնը* 1870 *Հոկտ.* 1*ին*» (Մասիս, 1871 *Թ.* 1177):

«*Պարթեւեան*»*ի կանոնները* 19 *Յօդուածէ բաղկացած են, որոնցմէ առաջինը կ'ըսէ.* «*Ընկերութիւնս մասնաւորապէս* Իւչ-Պէյ *Թաղիս հասարակութեան համար յատ-*

*կայած է*, ուր պիտի շինուի հիմնովին կանոնաւոր դպրոց մը, բոլոր իւր նիւթական եւ բարոյական պէտքերովը»: — «*Ամէն մէկ ընկեր շաբաթը քառասուն փարայ տալով պիտի վճարէ ի նպաստ եւ ի պայծառացումն Ընկերութեանս*» (*Յօդ. Զ.*): — «*Այն բարենպատակ Միութիւնը* երեք տարի *պիտի շարունակուի, մինչեւ որ դպրոցին զգալի պէտքերը հոգալու չափ պատրաստ դրամագլուխ մը ձեռք բերէ*» (*Յօդ. ԺԲ.*): — *Երբ այդ դրամագլուխը ձեռք բերէ՝ պիտի գնէ կալուած մը, որ դպրոցին սեպհական պիտի ըլլայ, անոր արդիւնքով ուսուցիչներու ծախքերն հոգալու համար* (*Յօդ. ԺԳ.*):

*Ընկերութիւնը իր նպատակին կը հասնի՞: — Չենք գտներ ակնարկութիւն մը: Պոլսոյ մեծ Ընկերութեան — Միացեալ Ընկերութիւնք Հայոց — միջոցաւ ու խորհրդով է որ «Չմշկածակցիք, արք կանայք, ծերք եւ տղայք, երիտասարդք եւ երիտասարդուհիք ձեռք ձեռքի, սիրտ սրտի տուած բազմադիմի զոհողութիւններով* կանգնեցին մի վարժարան գեղեցիկ եւ հոյակապ շէնք մը, որ անզուգական է քաղաքիս մէջ» (Թէրճ. Էֆքեար *Կ. Պոլիս* 1883 *Թ.* 1854):

### 4. «ԳՈՒՄԲԱՆԻՅԷ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Շահակցական Ընկերութիւն՝ նպատակ ունենալով գործուած ապրանքները վաճառել:*

### 5. ԿԱՐՄԻՐ Ս. ՆՇԱՆ ՎԱՆՔԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

*Կազմուած է Կարմիր Ս. Նշան վանքի հողերը շահագործելու համար: Ընկերութիւնը նպատակ ունեցեր է նաեւ պեղումներ կատարել:*

### 6. ԽՈՐԷՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Շահակցական Ընկերութիւն մըն է նպատակ ունենալով փոքրոքանակ առեւտուր:*

### 7. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Պետրոս Ծ. վ. *կը ջանար* 1878 *Դեկտ.ին* Պոլսոյ *մէջ հիմնել նոր Ընկերութիւն մը* (*Տե՛ս* Լրագիր, *Կ. Պ.* 1878 *Թ.* 864), *բայց լսելով թէ հայրենի քաղաքին մէջ արդէն հիմնուած է* «Հայկական Ընկերութիւն»*ը՝ աւելորդ կը համարի Պոլսոյ մէջ ալ կազմել նոր Ընկերութիւն մը* (Լրագիր, 1879 *Թ.* 975):

*Այս Ընկերութեան նպատակն է Չմշկածագի մէջ* Երկրորդական *կամ* Կեդրոնական վարժարան մը բանալ (Լրագիր, 1879 *Թ.* 1111):

### 8. ԱԳԱՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Հիմնած են Չմշկածագի Տիկիններն ու Օրիորդները՝* Իւչ Պէյ *թաղի մէջ* 1882 *Յունուար* 1*ին.* 1884*ին ունէր* 50 *ադամուհի: Տնօրէն ժողովը կազմած էին.*

*Ալթուն Ախիկեան* — *Ատենապետ*
*Խաթուն Կիւլէսէրեան* — *Ատենադպիր*

*Երիցակին Ճէլալեան* — *Գանձապետ*
*Խաչէր Պօյաճեան* — *Ա. Գործակատար*
*Պահար Ախիկեան* — *Բ. Գործակատար*

(Մասիս, 1884 *Թ.* 3725):

## 9. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

Իւչ–Պէյ *թաղի հայ կիներէն ու օրիորդներէն կազմուած է նպատակ ունենալով.* «*Կ. Պոլսոյ* Հայուհեաց *բարեհամբաւ եւ բազմարդիւն Ընկերութեան աջակցութեամբ* քաղաքիս իգական սեռին արժանաւոր դաստիարակութիւն մը տալ» (Թէրճէմ. Էֆքեար, 1883 *Թ.* 1854):

*Մարտիրոս Ս. Շահտանեան կը գրէ Զմշկածագէն. «Առաջնորդ Բարթուղոմէոս Ծ. Վ. Պաղճեանի յորդորանքով* «Իւչ–Պէյ թաղին *ազնիւ տիկնայք եւ օրիորդք... սիրայօժար կազմեցին* Ընկերութիւններ, *որք ազնիւ անդամուհեաց բարենախանձ եւ անհամեմատ ջանիւքն օր օրի յառաջանալով՝ յուսածիծաղ ապագայ մը կը խոստանայ»* (Մասիս, 1884 *Թ.* 3725):

## 10. ՍԱՆԴԽՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կազմուած է վերինին պէս* 1883*ի առաջին ամիսներուն եւ* 1883 *Հոկտեմբերին «օր ըստ օրէ իրեն ազնուուհի անդամոց ջանիւք յառաջադիմելու նշաններ ցոյց կու տայ այժմէն»* (Թէրճէմ. Էֆքեար, 1883 *Թ.* 1854: — *Հմմտ.* Մասիս, 1884 *Թ.* 3725):

11. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883—1884)

*Զմչկածագի մէջ* «Միացեալ Ընկերու-թիւնք Հայոց»*ի բացած վարժարանի Սաները հիմնած են այս Ընկերութիւնը իբր* 1883—1884*ին*։ 1886*ին Թղթակից մը կը գրէ*. «*Սանուց Ընկերութիւնն* այս տարի եւս... *ներկայացուց... Ռասինի նշանաւոր գործերէն «Եսթեր»... ողբերգութիւնն հանդերձ ծիծաղաշարժ զաւեշտով մը*» (Արեւելք, 1886, *Թ*. 640)։

«Ուսանողական Միութիւն» (Հայրենիք *ամսագիր*, 1957, *Թ*. 11) *ասոր հետ նոյն է*։

12. ԳԱՅԻԱՆԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կազմուած է* Ուշքակ թաղի *մէջ*։ *Նպատակն է աղջկանց դաստիարակութիւնը*։

13. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1903)

*Հիմնուած է Պոլիս*։ *Նպատակ ունեցած է դպրոցի մատակարարութիւնը*։ *Եղած է կարճատեւ*։

14. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904)

*Հիմնուած է Ամերիկայի մէջ*՝ Ուշքակ թաղի *համար*։

15. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904)

*Հիմնուած է Ամերիկա նպատակ ունենալով օգնել Զմչկածագի Որբանոցին*։

### 16. ՍԱՄԱՎԱՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906)

*Կազմած են պատանիներ։ Նպատակն է. բացառիկ օժանդակութիւն տալ Հողաբարձութեան՝ աղջկանց համար աւելի կարող վարժուհի մը վարձելու համար։*

*Ընկերութեան սկզբնական անունը եղած է.* «Աղջկանց Վարժարանի Օժանդակ Միութիւն» *եւ ունեցած է ձեռագիր կանոնագիր մը։ «Սամավար» անունը կը տրուի* 1907*ին, երբ կը հետապնդուի եւ տղաքը, որոնք մշակութային ժողովքներ կ՚ընէին դպրոցի մէջ՝ կը սկսին թէյ խմել ու հետապնդողներն ալ հրաւիրել թէյի։*

### 17. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908—1912)

*Հիմնած են Նիւ Եորք (Միացեալ Ընկերութիւնք Հայոց. Կ. Պ.* 1908–12, *էջ* 61) *եւ* Լորէնս (*Ամերիկա*) *գաղթած Զմշկածագցիք, որոնք* 1915*ին* 1369 *ոսկի կը յատկացնեն «յօգուտ հայ ազատագրութեան»* (Արարատ, 1915, *էջ* 832)։

### 18. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է քաղաքին մէջ դպրոցի մատակարարութեան համար։*

### 19. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է քաղաքին մէջ՝ նպաստելու համար* Սահակ-Մեսրոպեան *Վարժարանին։*

20. ՏՆՏԵՍԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒ-ԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է Ամերիկա ունենալով նպատակ՝ Երկրի տնտեսութիւնը գիտական կերպով յառաջ տանիլ: Հիմնադիրները տասը հոգի եղած են:*

21. ՉՄՇԿԱԾԱԳԻ ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1917)

*Կազմուած է* Հալէպ: *Նպատակ ունեցած է օգնել կարօտ Չմշկածագցիներու:*

22. ՉՄՇԿԱԾԱԳԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1917)

*Հիմնուած է Ամերիկա (Հմմտ. նաեւ* Ժամանակ, *Կ. Պ.* 1919, *Թ.* 3580 *եւ* 1920, *Թ.* 3800):

22ա. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* Եգիպտոսի *մէջ նպատակն ըլլալով օգնել հայրենակիցներուն:*

23. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Հիմնուած է* Հալէպ՝ *Չմշկածագցի պատանիներու կողմէ: Նպատակ՝ ինքնազարգացում: Միութիւնը հրատարակած է* խմոբատիպ Ամսագիր մը՝ իր անունով:

24. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է* 1919 *Ապրիլ* 4*ին* Չմշկածագի *եւ* Խոջորի *եւ իրենց գիւղերու վերապրողներու կողմէ* Պոլսոյ *մէջ* 42 *անդամներով: Վարչութիւնը կը կազմեն.*

Մայր Դիւան

*Պօղոս Մարտիկեան* — *Ատենապետ*

*Նազար Դերձակեան* — *Ատենադպիր*

Գործադիր ժողով

*Աւետիս Պուլուտեան* — *Ատենապետ*

*Սա. Կ. Ներսէսեան* — *Ատենադպիր*

*Յ. Փափազեան*
*Մարուքէ Յովհաննեան*
*Մանուկ Կէտիկեան*
*Կարապետ Մահտեսեան*
*Տիկ. Նարկիզ Քիպրիթճեան*
— *Խորհրդականներ*

25. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Կազմուած է* Պարիս՝ *նպատակ ունենալով ինքնազարգացումը։*

26. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Անկախ նախորդէն՝ կազմուած է սա Ամերիկա մասնաճիւղ ունենալով Լորէն եւ Բոստոն։*

27. ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1923)

*Հիմնուած է* Լորէնսի *մէջ։ Հրատարակած է* «Պատանեկան Միութիւն» *անունով Ամսաթերթ մը, որմէ միայն երեք թիւ լոյս տեսած է։*

28. ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

*Կազմուած է Ամերիկա՝ ուզելով Հայաստանի մէջ չինել դպրոց մը՝* Չմշկածագ *անունով։*

29· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1931)

*Հիմնուած է Ամերիկայի մէջ՝ նպատակն ըլլալով* ա) *Ծինել Հայաստանի մէջ Զմշկածագ անունով աւան մը*· բ) *Զմշկածագէն փոխադրել աւելի ապահով վայրեր*· գ) *Օգնել ամենուրեք հայրենակիցներու*: *Միութեանս* Ծրագիր–Կանոնագիրը *հրատարակուած է* 1935*ին* (*տեսած չենք*)։

30· ԶՄՇԿԱԾԱԳԻ ՀԱՅՐԵՆԱՍԷՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1936)

*Կազմուած է Ամերիկա* 1936 *Յուլիս* 14*ին եւ ունեցած տպագիր* Կանոնագիր *մը՝ մեզ անծանօթ*։

31· ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1945)

*Հիմնուած է* Հալէպ՝ *հարիւրէ աւելի անդամներով՝ օժանդակելու համար «Արանց Միութեան»*, *որ նոյնպէս հոն կազմուած է* (*Տե՛ս այս բոլոր Ընկերութիւններու մասին մանրամասն՝* Հայրենիք *Ամսագիր*, 1957, *Թ*· 10 *եւ* 11)։

## ՄԻԱՑՈՒՆ ԳԻՒՂ

1· ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (իբր 1840)

*Ունեցած է դպրատուն մը եւ դրամագլուխ մը*, *որուն տոկոսով կառավարած է* համանուն վարժարանը (*Խաչատուր Քհնյ· Պօղիկեան*, *Ծառի աղջիկը· Հալէպ* 1931, *էջ* 73)։

### 2. ՄԻԱՑԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Այս եւ յաջորդ տեղեկութիւններն ստացած ենք Զմշկածագցի* Պր. Յովհաննէս Անէմեան *(Ամերիկա), որուն կը յայտնենք մեր շնորհակալութիւնը:*

*«Միատան Ընկերութիւնը հիմնուած* 1873*ին՝ տեւած է մինչեւ* 1900: *Ընկերութիւնը գոյացուցած է* 400 *ոսկիի գումար մը, որմէ փոխ տուած է կարօտ Միատունցիներու՝ փոխարէն մուրհակ եւ գրաւ առնելով:*

### 3. ԿԱՐՕՏ ՄԻԱՏՈՒՆՑԻՆԵՐՈՒ ՕԳՆՈՂ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897)

*Կազմուած է* Հալէպ՝ *կարօտ Միատունցիներուն օգնելու համար:*

### 4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է Ամերիկա: Ծանօթութիւն կը պակսի:*

### 5. ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է Հալէպի մէջ՝ նպատակ ունենալով օգնել հայրենակիցներուն:*

## ԿԱՐՄՐԻ ԳԻՒՂ

### 1. «ԵՓՐԱՏԵԱՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867?)

*Հիմնուած է* Պոլիս: *Հիմնումի թուականը կը համարուի* 1867, *իսկ ըստ ոմանց* 1875*էն վերջ: Ընկերութիւնը Գիւղի դպրոցին կը ղրկէր դասագրքեր: Անեն մը դադրելէ*

վերջ՝ 1908ին կազմուած է՝ ունենալով Գան-ձապահ Յավհաննէս Բագրատունին։ — Պոլ-սոյ այս «Եփրատեան»ը կը յիշուի 1882ին իբրեւ ճիւղ մը 1879ին Գիւղին մէջ հիմ-նուածին (Տե՛ս Թերճէմ․ էֆքեար, 1882 Թ․ 1462)։

2․ «ԵՓՐԱՏԵԱՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է Կարմրի Գիւղին մէջ 1879ի գարնան, նպատակ ունենալով․ «Գիւղի դըպ-րոցը ուսման յառաջդիմութեան տարրին ենթարկել եւ ուսումն ու կրթութիւնը երկսեռ ուսանողաց համար պարտաւորիչ ընել» (Լրագիր, 1879 Թ․ 1000)։

3․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1894)

Հիմնուած է Կ․ Պոլիս։

4․ ՏԻԿՆԱՆՑ ԲԱՐԵԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

Կազմուած է Գիւղին մէջ։

5․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Կազմուած է Ամերիկա։ Նպատակ՝ «ան-շարժ կալուածով մը ապահովել Գիւղի դպրոցին ապագան»։ Կը տեւէ մինչեւ 1916, երբ կ՚օժանդակէ տարագիր Կարմրցիներուն։ Ընկերութիւնը 1910ին Մասնաճիւղ մը կ՚ու-նենայ Հալէպի մէջ։

6․ ԵՓՐԱՏԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Հիմնուած է Գիւղին մէջ 1910ին դպրոցի ուսանողներու կողմէ՝ հսկողութեամբ ուսուցչին։

## ՍԻՍՆԱ ԳԻՒՂ

1․ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Կազմուած է Պոլիս, նպատակ ունենալով դպրոցին եւ եկեղեցւոյ մատակարարութիւնը։ Վարիչ անդամներէն կը յիշուին․ Հաճի Ներսէս Տէր Մաթէոսեան, Պօղոս Պուլուտեան, Զորպաճոնց Կարապետ Մազմանեան, Պետրոս Հէքիմեան։

2․ ՄԱՆԿԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Հիմնուած է Պոլիս 1876 Ապրիլ 1ին։ Ունի իր Կանոնագիրը՝ 21 Յօդուածով, հրատարակուած Լրագիրի (1880 Թ․ 1177) մէջ։ Կու տանք քանի մը Յօդուած․ 1․ Նպատակ․— Զմշկածագի Սիսնայ Գիւղի անօգնական հայ մանկանց դաստիարակութեան նպաստել եւ ի հարկին Ընկերութեան անուան վարժարան հաստատել Գիւղին մէջ։ 4․ Ընկերակցութիւն․ — Ամսական բաժնեգինն է մէկ ղուրուշ։ 5․ Զմշկածագի ընկերք ազատ են տասներկու բաժնի փոխարէն զոյգ մը եզով լուծք վարել մէկ օր։

1879ին Վարչութիւնը կը կազմէին․

Ս․ Յ․ Մարգպանեան Ատենապետ

*Կ. Յ. Փափազեան Ատենադպիր* (Լրագիր, 1880 *Թ.* 1177)։

### 3. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է* Ամերիկա *եւ Հօդացած Գիւղի դպրոցին պէտքերը*։ 1919*ին կը լուծուի եւ ունեցած* 270 *դոլարը կը ղրկուի Սխնացի վերապրողներուն*։

### 4. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

Ազատամարտ (1911 *Թ.* 552) *կը գրէ.* «*Զմշկածագի* Սիսնա Գիւղին *մէջ խումբ մը երիտասարդներու կողմէ Գրադարան մը հիմնուած է* «Մամիկոնեան» *Անունով*», *որ անշուշտ Ընկերութիւն մ'էր*։

## ԵՐԻՑ – ԱԳՐԱԿ ԳԻՒՂ

### 1. ԽՆԱՑՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* 1879 *Յուլիս* 1*ին*։ *Նպատակն է. Գիւղի տղաքներուն դաստիարակութիւնը*։ 1879 *Սեպտեմբերին ունէր* 22 *անդամ եւ* 1500 *ղուրուշի չափ դրամագլուխ մը* (Լրագիր, 1879 *Թ.* 1068)։

### 2. ՏԻԿՆԱՆՑ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Վարչութիւնը կը կազմէին.*

*Տիկ. Հռիփսիմէ Զօլաղեան Ատենապետուհի*
*Տիկ. Պաճար Մարտիրոսեան Ատենադպրուհի*
*Տիկ. Սրբուհի Գույումճեան Գանձապետուհի*

Ընկերութիւնը կ'ունենայ 6․ օսմ․ ոսկի, որ կը յափշտակեն քիւրտերը։

### 3․ ԿԱՆԱՆՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Կրցած էր հաւաքել համեստ թիւ մը գրքերու, որոնք տեղաւորած էր դպրոցի առաջին յարկի մէկ սենեակին մէջ ու փափաքողներուն ընթերցումի համար ձրի կու տար։

### 4․ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

Հիմնած են Ամերիկա գաղթող գիւղացիները՝ նպատակ ունենալով Գիւղին դըպրոցը միշտ բաց պահել եւ Դաշտիկայ լիճերը օգտագործել գիւղին արտերը ջրելու համար։ 1941ին կը լուծուի։ — Ունեցած է ճիւղ մը Գիւղին մէջ «Ուսումնասիրաց» անունով։

### 5․ ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Նպատակն եղած է Գիւղի «Ուսումնասիրաց»ին օժանդակել։ Սարքած է ձեռագործներու վաճառահանութիւն եւ գնահատուած։ Ունեցած է մշակութային հաւաքումներ։

### 6․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

Կազմուած է Գիւղին մէջ։

## ՄՈՐՇԽԱՑ ԳԻՒՂ

### 1. ՌՈՒԲԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Կազմուած է* Հալէպի *մէջ գտնուող Մորշխացիներէ, որոնք* 1908*ին տուն մը կ'ունենան իբր կալուած: Ընկերութիւնը Ամերիկայի մէջ ալ ճիւղ մը ունեցած է:*

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է Ամերիկա՝ իբր ճիւղ Հալէպի «Ռուբինեանց»ին:*

## ՄԱՄՍԱ ԳԻՒՂ

### 1. ԵԴԵՄԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Կազմուած է* Հալէպ, *նպատակ ունենալով նպաստել եկեղեցւոյ եւ դպրոցին: Վարչութիւնը կազմած են.*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Մաթիկեան* | *Ատենապետ* |
| *Միքայէլ Փափազեան* | *Ատենադպիր* |
| *Կարապետ Աճէմեան* | *Գանձապահ* |

1920*ին իր գոյքերը պահ դրուած են Թադէոս Մանկասարեանի (Հալէպ) քով:*

### 2. ԵԴԵՄԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Ոմանք կը կոչեն* «Դպրոցի Ընկերութիւն». *կազմուած է* Պոլիս: *Իր նպատակը. եկեղեցւոյ եւ դպրոցի օժանդակել: Օգնած է դպրոցի շէնքի շինութեան:* 500 *ոսկի շահուած եւ ետ չէ ստացած:*

3. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Հիմնած են* յունադաւան Հայերը:

4 ԴՊՐՈՑԱՍԷՐ ԿԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Կազմուած է Գիւղին մէջ՝ նպաստելու համար դպրոցին: Կաթիլ կաթիլ հաւաքած իր դրամագլուխը* — 75–80 *ոսկի* — *շահու կու տայ անհատներու, որոնք անկարող կ'ըլլան վերադարձնելու:*

*Դպրոցի դրասեղաններու շինութեան ծախքին կէսը ինքը տուած է:*

5. ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1902)

*Կազմուած է* Հալէպ՝ *գործելու համար Գիւղին մէջ: Անդամներէն կը յիշուին. Մարտիրոս Ալէքսանեան, Խլտրեան, Վաղշէնեան, Մերկէր Մաթիկեան, Ասատուր Աճէմեան: Անդամավճարն էր* 15 *ոսկի իբրեւ կանխավճար:*

6. ԹՈՐԳՈՄԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1903)

*Ամերիկայի մէջ հիմնուած է՝ ապահովելու համար դպրոցի ապագան կալուածով եւ պարբերական ծախքերը հոգալով: Ունեցած է* 36 *Յօդուածով* Կանոնագիր *մը:* 1917*ին Կովկաս կը ղրկէ* 50 *տոլար՝ Մամասցի վերապրողներու համար:* 1942*ին Ընկերութիւնը կը սկսի կոչուիլ լոկ* «Թորգոմեան Ընկերութիւն»:

7. ՏԻԿՆԱՆՑ ԲԱՐԵԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է Գիւղին մէջ՝ օգնութեան կը հասնի* Ատանայի *հայերուն*։

8. «ԱԶԱՏ ՔՆԱՐ» ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնուած է Գիւղը՝ դպրոցի աշակերտութեան կողմէ, բայց կ՚ընդգրկէ բոլոր տեղացիները։ Սարքած է հանդէս, ներկայացում եւ վիճաբանութիւն* (Ազատամարտ, 1911 *Թ*. 724)։

9. ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է Ամերիկա։ Ունեցած է* կանոնագիր։ *Կը փորձուի ճաշարան եւ նպարավաճառի խանութ բանալ, բայց կարճ ատենէն կը փակուի եւ Ընկերութիւնը կը դադրի*։

10. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

*Հիմնած են Ամերիկայի մէջ՝ ունենալով սա ծրագիրը*. 1. *Պատրաստել ճոխ Գրադարան մը եւ երկու տարիէն փոխադրել զայն Սամսա*, 2. *Գրադարանի միջոցաւ մարզել երիտասարդութիւնը*։

1916*ին կը դադրի եւ գոյքերը կը յանձնէ* Թորգոմեան Ուսումն. Ընկերութեան։ 1917*ին* 150 *տոլար կը ղրկէ Կովկաս՝ վերապրող Սամսացիներուն*։

11. ԿԱՐՕՏ ՄԱՄՍԱՑԻՆԵՐՈՒ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* Ամերիկա 1918 *Յուլ. 11ին: Կը տեւէ մէկ տարի: 1919ին ունեցած* 40 *դոլարը կը ղրկէ Հալէպ կարօտ երկու Մամսացիներու:*

## ԲԱԶԱԲՈՆ ԳԻՒՂ

1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

1889*ին կազմուած է Ընկերութիւն մը, որ ունեցած է իր վրայ եկեղեցւոյ եւ դպրոցի հոգը: Թամթուլ վարդապետ քննելով յետոյ Ընկերութեան հաշիւները՝ կը պարզուի որ ան* 300 *ոսկիի գործառնութիւն մ'ունեցած է:* *Ընկերութեան* անունը *անծանօթ է:*

2. ՊԱՐԹԵՒԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

Ուստրի (*Ամերիկա*) *մէջ հիմնուած է՝ մասնակցութեամբ Ամերիկաբնակ բոլոր Բազաբոնցիներու, այսպէս՝ Սարգիս, Մեսրոպ, Յովհաննէս, Թադէոս, Կարապետ Փափազեաններ, Ծործ եւ Առաքել Ալիքսանեաններ, Բարթող Տէր Սուքիասեան, Յակոբ Մինասեան, Եղիշէ եւ Վարդերես Պասմաճեաններ, Նազար Առաքելեան, Յարութիւն Մանուկեան, Յովհաննէս Տալմաճեան, Յովհաննէս Ներսէսեան, Պետրոս Պետիկեան: Անմիջապէս կը կատարուի հանգանակութիւն եւ վիճակահանութիւն, որոնց*

*գումարը՝ անդամատուրքով՝ կ՚ըլլայ* 244 *դոլար, կը յանձնուի Վարչութեան:*

### 3· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

*Կազմուած է Գիւղին մէջ՝ բոլոր գիւղացիներու մասնակցութեամբ՝ ի նպաստ դպրոցին: Կ՚որոշուի մանր դառներ եւ ուլեր խնամել՝ ի հաշիւ Ընկերութեան:*

## ՄՈՒՌՆԱՅԻ ԳԻՒՂ

### 1· ՄՈՒՌՆԱՅԻ ԳԻՒՂԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

*Կազմուած է* Պոլիս՝ *ի նպաստ եկեղեցւոյ եւ դպրոցին: Ունեցած* 90 *մէճիտիէ դրամին* 50*ը դպրոցի շինութեան կը գործածուի·* 40 *մէճիտը փոխառութեան կը տրուի ու չի վերադարձուիր:*

### 2· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906)

*Կը կազմեն Գիւղի բարձրագոյն կարգի աշակերտները: Իրենց նպատակն ըլլալով·* 1· *Օգնել դպրոցական պիտոյքներու գիւղին եւ աժան հայթայթման,* 2· *Մանր առեւտուրի միջոցաւ փոքր գումարներով մարզել իրենց անձը:*

*Ընկերութիւնը կը շարունակուի մինչեւ Սահմանադրութիւն, որմէ վերջ կը լուծուի:*

### 3· ԱԲԳԱՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կը հիմնուի Ամերիկա՝ ի նպաստ դըպրոցին եւ եկեղեցւոյն: Կը շարունակուի մին-*

*չեւ* 1916 ։ *Մասնաճիւղ կ'ունենայ Գիւղին մէջ՝* 1909*ին. Հալէպ* 1910*ին* ։

4. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Կը հիմնուի Գիւղին մէջ՝* աղջկանց դաստիարակութեան *նպատակով, որ կը շարունակուի մինչեւ տեղահանութիւն* ։

## ՕՁ ԳԻՒՂ

1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Կազմուած է* 1899 *Մայիս* 1*ին Ամերիկայի մէջ։ Նպատա՞կը՝ «Օձ Գիւղի երկսեռ մանուկներու կրթութիւն տալու համար բաւականաչափ գումար մը ձեռք բերել, այնպէս որ կանոնաւոր եւ հիմնական յարատեւէ ։ . . Մտից տուրք երկու տոլար, ամսավճար* 25 *սէնթ»* (*Ամերիկահայ Տարեցոյց. Պոստոն* 1912, *էջ* 81) ։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904)

*Կազմուած է Ամերիկա, նպատակ ունենալով՝ դպրոցի մը ապագան ապահովել անշարժ կալուածով* ։

## ՀԱԶԱՐԻ ԳԻՒՂ

1. ՏԻԿՆԱՆՑ ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1892)

*Կազմուած՝ Գիւղին մէջ։ Նպատակն է՝ աղքատ աշակերտներու դպրոցական պիտոյքները հոգալ։ Վարչութեան անդամ*

էին. Տիկ. Ալթուն Սողիկեան, Տիկ. Սըրբուհի Ամիրխանեան, Տիկ. Սառա Անդրէասեան եւ Տիկ. Տէր–Մարտիրոսեան։

2. ՄԱՔԻՆԱՅԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1894)

Հիմնուած է Կ. Պոլիս։ Նպատակ՝ «Գնել կալ հսող մեքենայ, ի նպաստ եկեղեցւոյ եւ դպրոցի»։ Յաջորդ տարի մեքենան կը գնուի։

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1903)

Կազմուած է Լորէնս (Ամերիկա) 1903 Յուլիս 4ին։ Իր նպատակը. Ազգ. կրթական գործին համար դրամագլուխ մը պատրաստել։ Իր պաշտպանութեան տակ ունի Գիւղին մէջ 50 երկսեռ աշակերտներով դըպրոց մը։ Անդամակցութեան պայմաններ՝ 3 դոլար մուտքի, 25 սենտ ամսավճարի։

Ունի ձեռագիր Կանոնագիր մը 10 Յօդուածով (Ամերիկահայ Տարեցոյց, անդ, էջ 181)։

## ԽԱՐԱՍԱՐ ԳԻՒՂ

1. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1901)

Հիմնուած է Ամերիկա՝ ջանալով անշարժ կալուածով մ'ապահովել դպրոցին ապագան, իսկ մինչ այդ՝ բացառիկ ձեռնարկներով հոգալ դպրոցին առօրեայ ծախքերը։

2. ԳՐԱԴԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Հիմնուած է Գիւղին մէջ աշակերտնե-րու կողմէ:

## ԹՈՒՄԱՅ ՄԷՋԻՐԷ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

Հիմնուած է Ամերիկա՝ Գիւղին մէջն ալ ունենալով ճիւղ մը: Կը ջանայ բաց պահել դպրոցը եւ ապահովել անոր ապագան: Կը պաշտպանէ Գիւղին դատը. կը հասնի օգնու-թեան տարագրութենէ ազատուածներուն: «Ուսումնասիրաց» տիտղոսը «Վերաշինաց»ի կը փոխուի դաշտահանդէսի մը առթիւ:

## ՏԷԳԳԷ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Հիմնուած է 1910 Մայիս 1ին՝ դպրոցը բարեկարգ պահելու համար: Հիմնադիր-ներ են Ամերիկայի Լորէնս քաղաքի պան-դուխտ Տէգգէցիները: Ունի անտիպ Ծրագիր -կանոնագիր մը: Այժմ դադրած է:

## ՅԱՂԹՈՒԿ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Հիմնուած է Ամերիկա՝ դպրոցի ապա-գան ապահովելու նպատակով:

## ՊԱՐՏԻԶԱԿ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է Ամերիկա՝ դպրոցին նպաստելու համար: 1914ին վերաշինած է դպրոցին շէնքը:*

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած է Գիւղին մէջ՝ հոգալու համար աղքատ աշակերտներու գրենական պիտոյքները:*

## ՊՐԵԽԻ ԳԻՒՂ

1. ԴՊՐՈՑԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Կազմուած է Կ. Պոլիս 1889ին:*

## ՓՈՂՈՍԻ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնուած է Ամերիկա 1911ին:*

* * *

## ԱՐՏԱՄԷՏ

1. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Վանի նահանգին մէջ գտնուող այս *փոքրիկ քաղաքը* — Արտամէտ — *գիւղ մըն էր 1870ական թուականներուն: Իր զաւակներէն շատեր* Պոլիս *պանդխտած էին ու չարաչար տանջանքով իրենց ապրուստը հոգալէ զատ՝ քիչ մը դրամ ալ կրնային ղրկել իրենց*

տունը՝ անհրաժեշտ կարիքները հոգալու համար։ Ահաւասիկ Պոլիս գտնուող այս նժդեհ Արտամէտցիներէն 70 հոգի 1872 Ապրիլ 30ին Պոլսոյ Շէրիֆ Փաշայի մէջ ժողովք մը կը գումարեն, նախագահ ունենալով օրուան Պատրիարք Մկրտիչ Արքեպ․ Խրիմեանի ներկայացուցիչ Ղեւոնդ Վ․ Փիրղալեմեանը, եւ կը կազմեն մշակութային Ընկերութիւն մը, որուն անունը կը դնեն «Արշակունեաց Ընկերութիւն»։ Իրենց նպատակն է․ «Արտամէտի մէջ դպրոց մը բանալ»։ Ժողովքի մէջ կը քննուի նախապէս պատրաստուած կանոնագրութիւն մը։ Կ՚ընտրուի Դիւան եւ Տնօրէն Ժողով։ Կը ներկայացնենք․

### ԴԻՒԱՆ

| | |
|---|---|
| Մ․ Մուրատ Բիւզանդեան | Ատենապետ |
| Գէորգ Աճէմեան | Փոխ–Ատենապետ |
| Պօղոս Գալուստեան | Ատենադպիր |
| Պետրոս Ճէնմամեան | Փոխ–Ատենադպիր |

### ՏՆՕՐԷՆ ԺՈՂՈՎ

| | |
|---|---|
| Պաղտասար Գասպարեան | Ատենապետ |
| Մխիթար Գրիգորեան | Փոխ–Ատենապետ |
| Մ․ Պետրոս Բիւզանդեան | Ատենադպիր |
| Պետրոս Յակոբեան | Փոխ–Ատենադպիր |
| Մ․ Յարութ․ Խաչատուրեան | Գանձապետ |
| Վարդան Զաքարեան | Գանձապետ |

| | |
|---|---|
| *Մ. Յովհաննէս Սահակեան*<br>*Մարտիրոս Յարութիւնեան*<br>*Յակոբ Մկրտիչեան*<br>*Խաչատուր Ներսէսեան*<br>*Մկրտիչ Մ. Միրաքեան*<br>*Պետրոս Մաղսուտեան* | } *Անդամք* |

(Մասիս, Կ. Պ. 1872 Թ. 1234):

*Սխալ է* Հայ Հանրագիտակի *գրածը թէ Ընկերութիւնս* 1870*ին հիմնուած է* (*Հ. Մ. Պոտուրեան, Հայ Հանրագիտակ, Պուքրէշ*, 1938, *էջ* 304):

*Ընկերութեան անդամավճարն է մուտք՝ մէկ մէճիտ, շաբաթական մէկ դահեկան: Անդամները կը պարտաւորուին ամիսը անգամ մը ժողով գումարել՝ վարժարանի շինութեան եւ դրամներու հաւաքման, իսկ* 6 *ամիսը անգամ մ'ալ ընդհ. ժողով՝ հաշուեքննութեան համար* (Փող, *Կ. Պ.* 1872 *Թ.* 82):

*Ընկերութիւնը կը յաջողի Արտամէտի մէջ վարժարան մը բանալ անուանելով զայն* «Արտաշէսեան» *վարժարան եւ ստանձնելով անոր ամբողջ հոգը: Վարժարանի «մշտահոս եկամուտ բերող աղբիւր ձեռք բերելու համար» Ընկերութիւնը Պոլսոյ* Վէզիր խանի *մէջ քարուկիր խանութ մը կը գնէ* 110 *օսմ. ոսկիի, որ ամիսը* 150 *ղուրուշ վարձք կը բերէ: Նամակագիր մը գովելով Պոլսոյ պանդուխտ Արտամէտցիները՝ կ'ըսէ. «Թէեւ ըստ* մեծի մասին անուս են, այլ ուսման յարգը

յաւ կը ճանչնան եւ ճանչնալնին գործով եւ արդեամբ կ'ապացուցանեն» (Ասիա, *Կ. Պ.* 1874 *Թ.* 130) : *Իր «Արտաշէսեան» վարժարանին համար յատուկ չէնք մը շինած է Ընկերութիւնը* 1874 *Ապրիլին* (Մասիս, 1874 *Թ.* 1519) :

1880*ին կ'ընտրէ նոր Տնօրէն Ժողով մը հետեւեալներէ. Սարգիս Խ. Աճէմեան (Ատենապետ), Պետրոս Գրիգորեան, Յակոբ Նոււումեան, Պօղոս Մաղսուտեան, Պաղտասար Մելքոնեան, Դաւիթ Եղիազարեան* (Թէրճէմանը էֆքեար, *Կ. Պ.* 1880 *Թ.* 890) : *Միտք ունի բանալու* երկրագործական վարժարան մը (*անդ*) :

*Ընկերութիւնը կը լուծուի* 1896*ին ծանօթ դէպքերու պատճառաւ, իսկ կալուածները կը չահագործեն անհատներ մինչեւ* 1912 (*Տե՛ս այս մասին* Ազատամարտ, 1910 *Թ.* 189–90, 1912 *Թ.* 803) :

### 2. ...ՄԻՈՒԹԻՒՆ (1911—1912)

*Կը յիշէ Վանի* Աշխատանքը (1912 *էջ* 1029) *եւ կ'ըսէ որ կը ջանայ Գրադարան մը կազմել* :

* * *

## ԽՆՈՒՍ

### 1. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1881)

Պետրոս Շիւշէյեան 1881 *Հոկտ. 3ին* Խնուսի *այցելութիւն մը տալով՝ կը գտնէ*

«Մամիկոնեան Ընկերութիւն» *մը, բայց առիթ չ'ունենար տեսնուելու անդամներէն մէկուն հետ* (Հայրենիք, Կ. Պ. 1881 Թ. 862):

1880*ական թուականէն մինչեւ* 1888 *հիմնուած են Մուշի մէջ* «Քանի մը բարեգործական Ընկերութիւններ» Եսայի վրդ. Ղեւոնդեանի *նախաձեռնութեամբ ու քաջալերանքով, բայց անունները մնացած են անծանօթ* (Արեւելք, 1888 *Թ.* 1480):

2. ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնուած կ'երեւայ* 1910 *Յունուարին*: *Կը յիշուի* 1910 *Ապրիլ* 8*ին իբրեւ «Նորահաստատ»*: *Ձգտումն է «տալ համայնքին կուլտուրական, գրական, թատերական... պահանջների գոհացում»* (Յառաջ, Կարին 1910 *Թ.* 30):

* * *

## ԽՈՏՈՐՋՈՒՐ

1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909—1910)

*Կը յիշուի* 1910 *Մարտ* 7*ին Խոտորջուրէն «Իրազեկ»ի ըրած թղթակցութեան մէջ, ուր կ'ըսուի. «Հոս Բարեկենդանիս՝ մեր* Երիտասարդաց Միութիւնը *գովելի ընթացք մ'ունեցաւ. փոխանակ ունայն խաղերու՝ առաջին անգամ թատրոնի ներկայացում տուաւ: Զատկին ի միջի այլոց պիտի ներկայացնեն* «Մեծ. Մուրացկանները» (Յառաջ, *Կարին* 1910 *Թ.* 22, *Մարտ* 23):

* * *

### 2. «ՏԱՑՔ» ԽՈՏՈՐՋՈՒՐՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Նախ Ռուսաստան հիմնուած է, հաւանօրէն* 1917*ին եւ Միութեան կեդրոնն ալ հոն եղած է։ Իսկ* Պոլսոյ *մէջ կազմուած է* 1918 *Դեկտեմբեր* 8*ին՝ ունենալով իրեն շրջանակ Կարնոյ նահանգը, Սպեր եւ Խոտորջուր։ Հիմնադիր անդամները* 25 *հոգի են* (*Տեղեկագիր Հայրենակցական Միութիւններու*, Կ. Պ. 1921, էջ 3: — *Հմմտ.* Ժամանակ, 1919 *Թ.* 3418, 3528: — *Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը*, 1921, *էջ* 307)։

*Միութիւնը մինչեւ Ասորիք եւ Արաբիա մարդ ղրկելով՝ ջանացած է հաւաքել վերապրողները մեծ դժուարութիւններով* (Երեւան, *Կ. Պ.* 1919 *Թ.* 14)։

*

## ՄԵԾ ԱՐՄՏԱՆ (ԵՐԶՆԿԱ)

### 1. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Կազմուած է* 1870 *Յունուար* 1*ին։ Նպատակն է. «Երկսեռ մանկտւոյն օրինաւոր վարժարան մի հաստատել»։ Տարաթական անդամավճարն է* 20 *փարա* (Փունջ, *Կ. Պ.* 1870 Թ. 536: — *Հմմտ.* Օրագիր, *Կ. Պ.* 1870 *Թ.* 140)։ — 1871 *Յունուար* 7 *գումարուած Ընդհ. Ժողովքը կ՚ընտրէ իր* Դիւանը.

*Մ. Մատթէոս Ալիքսանեան* — *Նախագահ*
*Մ. Թէոդորոս Քէօսէյեան* — *Ատենապետ*
*Պօղոս Տ. Յակոբեան* — *Ատենադպիր*

Իսկ Տնօրէն ժողովը կը կազմեն. Գէորգ Էգպակեանց, Ճանիկ Մղտեսեանց, Յովհաննէս Խամպակեանց, Պօղոս Կոկանեանց, Մ. Վարդան Շահրիկեանց, Փիլիպպոս Քէօսէյեանց (Մասիս, 1871 Թ. 1050): — 1880ին դադրած է եւ յօդուածագիր մը ցաւով կը դիտէ որ նոր մը կանգնող չկայ (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1880 Թ. 4496): — Վերջէն եօթը տարի օգտակար կ՚ըլլայ Ընկերութիւնը պահելով դպրոցը եւ «բաւական աշակերտներ հասցնելով» (Հայրենիք, 1883 Թ. 1270):

## 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Հիմնուած է Պոլիս 1888ի սկիզբները: 1888 Օգ. 14ին «Հիմնադրաց ժողով»ը Ղալաթիոյ Ազգ. վարժարանի մէջ գումարուելով՝ կ՚ընտրէ հետեւեալ Դիւանը եւ Տնօրէն խորհուրդը.

| | |
|---|---|
| Նիկողոս Կոկանեան | Ատենապետ |
| Մարգար Վռամեան | Ատենադպիր |
| Թորոս Եղիկեան | Գանձապահ |
| Անտոն Թիւլպէնտճեան | Համարակալ |
| Տիրան Տէօվլէթեան | Խորհրդական |
| Նշան Իգնատեան | Հաւաքիչ |
| Եղիա Երեցեան | Հաւաքիչ |

(Արեւելք, 1888 Թ. 1388: – Մանզ. էֆ. 1888 Թ. 6061):

1890ին կը դադրի Ընկերութիւնը: 1891 Դեկտեմբերին կը փափաքին վերակազմել: Պատրաստի գումար մ՚ունի 80–90 ոսկի եւ

15–20 *ոսկի ալ գանագաններու քովն է* (Արեւելք, 1891 Թ. 2379)։

### 3. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891—1908)

*Կազմուած է Ամերիկա գաղթող Արմտանցիներէ՝ Գիւղի դպրոցին նպաստելու համար։ Բայց հին վկայութիւն մը չենք գտած* (*Տե՛ս* Ազատամարտ, 1911 *Թ*. 601)։

### 4. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

*Հիմնուած է Պոլիս՝ կրթական օժանդակ հանդիսանալու համար Գիւղին* (Ժամանակ, *Կ. Պ.* 1910 *Թ*. 550)։ *Ունեցած է Ծրագիր-կանոնագիր*։

### 5. ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

1911*ի սկիզբը կազմուած՝ մինչեւ Մայիս տուած է* 4 *ներկայացում ի նպաստ դպրոցին* (Ազատամարտ, 1911 *Թ*. 601)։

### 6. «ՄՆՁՈՒՐ» ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Պոլիս կազմուած է* 1919 *Յունուար* 20*ին շրջանակ ունենալով*. Գուրուչայ (Մնձուր), Մեծ եւ Փոքր Արմտան եւ Գիւղեր։ *Առժամեայ Վարչութեան անդամներն են. Արթին Աճէմեան, Ազարիա Օրմանեան, Գրիգոր Ալիքսանեան, Համբարձում Կարիկեան, Մաթէոս Սարըքէչիչեան, Մինաս Պալիկեան, Կարապետ Պէտիկեան, Վահան Տէր Յակոբեան, Սարգիս Տօնիկեան, Օհան Կո-*

*կանեան* (Ճակատամարտ, *Կ. Պ.* 1919 *Թ.* 57): — *Ահա* Մայր Դիւանը.

*Թադէոս Ճ. Արխաննեան* *Ատենապետ*
*Յակոբ Տէմիրճեան* *Ատենադպիր*

Գործադիր ժողովը *կը կազմէին.*

*Յարութիւն Աճէմեան* *Ատենապետ*
*Արսէն Թ. Երեցեան* *Ատենադպիր*
*Օհան Կոկանեան* *Գանձապետ*
*Կայծ Կոկանեան*
*Քերովբէ Աճէմեան*
*Իգնատիոս Փափազեան*
*Ազարիա Օրմանեան*

(*Տեղեկագիր Հայրենակցական Միութեանց*, *Կ. Պ.* 1921, *էջ* 14):

*

## ՓՈՔՐ ԱՐՄՏԱՆ

### 1. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Կազմուած է* 1885*ի սկիզբները՝ նպատակ ունենալով «Ի Հարկին տեղւոյն աղքատ ժողովրդեան կառավարական տուրքերը վճարել, երկրագործական մեքենաներ հայթայթել»* (Հայրենիք, 1885 *Թ.* 2048 *Յուլիս* 3):

### 2. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

1910*ի սկիզբները հիմնուած է* (Ժամանակ, 1910 *Թ.* 658): *Մանրամասնութիւն կը պակսի:*

3. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է 1911ի վերջը։ Թերեւս միացումն է նախորդին* (Ժամանակ, 1912 *Թ*. 999)։ *Ծանօթութիւն կը պակսի*։

*

## ՄՆՋՈՒՐ (ԳՈՒՐՈՒՋԱՅ)

## ԹԵՂՈՒՏ ԵՒ ԱՊՈՒՇՏԱ ԳԻՒՂԵՐ

1. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնուած է 1913ի վերջը* (Ժամանակ, 1914 *Թ*. 1682)։ *Անծանօթ է նպատակը եւ գործը*։

*

## ԴԵՐՋԱՆ

## ՂՈՒՐԸՋՕՂ ԳԻՒՂ

1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնադիրները* 12 *հոգի են*։ *Նպատակն է*. «*Ընթերցասիրութիւնը ծաւալել գիւղին մէջ*»։ *Ատենապետն է* Նազարէթ Գրիգորեան, *Ատենադպիրը*՝ Մկրտիչ Տէր Մանուէլեան (Հայրենիք, 1880 *Թ*. 591, *Փետր*. 2)։

## ԴՈՒՆԻԿ ԳԻՒՂ

1. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—1880)

*Կը թուի թէ հիմնուած է 1879ի վերջերը կամ 1880ի սկիզբը*։ *Ընկերութեան տեղեկա—*

*գիրը Պատրիարքարան ղրկուած է* 1880 *Սեպտ.* 30*ին* (Հայրենիք, 1880 *Թ.* 631):

### 2. ԴԵՐՋԱՆԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Ամերիկա գաղթած Դերջանցիք կը կազմեն* 1911 *Օգոստոս* 13*ին: Նպատակն է.* «Ձեռնարկել դպրոցի մը շինութեան գործին Դերջանի յարմար գիւղերէն մէկուն մէջ, կրթելու համար այդ գաւառին որբ ու անտէր մանուկները ձրիաբար» (Ազատամարտ, 1911 *Թ.* 718): *Ընկերութիւնը առաջին օրէն կը հաւաքէ* 320 *տոլար: Մեզի անծանօթ կը մնայ արդիւնքը:*

## ԲԱԲԵՐԴ

### 1. ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Անդրանիկ Տնօրէն Ժողովը կը գրէ.* «*Ընկերութիւնս* 1880 *Օգոստոս* 1 *թուականին հաստատուած է. իւր տուրքն մէկ քառորդ մէճիտ դրամագլուխ եւ իւրաքանչիւր շաբաթուց համար ալ մէկ արծաթ ղուրուշ: Ընկերութեանս* նպատակն է իւր այս հասոյթովն Ընթերցարան մը հաստատել, *որ պիտի բաղկանայ ազգային եւ օտար լրագիրներէ եւ ընկերաց եւ ամեն կարգի ազգայնոց կրթութեանն օգնող գրքերէ: Ընկերութեանս կողմանէ կը բացուի ամէն Կիւրակէ օր քաղաքիս* Մեսրոպեան վարժարանն, *որոյ յարկերէն միոյն մէջ գումարուելով, ամեն ընկերք եւ*

*փափաքող ազգայինք կը կարդան... Յիշեալ օրերն ուսեալ ընկերաց կողմանէ գրելու, կարդալու, եւ այլն ուսմանց դասեր կ'աւանդուին... Ընկերութիւնս առ այժմ 40 անդամ ունի...*

*Տնօրէն Ժողով* Կրթական Ընկերութեան
*Բաբերդու*
*Ատենադպիր* *Ատենապետ*

*Մկրտիչ Պոյաճեան Յովակիմ Յարութիւնեան* (Մասիս, 1880 *Թ*. 2766)։

1880 *Նոյ*. 30*ի Թղթակցութեան մէջ Ընկերութեանս* անունը *վերածուած է* «Կըր-թասէր»*ի*. *Փոխ-Ատենապետն է* Մարտիրոս Դերձակեան *եւ Փոխ-Ատենադպիր*՝ Ասատուր Մութաֆեան (Մասիս, 1880 *Թ*. 2783)։ *Ընդհ. Ժողովի Ատենապետն է Հ*. Վարդիկեան (Մասիս, 1881 *Թ*. 3029։ — *Տես* Փունջ 1891 *Թ*. 2252)։

2. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Հիմնուած կ'երեւայ* 1882*ին*։ *Իսկ* 1892*ին կ'ըսուի*. *«Թերի եւ անհաշիւ կնքեց իր մահկանացուն»* (Հայրենիք, 1892 *Թ*. 334)։

3. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ (1892)

*Կազմուած է* 1892*ի սկիզբները, բայց պաշտօնական ձեւ ստացած է* աշնան։ *Դիւանը կը կազմեն*.

*Գալուստ Մատենճեան Ատենապետ*

*Ատուածատուր Մուժաֆեան*
*Ատենադպիր*
*Համբարձում Ղազարեան Գանձապետ*
*Բարժող Շահտանեան Անդամ*
*Պետրոս Ղումրիեան Անդամ*

(Հայրենիք, 1892 Թ. 334)։

*Նպատակն է քաղաքին մէջ* 70–75 *աղ-քատներուն օժանդակել եւ եթէ կարելի է՝ կալուած մը գնել ի հաշիւ աղքատներու* (Հայրենիք, *անդ*)։

4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908 *Յուլիս – Օգոստոսին հիմնուած է. Հոկտ.* 5*ին ունի արդէն իր* Գրադարան–Ըն-թերցարանը (Սուրհանդակ, *Կ. Պ.* 1908 *Թ.* 115)։ *Դիւանը կը կազմեն.*

*Զ. Պ. Այվազեան Ատենապետ*
*Գ. Պոյաճեան Ատենադպիր*

Սեդրակ Միհրանեան *Ընկերութեան կը նուիրէ* 84 *գիրք եւ պարբերականներու հա-ւաքածոներ* (Յառաջ, *Կարին* 1909 *Թ.* 38)։
— 1910*ին Վարչութեան անդամներն են.*

*Մ. Պալեան Ատենապետ*
*Մ. Սողիկեան Ատենադպիր*

(Ժամանակ, 1910 *Թ.* 519)։

5. ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնադիրներն* 9 *հոգի եղած են — փոքր առեւտրականներ հիւսուածեղէնի։ Ունեցած*

են ներքին կանոնագիր։ Հակառակ խոչըն-դոտներու՝ կը շարունակեն մինչեւ 1913, բարձրացնելով իրենց դրամագլուխը 405 ոսկիի։ 1913ին նոր աշխուժով գործի կ'անց-նին՝ Ընկերութեան Վարչութեան կոչելով Գրիգոր Ղուզեանը (Յառաջ, 1913 Թ. 65)։

Չենք գիտեր թէ կրթական գործի հա-յող որեւէ յօդուած մը չունէ՞ր իրենց կանոնագիրը։

6. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1921)

Կազմուած է Պոլիս 1921 Սեպտեմբերին (Ժողովուրդի Ձայնը, 1921 Թ. 900,948)։

* *

## ԿԱՄԱԽ

Հին Անի, յետոյ Կամախ ու Քեմախ կոչուած Հայաստանի կեդրոնական քաղաքը զուրկ է հին մշակութային Ընկերութիւննե-րէ։ Կրթական կեանքը շատ ուշ արթնցած է հոն։ Ահա մեր հաւաքած դոյզն տեղեկու-թիւնը Կամախի եւ Գիւղերու մշակութային Ընկերութիւններու մասին.

## ՎԱՐԻ ԲԱԳԱՌԻՃ ԳԻՒՂ

1. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908—1909)

Հիմնուած կ'երեւայ 1908ին վերջը կամ 1909ի սկիզբները։ Առաջին անգամ կը յիշուի 1909 Օգոստոսին, երբ կարող է 540 ղուրու-

չով օգնութեան հասնիլ Ատանայի աղետեալներուն (Ժամանակ, Կ. Պ. 1909 Թ. 255): — Կը կոչուի նաեւ «Բարեխիրաց» Ընկերութիւն, որ 1911ին թատերական ներկայացումներ կու տայ (Ազատամարտ, Կ. Պ. 1911 Թ. 526 Մարտ):

Վարի Բաղառիճցի Պր. Վահան Գուրտեան (Բելկրադ [Եուգոսլաւիա]) կը գրէ որ այս Ընկերութեան հիմնադիր եղած է Գէորգ Գուրտեան, նպատակ ունենալով. Գիւղի նորահաս երիտասարդութեան նպաստել լոյսով, զայն մղել ինքնագիտակցութեան: Կը ստանար Պոլսէն այլ եւ այլ լրագիրներ. ունէր Գրադարան, ուր հաւաքուած գիւղացիները, յատկապէս ձմեռ ժամանակ, կը կարդային լրագիրներ եւ կը հաղորդէին անոնց բովանդակութիւնը ուրիշներուն ալ»:

## 2· ԴԱՐԱՆԱՂԵԱՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է Պոլիս 1919 Մարտ 24ին, ունենալով շրջանակ՝ Քէմախ եւ 14 գիւղեր (Տեղեկագիր Հայրենակցական Միութեանց, Կ. Պ. 1921, էջ 4: – Ժամանակ, Կ. Պ. 1919 Թ. 3517):

Առժամեայ Դիւանը կը կազմեն. Գրիգոր Վարդանեան, Պօղոս Ծառուկեան, Գրիգոր Պոլոյեան, Ստեփան Աղամեան, Հմայեակ Ծառուկեան, Սուքիաս Գալուստեան, Յակոբ Մարկոսեան (Տեղեկագիր, անդ, էջ 13):

*Միութիւնը մասնաճիւղեր կ'ունենայ* Սելանիկ (*Յունաստան*), Բելգրադ (*Եուգոսլաւիա*), Սոֆիա (*Բուլղարիա*) *եւ* Կոստանդին (*Ալճերիա*)։

3․ ԱՆԻ–ԱՄՐՈՑ ԳԱՒԱՌԻ «ՍԵՊՈՒՀ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Այս է* հաստրակաց տիտղոսը *Ալճերիոյ, Բուլղարիոյ, Յունաստանի եւ Եուգոսլաւիոյ մէջ* 1919*ին կազմուած Կամախցիներու Ընկերութիւններուն*։ *Իր* Կանոնագիրը՝ *նոյն այդ խորագրով՝ տպուած է Սոֆիա* 1919*ին եւ ունի* 24 *կէտեր կամ Յօդուածներ*։ *Ահա Միութեան* նպատակը․

«Սեպուհ» *Միութեան նպատակն է* հետամտիլ բոլոր հնարաւոր միջոցներով նոյն այդ գաւառի․․․ Գիւղերուն վերաշինութեան ու վերածաղկումի նուիրական աշխատանքին (*Անդ, էջ* 3)։

*Միութիւնը «Ամէն ջանք ի գործ պիտի դնէ տակաւին բռնութեան տակ գտնուող կիներ, երեխաներ եւ որբեր Միութեան գիրկը վերադարձնելու»* (*Յօդուած* 1)․ «*Սոֆիա կ'ըլլայ Միութեան առժամեայ կեդրոնը*» (*Յօդուած* 13)․ «*Միութեան անդամակցողը պարտաւոր է* ․․․ *վճարել ամիսը* 3 *ֆրանք բաժնեգին*» (*Յօդուած* 22)։

4․ ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1935)

Բելգրադի *մէջ կազմուած այս Միութիւնը լաւ գործունէութիւն կ'ունենայ*։ *Կը յաջողի*

ձեռք բերել 75,000 դինարի գումար մը, զոր կը դնէ պետական դրամատունը։ Զանազան պարագաներ սակայն Միութիւնը անգործութեան կը դատապարտեն ու ի վերջոյ կը դադրի։

1936ին նոր զարկ մը կը ստանայ մեծամասնութեամբ Կամախցիներէ կազմուած Եուգոսլաւիոյ եւ մասնաւորապէս Բելգրադի Հայութիւնը՝ կազմելով նոր մշակութային Միութիւն մը նախաձեռնութեամբ Կամախի Վարի Բաղառիճցի Վահան Գուրտեանի եւ Յարութիւն Պաղտասարեանի։ Միութեան անունը կը դրուի «Հայ Բարեգործական Միութիւն»։ Դրամատուն դրուած 75,000 դինարը դրամատունէն հանելով՝ վրան կ'աւելցնեն մաս մը եւս դրամ, հաւաքուած նոր Միութեան անդամավճարներէն եւ այդ գումարով Բելգրադի մէջ կը դնէ Միութիւնը սեփական շէնք մը, որ կ'ըլլայ միանգամայն հաւաքատեղի անդամներուն ու Հայ գաղութին։ Գահիրէի Յուսաբերը կը գրէ 1936 Փետր. 8ին,

«Վերջերս հայ գաղութը հաւաքուելով հիմը դրեր են Պելկրատի մէջ Մշակութային Բարեգործական Միութեան մը։ Եուկոսլաւիոյ փոքրիկ հայ գաղութին մէջ մեծ խանդավառութիւն ստեղծած է այս ձեռնարկը։ Հաւաքոյթին ներկայ եղող 50 հայրենակիցները անմիջապէս ընտրած են առժամեայ Վարչութիւն մը եւ... ընդունած են պատ-

*բաստուած* Ծրագիրը։ *Առաջին առթիւ պիտի աշխատի ունենալ* Գրադարան *մը․ հոդ կտա- նիլ զաւակները կրթութեան եւ օգնել կարի- քաւոր հայրենակցիններուն»* (Յուսաբեր, 1936 *թ*․ 264, *Փետր*․ 8)։

*Ներկայիս այդ ազգային տունը կը պահէ իր գոյութիւնը, իսկ Միութիւնը—անդամնե- րու մահով ու արտասահման մեկնումով – գրեթէ քայքայուած է*։

## ՄԱԼԱԹԻԱ

1․ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Պոլսոյ* Մասիս (1861 *թ*․ 500) 1861 *Սեպտ*․ 6*ին կը գրէ իր «Խառն լուրեր» ու բաժնին մէջ*․ *«Ուրախութեամբ սրտի կը լսենք թէ* Մալաթիացի *ուսումնասէր* Տէր Պօղոս քահանայն, *որ Գումգափուի Դպրի աղջկանց դպրոցին դաստիարակն է, քա- ղաքս գտնուող իւր հայրենակից եղբարց մէջ* «Հայրենասիրաց Ընկերութիւն» *անուամբ Ըն- կերութիւն մ'է հաստատեր* Մալաթիա քա- ղաքին մէջ մանչ եւ աղջիկ տղոց դպրոց մը հաստատելու նպատակաւ»։

*«Սկսնակ Բանասէր» եւս կը յիշէ* (*Տե՛ս* Արեւելք, *Կ*․ *Պ* 1898 *Թ*․ 3854) 1861*ին հիմ- նուած Մալաթիոյ Ընկերութիւն մը* — ան- անուն — *որ նպատակ ունեցած է* «քաղքին մէջ Ընթերցարան բանալու եւ ուսման նա- շակը տարածելու»։ *Արդեօք ասիկա նոյն չէ՞*

«Մասիս»ի *յիշատակած Ընկերութեան հետ։ Մեր կարծիքով «Սկանակին» յիշատակածը Մասիսի յիշած Ընկերութիւնն է։*

2· «ԱՍՏՂԻԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

«Աստղիկ» Ընկերութիւնը *հաստատուած է* 1881*էն* 8–9 *տարի* առաջ (Մասիս, *Կ. Պ.* 1881 *Թ.* 2802) *եւ* 1882*էն* 10 տարի առաջ (Մասիս, 1882 *Թ.* 3245)։

Մասիսի *մէջ Թղթակից մը* 1882 *Յուլիսին հետեւեալ հետաքրքրական մանրամասնութիւններով կը տեղեկագրէ Մալաթիայէն· «Աստղիկ» Ընկերութիւնը կազմուած է* 10 *տարի առաջ*, քանիցս իր կենաց սպառնացող հարուածներ ընդունած՝ բայց միշտ կենդանի մնալէ զատ՝ *այսօր, համեմատօրէն, նախանձելի դիրք մ'եւս առած է շնորհիւ իր մի քանի անդամոց*՝ որք ճշմարիտ ազգասիրական եւ անձնուիրական եռանդեամբ միշտ անոր վէրքերը դարմանած եւ իրենց բազկաց մէջ սնուցած ու պահպանած են։ *Այս Ընկերութեան նպատակն է* քաղքիս Ս· Երրորդութեան եկեղեցւոյ բազմահայ թաղին մէջ վարժարան մ'եւ Ընթերցարան մը բանալ։ *Կիրակնօրեայ Ընթերցարանն գրեթէ ի սկզբանէ ունէր*, բայց վարժարանը բացաւ ասկէ 8 ամիս առաջ· *հիմա ունի* 60 *աշակերտ եւ* 2 *դասատու*։ *Այս դպրոցին մէջ կ'աւանդուին Միացեալ Ընկերութեան նախակրթարանի դասերն եւ տաճկերէն*։ *Հետզհետէ ուրիշ կա–*

*րեւոր դասեր եւս պիտի աւանդուին։ Ընկերութեան կիրակնօրեայ Ընթերցարանի գործը անընդհատ ըստ կարելւոյն օգտակար կերպիւ կը շարունակուի։ Ունկնդիրք կը յաճախեն, բայց ամառուան պարագաները տարբերութիւն դրին ունկնդրաց թուոյն մէջ։ Ձմեռ* 500*է աւելի ունկնդիրք իրարու վրայ դիզուած* 2–3 *ժամ ընթերցուածոց եւ ատենախօսութեանց ունկն կը դնէին*» (Մասիս, 1882 *թ*. 3247)։

### 3. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1873)

*Կազմուած է Պոլսոյ մէջ* 1860*ին հիմնուած նմոյշին վրայէն։ Հիմնումի թուական կը համարինք* 1872–3*ը*։ Մասիս *է որ մեզի կռուան մը կու տայ ճշդելու այս Ընկերութեան* հիմնումի թուականը։ Մասիս 1881*ին կը յիշէ Մալաթիոյ մէջ* երեք անանուն *Ընկերութիւններ, որոնք հաստատուած են, կ՚ըսէ,* «8–9 *տարիէ ի վեր ի նպաստ դպրոցաց*» (Մասիս, 1881 *թ*. 2802), *իսկ* 1882 *Յուլիսին ալ կը յիշէ* «Անձնուէր»*ը իբրեւ* հին *եւ* «մեղադրելի անգործութեան դատապարտուած» *Ընկերութիւն*։ Մասիս *կը գրէ բառ առ բառ*. «*Մէլիտինէի Լուսաւորչական Հայք ունին* երկու Ընկերութիւն՝ «*Աստղիկ*» *եւ* «*Անձնուէր*»։ *Խիստ ցաւալի է տեսնել որ Անձնուէր Ընկերութիւնն այսօր* 10,000 *ղուրուշի նիւթական կարողութիւն ունենալով*՝ մեղադրելի անգործութեան դատապարտուած է. *յո*–

*ունենք ոմանք* մեռած կը համարին *զայն, իսկ ոմանք պարսաւելի ծանր քնով մը քնացած եւ այո՛, զգուշաւոր ցնդում մը կը բաւէ, ըստ իս, զայն յարուցանելու»* (Մասիս, 1882 *Թ.* 3247)։

*Ուրեմն՝* 1881*էն* 8–9 *տարին հանելով կը գտնենք «Անձնուէր»ի հիմնումի տարին, այն է* 1872–3։

1882*ին շարժում մը տեղի կ'ունենայ. կ'ընտրուի նոր Գործադիր Ժողով մը* (Մասիս, 1882 *Թ.* 3333)։

1885*ին Թղթակից մը Մալաթիայէն կը գրէ. «Մեծ յոյս կայ որ* Անձնուէր Ընկերութիւնն *քիչ մը ժամանակ յետոյ պիտի* առանայ դարձեալ իր նախկին փայլուն վիճակն *եւ ապա ձեռնարկէ իր* օգտաւէտ նպատակին, վարժարանաց նիւթապէս օգնել» (Արեւելք, *Կ. Պ.* 1885 *Թ.* 428)։ *Այդ յոյսը ի դերեւ ելած է, սակայն, յաջորդ տարի դադրելով Ընկերութիւնը։ «Դպրոցական նշոյլ կը տեսնուէր* Աստղիկ *եւ* Անձնուէր Ընկերութեանց *ժամանակ.* անցեալ տարի երկուքն ալ իրենց մահկանացուն կնքելով՝ *դպրոցին կեանքն ալ մէկտեղ տարին», կը գրէ Թղթակից մը* (Արեւելք, 1887 *Թ.* 1114)։

*«Աստղիկ»ի բացած դպրոցի տնօրէնն է,* 1882*ին*, Աւետիս Խօրասանճեան (Մասիս, *անդ՝ Թ.* 3306)։ *Իսկ չէնքը՝ «վարձեալ ընդարձակ վերնայարկ մի, որ է հովասուն, լուսաւոր եւ վայելչադիր։* Հոս աշակերտք

կիսով չափ գրասեղան ունին եւ աշխարհացոյցներ (Մասիս, *անդ*, *Թ*. 3333)։

*Պոլսոյ* Թէրճէմանը էֆքեար (1881 *Թ*. 1314) *կը գրէ որ* «*Մալաթիոյ* «Աստղկի Փոքուն Հայոց» Ընկերութիւնը *դպրոց մը բացած է, ուր հայերէն, տաճկերէն եւ ուրիշ ուսումներ պիտի աւանդէ*»։

4. ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—1873)

1884*ին անգորդ մը Մալաթիոյ մէջ կը գտնէ* «երեք կրթական Ընկերութիւններ», *որոնք* «գերեզմանի կարօտ վիճակի մ'են-թարկուած են» (Մասիս, 1884 *Թ*. 3629)։ *Առոնցմէ երկուքը անտարակոյս* «Աստղիկ»*ն ու* «Անձնուէրն *են, բայց երկրո՞րդը*։ *Մեզ կը թուի թէ* «Ներսէսեան Ընկերութիւն»*ն է, որ ըստ* Մասիս*ի* (1881 *Թ*. 2802) «8–9 տարիէ ի վեր հաստատուած է», *այն է*՝ 1872–3։

«*Ներսէսեան*»*ի մասին մեր այս կարծիքը աւելի կ'ամրանայ, երբ նկատի կ'առնենք այն պարագան որ* 1887*ին այս Ընկերութիւնն ալ* խոնջ ու պարտասած *կը ներկայանայ*։ Արեւելք *կը գրէ*. «...Ներսէսեան Ընկերութիւնն ալ կիսամեռ կ'ոգեվարի, *այսօր կամ վաղը անոր ալ դամբանականը կը կարդացուի*» (Արեւելք, 1887 *Թ*. 1114)։

5. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

1880*ին խումբ մը Մալաթիացիներ Ընկերութիւն մը կազմելու համար կը համաձայնին մուտքի դրամ վճարել մէկ մէճիտ եւ*

չարաթական մէկ գրուշ : Նորակազմ Միութիւնը 15 ոսկի գոյացնելէ յետոյ՝ 1886ին դպրոց մը կը բանայ եւ Յակոբ Յովնանեանի թելադրութեամբ դպրոցի բացման նախօրեակին Միութեան անունը կը դնեն «Կրթասիրաց Ընկերութիւն» ու բացուած դպրոցն ալ կը կոչուի «Կրթասիրաց վարժարան»: Ընկերութիւնը ո՛չ կանոնագիր ունեցած է եւ ոչ ալ կանոնաւոր տոմար : Միայն Գանձապահն եղած է Աւագ Կէմալմազեան եւ իր հովանաւորած վարժարանը իրեն գոյութիւնը մինչեւ 1895ի կոտորածը պահած է (Տե՛ս Պապ Ուխտի, 1942 Թ. 4, էջ 12–13):

Որքան կ՚երեւայ՝ կոտորածէն վերջ վերակազմուած է Ընկերութիւնը, գուցէ 1908ի ազատութեան օրերուն, զի 1909ին ունեցած է իր յատուկ գիշերային վարժարանը (Ազատամարտ, 1910 Թ. 176):

## 6. ԳԱՅԻԱՆԵԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԻՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

Հաւանօրէն 1884ի գարնան հիմնուած է «Գայիանեանց խնամակալութիւն» մը, որ գուցէ կը կրէր նաեւ սա տիտղոսը. «Գայիանեանց խնամակալուհիներու Ընկերութիւն», որ 1884 Ապրիլին իր պաշտպանութեան տակ ունէր «Գայիանեանց Օրիորդաց վարժարան» մը:

Խարբերդէն ուղեւոր մը 1884 Մարտին Մալաթիա հանդիպած ըլլալով՝ գրած էր թէ Մալաթիա քաղաքը աղջկանց վարժարանէ

գուրկ է։ *Արդ, Մալաթիացի մը* Ապրիլին *պատասխանելով անոր՝ կը գրէ. «Կ'ըսէ «Աղջըկանց վարժարան չունին»։ Թերեւս Խարբերդէն ի Մէլիտինէ տեսած չէ յանուն* Գայիանեանց խնամակալութեան *Հաստատած* Օրիորդաց վարժարանն... *Հոս չենք մոռնար յիշել Օրիորդաց վարժարանի* խնամակալուհի *ազնուաշուք* Տիկնանց *փոյթն ու ջանքը գովաբանել, զորս տեսանողն երբեք չկրնար թերահաւատիլ մի պայծառ եւ փայլուն ապագայի վրայ, վասն որոյ ի սրտէ յաջողութիւն եւ յարատեւութիւն մաղթելով հանդերձ, ազնիւ ուղեւորին ալ ուրախութեամբ կ'աւետենք* աղջկանց վարժարանի *մը գոյութիւնը»* (Մասիս, 1884 Թ. 3663)։

### 7. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—1885)

*Կազմուած կը թուի ըլլալ* 1884*ի վերջերը կամ* 1885*ի սկիզբը*։ 1885 *Յունիսին* «Նորակազմ» *է եւ* 5 – 6 *տեսակ լրագիրներով կը սնուցանէ իր ընթերցասէր սանուները* (Արեւելք, 1885 *Թ*. 428)։ 1908*ին* վերակազմուած *ըլլալով՝ կը շարունակէ իր գոյութիւնը* 1909*ին ալ* (*Հմմտ*. Արեւելք, 1909 *Թ*. 7069)։

### 8. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Հիմնուած է* 1886 *Յունուար* 1*ին*։ *Նպատակն է. «Կրթութիւն սփռել Հայ երիտա-*

սարդութեան մէջ եւ կրօնական, ազգային թերթեր եւ գրեանք բերել տալով կարդալ։ Այժմ ունի մի մատենադարան եւ 80ի չափ գրեանք։ Անդամոց թիւը 40 եւ հետզհետէ շատնալու վրայ է» (Արեւելք, 1888 Թ. 1114)։

Թ. «ԾԻԱԾԱՆ ՄԱԼԱԹԻՈՅ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1890)

Կազմուած է Ուստրի (Ամերիկա) մէջ 1890ին։ Իր Ծրագիրն եղած է Մալաթիոյ մէջ եղած դպրոցներուն օգնել (Պապ-Ուխտի, 1936. Թ. 2 էջ 14)։ Դժբախտաբար երկար կեանք չ'ունենար։

10. ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904)

Ամերիկաբնակ Մալաթիացիներ հիմնած են Ֆիլադելֆիոյ մէջ 1904ին նպատակ ունենալով. «Երկրի մէջ գոյութիւն ունեցող դպրոցներէն աւելի բարձր ազգ. վարժարան մը հիմնել» (Պապ-Ուխտի, 1936 Թ. 4 էջ 14)։

Ընկերութիւնը հիմնելու սկզբնական փորձերը եղած են Ուստրի, Ֆիլադելֆիոյ եւ Նիւ Եորկի մէջ արդէն 1892ին եւ յետոյ 1898ին եւ նոյն իսկ ընտրութիւն կատարուած է Ընկերութեան անուան՝ կոչելու զայն «Ծիածան Մէլիտինէի»։ Բայց վերջնական ձեւ ստանալէ առաջ՝ կազմալուծուած է (Պապ-Ուխտի, 1954 Թ. 67)։

1907ին կը վաւերացուի «Կրթ-ասիրաց»ը Նիւ Եորկ նահանգի կառավարութեան կողմէ

եւ այդ Թուականին կը գնեն 11,500 դոլարնոց շէնք մը Ուէստ Հոբոկընի մէջ: Ամերիկայի զանազան քաղաքներու մէջ կը կազմուին մասնաճիւղեր: 1912 – 13էն վերջ ջանքեր կ'ընէ հայրենի հողին վրայ կանգնել դպրոցի շէնքը, բայց դեռ գործի ձեռք չզարկած՝ վրայ կը հասնի Ա. Համաշխարհային պատերազմը: 1916ին հիմ կը դնեն վերաշինութեան փոնդի մը անջատ՝ Կրթասիրացի գանձէն: 1918էն սկսած ձեռք կը կարկառէ Ընկերութիւնը վերապրող հայրենակիցներուն. 2000 դոլար կը յատկացնէ կամաւորական շարժումին. 1918–9ին 25,000 դոլար՝ Մալաթիոյ մէջ հաւաքուող հայրենակիցներուն: 1920ին Ուստրի մէջ գումարուած պատգամ. ժողովը կ'որոշէ 50,000 դոլար արժողութեամբ շէնք մը գնել Կրթասիրացի համար. կը ծախեն նախկին շէնքը 15,000 դոլարի եւ վրան աւելցնելով՝ Նիւ Եորքի մէջ կը գնեն 53,000 դոլար արժող շէնք մը: Այս շէնքը տարեկան վարձք կը բերէ 11,600 դոլար:

Կրթասիրացը Բէյրութի մէջ շինած է շէնք մը, ուր ապաստան գտած են վերապրող Մալաթիացիներ, որոնց հետ 15 որբուհիներ եւ կը հոգացուին Կրթասիրացի միջոցներով: Հալէպի մէջ Ընկերութիւնը ունի պատսպարան եւ դպրոց:

Կրթասիրացի գլխաւոր արդիւնքներէն մին կ'ըլլայ ներկայ փոքրիկ Հայաստանի մէջ

հիմնումը Նոր Մալաթիայի, հոն ամփոփելու ամէն կողմ ցրուած հայրենակիցները: Գաղափարը ծագում կ'առնէ 1924ին՝ 21րդ Պատգամաւորական Ժողովքին մէջ. 1926ին Կրթասիրացի կողմէ կը ղրկուի Հայաստան Յովհաննէս Խանճեան՝ տեղւոյն վրայ ընելու համար հարկ եղած կարգադրութիւնը (Տե՛ս այս ամէնուն մասին՝ Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ. 1925, էջ 476–80: Նարդունի Յ. Նարինեան, Ակնարկ մը Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան վրայ. Հալէպ 1926): Սկզբնական աշխատանքները կը տեւեն երկու տարի եւ վերջապէս 1928 Սեպտ. 27ին հիմը կը դրուի Նոր Մալաթիա աւանին ներկայ Հայաստանի մէջ: Ընկերութիւնը «այդ նպատակին եւ յարակից միջոցներու հայթայթման համար, տարիներու ընթացքին յատկացուցած է աւելի քան 150,000 տոլար» (Պապ-Ուխտի, 1954 թ. 67, էջ 2: — Նոր Մալաթիա, Ֆիլադելֆիա 1952-3 թ. 1–2, էջ 56):

Դժբախտաբար միութեան զօդը անքակ չի մնար յետագային անդամներու եւ համաքաղաքացիներուն միջեւ. Ընկերութիւնը երկուքի կը ճեղքուի՝ իւրաքանչիւրը ունենալով իր սեփական Պարբերաթերթը — Պապ-Ուխտի եւ Նոր-Մալաթիա: Միութեան փորձեր եւ յորդորներ՝ հայրենակից եւ չէզոք անձերու կողմէ՝ ի զուր կ'անցնին: Երկու ճիւղերն ալ կը շարունակեն պահել

մինչեւ այսօր իրենց ուրոյն գոյութիւնը եւ կը ձգտին գրել Մալաթիոյ Յուշամատեանը — դատ դատ: Ընկերութիւնը իր 50ամեակը տօնեց 1953ին (Տե՛ս Մասիս, Պէյրութ 1953 Թ. 28, էջ 6):— Ընկերութիւնը ունեցած է մասնաճիւղ մը Սէն Շամոն (Ֆրանսա) 1924–էն ի վեր, որ կ'ունենայ Ընթերցարան, Գրադարան եւ կու տայ ներկայացում (Յառաջ, Փարիզ 1926 Թ. 168:— Կրթասիրացի մասին տե՛ս Հայրենիք, Պոսթըն 1958 Թ. 14,088):

## 11. «ՄԱՍԵԱՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

Մալաթիոյ «Մասեաց» Ընկերութիւնը հիմնուած է ըստ Արեւելքի՝ 1908ի Սահմանադրութեան հռչակումէն անմիջապէս վերջ (Արեւելք, 1909 Թ. 7069): Ընկերութեան հիմնումը եղած է սակայն 1907ին առանց հրապարակուելու: 1908 Յունուար 20ին սկսած է հրատարակել «Ջահ» անունով խմբագրատիպ պարբերական մը, (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1910, էջ 14): Չենք տեսած «Ջահը», չունենալով մեր հաւաքածոյին մէջ: 1909ի Մարտ–Ապրիլին Մալաթիա եղած ատեն տեսած է թերթս Բարսեղ Շահպազ եւ կը գրէ. «...Քանի որ սկսած են նոյնիսկ հրատարակութեանը տեղական թերթի մը «Ջահ», որ թէեւ խմբագրատիպ, բայց յամենայն դէպս իր բովանդակութեամբ շատ աւելի բարձր եւ ներկայանալի է քան

Սեբաստիոյ «Անդրանիկ»ը. *բայց ի՛նչ ըսեմ, ի՛նչ կրնան ընել ասոնք ալ երբ ամէն մէկ պահանջի իրականացում իր հետ կը քաշէ նիւթական մեծ զոհողութիւններ, ինչ որ ընելու ոյժը չկայ սոված ժողովուրդին քով»* (Արեւելք, 1909 *Թ*. 7069):

1909*ի սկիզբը կը բանայ Ընկերութիւնը* Լսարան *մը, քիչ յետոյ կ'ունենայ* Մատենադարան *մը, որ «մի տեսակ օգնութեան աղբիւր»* (Ազատամարտ, 1909 *Թ*. 89) *կ'ըլլայ Մալաթիոյ ուսումնակարօտ Հայուն համար*: 1909*ի վերջերը կը բանայ նաեւ* գիշերային վարժարան *մը* 50 *աշակերտով, ուր կ'ուսուցուին հայերէն, թրքերէն, ֆրանսերէն, անգլիերէն եւ աշխարհագրութիւն* (Ազատամարտ, 1910 *Թ*. 176): 1910*ին Ընկերութիւնը կրթական գործին կը յատկացնէ* 51 *ոսկի* (*Անդ*, *Թ*. 215):

Ստեփան Մանուշեան՝ *հիմնադիրներէն մին՝ առանց անունը տալու Ընկերութեան (գուցէ մոռցած է) տարիներ վերջ կը գրէ*. «1907*ին Մալաթիոյ մէջ հիմնուեցաւ կրթական ընկերութիւն մը հետեւեալ անհատներէ. Յ. Թաշճեան, Մ. Չէքէմեան, Լ. Գաւուդճեան, Կ. Խպիկեան, Ս. Մանուշեան, Վ. Տ. Դաւիթեան եւ Ն. Ալաճաեան: Ընկերութեան նպատակն էր — պատանիներու եւ երիտասարդներու բարոյական մակարդակը բարձր պահել, զարգանալ եւ զարգացնել: Հրատարակեցին* շաբաթաթերթ մը, (ձեռագիր)

*խմբագրութեամբ Ս. Մանուշեանի. Իւրաքանչիւր անդամ պարտական էր առնուազն ամիսը անգամ մը գրութիւն մ'ունենալ: Ծածկանունի գրութիւնը հաստատուած էր... Ամէն Կիրակի* գաղտնի ժողովներ *կ'ունենայինք թէ' տուներու եւ թէ այգիներու մէջ, ուր ընկերութեանս անդամներէն մին մասնաւոր նիւթի մը շուրջը կը խօսէր:* 1908 *սահմանադրութենէ վերջ... ազգօգուտ գործունէութեան ձեռնարկեց եւ շարունակուեցաւ մինչեւ Մեծ Եղեռնը»* (Նոր Մալաթիա, *Ֆիլադելֆիա*, 1952–3, *էջ* 29):

## 12. «ՃՄՇՈՒՏ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908*ին Սահակեան Մայր վարժարանի աշակերտներէն՝ նպատակ ունենալով ինքնազարգացում: Հաւաքատեղին եղած է Նաճարեաններու տան մէջ սենեակ մը* (Նոր Մալաթիա, *Ֆիլադելֆիա* 1952–3, *էջ* 46):

## 13. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Լոկ անունով կը յիշատակուի* (Արեւելք. *անդ*,) *եւ կազմուած է* 1908*ին*:

## 14. ԲԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

1908*ի ազատութեան օրերու ծնունդն է* (Արեւելք, *անդ*): *Զունինք ուրիշ ծանօթութիւն*:

15. ՄԱՆԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կը յիշուի 1909ին եւ հաւանօրէն դպրոցական պատանիներու ձեռնարկութիւն է* (Արեւելք, *անդ*):

16. ԴԵՐՁԱԿՆԵՐՈՒ ԱՐՀԵՍՏԱԿՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է 1909ի ընթացքին եւ Հոկտեմբերին կը տեղեկագրէ Խ. Քէչիչեան.* «Դերձակներու Արհեստակցական Միութիւնը *վերջապէս լրացած գործ մը եղաւ այլեւս ու հիմակ գրեթէ մեծամասնութիւնը ասոնց խելօք տղոց պէս իրարու մօտ նստած՝ իրենց մեքենաներովն ու մկրատներովը միասին կը գործեն...*» (Ազատամարտ. 1909 *Թ.* 94):

17. ՄԵԼԻՏԻՆԷ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

1925*ի վերջերը Ֆիլատելֆիոյ մէջ կազմուած է* Մելիտինէ Միութիւնը, *նպատակ ունենալով օգնել Մալաթիոյ կարօտ ուսանողներու, Ամերիկայէն դուրս* (Կրթասիրաց, *Դեկտեմբեր* 1925, *էջ* 147):

ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ

1. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—80?)

*Մալաթիոյ վիճակին վերաբերեալ* Հիւսնի Մանսուր *ունեցած է* «Վարդանանց Ընկերութիւն» *մը, որուն յիշատակութեան կը հան-*

դիպինք 1883 Յունուար 10ին (Տե՛ս Պապ-Ուլխտի, Կլիւլէնդ 1958 թ. 82, էջ 2), որուն ծագումը կը մնայ մեզ անյայտ: Ոչ մէկ յիշատակութիւն գտած ենք Հայ Մամուլին մէջ:

## 2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—9)

Կը յիշուի 1880 Օգոստ. 18ին. Սարգիս Յակոբեանի Թղաթկցութեան մէջ, ուր կը գրէ Հիւսնի Մանսուրէն. «Յակոբ Ծ. Վ. Կէօնիւլեան... Առաջնորդ եկաւ... մէկ օր վերջը Արամեան Ընկերութեան կիրակնօրեայ լսարանը այցելեց, ուր երգեցին մանկունք գողտրիկ ձայնով նորին գալուստը ողջունելէն զկնի, առաջ անցաւ Գաղանճեան Խաչեր պատանին ... մի ճառախօսութեամբ ... Նորին սրբութիւն... ձեռք կարկառեց Ընկերութեան, խոստացաւ ջան եւ ճիգ չխնայել վարժարանի, Ընկերութեան եւ Ազգին համար» (Հայրենիք, Կ. Պ. 1880 թ. 628):

Ընկերութիւնս դպրոց մը բացած է Կէվրուկ Գիւղի մէջ եւ երկու տարի հոգացած 40 տղոց դասագրքերը եւ ուսուցիչը: 1884էն վերջ «Նախանձ եւ նախապաշարում միջոց գտնելով՝ տապալեցին Արամեան Ընկերութիւնն, առանց խիղճ ընելու...» կը գրէ վերոյիշեալ Սարգիս՝ երկրորդ Թղթակցութեան մը մէջ (Մանզ. Էփքեար, 1888 թ. 6130):

Զարմանալի է որ Սարգիս Յակոբեան

կ՚անդրադառնայ Հիւսնի Մանսուրի «Վարդանանց Ընկերութիւն»ը, որ իրեն ժամանակակից է։ Իր երկու թղթակցութիւններու մէջ ալ չէ յիշած զայն։

*

## ԱԼՊԻՍԹԱՆ

### 1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910—12)

Կը յիշուի 1912 Մայիս 15ին սա ձեւով. «Տիար Միհրան Ազազարեան տարեկան մէկ օրինակ «Մարմնամարզ» կը նուիրէ Ալպիսթանի Ընթերցասիրաց Միութեան» (Մարմնամարզ, Կ. Պ. 1912, էջ 180)։

* * *

## ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐ

### 1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Մեզի ծանօթ հնագոյն Ընկերութիւնն է ասիկա Շապին – Գարահիսարի մէջ։ Հիմնուած է 1867 Հոկտ. 1ին։ Իր գլխաւոր նպատակն եղած է «կիւրակէ օրեայ հասարակաց դասատուութիւն ընել»։ Ընկերութիւնը «առժամեայ» կերպով կոչուած է «Ընթերցասիրական», բայց երբ 1869 Յունիս 1ին կրցած է իր նպատակին գործադրութեան անցնիլ՝ կոչուած է «Անձնուէր Ընկերութիւն»։ Այս մասին հետաքրքրական տեղեկութիւն մը հաղորդած է բնիկ Կամբր–

կացցի Փիլիպպոս Թ. Խանզատեան, որ 1867 Հոկտեմբերին Շապին – Գարահիսար պտըտուած ըլլալով՝ Ընկերութեան բացման հանդէսին ներկայ եղած ու ճառախօսած եւ յետոյ 1869ին Պոլսոյ Արարատին գրած է: Ահա իր խօսքերը.

«Իննեւտասներորդ դարս իրաւամբ «լուսաւորեալ» տիտղոսը ընդունած է. վասն զի ուր որ երթաս՝ կը տեսնես ամէն միտք զրգռուած՝ լուսաւորութիւն կը գոչէ ... Այս գովելի շարժումը աւելի գաւառական Ազգայինք կը կրեն բարեբաղդաբար... Այս լուսաւոր եռանդը ուրախութեամբ սրտի Նիկօպօլսոյ մէջ շօշափած եմ... առանց նշանակութեան եւ գովեստից արժանի եւ նուաստիս ուշադրութիւնը գրաւող գլխաւոր շարժումն եղած է Ընկերութեան մը հաստատութեան ձեռնարկումնին, զոր քաջութեամբ ի գլուխ տանելու փոյթ ունին: Յիշատակութեան արժանի կ'ըսեմ, քանզի գրեթէ առանց օրինակի եւ ինքնայորդոր եղանակաւ սոյն մեծ գործոյս ձեռք զարկած են: Ասոր սկզբնաւորութիւնը 67 Հոկտ. 1ին ըլլալով, նուաստս ալ նոյն միջոցին հոն գտնուելու բարեբախտութիւնը ունեցած էի... նորա հիմնադիրները նորահաս պատանիներ են ... նոցա խմբագրած պայմանին համեմատ տարեկան 26 դր. մէկ բաժանորդագին հատուցանելով՝ ստորագրուեցայ ... քիչ միջոցի մէջ 30ի չափ

*անդամ պատրաստելով... Հոկտ. 15ի բացման հանդէսը ըստ կարգի փառաւորութեամբ կատարուեցաւ Նուաստիս մէկ խրախուսական համառօտ ատենաբանութեամբը, որով միութեան խիստ կարեւորութիւնը կը ճառէի իրենց զգացումն ալ գովելով եւ երգեցիկ մանկանց Ազգային երգերու գեղեցիկ ներդաշնակութեամբ ի կեդրոնատեղին Ս.* Փրկչեան վարժարանն, որ եւ հիմնադիրներն ալ այս թաղէն են ... *Նոյն Ընկերութեան* նպատակին *վրայ խօսիլն ալ քաղցրիկ պարտք մը կը համարիմ ինձ:* Սորա հիմնական նպատակն էր Կիւրակէ օրեայ հասարակաց դասատուութիւն ընել, *բայց որովհետեւ շատ մեծ ձեռնարկութեան մը մէջ յաջողելու համար մեծ դրամագլխոյ մը կարեւորութիւնը զգալի է, ստիպուեցան առ ժամանակս ինչ* «Ընթերցասիրական» *անունով չաբունակել, որ ամէն Կիւրակէ եւ տօն օրեր ամէն ոք կը փութան Ս. Փրկչեան դպրոցը ... Ընթերցման առարկաներն էին գլխաւորաբար Ս. եւ Ազգ. Պատմութիւն եւ մանաւանդ Ազգային օրագիրներ եւ հանդէսներ,* զորս ունենալու համար յատկապէս կանոն մը շինած էին Ընկերութեան արդեամբք առնել՝ եթէ նուէր ստանալ չյաջողին... *Սոյն հրատարակութիւնը մինչեւ ցարդ յայտնեցնելս իրենց բուն նպատակին կարծադրութեան կը սպասէի եւ որովհետեւ հաւատարիմ ճանապարհորդներէ ստուգուելով որ*

*առաջին եւ աղէկ ընթացքով շարունակելնուն հետ՝ նաեւ* Անձնուէր Ընկերութեան դարձուցեր են, *պարտ անձին կը համարիմ հրապարակաւ խոր շնորհակալութիւնս յայտնել* ... Անիկա սկսեր է 69 Յունիս 1էն, *մէկ երկու աշակերտաց դասատուութեամբ: Առարկաներն բոլորով հասարակ ընթերցանութիւն եւ այլն, մին քերականական դաս*» (Արարատ, *Կ. Պ.* 1869 *Թ.* 17):

*Ընկերութեան պաշտպաններ կը յիշուին* Թադէոս Սէրեանեան, Գրիգոր Մարկոսեան *եւ* Առաքել Այթունեան: *Աւետիս Սէրճանեան եւ Առաքել Սէմէրճեան* 148 *դուրուշ նուէր ըրած են Ընկերութեան* (*Անդ*):

Մանուկ վ. Վարդանեան 1869 *Հոկտ.* 15*ին կը գրէ որ* «Ընթերցասիրաց Ընկերութիւնը» *հիմնողները քանի մը երիտասարդներ են, որոնք նախաձեռնութեամբ իրենց եռանդուն ուսուցչին* — Աւետիս խ. Սահակեանի — *հիմնած են զայն եւ որոնք* «մեծ պատիւ գտած են քաղաքիս մէջ եւ բաւական ալ նըպաստած են քաղաքիս յառաջադիմութեան» (Օրագիր, *Կ. Պ.* 1869 *Թ.* 28):

*Ընկերութիւնը կը շարունակուի տակաւին* 1874*ին. նոյն տարին հոն այցելած ըլլալով* Պօղոս Վ. Նաթանեան՝ *կը գրէ* «... *Գովելի է արդարեւ* Ընթերցասիրաց *անուն Ընկերութեան եռանդը*, որ ամեն Կիւրակէ հաւաքուելով ընթերցանութեան կը պարապին» (Փունջ, *Կ. Պ.* 1874 *Թ.* 949):

### 2. ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Ա. Խ. Սահակեան* 1871 *Յունուարին Շապին Գարահիսարէն Պոլսոյ* Հայրենիք*ին կը գրէ որ* «նորահաստատ Հայկազնեան Ընկերութիւնը *կազմեցին* հասակաւոր արհեստաւորներ՝ յատկապէս գիշերները ու նուիրական օրերը ուսման նուիրելու համար» (Հայրենիք, *Կ. Պ.* 1871 *Թ.* 30)։

*Թղթակիցը կ'աւելցնէ որ Ընկերութիւնս Շապին Գարահիսարի «Անձնուէր» Ընկերութեան մէկ ճիւղը կը համարուի։ Ընկերութեան եռանդուն անդամներէն մին է Կարապետ Պ. Պուռնազեան, որ* 1870*ի վերջերը կը մահանայ* 35 *տարեկան հասակի մէջ։ «Սորա սուգը, կը շարունակէ Թղթակիցը, շատ մեղմեցին միացեալ արդոյ անդամք, մինչ* անվհատ ոգւով կը շարունակեն իրենց ոգեշահ եւ ազգօգուտ ձեռնարկը։ *Ապրի՛ն անոնք, որոնք ներկային փառքը եւ ապագային պսակը պիտի բոլորեն»* (*Անդ*)։

### 3. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Հայրենիք*ի վերոյիշեալ Թղթակիցը «Հայկազնեան Ընկերութեան» վրայ խօսելէ վերջ՝ կ'աւելցնէ.* «Այս բարեմիտ դիտաւորութեան վրայ *կազմուեցաւ նաեւ* Արամեան Ընկերութիւն *մ'ալ*։ *Ասոնք* Անձնուէր Ընկերութեան (*տեղւոյս*) ճիւղերը կը համարուին» (Հայրենիք, *անդ*)։ *Այնպէս կը հասկնանք թէ «Արամեան Ընկերութիւն»ը*

«Հայկազնեան Ընկերութենէն» քիչ վերջ, գուցէ, 1870ի վերջերը հիմնուած է հաւանօրէն դարձեալ արհեստաւորներէն:

## 4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հիմնուած է 1871 Հոկտեմբերին: Հիմնադիրներն են Մուշեղեան վարժարանի աշակերտները (Փող, Կ. Պ. 1872 Թ. 74):

## 5. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Պոլսոյ Փող թերթին մէջ (1872 Թ. 74) տրուած հակիրճ տեղեկութենէ մը կ'եզրակացնենք թէ Ընկերութիւնս կազմուած է 1872 առաջին ամիսներուն: Ուրիշ յիշատակութիւն չենք գտած:

## 6. ԾԽԱՐԳԵԼԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

Հաւանօրէն 1873ին հիմնուած է: Իր մասին տրուած տեղեկութիւնը 1874 Փետր. 9 Թուականը կը կրէ: Պոլսոյ Հայրենիք (1874 Թ. 186) իր «Ազգային» բաժնի մէջ կը տողէ. «Նիկոպոլսոյ ազգարին երեւելիները Ծխարգելական Ընկերութիւն մը կազմեր են եւ յորդորելով շատ մը պատանիներ, անդամոց թիւը 38ի հասցուցեր են, որոց իւրաքանչիւրն հաստատուն օրէնքի տակ իր ծխելիքին միամեայ ծախքն իբր երկու Գաղղ. ոսկի Ընկերութեան սնտուկը ձգած են եւ պիտի շարունակեն այսպէս մինչեւ պայմանեալ 10 տարի: Առ այժմ 70 ոսկի հասոյթ խրկած են

*ի Պոլիս Ռումէլի երկաթուղւոյ թուղթ առնելու համար»։— Չենք գիտեր թէ* 10 *տարի չարունակուա՞ծ է եւ ի՞նչ էր իր* նպատակը։

7. ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874—6)

*Հիմնադրութեան թուականը կարելի չեղաւ ճշդել։ Անստորագիր նամակագիր մը* 1877 Յունուար 27*ին Շապին-Գարահիսարի մէջ տիրող տխուր վիճակին վրայ խօսելով՝ կը յարէ. «... Նոյնպէս եւ* Յառաջդիմասէր ազգօգուտ Ընկերութիւնը ցրուելու վտանգին հասած է» (Փունջ, 1877 *Թ.* 1151)։

*Սակայն Ընկերութիւնը պահած է իր գոյութիւնը* վերակազմուելով։ 1885*ին իր անդամներէն կը յիշուին* «խումբ մի ուսումնասէր եւ զգայուն հայ երիտասարդներ», *որոնց սիրով կը նպաստէ տեղւոյն ժողովուրդը թէ՛ բարոյապէս եւ թէ նիւթապէս* (Արեւելք, Կ. Պ. 1885 *Թ.* 348)։

8. ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* 1879*ի Կաղանդին*։ 1879 *Յունուար* 27 *թուակիր նամակի մը մէջ* «Վահագն» *Կիրասոնէն կը գրէ «Առ անդամս* Գրական Ընկերութեան Նիկոպոլսոյ. «*Երիտասա՛րդք, խորհրդալի սկզբունքի մը յարիլը՝ մեծահոգի արանց յատկանիշն է. դէպ ի յառաջդիմութիւն նկրտող քայլերը՝ լուսատենչ հոգիներու դէպ ի լոյս ձգտումն է, վսեմախոհ մտքերու լոյս պէտք է, իսկ ծա—*

*բաւի հողիններու՝ ճար ու ճարակ․ պէտք է լուսով ողողել մտքերը եւ հոգին հրդեհել։ Ձեր ընկերային շարժումը հզօր առհաւատչեայ մ՚է յառաջդիմութեան զաւակներ ըլլալնուդ։ Այն ոգին, որ ձեզ ներշնչեց, նախագդեցիկ սիրաշունչ է ազատութեան… Միութեան գաղափարը, զոր յղացաք, սքանչելի․ ցո՛յց տուէք նաեւ թէ ճշմարիտ լուսաւորութեան հոգեկիրն էք։ Հայ—աշխարհի մանուկները՝ երբ սիրով փարին իրարու, այն ատեն Հայ ազգութիւնը, իբր փիւնիկ նորափետուր զարդարուած, դարաւոր աճիւններու մէջէն վերանորոգ յառնելով պիտի պանծայ եւ հայրենի ոճիրներն ու նախճիրներն պիտի դադրին… Անագորոյն Եւրոպա «գերի եւ ստրուկ ազգ» կոչեց զմեզ․ յառաջդիմական միահամուռ շարժումը պիտի ազատէ մեզի այն նախատանաց եւ լուտանաց հեղեղներէն եւ նուիրագործէ մեր անունը… խնդագին կ՚ողջունենք Նիկոպոլսոյ երիտասարդութիւնը եւ կը շնորհաւորենք զինքն յանուն Գրական Ընկերութեան, որ չքնաղ օրինակ պիտի հանդիսանայ ամենուն»* (Մասիս, *Կ Պ* 1879 *Թ*․ 2261)։— *Ուրիշ տեղեկութիւն չունինք։*

9· ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—9)

Մանզ․ Էֆճեար*ին կը գրեն* 1909 *Փետրուարին․ «Թատերասիրաց Միութիւն մը կազմուած է քաղաքիս մէջ, որուն նպատակը պիտի ըլլայ մերթ ընդ մերթ ներկայացում-*

ներ տալ ի նպաստ դպրոցիս աղքատիկ ուսանողներու, որոնց թիւը ստուարացած է: Մինչ ցարդ երկու ներկայացում տուաւ «Արշակ Բ.» եւ «Վահան», որ բաւական յաջող անցան: Գոյացած հասոյթը՝ մօտաւորապէս 25–30 ոսկի, յատկացուեցաւ նպատակին» (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1909 Թ. 2368):

10. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Կազմուած է 1910ի գարնան: 1910 Յունիս 5ին կը գրէ Ազատամարտ (Կ. Պ. 1910 Թ. 290). «Շապին Գարահիսարի նորակազմ Կրթասիրաց Ընկերութեան Ծրագիրը վերջնականապէս հաստատուած է. տեղական Ուսումնական Խորհուրդին կողմէն Ապրիլ 25ին: Անոր նպատակն է. «Շ. Գ.ցի Հայութեան տալ առողջ դաստիարակութիւն մը, ջանալ պահելու կրթական յարկերը լաւագոյն ուղղութեան մը մէջ:

11. «ՏՆՏԵՍՈՂՆԵՐՈՒ ԴԱՍԱՏԱՆ» ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

1910 Դեկտեմբերին կը գրեն Շապին Գարահիսարէն. «Տնտեսողներու Դասատան անունով Միութիւն մը կազմուեցաւ Գեղամ Վրդ. Թէվէքէլեանի նախաձեռնութեամբ նպատակ ունենալով զարգացնել իր անդամները եւ հետզհետէ ալ իր շրջապատը... միջոցներ. 1. Գիշերային դասախօսութիւն, 2. Երեկոյթներ, հանդէսներ... Դասախօսներն

են. Գեղամ Վրդ., Արամ Սաֆրաստեան եւ Սենեքերիմ Գալխոնճեան» (Ազատամարտ, 1910 Թ. 457)։

Կազմողներն են Ազգային դպրոցի նախկին Սաները։

## 12. ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

Հիմնուած է Ամերիկա 1911ի ամրան «միայն կրթական գործին սատարելու համար եւ հաւատարիմ իր Ծրագրին, մինչեւ 1914 ամէն տարի պարբերաբար առաջնորդարանի եւ Ուսումնական խորհուրդի միջոցաւ իր նպաստը ղրկած է քաղաքի ... եւ գիւղերու դպրոցներուն» (Արամ Հայկազն, Շապին Գարահիսար ու իր Հերոսամարտը. Նիւ Եորք 1957, էջ 335)։ 1919 Սեպտ. 28ին Նիւ Եորքի մէջ գումարուած Ա. Պատգամաւորական ժողովքին Միութիւնը կը կոչուի «Շ. Գարահիսարի, Անդրէասի եւ Գիւղօրէից Հայրենակցական Միութիւն», որուն մէջ էին մասնաճիւղեր Լոուէլի, Տրոյի եւ ուրիշ գաղութներու համաձայնութիւնը (Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ, Պոսթըն 1925, էջ 484–5)։

## 13. ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐՑԻՆԵՐԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1917)

Թիֆլիսի Հայաստանի մէջ կը կարդանք հետեւեալ «կոչը» Սուխումաբնակ Շապին Գարահիսարցիներու. «...Հայրենակիցներ,

*ուր որ էլ կաք, մտիկ տուէք բողէների ա-ղաղակող պահանջին, պատրաստուեցէք, կազմակերպուեցէք... Սուխումաբնակ Շա-պին Գարահիսարցիներս տարւոյս Մայիս 24ին կայացնելով Ընդհ. Ժողով՝ կազմա-կերպեցինք* «Շապին Գարահիսարցիների Հայրենակցական Միութիւն», *որի գլխաւոր նպատակներն են.*

1. *Հանգանակել միանուագ նուէրներ.*

2. *Մշտական ամսավճարներով ապահո-վել գալիք կարիքները.*

3. *Ընդհանուր կապ պահպանել թէ Ռուսաստանում եւ թէ Արտասահման ապրող Հայրենակիցների հետ:*

*Ի դիմաց Շ. Գ. Հայր. Միութեան Վարչ.*
*Նախագահ Դ. Գասպարեան*
*Քարտուղար Ա. Յնդոյեան*
*Սուխում* 1917 *Յունիս* 7
(Հայաստան, *Թիֆլիս* 1917 *Թ.* 56):

14. ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐՑԻՆԵՐՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Պոլսոյ* Ժողովուրդ *թերթը կը գրէ* 1918 *Դեկտ.* 26*ին.* «Շապին Գարահիսարցիներու Հայրենակցական Միութիւնը *վերջնակա-նապէս կազմուած ըլլալով* 65*է աւելի համա-քաղաքացիներէ՝ իր Վարչ. Ժողովը ընտրեց հետեւեալ կերպով.*

*Մկրտիչ Վարդանեան* *Ատենապետ*
*Գալուստ Զպուղճեան* *Ատենադպիր*

Անդրանիկ Գույումճեան Գանձապետ

Գուրգէն Էթմէքճեան
Գառնիկ Մարկոսեան
Նշան Քէօչէկեան
Միսաք Օզանեան } Խորհրդականներ

Կ'ունենայ անմիջապէս իր Ծրագիր–Կանոնագիրը։ Ունի Կէտիկ–Փաշայի մէջ սենեակ մը իբր հիւրանոց Պոլիս հասնող վերապրող Շապին Գարահիսարցիներուն (Ժողովուրդ, Կ. Պ. 1918 Թ. 67)։

Միութեան նպատակն է. ա) Պոլիս հասնող Շ. Գարահիսարցիներուն օգնութեան հասնիլ, պատսպարել ու կերակրել. բ) Անչափահասները տեղաւորել որբանոցներու ու դպրոցներու մէջ. գ) Պոլսոյ եւ գաւառի կենդրոնացման վայրերու մէջ փնտռտուքներ կատարելով՝ անչափահաս ու անտիրական որբերը փոխադրել աւելի ապահով վայրեր ու տէր ըլլալ անոնց։

Կ'որոշուի Միութիւնը կոչել «Շապին Գարահիսարցիներու «Ռազմիկ» Հայրենակցական Միութիւն»։ Միութիւնը կը գումարէ Ընդհ. անդամակցական ժողովներ ու կը վաւերացնէ Ծրագիր – Կանոնագիրը (Ժողովուրդ, 1919 Թ. 105, Փետր. 3–16։— Ժամանակ, Կ. Պ. 1919 Թ. 3517։ — Տե՛ս նաեւ Արամ Հայկազ, Շապին Գարահիսար ու իր Հերոսամարտը. Նիւ Եորք, 1957, էջ 327–8)։

15· ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐՑԻՆԵՐՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918 *Նոյեմբերին* Պոլսոյ *մէջ*: *Ունի իր Ծրագիրը*: *Կ'ընտրէ իր Գոր- ծադիր Ժողովը* (Ժամանակ, 1918 *Թ*. 3377, *Նոյեմբեր—Դեկտեմբեր*:

16· ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀ· ԱՐԻՒՆՈՏ ԴԱՇՏԻ «ԱՐԾԻՒ» ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Հիմնուած է* Պոլիս 1920 *Դեկտեմբերին* (Ժողովուրդի Ձայնը, *Կ*. *Պ*. 1920 *Թ*. 584,712): 1921 *Սեպտեմբերին Վարչութիւնը կը կազմէին Ե*. *Օզանեան*, *Ա*. *Թագեան*, *Ե*. *Յունանեան*, *Բ*. *Շահրիկեան*, *Հ*. *Տէրտէ- րեան*, *Մ*. *Պետրոսեան*, *Հ*. *Վարժապետեան*, *Գ*. *Շահրիկեան*, *Մ*. *Տէր–Մեսրոպեան* (*Անդ*, 1921 *Թ*. 907:— *Տես նաեւ Թէոդիկ*, *Ամէն*. *Տարեց*. 1921, *էջ* 307):

17· «ՎԻՇԱՊ» ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1920–5)

*Կազմուած է* Ռումանիոյ *մէջ* (Յառաջ, *Փարիզ* 1926 *Թ*. 71):

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԹԱՄԶԱՐԱ ԳԻՒՂ

1· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Հիմնած են Գիւղին դպրոցի աշակերտ- ները՝ նպատակ ունենալով*. «լրագիր եւ գիրք ստանալ իրենց մէջ եղած բաժանոր- դագրութեան արդիւնքովը» (Ժամանակ, *Կ*. *Պ*. 1865, *էջ* 103):

## 2. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866—7?)

Թամզարացիներու բաւական հոծ գաղութ մը կար Կիրասոնի մէջ 1860ական թուականներուն։ Այդ Թամզարացիները իրենց մէջ Ընկերութիւն մը կազմած էին 1879էն «քանի մը տարիներ առաջ», նպատակ ունենալով իրենց հայրենի վանքին — Ս. Գէորգայ — խարխլած բնակարանները նորոգել։ Ընկերութիւնը հաւաքած էր 7—8000 ղուրուշի գումար մը։ 1870ին անստորագիր յօդուածագիր մը կը պահանջէ որ այդ գումարը «Լամբրոնեան» Ընկերութեան յանձնուի, քանի որ վերջինիս նպատակն ալ է Ս. Գէորգայ մէջ գիշերօթիկ վարժարան մը բանալ (Հմմտ. Օրագիր, Կ. Պ. 1870 թիւ 126)։

Ի՞նչ էր անունը այդ Ընկերութեան եւ ո՞ր թուականին հիմնուած է։ Պոլսոյ Հայրենիք 1883ին կ՚իմացնէ թէ տակաւին գոյութիւն ունի Կիրասոնի այդ Ընկերութիւնը եւ իր դրամագլուխը քանի մը հարիւր ոսկիի բարձրացած է՝ միշտ նպատակ ունենալով վերաշինել Ս. Գէորգայ վանքը (Հայրենիք, Կ. Պ. 1883, Թ. 1475)։

## 3. ԼԱՄԲՐՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Պոլսոյ պանդուխտ Թամզարացիները 1869 Դեկտ. 1ին կը կազմեն Լամբրոնեան Ընկերութիւնը, իրենց բաղձանքն ըլլալով.

«Թամզարայի մէջ ցերեկեայ եւ գիշերօթիկ վարժարան մ'ունենալ» (Օրագիր, Կ. Պ. 1870 Թ. 126: — Հմմտ. նաեւ Թէրճէմանը էֆքեար, Կ. Պ. 1879 Թ. 669):

Ընկերութեանս անդամակցած է նաեւ Խրիմեան Հայրիկ, Իզմիրլեան Մատթէոս Սրբազան, Ռէթէոս Պէրպէրեան եւ ուրիշներ: Անդամավճարն էր 100 փարա: Անդամավճարներով, նուիրատուութիւններով ու կտակներով 1869 Դեկտեմբերէն մինչեւ 1870 Դեկտեմբեր Ընկերութեան Մուտքն եղած էր 20,054 ղուրուշ. իսկ Ելքը՝ 15,289 ղուրուշ: Այդ մէկ տարուան ընթացքին Ընկերութիւնը Թամզարայի մէջ վարժարանի յատուկ շէնք մը շինելով՝ բացած է երկսեռ վարժարան մը, որ անուանած է «Լամբրոնեան վարժարան», որուն համար Պոլսէն մասնաւոր ուսուցիչ մը ղրկած է: — Ընկերութեան Ընդհ. Ժողովը, գումարուած Շէրէֆ Փաշա Խան, 1871 Յունիս 20ին առժամեայ Վարչութեան միամեայ հաշուետուութիւնը քննելով՝ վաւերացուցած է. Յանձնախումբ մը կազմելով՝ պաշտօն տուած է Ծրագիր-Կանոնագիր մը պատրաստելու. Յանձնախումբը Կանոնագիրը ներկայացուցած է Յուլիս 18ի նիստին, ուր փոքր փոփոխութեամբ ընդունուած է Կանոնագիրը: Կ'ընտրուի Ընդհ. Ժողովի Դիւանը եւ կը կազմուի Տնօրէն Ժողով մը: Ընդհ. Ժողովի Ատենապետ կ'ընտրուի Մատթէոս Վ. Իզ-

միրլեան, *իսկ Տնօրէն Ժողովի կազմը հե-տեւեալն է*:

*Յովսէփ Խոյլէսէրեան*
*Աւագ Մաթեան*
*Վարդան Պայիկեան*
*Յովհաննէս Շէհրիկեան*
*Ղազար Վասիլեան*
*Գէորգ Մազմանեան*

*Իզմիրլեան՝ Ընդհ. Ժողովի այս ար-դիւնքները* Օրագիրի *մէջ* (1871 *Թ*. 518) *ամ-փոփելէ վերջ՝ կը շեշտէ որ Թամզարայի Հայութիւնը շատ տաք վերաբերում ցոյց կու-տայ Ընկերութեան հանդէպ՝ անդամագրուե-լով ու քաջալերելով*: 1871 *Օգոստոսին Ըն-կերութիւնը* Պոլսոյ *մէջ* 90, Կիրասոնի *մէջ* 50, Թամզարայի *մէջ* 83 *անդամ ունէր, որոնք* 354 *բաժին գրուած էին*:

1879*ին Թղթակից մը ցաւով կը դիտէ որ մինչ Լամբրոնեան Ընկերութիւնը* 1872*ին վարժարանի մէկ ուսուցիչը երկուքի եւ եր-կուքը երեքի բարձրացնելու ամէն ճիգ կը թափէր՝ Թամզարայի «Ջոջերը» միւս կողմէ ամէն տեսակ արգելք ու խոչընդոտ կը յա-րուցանէին, մինչեւ որ կը յաջողին կազմա-լուծել Ընկերութիւնը եւ փակել վարժարանը* (Թէրճիւմանը էֆքեար, *Կ. Պ*. 1879 *Թ*. 669: — *Հմմտ*. Հայրենիք, *Կ. Պ*. 1872 *Թ*. 117):

4. ԾԽԱՐԳԵԼԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Հիմնուած է Թամզարայի երիտասարդներէն։ Ահա իրենց նպատակը.* «Չծխել եւ դրամը աւելցնել տասը տարի պայմանաժամով»։ 1888*ին Ընկերութիւնը գոյութիւն ունէր, սակայն անդամներու եւ Գործ. ժողովի միջեւ գժտութիւն մը մտած էր* (Մանզ. էֆքեար, 1888 *Թ*. 6004)։ — Մանզումէ*ի անստորագիր տեղեկատուն այդքանը ըսելէ վերջ՝ չի յայտներ թէ ի՞նչ էր Ընկերութեան* վերջին նպատակը. *գումարուած դրամը* ի՞նչ բանի պիտի գործածուէր։

5. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Կազմուած է* Գալուստ Մալաքեան*ի ձեռքով՝ տեղւոյն վարժարանին նիւթապէս նպաստելու համար, բայց կարճատեւ եղած է* (Մանզումէի էֆքեար, 1888 *Թ*. 6004)։

6. ՀԱՄԱԿԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1888)

*Հիմնադիրն է Թամզարայի վարժարանի տնօրէնը՝* Տանատ Զիւլալեան։ *Իսկ նպատակը՝* տնտեսագիտական (Մանզ. էֆքեար, *անդ*)։

## ՉԱՐՏԱԽ ԳԻՒՂ

1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Ընկերութիւնս հիմնած է* Վռամշապուհ Քիպարեան (*յետոյ Եպիսկոպոս*), *երբ ու–*

ուսցիչ էր Զարտախի մէջ (1873—6) եւ իր ջանքերով Ընկերութիւնը տասը տարուան մէջ 800 ոսկիի դրամագլուխ մը կ'ունենայ (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1923, էջ 393):

## ԱՌԴԱՎԻՍ ԳԻՒՂ

### 1· ՇԱՀԱԲԵՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1)

1882 *Յունուար* 25*ին կը գրեն Շապին Գարահիսարէն. «Շ. Գ.ի* Առդավիս Գիւղի *Հայոց ի Կ. Պլիս կազմած* Շահաբեր *անուն* Ընկերութիւնը *միացեալ Ընկերութեան միջոցաւ յիշեալ Գիւղին մէջ մօտերս* նոր վարժարան մը բացաւ 100*էն* աւելի *երկսեռ աշակերտօք*» (Մասիս, 1882 *Թ.* 3111):— *Հիմնումի թուականը հաւանօրէն* 1880*ին ըլլայ*:

## ԱՆԵՐԴԻ ԳԻՒՂ

### 1· ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1914)

*Կազմուած է Պոլիս, Պէշիկթաշ*: 1914 *Յուլիսին Տնօրէն Խորհուրդը կը կազմէին*.

*Ս. Թութիեան Ատենապետ*

*Վ. Արծրունի Ատենադպիր* (Ժամանակ, 1914 *Թ.* 1852):

* * *

# ՏԻՎՐԻԿ

## 1. ԳԱՓԱՄԱՃԵԱ՞Ն ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1691?)

Տիւրիկէ *կամ* Տիվրիկ *քաղաքի* հնագոյն *մշակութային Ընկերութեան* անունը *առաջին անգամ յիշուած կը գտնենք* 1871*ին Պոլսոյ* Հայրենիք *թերթէն, որ կը կոչէ* «Գափամաճեան Ընկերութիւն» (Հայրենիք, Կ. Պ. 1871 *Թ.* 53)։ *Ժամանակագրօրէն երկրորդ հին յիշատակութիւնը* 1888*էն է եւ դարձեալ կոչուած* «Գափամաճեան *Ընկերութիւն*» (Հայրենիք, Կ. Պ. 1888 *Թ.* 3306)։ *Նոյն յորջորջումը ունի* 1905*ին* Բիւզանդիոն*ի* (1905 *Թ.* 2699) *յօդուածագրին քով*։ *Սակայն կան ուրիշ երկու յորջորջումներ եւս՝ մին* 1901*էն, ուր կը կոչուի* «Կրթասէր *Ընկերութիւն*» (Մանզումէի էֆքեար, 1901 *Թիւ* 55)՝ *եւ երկրորդը՝* 1910*էն, ուր կ'անուանուի* «Բարեսիրական *Ընկերութիւն*» (Ազատամարտ, 1910 *Թ.* 185)։ — *Այս երեք յորջորջումներէն ո՞րն է* սկզբնականը *եւ* ճիշդը։ — *Ըստ մեզ ոչ մին եւ ոչ միւսը*։ *Զի Ընկերութեան* հիմնադիրները *ո՛չ թէ* Գափամաճի (*մետաքսագործ*) *արհեստաւորներ էին, այլ* բեռնակիրներ։ *Թէ ասոնք ի՞նչ անուն տուած էին իրենց հիմնած Ընկերութեան՝ ոչ ոք յիշած է եւ անծանօթ կը մնայ*։ *Յետոյ Տիվրիկէն եկող* գափամաճի-*արհեստաւորներ բեռնակիրներուն սկսած բարերարական գործը շարունակելով՝ Ընկերութեան ա-*

*նունը դրուած է* «Գափամաճեան» *Ընկերու-թիւն*։

Ե՞րբ հիմնուած է *այս Ընկերութիւնը*։ — *Անստոյգ է նաեւ* հիմնադրութեան տարին։ *Մինչ* 1871*ին այդ հիմնադրութիւնը* 180 տարի առաջ, *այսինքն՝ իբր* 1691*ին տեղի ունեցած կը համարէին* (*Տե՛ս* Հայրենիք, 1871, *Թ*. 53), 1901*ին* 200 տարուան, *այն է՝* 1701*ին հիմնուած կը կարծէին* (*Հմմտ*. Մանզումէի էֆքեար, 1901 *Թ*. 55), *իսկ Ե*. *Օշտունի Հայոց* ՌՄԳ *Թուականին*, *այսինքն՝* 1754*ին* (*սխալմամբ* 1757 *տպուած*) *կը դնէ* (Ազատամարտ, 1910 *Թ*. 185)։ *Վերջինս ա-ւելի ճիշդ կը թուի ըլլալ*, *զի Օշտունի տե-ղեակ կ՚երեւայ Ընկերութեան* արձանագրու-թիւններուն (*Տե՛ս* Ազատամարտ, *անդ*)։ *Բոլորովին* սխալ *է սակայն Գրիգոր Նորա-տունկեանի* 1909*ին գրածը թէ Պոլսոյ* «*Գա-փամաճիններու*» *գաղթը Տիվրիկէն* 60—70 *տարի առաջ*, *այն է՝* 1840—50*ին տեղի ու-նեցած է* (Ժամանակ, 1909 *Թ*. 356)։

*Տեսնենք այժմ թէ ի՛նչ տեղեկութիւն կը տրուի այս Ընկերութեան ծագումի եւ գործի մասին*։

*Պոլսոյ* Հայրենիք *սա խորագրին տակ*. «Գափամաճեան Ընկերութիւն ի Կ. Պոլիս վասն Տիվրիկի ազգային վարժարանաց, աղքատաց եւ կարեւոր պիտոյից» *կը գրէ*. «*Այս բարենպատակ Ընկերութիւնը* 180 *տա-րիներէ հետէ հաստատուած եւ բաւական*

*գումար մը գոյացուցած է, մանաւանդ այս* 100 *տարուոյ միջոցին.* Գափամաճեան մեծ. Յարութիւն *աղայի եւ իւր փոխանորդ* Պարտիզպանեան մեծ. Կարապետ *էֆ.ի եւ բոլոր պատուարժան Գափամաճի արհեստաւոր ազգայնոց ջանիւք բաւական յառաջացած է: Գափամաճեան բարենպատակ Ընկերութիւնը կը փափաքի յիշեալ նուիրական գումարը իր ազգաշահ նպատակին ծառայեցնել, բայց ափսոս որ Տիվրիկցի ազգայինք իրենց եղած այս ձրի շնորհը չճանչնալով,* անոր յարգ ու կարեւորութիւն չէին տուած մինչեւ ցարդ» (Հայրենիք, *Կ. Պ.* 1871 *Թ.* 53):

*Ինչպէս կը տեսնուի՝* Տիվրիկի մէջ *մինչեւ* 1871 չէին ճանչցած *«իրենց եղած այս ձրի շնորհը»: Անծանօ՞թ էին արդեօք գոյութեանը իրենց համար հիմնուած այդ բարենպատակ Ընկերութեան: Ո՞վ էին այն անձերը, որոնք Տիվրիկի համար այդպիսի Ընկերութիւն մը կազմած էին:* Հայրենիք *հոդ բացատրութիւն չի տար, բայց տարիներ վերջ* Տօքթ. Կ. Յ. Փաշայեան *դէպի* Տիվրիկ *ըրած ճամբորդութեան մը առթիւ կը գրէ դարձեալ նոյն* Հայրենիք *թերթին մէջ.* «Գափամաճեան Ընկերութիւն, *որ* Տիվրիկցոց նախահարց շնորհիւ կազմուած է ի Պոլիս *եւ ունի բազում անշարժ կալուածներ.. Սոյն Ընկերութիւնը* կտակի ձեւի տակ կազմուած է *եւ ունի «Միւթէվէլլիութիւն». Պատրիարքարանը առանց ի նկատի առնելու*

*սոյն կէտեր, սկսաւ ընդհանուր ազգ. կալուած նկատել եւ իւր իրաւասութեան ներքեւ առնուլ... ասոր համար արդէն Տիվրիկցիք բողոքած են»* (Հայրենիք, 1888 *թիւ* 3306):

*Պօլսոյ* Մանզումէ *կը գրէ* 1901*ին*. «*Տիվրիկի կալուածոյ Հոգաբարձութիւնը իր անդամներէն ոմանց մահուամբը եւ ոմանց ալ ճամբորդելովը գրեթէ կազմալուծեալ վիճակ մը առած ըլլալուն, Քաղաքական ժողովը իր վերջին նիստին մէջ որոշած է վերակազմել նոյն Հոգաբարձութիւնը, պակսած* ութը անդամներուն *տեղ նորեր ընտրել տալով: Ըստ* ներքին Կանոնադրութեան *Տիվրիկի* Կրթանուէր Ընկերութեան, *այդ ընտրութիւնը կը կատարուի* Տիվրիկի մէջ *եւ ընտրելի են* միայն Պոլիս գտնուող Տիվրիկցիները: *Այս առթիւ կարեւոր է յիշել թէ Տիվրիկի կալուածոյ Հոգաբարձութիւնը, որ բաւական կալուածներ ու* վագըֆներ *ունի, գրեթէ* երկու հարիւր տարուան *հաստատութիւն մ՚է* Պոլիս գտնուող Հայ բեռնակիրներու նախաձեռնութեամբ սկսած, *Տիվրիկցի* Գափամանի Հայ արհեստաւորներու *կողմանէ շարունակուած եւ* Տիւզեանց Գերդաստանին քաջալերութեամբը յառաջացած, որ նոյնպէս գաղթած է Տիվրիկէն...» (Մանզ. էֆքեար, 1901 *թ*. 55):

1901*ին վերոյիշեալ Հոգաբարձութեան Ատենապետն էր* Միհրան Սէթեան (*Անդ*):

1905ին Կ. Գ. Սուքիասեան *Տփլիսէն ըրած թղթակցութեան մը մէջ ըսելէ յետոյ թէ «Գափամաճեան Ընկերութիւնը» «շուրջ 150 տարի առաջ» կազմուած է՝ կը գրէ. «Մեր նախնիք... 150 տարի առաջ* սովի պատճառաւ *ի Կ. Պոլիս գաղթած եւ* շաքաթական մէյմէկ փարա վճարելով *այս կալուածները գնած են, բոլորն ալ պարզ արհեստաւորներ են* (Գափամաճի *մեծաւ մասամբ) որ կոչուած է Գափամաճեան Ընկերութիւն»* (Բիւզանդիոն, 1905 *թ*. 2699)։

«*Գափամաճեան Ընկերութիւնը*» 1871ին *Տփլիսի* դպրոցին ուսուցիչներու ամսականը վճարեր, աղբիւրի մը շինութիւնը հոգացեր *եւ* կամուրջին նորոգութիւնը գլուխ հաներ էր, *որուն վրայ* Հայրենիք (1871 *թիւ* 53) *կ'աւելցնէր. «Այսպիսի հաստատ, արդիւնաշատ բազմաժամանակեայ Ընկերութեան մեծ. պաշտպանող հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեմք, որ իւր ստակով: 180 տարիէ հետէ անընդհատ որդւոց յորդի կը շարունակէ...»*։

*Յիշենք վերջին տեղեկատու մ'ալ* — Ե. Օշտունի *Տփլիսէն կը գրէ. «Տփլիսի Գափամաճիներու* Բարեսիրական Ընկերութիւնը *կազմուած է Հայոց ՌՄԳ եւ Տաճկաց* 1168 *թուին, այսինքն՝* 157 (154) *տարիէ ի վեր, իրողութիւն մը, զոր կրնանք հաստատել Տփլիսի կալուածոց Պալատ Հողաբաշխութեան գրասենեակը գտնուած յիշեալ Գա-*

*փամաճիներու արձանագրութենէն, որուն պատճէնն ալ կը մնայ Տփղիսի Առաջնորդարանին մէջ»* (Ազատամարտ, 1910 *Թ.* 185) :

*Ընկերութեան արձանագրութիւնները* գրաբար *են եւ ունեցած կալուածները կը յատկացնէ Տփղիս քաղաքի եկեղեցիներուն, վարժարանին, աղբիւրներուն ու կամուրջին* (*Անդ*) :

2. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

1868 *Յունիսին Տփղիսէն կ'իմացնեն թէ* Անձնուէր Ընկերութեան *ճիւղ մը հաստատեր են* (Փունջ Օրագիր, *Կ. Պ.* 1868 *թիւ* 184) : *Չենք կարծեր թէ* 1868*էն աւելի հին ըլլայ : Ընկերութիւնս կը յիշէ նաեւ* Մասիս Օրաթերթը (1869 *Թ.* 300) 1868 *Նոյ.* 14*ի թղթակցութեամբ :* — *Հիմնադիրն է* Աստուածատուր Մ. Ֆէլէկեան, *որ* 1870*ին Ընկերութեան Ատենադպիրն է : Ընկերութիւնը կրցած է ունենալ* 130 *բաժանորդ եւ* կիրակնօրեայ դպրոց մը *մեծերու համար : Ունեցած է թշնամիներ, որոնք խափանել ճգնած ու յաջողած են, սակայն Ֆէլէկեան չէ յուսահատած*, 1870*ին վերակազմած է Ընկերութիւնը, որ ունի գրքեր ամէնուն ընթերցման համար* (Մանզ. Էֆքեար, 1870 *Թ.* 1428) :

1872 *Մարտ* 15 *Թուակիր թղթակցութեան մը մէջ* 51 *ստորագրողներ Տփղիսէն կը բողոքեն տեղւոյն* Տէր Գրիգորի *դէմ, որ «չըկերաւ չըխմեց՝ մինչեւ տեղիս* Անձնուէր

Ընկերութեան *ճիւղը* կործանեց» (Փող, կ. Պ. 1872 Թ. 59) :

3. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնած է* Աստուածատուր Մ. Ֆէլէկեան 1870*ին մասնաւոր գանձանակ մը հաստատելով աղքատներու համար* (Մանզ. Էփրեար, 1870 *Թ.* 1428) : — 1872*ին կը պահէ իր գոյութիւնը՝ հակառակ Տէր Գրիգորի ջանքերուն զայն կործանելու* (Փող, 1872 *Թիւ* 59) :

1878*ին Տիվրիկի մէջ կը գտնէր Գարեգին Վ. Սրուանձտեանց* «Աղքատախնամ Ընկերութիւն» *մը* «հնուց կազմեալ» (*Թորոս Աղբար, Ա., էջ* 210) : *Ուրեմն՝* անուն փոխած էր *Ընկերութիւնը* :

4. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1878)

*Կը յիշուի* 1878*ին* Լոյսէն (1878 *Թ.* 76) *լոկ անունով, իսկ Գարեգին Վ. Սրուանձտեանց* (*Թորոս Աղբար, Ա., էջ* 210) *նոյն տարի զայն կը գտնէ* «*անգործ*» : *Կրնայ քիչ մը հին ըլլալ* :

5. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1880)

*Ընկերութեանս Ատենապետը*՝ Մ. Հայրապետ Սուքիասեան *եւ Ատենադպիրը*՝ Յարութիւն Թ. Վէլէտեան *Թղթակցութեան մը մէջ*, 1880 *Դեկտ.* 1/13*ին, կը գրեն Ընկերութեան անունը սա՛ ձեւով.* «Երիտ. *Ընկերու*–

*Թիւն Տիվրիկոյ»* (Մասիս, 1881 *Թ.* 2793)։
*Տարի մը վերջ Ընկերութեան վարիչները — Ատենապետ՝ Խ. Ա. Երելեկեան եւ Ատենադպիր՝ Յովհ. Տ. Զարդարեան — Թղթակցութեան մը մէջ Ընկերութեան անունը գրած են՝* «Երեց. *Ընկերութիւն Տիվրիկոյ»* (Մասիս 1882 *Թ.* 3053)։ — *Անհնարին եղաւ ճշդել*։

6. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Հիմնուած է* 1912*ի սկիզբները, նպատակ ունենալով «վարժարանին սատարել»։ ունի Կանոնագիր եւ բաւական անդամ* (Բիւզանդիոն, 1913 *Թ.* 5007)։

1914*ին Թատերական ներկայացումներ կու տայ* (Հողդար, *Սեբաստիա* 1914 *Թ.* 8)։

7. ՏԻՎՐԻԿԻ ՇՐՋԱԿԱՑ ԳԻՒՂԵՐՈՒ ՏԱՐԱԳԻՐՆԵՐՈՒ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918 *Դեկտեմբերին* Պոլսոյ *մէջ*։ 1919 *Յունուարին ունին հետեւեալ ատենակալ Վարչութիւնը*.

*Մ. Գայըքճեան Ատենապետ*
*Հ. Զարդարեան Ատենադպիր*
*Ս. Երելէկեան Գանձապահ*
*Գ. Սիրաք*
*Մ. Սարրաֆ*
*Մ. Թէլլեան*
*Մ. Պետիկեան*
*Գ. Մակարեան Անդամներ*

Յ. Բալադեան
Մ. Տօքեան
Թ. Խաչարեան
Ս. Պալեան

Միութիւնը ունի 200 անդամ եւ ամսական 60—70 ոսկի՝ անդամավճարներէ (Ժամանակ, 1919, Թ. 3417):

1919ին գումարուած Ընդհ. Ժողովը կ՚ընտրէ հետեւեալ նոր Վարչութիւնը.

Համայեակ Զարդարեան Ատենապետ
Մարտիրոս Սարաֆեան Ատենադպիր
Մանուկ Պոյաճեան Գանձապետ
Հայկ Մանէնտեան
Միհրան Բոիկեան
Ղազար Մէլէկեան Խորհրդականներ
Սիրաք Գոգանեան

(Տեղեկագիր Հայրեն. Միութեանց, Կ. Պոլիս 1921, էջ 3, 15):

## ՔԻՐԱՍՈՆ (ԿԻՒՐԵՍԻՆ) ԳԻՒՂ

### 1. ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874—1875)

Նպատակն է «ձրի դաստիարակութիւնը ընդհանրացնել»: 1875 Փետրուարին կը բանայ Ընթերցարան մը, ուր գիշերները կը հաւաքուին «բնիկ ու պանդուխտ Հայեր եւ անխոնջ կ՚աշխատին»: Ընկերութեան Վարչութիւնը կը կազմեն Յարութիւն Յակոբեան (Ատենապետ) եւ խաչատուր Պատըլեան (Ատենադպիր), (Հայրենիք, 1875 Թ. 249),

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

1914 Նոյեմբերին կը հաստատուի իր Կանոնագիրը (Ժամանակ, 1914 Թ. 1993)։

## ԽՈՒՌՆԱՎԻԼ ԳԻՒՂ

### 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Կազմուած է 1879 Դեկտեմբերին Պոլսոյ մէջ, Գիւղին դպրոցին նպաստելու համար։ 1881ին Վարչութիւնը կը կազմէին.

Յարութիւն Խամպարեան Ատենապետ
Յարութիւն Նալիկեան Ատենադպիր

Ընկերութեան կը նուիրեն՝ Մելքոն Գասպարեան (Մոսկուա) 24 կտոր գիրք, Տօքթ. Փէշտիմալճեան (Պոլիս) 12 գիրք եւ Աբիկ Ունճեան (Պոլիս) 250 գիրք (Հայրենիք, Կ. Պոլիս 1881 Թ. 909)։

Ընկերութիւնը Գիւղին մէջ դպրոցի շէնք մը կը շինէ, ուր 1881ին կ'ուսանին 95 աշակերտներ՝ 8 կարգերու մէջ եւ ունին 2 ուսուցիչ։ Դպրոցի տարեկան ծախքն է 85 ոսկի (Մասիս, Կ. Պ. 1881 Թ. 3052)։

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Հիմնուած է 1909ին նպատակ ունենալով՝ բանալ Գիւղին դպրոցը (Ազատամարտ, 1909 Թ. 156)։ 1911ին կը հաստատուի Կանոնագիրը (Ժամանակ, 1911, Թ. 757)։ — Ընկերութիւնը Ամերիկայի մէջ ալ ճիւղ մը ու-

*նեցած է, որ* 1915*ին* 266 *ուրբի կը յատ-կացնէ պաղթականներու* (Արարատ, 1915, *էջ* 813)։

## ՁԻՄԱՌԱ ԳԻՒՂ

### 1. ՆԱՀԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է* Պոլիս 1879*ի սկիզբը։ Դրամ հաւաքելով՝ կը չինեն Գիւղի մէջ դպրոցի չէնք մը* (Թէրճէմանը Էֆքեար, *Կ. Պ.* 1879, *Թ.* 508։ — Լրագիր, *Կ. Պ.* 1879, *Թ.* 1001)։

### 2. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է Գիւղին մէջ* 1910*ի ամրան* (Ժամանակ, 1910 *Թ.* 587)։

## ԿԱՍՄԱ ԳԻՒՂ

### 1. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884—1885)

*Նպատակն է դպրոցին օժանդակել։ Բարերարն է* Յակոբ Նորատունկեան։ *Գործ. Ժողովը՝*

*Կարապետ Բայիսեան* — *Ատենապետ*
*Աբրահամ Մ. Խարակեավուրեան* — *Ատենադպիր*

(Արեւելք, *Կ. Պ.* 1885 *Թ.* 403)։

### 2. ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

1912*ին կը հաստատուի իր Կանոնագիրը* (Ազատամարտ, 1912 *Թ.* 904)։ 1919*ին Պոլսոյ մէջ կը վերակազմուի «Բագրատունեաց*

Միութիւն» *անունով* (Ժամանակ, 1919 *թիւ* 3633 : — *Տե՛ս նաեւ Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 306 *եւ* Ժողովուրդի Ձայնը, 1921, *թ.* 848, 907) :

## ԱՐԱՄԹԱՂ (ԱՐՄՈՒՏԱՂ) ԳԻՒՂ

### 1. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Կը կազմուի* Պոլսոյ *մէջ* 1885*ին* : Անունը *անծանօթ է մեզ* (Լոյս, *Կ. Պ.* 1885 *թ.* 659) :

### 2. ԿԱՐՕՏԵԼՈՑ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (?)

### 3. Ս. ՓՐԿԻՉ ՎԱՐԺ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹ. (?)

*Երկուքն ալ կազմուած են Ամերիկա* (*Տե՛ս Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ*, 1925, *էջ* 495) :

## ԱՇՈՒՇԷՆ ԳԻՒՂ

### 1. ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Կազմուած է* Պոլիս 1912*ին* : *Կ'ուզէին Գիւղին մէջ դպրոցի շէնք մը շինել* (Ազատամարտ 1912 *թ.* 953) :

## ԲԱՐԱՂԱՄ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (?)

*Կազմուած է Ամերիկա* (*Ամերիկահայ Հանրագիտակ*, *էջ* 495) :

# ԿԻՒՐԻՆ

## 1. ՎԱՀԱՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Կիւրինի այս հնագոյն Ընկերութիւնը հիմնած են Հալէպաբնակ կիւրինցի պանդուխտ վաճառականներ 1866ին՝ նպատակ ունենալով նպաստել Կիւրինի աղքատներուն ու ազգային վարժարաններուն։ Ահա եօթը հիմնադիր անդամներուն անունները․ Մարտիրոս Կ․ Արապեան, Մ․ Սարգիս Չիլինկիրեան, Սենեքերիմ Թահմազեան, Մ․ Մարգար Գոչունեան, Մարկոս Մակարեան, Մ․ Յարութիւն Մարանեան, Պօղոս Արապեան, որոնցմէ իւրաքանչիւրը 50ական ոսկի նուիրելով՝ Ընկերութեան հիմնադիր հանդիսացած են, պայմանաւ որ Ընկերութիւնը իրենց ձեռքով շահագործէ գոյացած դրամագլուխը, որ քիչ ատենուան մէջ 500 ոսկիի բարձրացած է, ունենալով նաեւ ոչ-հիմնադիր անդամներ։

Ընկերութեան 7 հիմնադիր անդամները որոշած են որ իրենց կենդանութեանը՝ անձամբ վարեն Ընկերութիւնը, իսկ իրենց մահէն վերջ՝ իրենց երեց արու ժառանգորդները՝ յաջորդաբար եւ տարուէ տարի գոյացած շահը քաղաքին աղքատներուն ու վարժարաններուն յատկացնեն։ Վերոյիշեալ եօթը անդամներէն Յարութիւն Մարանեան եւ Մարտիրոս Արապեան վստահելի մեծ վաճառականներ ըլլալով՝ Ընկերութեան Գանձապահները ընտրուած են եւ իրենց յանձնուած

է Ընկերութեան ամբողջ դրամագլուխն ու գործառնութիւնները: — Ընկերութիւնը մինչեւ 1873 շարունակուած է այս սկզբնական պայմաններու տակ: Կ'երեւայ սակայն սկսած էր թոյլնալ կամ նոր պայմաններ փոփոխութեան մը հարկը զգացուցած են: 1873ին կը վերակազմուի: Թղթակից մը կը գրէ որ Ընկերութեան անձերը «իրենց մէջ նոր ընկերութիւն մը կազմելով՝ դպրոցի համար հանգանակութիւն եւս բացեր են եւ մէկէն երեք հարիւր լիրայի հասոյթ մը գոյացեր է եւ Կակոսեան Մանուկ պատուելին ... դասատու կարգեր են Ճախչոր թաղի սուրբ Փրկչեան վարժարանին... Մանուկ պատուելին մասնաւորապէս շնորհակալ կ'ըլլայ Ընկերութեան Գործադիր Անդամներէն Կայծակ Արապեանի, Մանուկ Ծառուկեանի եւ Կարապետ Վարդապետեանի» (Մասիս, Կ. Պ. 1873 Թ. 1373):

Վահանեան Ընկերութիւնը 1874ին կը բանայ «Ղեւոնդեան Ուսումնարանը, ուր կը ուսանին 40 աշկերք որոց դասատուն է Պ. Աւետիս Պրթիկեան, Վանեցի: Աւանդեալ դասերն են. Հասարակ ընթերցում, Քերականութիւն, Թուաբանութիւն, Աշխարհագրութիւն, Տրամաբանութիւն, Ճարտասանութիւն, Տաճկերէն... Քաղաքիս առաջին ուսումնարանը սա է, ուր աւելի քան 50 լիրա ծախք կ'ըլլայ» (Հայրենիք, Կ. Պ. 1878 Թ. 418):

Ընկերութիւնը 1875ին 80 լիրա ծախսելով խասպաղ Թաղին մէջ պարտէզ մը կը գնէ՝ նպատակ ունենալով «Ղեւոնդեանց» անունով գիշերօթիկ վարժարան մը կառուցանել։ Շինութեան համար բաւական է պատրաստութիւն կը տեսնուի։ Բ. Դունէն հրավարտակ կը բերուի. շէնքին պէտք եղած ատաղձներուն մեծ մասը գնուելով պարտէզին մէջ կ'ամբարուի։ Պարտէզը գնուելէ վերջ գիշերօթիկ անունով դպրոց մը կը բացուի վարձու տան մը մէջ՝ շինութենէն յետոյ հոն փոխադրուելու համար։ Սակայն տեղւոյն մահմետականները արգելք կը յարուցանեն գիշերօթիկ վարժարանի շինութեան, որով կը յապաղի գործը եւ ատաղձներէն մաս մը կը գողցուի, կը գրէ Մ. Սարգիս Ա. Մինասեան (Աւետաբեր, կ. Պ. 1876, էջ 150։ — Հմմտ. նաեւ Հայրենիք, 1877, Թ. 353)։ — 1877ին Ընկերութեան դրամագլուխն էր 1000 օսմ. լիրա (Հայրենիք, անդ). իսկ 1893ին 1991 լիրա (Հողդար, Սեբաստիա 1913 Թ. 20)։

1892ին Մարանեան եւ Արապեան կալուած մը գնելով Բաթումի մէջ՝ վրան հինգ մթերանոց եւ երկու տուն կը շինեն ի հաշիւ իրենց եւ Վահանեան Ընկերութեան, հաւասարապէս ծախսելով։ Նոյնպէս Սամսոնի մէջ երկու տուն կը շինեն Ընկերութեան հաշուոյն։ Բարոյական անուան վրայ կալուածագիր հանել դժուարին ըլլալուն՝ իրենց

անձնական անուններուն վրայ արձանագրել կու տան Բաթումի եւ Սամսոնի չէնքերը, սակայն Կիւրինի Առաջնորդարանին ալ կը տեղեկագրեն եւ ապահովագիր կը ղրկեն թէ Բաթումի մէջ իրենց անուամբ շինած չէնքերուն կէսը եւ Սամսոնի տուները ամբողջովին Կիւրինի ազգ. վարժարաններուն կը պատկանին: 1894ին կը սկսին վարձու տրուիլ յիշեալ կալուածները եւ մինչեւ 1898 գոյացած վարձքը կը գոցէ Ընկերութեան համար եղած 500 լիրայի փոխառութիւնը: 1899–1910 չէնքերուն հասոյթը նպաստած է Կիւրինի վարժարաններուն՝ տարեկան 60–66 ոսկիով: 1911–13 նպաստ չեն տուած: Մարանեան հաւանած է նպաստ ղրկել, բայց Արապեանի ժառանգորդները հօրենական ժառանգութիւն համարելով՝ ուզած են իւրացնել ազգ. կալուածները (Հողդար անդ):

1909ին Կիւրինցի մը — Յարութիւն Ռափայէլեան — Ընկերութեան դրամագլուխը 25,000 օսմ. լիրայի բարձրացած կը համարի եւ կը պահանջէ որ գոնէ տարեկան եկամուտները յատկացուին Կիւրինի սովեալներուն ու դպրոցներուն (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1909 Թ. 4620: Տե՛ս նաեւ Ժամանակ, 1919, Թ. 3615):

2. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–9)

Կը յիշուի 1869 Փետր. 20ին, հետեւաբար հիմնումի թուական կրնայ նկատուիլ

1868–9 ։ Պոլսոյ Փունջ կը գրէ 1869 Փետր. 20ին. «Կիւրին, Տէրէնտէ, Մանճըլըխ, Տիվրիկ եւ իր մօտակայ գիւղերն ալ Անձնուէր Ընկերութեան ճիւղեր հաստատուեր եւ շատ դասագիրք եւ օրագիր ղրկուեր են» (Փունջ, Կ. Պ. 1869 Թ. 261 ։ — Տե՛ս նաեւ Մամուլ, Կ. Պ. 1869, էջ 19) ։

### 3. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Հիմնած են Այնթապի մէջ բնակող Կիւրինցի երիտասարդներ, որոնք իրենց Ընկերութեան դրամով «Կիւրինի Մայր եկեղեցւոյ վարժարանի ամայի մնացած վերնայարկին մէկ մասը վերանորոգելով, 40 տղոց համար ցորեկօթիկ «Արամեան» վարժարանը բացաւ ընդ դասատուութեամբ խաչատուր պատուելի Փանոսեանի» (Հայրենիք, 1877 Թ. 376) ։

Ուրիշ թղթակից մը լրացնելով վերոյիշեալ տեղեկութիւնը՝ կը ճշդէ որ Ընկերութեան հիմնադիրները 7 հոգի են եւ «Արամեան» վարժարանը բացած են 1877 Յուլիս 20ին՝ ունենալով 5 տարուան ընթացք մը, ուր կ՚ուսուցուին. Հայերէն ընթերցում, Քերականութիւն, Ազգ. Պատմութիւն, Սրբազ. Պատմութիւն, Քրիստոնէական, Թուաբանութիւն եւ երաժշտութիւն (Հայրենիք, 1878 Թ. 418) ։ — Ընկերութիւնը 1888ին դեռ կանգուն էր եւ ծախսած՝ 100 մէճիտ (Հայրենիք, 1880 Թ. 615) ։

### 4. ՍԻՐԱԼԻՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873—1874)

Կ'ըսուի թէ հիմնուած է 1882էն 8—9 տարի առաջ։ Ունեցած է իր պաշտպանութեան տակ «Մեսրոպեան» անունով դպրոց մը։ Ահա այս մասին Սարգիս Խումարեանի Կիւրինէն տուած տեղեկութիւնը. «...Մեսրովպեան վարժարան մը յիշեցի, որ այժմ անուանական է եւեթ եւ անձնական կրից զոհուած։ Այս նուիրական յարկը 150ի չափ Հայ մանկտւոյն Ազգ. վարժարանն էր, որ կը հոգացուէր 8—9 տարի առաջ կազմուած Սիրալիր Ընկերութեան ծախիւք եւ վերջին տարիներս սկսած էր տակաւ առ տակաւ բարեկարգուիլ եւ յառաջդիմել, սակայն Թաղիս (Չխձոր) եկեղեցւոյն վերաշինութեան պատճառաւ յիշեալ Ընկերութեան անդամոց մէջ ծագած անհամաձայնութեան շնորհիւ դժբախտաբար գոցուեցաւ» (Մասիս, 1882 Թ. 3242)։

### 5. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873—1874?)

Ընկերութեանս հիմնումի թուականը անծանօթ է. հաւանական կը համարինք 1873։ — Սարգիս Մինասեան Կիւրինէն 1876 Փետր. 28ին կ'իմացնէ թէ Կիւրինի Խասպաղ թաղին մէջ բացուած է «Լուսաւորչեան անուն Թանգարանը, որ ունի 45 անդամ։ Թանգարանին մէջ ոչ միայն լրագիր կը կարդան, այլեւ ուսմունք կը սորվին։

*Թանգարանի* դպրոցին *պաստոն է* Յակոբ վարժապետ Ժամկոչեան *եւ աշակերտաց թիւն է* 65» (Աւետաբեր, *Կ. Պ.* 1876, *էջ* 150)։ — *Նոյն Թղթակիցը* 1878 *Մարտ 2ին ալ կը գրէ.* «*Խասպալ Թաղի* Լուսաւորչեան Թանգարանի Ընկերութեան *վարժարանը կանոնաւոր չըլլալուն՝ այժմ գոցուեցաւ*» (Հայրենիք, 1878 *Թ.* 418)։

*Ընկերութեան Ատենապետ եղած է* Սարգիս Միձասեան։ 1881*ին Գործ. Ժողովը կը կազմէին՝* Յակոբ Ժամկոչեան *եւ* Կարապետ Խրիտեան (Մանզ. Էփքեար, 1881 *Թ.* 4663)։

6. ՊԱՐԹԵՒԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1878)

*Կը յիշուի* 1878*ին, բայց հաւանօրէն աւելի հին է իր հիմնարկութիւնը*։ Հայրենիքի *Թղթակիցը կը գրէ.* «Չօռէն *Թաղը մի* Պարթեւեան *անուն* Ընկերութիւն *հաստատած է շնորհիւ* Յ. Էփ. Անէմեանի *եւ* Նահապետ աղա Նահապետեանի։ 100 *լիրայի մօտ ստակ ունի*։ Նպատակը *նոյն Թաղի* տղայոց կրթութիւնն է» (Հայրենիք, 1878 *Թ.* 418)։

7. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Ջալխճոր *Թաղի* 18—20 *պատանիներ ու երիտասարդներ* 1879*ին կը հիմնեն* Արշակունեաց Ընկերութիւնը՝ *փափագելով* Թանգարան *մը եւ* Կրթարան *մը կանգնել* (Թէրճէմանը Էփքեար, *Կ. Պ.* 1881 *Թ.* 1160)։

### 8· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Թղթակից մը* 1880 *Յունիս* 3*ին կ'իմացնէ թէ Կիւրին Մայր Եկեղեցւոյ վերնայարկին մէջ եղած դպրոց մը* «Ուսումնասիրաց Ընկերութեան *խնամատարութեան ներքեւ կը գտնուի*» (Հայրենիք, 1880 *Թ*. 615)։

### 9· ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1881)

*Այս անունով Միութիւն մը կը յիշուի* 1881 *Դեկտեմբերին, որուն կազմութեան նախաձեռնողներ եղած են* Արապեան Պետրոս *եւ* Պօղոս, *որոնք միացած Մկրտիչ Պարոնեանի հետ՝ բացած են վարժարան մը՝* «Վարժարան Կրթական Միութեան» *անունով, ուր պիտի կրթուին հարուստ եւ աղքատ մանուկներ՝ սահմանեալ Թուով*» (Մասիս, 1881 *Թ*. 3064)։ — *Վարժարանը յետոյ կը կոչուի նաեւ* «Արապեան–Պարոնեան Վարժարան» (Մասիս, 1882 *Թ*. 3242)։

### 10· …ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883—1884)

*Կիւրինի* «Էօրէն–*Թաղը*» *երկուք է. Վերի եւ Վարի Էօրէն։ Այս Թաղին մէջ* 1888*էն* «մի քանի տարի *յառաջ չափահաս եւ կարող անձինք ի մի վայր խմբուելով ձեռնարկած են մի* Ընկերութիւն *կազմել եւ Թաղին ազգայիններէն… նուէր առնուլ, որպէս զի Ընկերութիւնն պատրաստ մի դրամագլուխ ունենալով՝ կարողանայ… Հայ մանկտւոյ դաստիարակութեան նուիրել*

եւ մեն մի աշակերտ ձրիաբար երթեւեկէ վարժարան... այս բարի նպատակաւ հաւաքած են 80 ոսկի...» (Փունջ, Կ. Պ. 1888

Թղթակիցը չէ տուած Ընկերութեան անունը, որուն հիմնարկութեան թուական կրնանք համարիլ իբր 1883—1884:

11. «ՍԻՐԱԼԻՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883—1885)

Այս Ընկերութիւնը Կիւրինի «Զախձոր-թաղին մէջ հիմնուած է: Հիմնադրութեան տարւոյ համար կ'ըսուի, 1889էն «քանի տարիէ ի վեր հիմնուած (Փունջ, 1890 թիւ 2186): — Ընկերութիւնս վերակազմութեա՞մբ նոր կեանքի կոչուած է թէ հինը շատոնց մարած ըլլալով՝ նոր հիմնադրութիւն մ'ունեցած է: — Ոչ մէկ լուսաբանութիւն կը գտնենք այս վերջին տեղեկութեան մէջ:

12. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(...1907—1915)

Հիմնած են Ամերիկայի նժդեհ Կիւրինցիներ, որոնք 1915ին 430 տոլար կը նուիրեն Հայ Գաղթականներուն (Արարատ, 1925, էջ 817):

13. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910—1911)

Պոլսոյ ժամանակ թերթը կը գրէ 1911ին. «Կիւրինի Գարաթէփէի թաղին մէջ

երեսուն երկու անդամներով գիշերային դպրոց մը բացուած է, ուր օգտակար գիտելիքներ կ'աւանդուին զարգացեալներուն։ Ընկերութեան անդամակցելու էական պայմանն է մաքուր բարոյական եւ պարկեշտ կենցաղ եւ մանաւորաբար ոգելից ըմպելի չգործածել» (Ժամանակ, 1911 Թ· 743)։ — Դժբախտաբար լռած է Ընկերութեան անունը։

### 14· ...ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

Կիւրինի մէջ Իտատիի համազօր բարձրագոյն վարժարան մը բանալու համար 1914ին սկիզբը Միութիւն մը կը կազմուի, որուն Ծրագիր–Կանոնագիրը Ազգային Վարչութիւնը պատրաստած էր (Ժամանակ, 1911 Թ· 1713)։ Չ'ըսուիր սակայն թէ ի՞նչ էր Միութեան յորջորջումը։

### 15· ԿԻՒՐԻՆԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

Կազմուած է Պոլիս 1920 Մայիսին։ Առժամեայ Վարչութեան կազմն է· Վ· Չէյթունցեան, Սիմոն Թէրճէնեան, Ս· Փիրանեան, Վ· Զուլճեան, Վ· Գարայեան (Տեղեկագիր Հայրեն· Միութեանց· Կ· Պ· 1921, էջ 4 եւ 14։ — Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ· 810)։

### 16· ԿԻՒՐԻՆԻ ՀԱՅՐԵՆԱԿՑ· ՄԻՈՒԹԻՒՆ (1929)

Թղթակիցը կը գրէ· «Կիւրինցի քանի մը

*հայրենակիցներ, զգալով կազմակերպութեան պահանջը՝ գաղափարի փոխանակութիւն ունեցանք։ Յետոյ 28 անդամ–անդամուհիներէ բաղկացեալ մեր անդրանիկ նիստը գումարելով՝ միաձայնութեամբ որոշեցինք կազմել* «Կիւրինի Հայրենակցական Միութիւնը», *որուն գլխաւոր նպատակները պիտի ըլլան. 1. Վառ պահել ազգային ոգին եւ հայրենիքի աւանդութիւնները. 2. Բոլոր կարելի միջոցներով պայքարիլ այլասերման դէմ... 3. Փոխադարձ նիւթական եւ բարոյական օժանդակութիւն»* (Յառաջ, *Փարիզ* 1929 *Յուլ.* 2)։ *Շուտով կ'ունենայ իր կանոնագիրը։ Առժամեայ Վարչութեան անդամներէն է* Թադէոս Մինասեան։ *Միութիւնը կը կազմուի* Լիոն–Ռոնի (*Ֆրանսա*) *մէջ* (*Անդ*)։

## ՍԵԲԱՍՏԻԱ

### 1. ՍԵՆԵՔԵՐԻՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846?)

Գարեգին Վ. Սրուանձտեանց *կը գրէ* 1878*ին.* «Սենեքերիմեան Ընկերութիւն, *որ Սեւաստացւոց պարծանք եւ բազմաց օրինակ լինելու արժանի է* իբր 32 տարիէ ի վեր հիմնեալ Պոլիս գտնուած պանդուխտ Սեւաստացիներէ...» (*Թորոս Աղբար, Ա., էջ* 145)։ «Իբր 32 տարիէ ի վեր» 1878*էն հաշուելով՝ կու տայ* 1878—32 = 1846։

*Նոյն կարծիքն ունի* Հ. Գ. Ղազարեան,

*որ կը գրէ.* «*Սեբաստիոյ Սենեքերիմեան* Միութիւնը *առաջին անգամ հիմնուած է* 1846 թուականին Կ. Պոլիս *գտնուած Սեբաստացիներու կողմէ: Առաջին հիմնադիրները կ'ըլլան* Թորոս Աղա Տէրպապեան, Յակոբ էֆ. Գազանճեան» (Ալիս, *Նիւ Եորք* 1929, *Թ.* 6, *էջ* 7): — *Ուրեմն՝* «*Սենեքերիմեան Ընկերութիւն»ը* նախ հիմնուած է Պոլիս՝ 1846ին:

1846—1847*ին* Պոլիս *եւ գաւառներու մէջ գոյութիւն ունեցող* բոլոր Ընկերութիւնները ծանօթ են մեզ: *Անոնց մասին ծանօթութիւն տուող ժամանակակից թերթերն են* Պոլսոյ Հայաստանը *եւ Իզմիրի* Արշալոյս Արարատեան *եւ* Հայրենասէր: *Արդ, այս երեք կարեւոր թերթերէն* ոչ մէկուն ծանօթ *է թէ* Սեբաստացիներ Պոլսոյ մէջ — 1846*ին* — «*Սենեքերիմեան Ընկերութիւն» մը հիմնած են:* Ո՛չ 1846ին եւ ոչ ալ 1846—1851ի *ընթացքին որեւէ հայ թերթի մէջ տեղեկութիւն կայ այդ մասին:* Գաղտնի՞ մնացած էր արդեօք այդ հիմնումը: — *Անհաւանական է: Զի* 1846—1851*ի միջոցին տասնեակ Ընկերութիւններ հիմնուած են եւ ծանօթ վերոյիշեալ թերթերուն:*

*Դժբախտաբար* եւ ոչ մէկ հին վկայութեամբ *կարելի է ապացուցանել թէ Սեբաստացիներու հնագոյն Ընկերութիւնը* — Սենեքերիմեան — *առաջին անգամ* 1846*ին հիմնուած է:*

*Ընկերութեանս մասին* ամենահին վկայութիւնը *ունինք Պոլսոյ* Մասիս *եւ* Նոյեան Աղաւնի *թերթերէն, որոնցմէ* Մասիս 1852 Հոկտ. 1ին *է որ առաջին անգամ ըլլալով* Վառնայի (*Բուլղարիա*) *մէջ հիմնուած Ընկերութեան մը լուրը տալէ վերջ՝ կը ծանուցանէ. «Ուրիշ ազգասիրական* Ընկերութիւն *մըն ալ* Սեբաստիոյ մէջ *հաստատուեր է* այս օրերս «Սենեքերիմեան Ընկերութիւն» *անունով: Ասոր ալ շարժառիթը ուսումնասիրական հոգւոյն արթնալն է տեղւոյն Հայ ժողովրդեանը մէջ... երկու երեւելի անձինք՝ մեծ.* Յովսէփ եւ Մահտեսի Գէորգ *հարազատք* Օտապաշեան՝ *ազգասիրաբար իրենց ծախուքը վարժարան մը շիներ ու ազգին նուիրեր են: Այս ազնուախոհ անձանց նշանաւոր առատաձեռնութիւնը* օրինակ եւ գրգիռ մը եղեր է *տեղւոյն երեւելեացը՝* միաբանելու Ընկերութիւն կազմելու *եւ ժողովուրդը յորդորելու որ վերոյիշեալ երկու ազգասէր յարգելիներուն գովելի նախանձը արդիւնաւորեն... դպրոցներ կանգնեն, բարեկարգեն, ուսման եւ կրթութեան բարիքներուն իրենց զաւկներն ալ մասնակից ընեն... Այս Ընկերութեան* անդամ եւ գործակալ *եղեր են հետեւեալ արգոյ անձինքը.*

| | |
|---|---|
| *Բարունակ Տէմիրճեան* | *Վերատեսուչ* |
| *Գէորգ Մեծմօրուքեան* | *Հոգաբարձու* |
| *Առաքել Մեծմօրուքեան* | *Հոգաբարձու* |
| *Մանուկ Մեծմօրուքեան* | *Գանձապետ* |

Ղազարոս Պըյըխեան Օգնական
Գրիգոր Զատրճեան
Կարապետ Զատրճեան Խորհրդական
Պալիկ Տէրպապեան
Յոհան Պալըգճեան
Յակոբ Բարունակեան
Խաչատուր Բրուտեան
Պետրոս Յոհաննէսեան
Մելքոն Պօյաճեան
(Մասիս, Կ. Պ. 1852 Թ. 36, Հոկտ. 1)։

Պոլսոյ Նոյեան Աղաւնի թերթը (1852 Թ. 32 Հոկտմ. 9) Մասիսի վերոյիշեալ տեղեկին կարեւոր մասը նոյնութեամբ տալէ վերջ՝ իր կողմէ որեւէ նորութիւն մը չաւելցներ։

Թէ՛ Մասիսի եւ թէ՛ Նոյեան Աղաւնիի անծանօթ է 1846ին Պոլսոյ մէջ հիմնուած Սենեքերիմեան Ընկերութեան մը գոյութիւնը։ Այս թերթերուն անծանօթ է առհասարակ «Սենեքերիմեան»ի Պոլսոյ մէջ ալ հիմնում մ'ունենալը։ Մենք կը համարինք թէ այդ թերթերու լոյս տեսնելէն (1852ին լոյս տեսած են առաջին անգամ) քիչ առաջ — 1851ին — տեղի ունեցած է Պոլսոյ «Սենեքերիմեանի» հիմնումը։ — Հնութեան մէջ, որքան գիտենք, մինչեւ 1857 այլ եւս ոչ մէկ թերթ յիշատակութիւն կ'ընէ Ընկերութեանս մասին։ Հետեւաբար եթէ իսկապէս առաջին անգամ 1846ին տեղի ունեցած է Պոլսոյ մէջ

*«Սենեքերիմեան Ընկերութեան հիմնումը՝ այն ատեն պիտի ըսենք թէ ան* կարճ տեւողութիւն մը միայն ունեցած ու դադրած է։ *Ունեցա՞ծ է* կանոնագիր *մը*։ *«Սենեքերիմեան Ընկերութեան» անունով* կանոնագիր *մը ծանօթ է մեզ 1875էն*։ *Այդ տարիէն առաջ լոյս տեսած չէ կանոնագիր մը, թէեւ 1857ին կ'ըսուի թէ Ընկերութիւնը ունեցած ըլլայ «կանոններ», որոնք այնքան* «լաւ եւ հիմնաւոր» չէին։ *Ընկերութիւնը 1857ին վերջերը* վերակազմուելով՝ «աւելի լաւ եւ հիմնաւոր կանոններ» *կ'ունենայ* (Մասիս, *թ*. 305)։ *Բայց թէ որո՞նք են եւ ու՞ր հրատարակուած՝ չ'ըսուիր*։

Սեբաստիոյ «Սենեքերիմեան Ընկերութիւն»*ը մեզի ծանօթ է* երկու ճիւղով. *մին* Պոլիս *հիմնուած* 1851*ին, միւսը* Սեբաստիոյ *մէջ կազմուած* 1852*ին*։ *Ահա մեր ապացոյցները*։ *Աչքի առջեւ ունինք* 1881 *Յուլիսին* Պոլսոյ *մէջ լոյս տեսնող* Հայրենիք թերթը (*խմբագիրը* Սեբաստացի մը՝ *Անդրանիկ*), *որուն մէջ* Պոլսաբնակ Սեբաստացիներ — անդամ *Սեբաստահայ «Սենեքերիմեան Ընկերութեան* Պոլսոյ ճիւղին — *հրատարակութեան կու տան նամակ մը, որ կը պատմէ թէ* 1. Որո՞նք էին հիմնադիրները Պոլսոյ «Սենեքերիմեանին». 2. Ե՞րբ հիմնուած է *այդ Ընկերութիւնը* Պոլսոյ մէջ. 3. Ի՞նչ վիճակ ունի 1881*ին* Պոլսոյ «Սենեքերիմեան»*ը, որ այդ ատեն* «երեսնամեայ մի ծերունի Ըն-

կերութիւն է ։ *Ահա այդ նամակը իր էական մասով ·*

*«Սենեքերիմեան Ընկերութիւն Սեբաստիոյ · վերջապէս Հայն սթափելով իր դարաւոր անտարբերութենէն, զգաց թէ Հայն առաւել պէտք ունի իր բնագաւառին մէջ ոյժ տալու քաղաքակրթութեան գործոյն եւ անոր դաստիարակելու ներկան . . . Սեբաստիոյ գաւառն,* ինչպէս կը յիշեն շատեր, *սոյն պարտաճանաչութեան մէջ անդրանիկն լինելով, իրաւամբ մեծ դրուատիքներու արժանի է . . . Սեբաստիա ունեցած է* երեսնամեայ *մի* ծերունի Ընկերութիւն, *որ կը կոչուի* «Սենեքերիմեան», *որոյ* հիմնադիրք *եղած են ոչ մեզի նման կարծեցեալ լուսաւորիչներ*, այլ վեհապանծ նախնեաց առանձնայատկութիւններէն դեռ անզուրկ իսկական Հայեր՝ ***ԲԵՌՆԱԿԻՐՆԵՐ***, որոց արդար քրտանց կաթիլներէն *մարմնացած է յիշեալ* Սենեքերիմեան Ընկերութիւնը *եւ նորա տարեկան* 300 *ոսկիէն աւելի հասոյթ արտադրող հաստատուն կալուածներն ։* Ահա այսպիսի Ա ·ը Բ ·էն որոշելու անկարող, անուս ճողաքարձներէ յարատեւած մի Ընկերութիւն, որ այսօր եկած փոխանցած է մեզ *նման «լուսաւորիչներու»*, *նուազ զարմանալի չէ անտարբերութեամբ դիտել նորա* տարտամ եւ ծանրաքայլ ընթացքն եւ նուազ նախատինք չկրնար համարուիլ բոլոր Սեբաստեան զաւակաց, *որոյ պատասխանատուութեան ծանրու-*

*թենէն ոչ ոք կարող է արդարնալ*, ո՛չ համեմատական արդիւնք, ո՛չ տարեկան արդար հաշուեկշիռ եւ ոչ ալ Ընկերութեան սուրբ գործոյն եւ նպատակին համաձայն մղում մը կը նշմարուի այսօր... *կը մնամք միշտ բարեացակամ* բաժանորդք Սենեքերիմեան Ընկերութեան. 1881 *Յուլիս* 16, *Կ. ՊՈԼԻՍ*» (Հայրենիք, *Կ. Պ.* 1881 *Թ.* 788):

*Այստեղ նկարուած* «Սենեքերիմեան Ընկերութիւն»*ը* Կ. Պոլսոյ *մէջ հիմնուած է*, *գրողներն ալ անոր* բաժանորդներն *են*՝ ծանօթ անոր հիմնումին: *Ինչպէս կը տեսնուի*՝ *հիմնումը եղած է* 1881*էն* 30 տարի առաջ, *այսինքն* 1881—30 = 1851*ին*: Հիմնադիրներն *են Սեբաստացի* բնակիչներ Պոլսոյ մէջ: *Դժբախտաբար* անուններ չեն յիշուիր *այդ հիմնադիրներէն*: Պոլսոյ «*Սենեքերիմեան*»*ի հիմնումի տարին* 1852*ին դնող ալ կայ. օրինակ*՝ 1875*ին հրատարակուած* Կանոնագրութիւնը *եւ նոյն Կանոնագրութիւնը հրատարակել տուողները* (*տե՛ս* Հայրենիք, 1875 *Թ.* 271): *Այս մասին յետոյ*:

Սեբաստացի *գրագէտ մը* — Նազարէթ Յ. Իսթամպօլլեանց — 1880*ին կը գրէ Սեբաստիայէն*. «*Սենեքերիմեան Ընկերութիւն* հաստատեալ 1851 թուականին. *Սոյն Ընկերութիւնն անդրանիկ ազգային մի Ընկերութիւն է քաղաքիս մէջ*... երկու ճիւղի *բաժնուած է. մի ճիւղը* Կ. Պոլսոյ մէջ *կը գըտ*-

*նուի եւ միւսը քաղաքիս մէջ»* (Մասիս, Կ. Պ. 1880 Թ. 2560):

*Ուրեմն՝ ասոր համեմատ ալ «Սենեքե-րիմեան Ընկերութեան»* ծագումը 1851էն *է*: *Ասոր ալ* անծանօթ է 1846*ի հիմնումը*: *Ասկէ մենք կ'եզրակացնենք անգամ մը եւս*.

1. Հնագոյն վկայութիւն *չկայ* Պոլսոյ մէջ *«Սենեքերիմեան Ընկերութեան* 1846ի հիմնումի ի նպաստ. 2. *Եթէ իրապէս Պոլսոյ ճիւղը* 1846*ին հիմնում մը ունցած է՝ հարկ է ընդունիլ թէ այդ՝* շատ կարճ գոյութիւն *մը ունեցած եւ* դադրած է կանուխէն: 3. *Մեր ձեռքը եղած վկայութիւնները հաս-տատապէս կ'ապացուցանեն թէ* «Սենեքե-րիմեան Ընկերութեան» *ծագումը — Պոլսոյ թէ Սեբաստիոյ մէջ —* 1851էն աւելի բարձր հնութիւն չունի:

*Այժմ տեսնենք թէ հնութեան մէջ ուրիշ ի՞նչ տեղեկութիւն կայ «Սենեքերիմեան Ըն-կերութեան» մասին — ըլլա՛յ Պոլսոյ կամ Սեբաստիոյ մէջ*:

1857*ին «Սենեքերիմեան Ընկերու-թիւն»ը, որ Սեբաստիոյ Առաջնորդ* Կարա-պետ Եպիսկոպոս Գալայճեան*ի «ջանիւքը* ճանի մը տարի առաջ հաստատուած» *էր՝ եւ «որ ժամանակէ մը ի վեր նոյն սրբազանին անձնական տկարութեանը պատճառաւ* խա-փանման վիճակի մէջ ինկած էր (1857*ին*), *այս օրերս (այսինքն՝* 1857 *Հոկտեմբեր-Նոյեմբերին*) վերստին հաստատուեցաւ ա-

ւելի լաւ եւ հիմնաւոր կանոններով» (Մա-
սիս, 1857 *Թ*. 5, *Նոյեմբեր* 28)։

*Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը* կը վերակազմուի 1857*ի վերջերը թէ՛* Սեբաստիոյ *եւ թէ* Պոլսոյ *մէջ*։ Մասիս *իր յաջորդ թիւերուն մէջ տուած է կազմը երկու տեղերու* վարչութիւններուն *ալ*։ *Ահա* Սեբաստիոյ քաղաքի *«Մենեքերիմեան Ընկերութեան»* Գործադիր ժողովքի *կազմը* 1857*ին վերջը*.

*Նախագահ*
*Պետրոս Վ. Առաջն. փոխանորդ*

*Փոխ–Նախագահ*
*Յարութիւն Պալեօզեան*

*Գանձապետ*
*Խաչատուր Թաշճեան*

*Գրագիր*
*Յակոբ Կիրակոսեան*

*Անդամք*
*Կարապետ Օտապաշեան*
*Ստեփան Մեծմորուքեան*
*Մ. Նշան Պալեօզեան*
*Աստուածատուր Պարսամեան*
*Թորոս Տէրպապեան*
*Մ. Պօղոս Մսրեան*
*Մ. Միքայէլ Մօզեան*
*Խաչատուր Աղապապեան*
*Մանուկ Պօղոսեան*

Պոլսոյ «*Սենեքերիմեան*»*ի Գործադիր Ժողովքը* 1857*ի վերջը*·

*Նախագահ*

*Յակոբ Գըպըրըդեան*

*Գանձապետ*

*Աբրահամ Հապէշեան*

*Գրագիր*

*Ղազար Պըյըդեան*

*Անդամք*

*Մինաս գործակալ Օտապաշեանց*

*Մանուկ Մեծմորուքեան*

*Պալիկ Տէրպապեան*

*Մ. Երեմ Մաղաքեան*

*Յովհան Պալեան*

*Յակոբ Բարունակեան*

*Մ. Խաչատուր Բրուտեան*

*Մելքոն Զուխասըրդեան*

*Մ. Պետրոս Յովհաննէսեան*

*Գէորգ Գարագաշեան*

*Պապիկ Տումարեան*

*Խաչատուր Զաքէյեան*

(Մասիս, *Կ. Պ.* 1858, *Թ.* 313):

Գէորգ Օտապաշեան 100.000 *ղրշ. կտակած է* «*Սենեքերիմեան*»*ին* (Մասիս, 1858 *Թ.* 322):

«*Սենեքերիմեան Ընկերութիւն*»*ը իր պաշտպանութեան տակ եղած դպրոցին* «յարատեւութեան մշտնջենաւոր եկամուտ

իմն պատրաստելոյ փափաքանօք»՝ *Սեբաստիա քաղաքին մէջ գտնուած* արքունի շտեմարանը *աճուրդի ելած ըլլալուն՝ Ընկերութիւնը զայն կը գնէ* 1859*ին* 100.000 *դուրուշի «եւ ի հիմանց քակելով եւ այլ ութսուն հազար ղրշ.ի չափ ծախք ընելով եւ մշտահոս ջուր եւս բերելով՝* հոյակապ եւ ի քաղաքիս նմանը չտեսնուած կրկնայարկ պանդոկ մի շինեցին ԱՐԱՄԵԱՆ *կամ* ԷՐՄԷՆԵԱՆ *պանծալի անունն ալ իբրեւ ծիրանի զգեցուցանելով... շինութիւնն գրեթէ յամբողջն կը ժամանէ (կը վերջանայ) յետ քան աւուրց»* (Մասիս, 1859 *Թ.* 402 *եւ* 411, *Հոկտեմբեր*)։

*Պոլսոյ* Մէնմուայը Հավատիս *Թրքաբարբառ Թերթը կը գրէ* 1859 *Հոկտ.* 10*ին.*

*«Սեբաստիոյ Սենեքերիմեան Ընկերութիւնը իր խնամքին տակ ունի* 500 *աշակերտով դպրոց մը, որուն* մնայուն եկամուտ ապահովելու համար 100,000 դուրուշ ծախսելով կը գնէ պետական մթերանոցի գետինն մը եւ վրան բնդարձակ շէնք մը կը շինէ, որ տակը ունի 30 խանութ եւ վրան 30 սենեակ։ *Այս շինութիւնը* պարտքով վերջացած ըլլալուն՝ *կը յուսացուի որ բարերարներու նպաստով կը փակուի այդ պարտքը»* (Մէնմ. Հավտիս, *Կ. Պ.* 1859 *Թ.* 316)։

1863 *Յունիս* 8*ին կը գրէ Պոլսոյ* Ժամանակ. «10—12 *տարի յառաջ* Սեբաստիոյ մէջ *վարժարան կառուցուեցաւ* Օտտակա–

շեան Գերդաստանին մասնաւոր ծախիւքը: *Այս վարժարանին յառաջդիմութեանը հա-մար* Սենեքերիմեան Ընկերութիւնը *կազ-մուեցաւ, որ* մեծ խան մը *հիմնեց դարձեալ* ի Սեբաստիա *ու անոր եկամուտով* վար-ժարանը յառաջանալ ու ծաղկիլ սկսաւ: *Մինչեւ ցարդ վարժարանը կը յարատեւէր եւ բարի անուն ու համբաւ կը ստանար Ազ-գին մէջ: Բայց վարժարանին շէնքը հինցած ըլլալով, նորոգութեան պէտքը կը զգա-ցուէր: Անցեալները վերջապէս բոլորովին կ'աւերեն, ըստ որում երկիւղ ալ կու տար դրացի շէնքերուն:* Սակայն հիմայ շինող չկայ: *Սենեքերիմեան Ընկերութիւնը* ողջ չէ *որ յօգնութիւն փութայ. քաղաքին իշխան-ները համամիտ չեն որ միաբանութեամբ շինութեան սկսին: Առաջնորդ Սրբազանը անկարող կը մնայ հակառակ մասերը միաց-նելու, Սենեքերիմեան Ընկերութիւնը* վե-րակազմելու... *Սենեքերիմեան Ընկերու-թիւնը* երկու ճիւղի բաժնուած էր. *մէկն* ի Սեբաստիա *եւ միւսն* ի Պոլիս: *Սեբաստիոյ ճիւղը Պոլսոյ ճիւղին խրկած դրամներով՝ հոն պէտք եղածը կը հոգար, անոր ստա-կովը իշխանութիւն կը վարէր եւ ինք իրմէ բան մը չգոյացնելէն զատ, Պոլսոյ ճիւղին ալ ոչ արժանաւոր շնորհակալութիւն ունէր եւ ոչ յորդոր: Յայտնի է որ Պոլսոյ ճիւղն ալ* բեռնակիրներէ *եւ անոնց գլխաւորներէ կամ* օտապաշեաններէ *եւ քանի մ'ալ* փոլիցանի-

ներէ *կը կազմուէր: Խեղճ բեռնակիրը իր տաղնապալից վիճակի մէջ, իր արեան քրտինքով շահած լուման առանց խնայելու կու տար սակայն իշխանութիւնը վարել սիրող փոլիցաճիները... միայն խօսիլ գիտէին... չտալու սովորած էին: Այս պատճառաւ օր օրի ցրտացան սրտերը եւ ստակ տուողն ալ չտուողն ալ մէկ գին ըլլալուն՝* մնաց բարեաւ բունեցաւ Սենեքերիմեան Ընկերութեան...» (Ժամանակ, *Կ. Պ.* 1863 *Թ.* 12, *էջ* 92, *Յունիս* 8):

*Ինչպէս կը տեսնուի՝* Ժամանակին *ալ անծանօթ է* 1846*ի հիմնումը «Սենեքերիմեան Ընկերութեան», իրեն ծանօթ է միայն* 1863*էն* «10—12 տարի յառաջ» *հիմնուած Ընկերութիւնը* Պոլսոյ մէջ: — *Թերթիս համեմատ* Պոլսոյ *«Սենեքերիմեանը՝* կազմալուծուած *է* 1863*ին: Գրեթէ միեւնոյն ժամանակ* թոյլցած է *նաեւ* Սեբաստիոյ քաղաքին *«Սենեքերիմեան»ը: Այնպէս որ* 1867 *Դեկտ.* 28*ին գրուած նամակ մը* Սեբաստիայէն *կ'իմացնէ թէ «Սենեքերիմեան Ընկերութիւնը* բաւական ժամանակէ ի վեր անունը կար, բայց ոչ ինքը... *չտո՞նց կը կենդանանար, եթէ տեղւոյս հոգեւոր ու մարմնաւոր իշխանութիւնը* կամք ընէր» (Ժամանակ, *Կ. Պ.* 1868, *էջ* 11. *Յունուար* 20):

1867*ի վերջը* կը վերակազմուի Սեբաստիոյ ճիւղը: *Վերոյիշեալ նամակագիրը կը*

տողէ. «Դեկտեմբեր 21ին Սեբաստիոյ բոլոր իշխանները, արուեստաւորաց գլխաւորները, քահանայք եւ ուսումնական անձինք ընդհ. ժողով գումարեցին ընդ նախագահութեամբ Մեսիայեան Յովհաննէս վարդապետի: Այս ժողովը 12 անդամէ բաղկացեալ Քաղաքական ժողով մը ընտրեց, որ անխտիր հին ու նոր գաղափարի տէր անձերէ կը բաղկանայ: Քաղաքական ժողովը Դեկտ. 22ին առաջին նիստն ըրաւ եւ իր Դիւանը կազմեց Մեծ. Միսաքեան Սարգիս էֆ. Ատենապետ եւ Մեծ. Պալեօզեան Պետրոս էֆ. Ատենադպիր կարգեց: Նոյնպէս վեց քահանայի Կրօնական ժողով մ'ալ կազմուեցաւ Դեկտ. 25ին: Ուսումնական Խորհուրդը եւ Սենեքերիմեան Ընկերութիւնը պաշտօնական կերպիւ հաստատուեցան... Սենեքերիմեան Ընկերութիւնը նորոգ կազմուեցաւ 18 անձէ, որոնք արդէն Սենեքերիմեանի արդեամբքը շինուած խանին արդիւնքը, որ վարժարանաց յատկացած է, հաւաքելէ զատ, նաեւ ուրիշ արդիւնքներ ալ ի նպաստ վարժարանաց հոգալու միջոցներ ձեռք պիտի առնեն... Վարժարանաց ուսումնական եւ բարոյական տեսչութիւնը Ուսումնական Խորհրդոյն պաշտօնն է, իսկ դրամական պիտոյքը հոգալը՝ Սենեքերիմեան Ընկերութեան» (Ժամանակ, 1868, էջ 11—12:

Պօլսոյ Փունջին կը գրեն Սեբաստիայէն

1868ի գարնան. «Քաղաքիս Սենեքերիմեան նորակազմ Ընկերութիւնը Մայր դպրոցն աւելի ընդարձակելու ու նորոգելու ձեռնարկութիւն ըրած ու ստորագրութիւն բացած է: Արդէն բաւական ստակ հաւաքեցին» (Փունջ, 1868, Թ. 166):

Ինչպէս շեշտած էինք վերը՝ Սենեքերիմեան Ընկերութեան երկու ճիւղերէն ալ հին ու սկզբնական Կանոնագիր անծանօթ է մեզ: Ա՛նշուշտ ունեցած ըլլալու են, կ՛ըսէինք: 1867ի վերջը երբ Սեբաստիոյ ճիւղը կը վերակազմուի՝ կը յօրինուի նաեւ Նոր կանոնագիր մը, որմէ կը հասկցուի թէ հին մը կար, ուրեմն: Սեբաստիայէն 1868 Յունիսին գրուած նամակ մը կը տեղեկագրէ. «Սենեքերիմեան Ընկերութիւնը նոր Կանոնագրութիւն մը հաստատելով՝ բոլոր անդամոց ստորագրութեամբ վաւերացաւ: Ղասապպաշեան Մ. Գրիգոր աղան իրենց օղնական առին, որ Ագտերեան Մ. Սերովբէ աղայի հետ ամենայն ջանիւք հոգ կը տանի դպրոցին նորոգման Ընկերութեան կողմանէ» (Փունջ Կ. Պ. 1868 Թ. 177):

Դժբախտաբար ոչ մէկ տեղ հրատարակուած է այս Կանոնագրութիւնը, որ մեծապէս կը շահագրգռէր մեզ: Զենք գիտեր թէ արդեօք 1875ի Կանոնագիրը նո՞յն է ասոր հետ:

«Սենեքերիմեան Ընկերութեան» Պոլսոյ

ճիւղը դադրած էր գործելէ 1863ին, ինչպէս տեսանք: Զայն վերակազմելու փափաք կ'ունենան սակայն Պոլսաբնակ Սեբաստացիներ 1870ին: Առիթի մը միայն կը սպասէին: 1871ին Պոլիս կը գտնուի Սեբաստիոյ Առաջն. փոխանորդ Պետրոս Ծ. Վ., որ կը քաջալերէ ու կը խրախուսէ բոլոր Սեբաստացիները՝ վերականգնելու իրենց նախնեաց պատուաւոր Ընկերութիւնը: Արդիւնքը այն կ'ըլլայ որ 1871ի ամրան Յայտարարութիւն մը կը հանեն թէ Ընդհ. Ժողով տեղի պիտի ունենայ: Ժողովը կը գումարուի նախ Սեպտեմբեր 10ին, յետոյ 26ին նախագահութեամբ Տէր Պետրոս վարդապետի եւ արդիւնքը կ'ըլլայ հետեւեալը.

Նոր Ընկերութիւն մը կը հիմնեն, առանց մասնաւոր անունի եւ զայն կը համարին շարունակութիւնը Սենեքերիմեան Ընկերութեան»: Հետեւաբար կը կոչեն զայն «Սենեքերիմեան Ընկերութիւն»: Ահա անոնց որոշումները.

«1. Միաձայն հաւանութեամբ որոշուեցաւ որ սոյն Ընկերութիւնը Սենեքերիմեան Ընկերութեան շարունակութիւնն ըլլայ եւ նորա բոլոր գործերը սոյն նորակազմ Ընկերութեան յանձնուի, որպէս զի ըստ արժանւոյն երկրին վարժարանաց նիւթական պիտոյքը մատակարարուի եւ քիչ ժամանակի մը մէջ գիշերօթիկ վարժարան մը հիմնուի: Սոյն Ընկերութիւնը անուանուեցաւ Սենե-

ճերիմեան վերակազմ Ընկերութիւն Սեբաստիոյ.

«2. *Բուէարկութեամբ առժամեայ Յանձնաժողով մը կազմուեցաւ, որոյ պաշտօնն է Ընկերութեան Հիմնական կանոնները խմբագրել եւ Ընդհ. Ժողովոյն ներկայացնելով պաշտօնէ դադրիլ: Առժամանակեայ Յանձնաժողովն հետեւեալ Մեծ. անձերէ կը բաղկանայ.* Գրիգոր Թաշճեան, Յակոբ Աւարոնեան, Մ. Յակոբ Գապրգեան, Մ. Պետրոս Մուրատեան, Մ. Սերովբէ Օտապաշեան, Կիրակոս Նորհատեան, Օհան Տէր Օհանեան, Օհաննէս Ալթունեան, Մկրտիչ Գարաբէճէյեան, Գրիգոր Օտապաշեան, Յակոբ Պոյաճեան, Խաչիկ Բոեան...

2. *Հոկտ.* 1871 *ի Գալաթա*

*Ընդհ. Ժողովոյ*

*Ատենադպիր* *Ատենապետ*

*Սիմէոն Դ. Հէքիմեան* *Յ. Խ. Թաշճեան*

(Հայրենիք, կ. Պ. 1871 *Թ.* 69):

*Յաջորդ շաբաթ Ընդհ. Ժողով տեղի կ՚ունենայ* պատրաստուած կանոնագրութիւնը վաւերացնելու համար (Հայրենիք, 1871 *Թ*. 70):

*Ձ՚րսուի՞ր հոս ասկէ յն թէ կազմուած կանոնագրութիւնը* կը վաւերացուի՞ եւ վերջնական կը համարուի՞: *Զարմանալի (է նոյնպէս՝ որ ան ո՛չ* 1871*ին*, *ո՛չ* 1872*ին*, *ո՛չ* 1873*ին եւ ոչ ալ* 1874*ին կը հրատարակուի*,

*այլ* 1875*ին միայն*: Պոլսոյ *Սեբաստացիները* «7 *անձէ բաղկացեալ Վարչութիւն մը կ՚ընտրեն յանուն Սենեքերիմեան Ընկերութեան, որուն պիտի մասնակցին* իւրաքանչիւր արհեստաւորներէ եոկերկու անձ այ» (Հայրենիք, 1874 *Թ*. 191): *Իսկ* Սեբաստիոյ *մէջ* 1874*ին Ընկերութեան Վարչութեան անդամ կ՚ընտրուին*.

| | |
|---|---|
| *Յակոբ Ահարոնեան* | *Ա. Ատենապետ* |
| *Գալուստ Նորհատեան* | *Բ. Ատենապետ* |
| *Գրիգոր Օտապաշեան* | *Գ. Ատենապետ* |
| *Մարգար Ալիքսանեան* | *Գանձապետ* |
| *Միհրան Տէմիրճեան* | *Օգնակ. Գանձապետ* |
| *Սեդրակ Ղապլաղեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Մ. Պետրոս Եաղուպեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Յակոբ Թաշճեան* | *Համարակալ* |
| *Պետրոս Բրուտեան* | |
| *Խաչիկ Փոեան* | |
| *Սարգիս Պէյլիեան* | |
| *Գրիգոր Ֆորթալլը* | |
| *Մարտիրոս Տիւմանեան* | |
| *Թորոս Ստեփանեան* | |
| *Գալուստ Գասպարեան* | |
| *Գրիգոր Սալարիմ* | |
| *Օհան Ժամկոչեան* | |
| *Տրդատ Ղալայճեան* | |
| *Մ. Պօղոս Սափրիչ* | |
| *Ասատուր Խթիկեան* | |
| *Մ. Անանիա Քէօրօղլանեան* | |

(Հայրենիք, 1874 *Թ*. 174):

1875ին Պոլսոյ Սենեքերիմեան Ընկերութեան Գործադիր Ժողովի Վարչութիւնը կը կազմեն.

Գրիգոր Օտապաշեան — Ատենապետ
Նիկողոս Խորիկեան — Ատենադպիր

Ասոնք 1875 Նոյ. 12ին նամակ մը ուղղելով Պոլսոյ Հայրենիքին եւ ներփակելով Ընկերութեան կանոնագրութիւնը՝ կը գրեն. «Մայրաքաղաքիս պանդուխտ Սեբաստացիք ... 1871 Սեպտ. 10ին, 1852ին կազմեալ եւ մի քանի տարի առաջ ընդհատեալ Սենեքերիմեան Ընկերութիւնը վերակազմեցին... Ընկերութիւնը իր վերակազմութենէն մինչեւ ցայսօր իւր հնգամեայ աշխատութեան արդեամբը յաջողեցաւ Սեբաստիոյ մէջ ազգային պանդոկ մ'ալ կառուցանելու մտօք բաւական ընդարձակ գետին մը գնել, բայց որովհետեւ իւր ձեռնարկը պսակելու համար մեծամեծ գումարներու պէտք ունի եւ հետեւաբար լոկ բաժանորդագրութեամբ ի գլուխ ելլելիք մի գործ չէ, Ընկերութիւնը որոշեց մասնաւոր հանգանակութեամբ մը ուսումնասէր պատ. ազգայնոց ձեռնտուութեանը դիմել, որոյ համար կանխաւ պէտք եղած նամակներն ու տոմսակները պատրաստ են...» (Հայրենիք, 1875 Թ. 268):

Հայրենիք Ընկերութեան կանոնագրութիւնը կը հրատարակէ անկէ քիչ վերջ, իր 271 Թիւին մէջ: Այդ Կանոնագրութիւնը

*ունի 10 գլուխ եւ 30 Յօդուած: Իր վերնագիրն է.*

Կանոնագրութիւն
Սենեքերիմեան Ընկերութեան Սեբաստիոյ
Հաստատեալ ի 1852 եւ վերակազմեալ
1871 Սեպտեմբեր 10
ի Կոստանդնուպօլիս

*Այս* կանոնագրութիւնը Պոլսոյ *մէջ* 1851-1852*ին հիմնուած «Սենեքերիմեան Ընկերութեան» կանոնագրութիւնն է, փոփոխութեան ենթարկուած* 1871*ին՝ Ընկերութեան* վերակազմութեան *առթիւ:*

*Անկարելի ըլլալով տալ հոս ամբողջը՝ կը ներկայացնենք քանի մը կարեւոր Յօդուածներ.*

Նպատակ.— Ընկերութեանս նպատակն է Սեբաստիոյ մէջ գտնուած ազգ. երկսեռ վարժարանները բարեկարգել, խորհրդակցութեամբ տեղւոյն ազգ. վարիչ ժողովոց եւ բարոյապէս ձեռնտու լինել Սեբաստիոյ վիճակին մէջ գտնուած գիւղերուն վարժարանաց (*Յօդ.* 1):

*Ընկերութիւնս իւր նպատակին հասնելու համար հաւաքած դրամներով անշարժ կալուածքներ պատրաստելով՝ վարժարանաց ապագան ապահովելու պիտի ջանայ* (*Յօդ.* 2):

Կազմութիւն.— *Ընկերութիւնս կը կազմեն այն ամեն անհատները, որոնք Ընկե-*

*րութեան յատկացած ամսական բաժինները կը վճարեն, որ 40 փարայ է։ Ընկերք ազատ են մէկ բաժինէն աւելի ստորագրուիլ* (*Յօդ*. 3)։

Ընդհանուր ժողով․— *Միայն Սեբաստացի բաժանորդներ կը կազմեն Ընկերութեանս Ընդհ. ժողովը...* (*Յօդ*. 5)։ *Ընդհ. ժողովը իր մէջէն գաղտնի քուէարկութեամբ կ'ընտրէ իւր* Ատենապետն *եւ* Ատենադպիրը, *որոնք* կրնան իրենց պաշտօնն անընդհատ շարունակել (*Յօդ*. 6)։

Գործադիր ժողովը․— *Ընդհ. ժողովէն ընտրուած 7 անձինք խորհուրդ կազմելով՝ բաժանորդներէն 14 հոգի եւս կ'ընտրեն իրենց հաւասար անդամակցութեան համար, որով* Գործադիր ժողովոյ անդամոց *թիւը կ'ըլլայ* 21 (*Յօդ*. 11)։

Յաւելուած․— *Ընկերութիւնս* Սեբաստիոյ մէջ ճիւղ մը պիտի ունենայ, սոյն համահաւասար կանոններով, *որոց միջոցաւ Գործադիր ժողովը եւ Տեսուչ Խորհուրդները մէկ մէկու հետ առնչական յարաբերութիւն պիտի ունենան* (*Յօդ*. 25) (Հայրենիք Կ. Պ. 1875 Թ. 271–2, *Սեպտ*. 4)։

*Այս վերջին Յօդուածէն յայտնի կ'ըլլայ որ* 1. *Ընկերութիւնը* նախ Պոլիս հիմնուած է. 2. Պոլսոյ մէջ *հիմնուած* «Սենեքերիմեան Ընկերութիւն»*ը սկզբնաբար* ունեցած է *իր* կանոնագիրը, *որ, որքան կ'երեւայ, հոս* — 1875*ին* — առաջին անգամ հրատարակուած

է, *անշուշտ որոշ փոփոխութիւններով, բայց էական կէտերու մէջ, կ'ենթադրենք, նոյն եւ անփոփոխ մնացած ըլլալով: Անկէ՛ յայտնի կ'ըլլայ թէ այս կանոնադրութիւնը* սկզբնական է, *զի մասնաւոր Յօդուած մ'ալ աւելցուցած են թէ Ընկերութիւնը* «Սեբաստիոյ մէջ ճիւղ մը պիտի ունենայ, նոյն համահաւասար կանոններով»: *Ըսել է թէ* նախ Պոլսոյ մէջ հիմնուած *Սենեքերիմեան Ընկերութիւնը պիտի ջանար Սեբաստիա քաղաքին մէջ ալ* կազմել ճիւղ մը. *թէ* երկուքին կանոնները ալ միեւնոյնը պիտի ըլլային: *Եթէ այս կանոնները սկզբնական, այսինքն՝* 1851*ի* ատեններէն *չըլլային՝ այլ* 1870*ական թուականներուն բոլորովին նոր յօրինուած՝ այն ատեն այն* «Յաւելուած» *Յօդուածը գոյութիւն պիտի չունենար, զի* 1870*ին ամէնուն ծանօթ էր թէ* Սեբաստիա քաղաքին *մէջ ալ հիմնուած եւ արդէն շատոնց գոյութիւն ունէր* «Սենեքերիմեան Ընկերութիւն» *մը*:

*Այժմ շարունակենք նկատել Ընկերութեան կեանքն ու գործը* 1875*էն վերջն ալ*:

*Ահա «Սենեքերիմեան Ընկերութիւն»ը* 1880*ին. գրողն է* Սեբաստացի գրագէտ մը՝ Նազարէթ Յ. Իսթանպօլլեանց. «*Սենեքերիմեան Ընկերութիւն* հաստատեալ 1851 թուականին... *անդրանիկ ազգ. մի Ընկերութիւն է քաղաքիս մէջ... Սա կրնամ համարիլ Սեբաստիոյ բարոյական հորիզոնին վրայ մի լուսացնցող այգալոյս ... Ընկերութեանս*

Տնօրէնութեան ներքեւ կը գտնուին քաղաքիս բոլոր ազգ. երկսեռ վարժարանները, որ տասներեքի կը հասնին, որոց նիւթական եւ դրամական պէտքերը կը մատակարարէ երկու պանդոկաց վարձէն, նուէրներէ, հանգանակութենէ եւ բաժանորդագրութենէ: Ընկերութիւնս երկու ճիւղի բաժնուած է. մի ճիւղը Կ. Պոլսոյ մէջ կը գտնուի եւ միւսը քաղաքիս մէջ...» (Մասիս, 1880 Թ. 2560):

Ընկերութեան Պոլսոյ Վարչութիւնը 1882 Փետր. 21ին Ընդհ. Ժողով գումարելով Նոր Գործ. Ժողով կ՚ընտրէ:

Գրիգոր Օտապաշեան — Ա. Ատենապետ
Նիկողոս Խորիկեան — Ա. Ատենադպիր
Մինաս Տէր Պապեան — Բ. Ատենապետ
Ոսկան Խորիկեան — Բ. Ատենադպիր
Ահարոն Մարգարեան — Գանձապետ
Մխիթար Գըրմզեան
Խաչատուր Անտոնեան
Մեսրովպ Պալըճեան
Մ. Օհան Ալլոնեան
Մ. Անանիա Քէօրօղլանեան
Զատիկ Քէօսէյեան
Սարգիս Պէյլիեան

(Փունջ, Կ. Պ. 1882 Թ. 1670, Մայիս 8):

Ընկերութիւնը իր գոյութիւնը պահած էր տակաւին 1888ին թէ՛ Պոլսոյ եւ թէ Սեբաստիոյ մէջ (Հայրենիք, 1888, էջ 372): Սեբաստիոյ մէջ կը կոչուէր այս ատենները՝

«Դպրոցական կպլուածոց Հոգաբարձութիւն», *զի արգիլուած էր տիրող քաղաք. իշխանութենէն «Ընկերութիւն», «Միութիւն» եւ այլ բառերու գործածութիւնը: Այս ձեւով Ընկերութիւնը կը դիմանայ դեռ եւ օգտակար կ'ըլլայ կրթական գործին: Կը դադրի իբր* 1895*ին:* Ժամանակ (1914 *Թ.* 1782) *կ'ըսէ որ «քաղաքական բերումով» լուծուած չէր:*

1913*ի գարնան* կը վերակազմուի Սեբաստիոյ քաղաքի *«Սենեքերիմեան»ը: Սեբաստիոյ մէջ լոյս տեսնող Թերթը այդ ուրախ լուրը կու տայ* 1913 *Մայիս* 4*ին գրելով. «Ուրախութեամբ կը լսենք թէ* վաղուց ի վեր կազմալուծուած Կրթասիրաց Սենեքերիմեան Ընկերութիւնը վերակազմուած է: *Ընկերութեան* նպատակն է աշխատիլ ազգ. վարժարաններու յառաջդիմութեան» (Հողդար, *Սեբաստիա* 1913 *Թ.* 39 *Մայիս* 4): *Հիմնումը տեղի ունեցած է* 1913 Մարտին՝ 30–50 *հոգիի խորհրդակցութեամբ որոնցմէ* 21 *հոգիի անունները հրատարակած է* Ալիս (*Նիւ Եորք* 1929 *Թ.* 6, *էջ* 8): *Նորակազմ Ընկերութիւնը կ'ունենայ* Նոր Կանոնագիր *մը — մեզի անծանօթ — զոր Քաղաք. Ժողովը կը վաւերացնէ* (Հողդար, 1913 *Թ.* 40):

*Ընկերութեան անդրանիկ Գործադիր Ժողովը կը կազմեն.*

*Միքայէլ Ֆրէնկիւլեան* — *Ատենապետ*
*Յակոբ Զառացեան* — *Ատենադպիր*

*Մկրտիչ Շահինեան* *Գանձապահ*
*Միհրան Երկանեան*
*Սերովբէ Տէրպապեան*
*Ա. Լերդողեան*

*Ամսական բաժնեգինն* (*էր 2 ղրշ.*, 5–50 *ալ տուրք.* 5–25 *ոսկի նուիրողը* պատուոյ անդամ, 50–100 *տուողը*՝ բարերար անդամ (*Տե՛ս* Ալիս, *Նիւ Եորք* 1929 *Թ.* 6, *էջ* 8–9: — Հողդար, 1913 *Թ.* 40):

1915*ի* *արհաւիրքի օրերուն*, 300,000 *Սեբաստացիներու հետ «Սենեքերիմեան»ի անդամներն ալ կը նահատակուին*:

1918 *Դեկտ.* 26*ին* Պոլսոյ *մէջ գումարուած Համասեբաստացիներու* 250 *անդամներով*, վերջին անգամ մըն ալ, կը վերակազմուի *«Սենեքերիմեան»ը կոչուելով* «Միութիւն»:

*Ահա* Մայր Դիւանը.

*Տոքթ. Գ. Դաւիթեան* *Ատենապետ*
*Լեւոն Գեւոնեան* *Ատենադպիր*

Գործադիր ժողովը

*Արմենակ Խորիկեան* *Ատենապետ*
*Ղեւոնդ Տէր Աբրահամեան* *Ատենադպիր*
*Յովհաննէս Զատրճեան*
*Տիգրան Մեսիյեան*
*Տիկ. Արաքսի Վարուժան*
*Վարդագդատ Ակինեան*
*Յակոբ Պչադճեան*
*Ռուբէն Գոչիկեան*

Թորոս Շիրինեան
Յարութիւն Աջպահեան
(Տեղեկագիր Հայրենակց. Միութեանց. Կ.Պ. 1921, էջ 3 եւ 14):

Իր առաջին գործը կ'ըլլայ Սեբաստացիներու վիճակագիրը կազմել եւ հրատարակել (Ժամանակ, 1919 Թ. 3527):

Այս վերջին անգամ ալ կազմուած է Կանոնագիր մը, որուն Բ. Յօդուածը կ'ըսէ.

1. Միութեանս նպատակն է՝ Սեբաստիոյ քաղաքի եւ գիւղերու ազգային, բարեսիրական, կրթական գործերու վերակազմութեան եւ բարգաւաճման նպաստել:

2. Վերջին եղեռնին հետեւանքով ցիրուցան եղած հայրենակիցներ փնտռել, գտնել ու միացնել, նիւթապէս եւ բարոյապէս օժանդակել անոնց եւ ստուգել անոնց կորուստները:

3. Անգործ մնացած հայրենակիցներու ըստ կարելւոյն գործ գտնել (Տե՛ս Ալիս, Նիւ Եորք 1929, էջ 35–6):

Պոլսոյ «Սենեքերիմեան»ը կը հրատարակէ Սեբաստիա անունով Շաբաթաթերթիկ մը՝ վիճակագրական բովանդակութեամբ: (Ժամանակ, 1920 Թ. 3769): Կը տեւէ մինչեւ 1922:

Ընկերութիւնը 1919 Օգոստոսին մասնաճիւղ մը կ'ունենայ Սեբաստիա քաղաքին մէջ, որուն Դիւանն է.

| | |
|---|---|
| Փրոֆ. Սողիկեան | Ատենապետ |
| Պէկեան | Ատենադպիր |

Իսկ Գործ. ժողովը՝

| | |
|---|---|
| Տոքթ. Կոզմոս Մեսխյեան | Ատենապետ |
| Լեւոն Պաստուեան | Ատենադպիր |
| Վահան վրդ. Գոչունեան | |
| Յ. Տէյիրմէնճեան | |
| Ա. Տումանեան | |
| Մ. Շահինեան | |
| Զ. Համբարձումեան | |
| Լ. Մեծատուրեան | |
| Խ. Խանդէտեան | |
| Լ. Բրուտեան | |

1919ին կը կազմուին ճիւղեր՝ Պլովդիւ (Բուլղարիա) Ոսկան Նալչաճեանի նախաձեռնութեամբ, որ կը հանգանակէ եւ Պոլիս կը ղրկէ 10,500 ֆրանք (Ժամանակ, 1919 Թ. 3431, 3494), Պոլսոյ մէջ կը կազմուի «Տիկնանց Օժանդակ Մարմին» մը (Ժամանակ, 1919 Թ.3454), եւ այլն:

Սենեքերիմեանը Պոլսոյ եւ Սեբաստիոյ մէջ կը գործէ մինչեւ 1922ի վերջը եւ վերջնականապէս կը դադրի Թուրքիոյ մէջ, մօտ 70 տարուան գոյութենէ եւ գործունէութենէ վերջ: Իր գործը շարունակողը կ'ըլլայ Ամերիկայի մէջ 1919ին հիմնուած «Սեբաստիոյ Վերաշինաց Միութիւնը»: 1924 Յուլիս 7ին Մարսէյլի (Ֆրանսա) մէջ փորձ մը կ'ըլլայ վերակազմելու «Սենեքերիմեան Ընկե-

*ութիւն»ը, բայց երկար կեանք չունենար, որչափ գիտենք* (Ալիս, 1929 *Թ*. 1 *էջ* 6–8)։

## 2. Ս. ՆՇԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1851)

*Սեբաստիայէն կը գրեն Պոլսոյ* Հայաստան *Թերթին* 1851 *Ապրիլ–Մայիսին՝ «Ի բազում ժամանակաց հետէ որ բարձեալ էր պատճառ ծաղկելոյ ուսման ի Սեբաստիա, այժմ միաբան սուրբ Նշանի վանից սեբաստացի* Բարսեղ աւագ սարկաւագն *ըստ իւրում բարեհամբաւ ջանասիրութեան կարգեաց նոր ի նորոյ* Ուսումնարան *մի ի վանս սրբոյ Նշանի օգնականութեամբ քանի ընկերաց ըստ Թոյլտուութեան գերապատիւ Առաջնորդի տեղւոյն։ Այժմէն աւարտեալ* շինութիւն Ուսումնարանին, *յորում պարտ է լինել* երկոտասան սրամիտ տղայք, *որոց* հաց եւ հանդերձն հոգալոց է Ընկերութիւնն, զոր սահմանեալ են յատուկ վասն նորա ընդ հոգաբարձութեամբ յիշեալ սարկաւագի» (Հայաստան, *Կ. Պ.* 1851 *Թ*. 66, *Մայիս* 21)։

*Ընկերութեանս* անունը *յիշուած չէ, մենք գրինք՝ այսպէս հաւանական համարելով, ինչպէս կան* «Անապատի (*վանք*) *Ընկերութիւն*», «Խոնըրկտուք *Ընկերութիւն*»։

## 3. ՈՂՈՐՄԱԾԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ — ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1857)

*Ընկերութեանս յիշատակութիւնը ՚կըլլայ 1857ին «Սենեքերիմեան Ընկերութեան»*

վերակազմութեան *առթիւ որ տեղի ունեցած է* 1857 *Հոկտեմբեր–Նոյեմբերին։ Չի մատնանշուիր* հիմնումի թուական մը, *բայց կ՚ըսուի թէ «Ողորմածաց»ի կազմութիւնը Սեբաստիոյ Առաջնորդ Կարապետ Արքեպ. Գալֆայեանի գործն եղած է։ Սեբաստիայէն եղած թղթակցութեան մէջ կ՚ըսուի. «...Ընկերաց օգնութեան գովելի եւ ազնիւ ջանքեր ալ ունի (Սեբաստիան) ... որոյ գործադրութիւնը եւս Առաջնորդ Սրբազան Հայրերնիս* ուրիշ ժողովոյ մը յանձնած է» Ողորմածաց Ընկերութիւն» *անուն* եդեալ *եւ անոր նպատակն է* տնանկ չքաւորաց գոնէ տարին երկու անգամ, *այսինքն* Զատկին եւ Ծննդեան, դրամական նպաստ ընծեռել, անտէրունչ բանտարկելոց կերակուր պատրաստել եւ աղքատ հիւանդաց բժիշկ խրկել, *թէ՛ բժիշկին եւ թէ դեղօրէից գիները վճարել»* (Մասիս, 1858 Թ. 313, *Յունուար* 23)։

*Հիմնումը եղած է* 1857*ին*։ Առանց Ընկերութեանս անունը տալու՝ *Պօղոս Վ. Նաթանեան* 1875*ին կը յիշէ՝ գրելով. «Ընկերութիւն մ՚ալ կայ (Սեբաստիայ), ասոր ալ նպատակն է, ընդ. իշխանութեամբ Մեծ. Թաղականաց*, Զատկի եւ Ծնունդի օրերը աղքատաց դրամ բաշխել *ըստ արժանւոյն*» (*Պօղոս Վ. Նաթանեան, Տեղեկագիր ընդհանուր վիճակին Սեբաստիոյ*, Կ. Պ. 1877, էջ 115)։

1878*ին Ընկերութեանս անունը ծանօթ է* «Աղքատասիրաց *Ընկերութիւն տիտղոսով*։

Չենք գիտեր թէ ե՞րբ եւ ուրո՞ւն կողմէ փոխուած է Ընկերութեանս անունը: Սրուանձտեանց 1878ին Սեբաստիա եղած ատեն տեսած եւ լսած է հոն միայն «Աղքատասիրաց» անունը՝ իրեն անծանօթ ըլլալով այդ Ընկերութեան հին յորջորջումը — «Ողորմածաց» Ընկերութիւն: Ահա Սրուանձտեանցի տողերը. «Աղքատասիրաց Ընկերութիւն» իբր 18 տարի հետէ կազմեալ. ունի 2 խանութ, որոնցմէ կ'առնու տարին 2000 ղրշ. եւ ժողովուրդէն կը հանգանակէ 15,000 ղրշ.ի չափ, ամյամէ կը մատակարարէ ի պէտս աղքատաց» (Գարեգին Վ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար Կ. Պ. 1879, Ա. էջ 150):

Նախորդ դարու վերջերէն եւ կամ դարուս սկիզբէն սկսած Ընկերութիւնը երրորդ անուանափոխութեան մ'ալ կ'ենթարկուի կոչուելով «Աղքատախնամ Ընկերութիւն»: Այս փոփոխութեան թուականը անծանօթ է մեզ:

1906ին կը յիշուի Սեբաստիոյ «Աղքատախնամ»ը, որ «շատ մը աղքատներու պարէնը կը հայթայթէ» (Բիւզանդիոն, Կ. Պ. 1906 Թ. 2976):

1909 Յունուար 1ին Սեբաստիոյ «Աղքատախնամ Ընկերութիւնը իր թարմ ու կայտառ երիտասարդական կորովին մէջ է — հակառակ աւելի քան 50 ամեակ մ'ունենալուն իր ետեւը — ունի Մայր Դիւան, Քննիչ Մասնախումբ եւ Գործադիր Ժողով: Կը յանձանձէ 300 տունէ աւելի աղքատներ: Քաղաքին

*մէջ կը վայելէ մեծ համակրանք եւ վստահութիւն ։ Կաղանդի առթիւ 600 չքաւորներու բաշխած է* ալիւր, փայտ, ածուխ, *իսկ Ծննդի առթիւ նաեւ* դրամական նպաստ (Անդրանիկ, *Սերաստիա* 1909 Թ. Յունուար 24) ։ — *Կը տեւէ մինչեւ* 1915 ։

1918*ին կը վերակազմուի* ։

1919*ին Ազգային Կառավարութիւնը կը հրատարակէ* 1918–1919*ի գործունէութեան Հաշուետուութիւն մը* ։

*Ընդունուած նպաստներու գումարն է* 1,270,000 *դրշ.*, *բաժնեգիններէ*՝ 35,000, *նուէրներէ*՝ 29,570, *կալուածական հասոյթ*՝ 22,625, *եւ այլն* ։ *Վճարուած նպաստներն են.* 41,195 *դրշ.*, *Պատսպարանի*՝ 437,334, *Որբանոցի*՝ 408,626, *շրջակայ գիւղերը ղրկուած նպաստ*՝ 169,000, *պատրաստ դրամ*՝ 184,203 *ղուրուշ* (Ժամանակ, 1919 Թ. 3564) ։

4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Ընկերութեանս հիմնումի մասին տրուած տեղեկութիւնը* 1862 *Փետր.* 17*էն է*, *գրուած Պոլսէն՝ Տփղիսի* «Կռունկ Հայոց Աշխարհի» *թերթին*, *ուրկէ կարելի է առանց տարակուսի բսել թէ հիմնումը եղած ըլլալու է* 1861*ին* ։ *Ահա այդ տեղեկատուութիւնը*. «*Բերկրութեամբ կը լսենք թէ* Սեբաստիոյ *մէջ ուսումնասէր Հայ երիտասարդներ* Ընթերցասիրաց Ընկերութիւն *մը կազմելով*՝ Ընթերցարան *մը բացեր են* օգտակար գրեանք

եւ լրագիրներ կարդալու համար» (Կռունկ Հայոց Աշխարհի, *Տփղիս* 1862, *էջ* 522, *Ապրիլ*)։ — *Ընկերութիւնը երկար կեանք չէ ունեցած*։ 1867*էն* բաւական առաջ դադրած *ըլլալու է որ այդ տարին* նոյնանուն *բոլորովին* նոր *Ընկերութիւն մը կը հիմնուի Սեբաստիոյ մէջ, ինչպէս պիտի տեսնենք*։ *Ընկերութիւնը* 1862*էն վերջ չի յիշուիր*։

5. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Առաջին* «Անձնուէր Ընկերութիւն»*ը Պոլսոյ մէջ հիմնուած է* 1860*ին, որուն աշակերտած են. շատ մը Պոլսաբնակ* Սեբաստացիներ։ *Այս* Սեբաստացիներէն *ոմանք իրենց հայրենիքը վերադառնալով*՝ 1865 *Փետր*.*ին կը կազմեն Պոլսոյ* «*Անձնուէր*»*ին մէկ ճիւղը, որ Հայաստանի եւ գաւառներու մէջ կազմուածներուն* առաջինը *կ'ըլլայ*։ *Սեբաստիոյ* «*Անձնուէր Ընկերութիւն*»*ը կազմուելէ վերջ*՝ *սակայն նոյն օրը տեղւոյն քահանաներէն մին վախնալով*՝ *հանդէսը մասնաւոր փայլ չ'ունենար*։ *Քահանային Թաղումէն վերջ*՝ *նոյն օրը երեք քահանայի, Ուսումնական Ժողովի անդամներէն երկուքի եւ* 40 *հանդիսականներու ներկայութեան* «*Անձնուէր Ընկերութիւն*»*ը կը բանայ իր* կիրակնօրեայ ձողովրդական դպրոցը։ *Ընկերութեան* 2 *անդամներ արտասանութիւններ կ'ընեն*, Տէր Գրիգոր *կ'ատենաբանէ*։ *Ընկերութեան նպատակն է Կիրակի օրերը* ձրի դաստիարակութիւն

սարքել մեծերու համար, *հոգալով նաեւ գիրք եւ գրենական պիտոյքներ: Փետր. 21ի օրը բացուած կիրակնօրեայ դպրոցին աշակերտ կը գրուին 51 հոգի, որոնցմէ ոմանք կարդալու եւ ուրիշներ քերականութեան դաս կ'առնեն:*

*Ընկերութեան առաջին վարչական ժողովի անդամներն են.*

*Պօղոս Խաչատուրեան*
*Գաբրիէլ Տ. Խաչատուրեան*
*Յակոբ Համբարձումեան*
*Մովսէս Մ. Մուրատեան*
(Ժամանակ, *Կ. Պ.* 1865 *Թ.* 59, *էջ* 50):

*Ընկերութիւնս կը յիշուի նաեւ Պոլսոյ* Վարագայի Հավատիս*էն* (*Կ. Պ.* 1865 *Թ.* 141):

*Պոլսոյ «Անձնուէր»ին հիմնադիր* Քրիստոստուր Ղազարոսեան 1867*ի Զատկին Սեբաստիա գտնուելով՝ մասնաւոր զարկ կուտայ տեղւոյն «Անձնուէր Ընկերութեան»* կի*րակնօրեայ ձրի դասընթացքին: Կիրակիները ինքը ներկայ ըլլալով՝* 2–3 *ժամ անընդհատ դասախօսութիւն կ'ընէ ու կը ճառէ: Թղթակիցը կը գրէ որ* «Խուռն բազմութիւն հոն կը դիզուին մտիկ ընելու այն յորդորական խրատները... *Անձնուէր Ընկերութեան համար դասագրոց եւ աշխարհագրական ատլասներու մեծ պէտք կայ ... կը խնդրենք ամէն անոնցմէ, որ իրենց սրտին մէջ ազգային յառաջ-*

դիմութեան փափաքը ունին, բարեհաճին օգնութիւն ընել այս օգտակար Ընկերութեան» (Ժամանակ, 1867 Թ. 117, էջ 103)։

Նամակագիր մը մանրամանելով՝ կը պատմէ թէ «Անձնուէր Ընկերութեան Կիրակի աւուր վարժարանի դասերը խիստ յաջող կերպիւ կ'երթան շնորհիւ Քրիստոստուր աղայի, որ ամէն Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ անընդհատ դասախօսութեան կը պարապի, քերականութիւն, տրամաբանութիւն եւ 3–4 ժամ ալ ազգային դաստիարակութեան եւ յառաջադիմութեան, սիրոյ եւ միաբանութեան վրայ յորդոր եւ խրատ կը խօսի 3–4 հարիւր ունկնդրաց» (Ժամանակ, 1867 Թ. 118, էջ 111)։—1868ին 454 դրշ.ի նուիրատուութիւն կ'ընեն, որով կը գնուին երկրագունտ, քերականութիւն, քրիստոնէական, եւ այլն (Փունջ, Կ. Պ. 1868 Թ. 186)։

Ընկերութիւնը իր դասախօսութեանց օրերը կը շատցնէ պահանջին համեմատ։ 1868ի վերջը կը գրեն Սեբաստիայէն. «Անձնուէր Ընկերութիւնը բաց ի Կիրակի աւուր դասախօսութիւններէն՝ Չորեքշաբթի եւ Շաբաթ իրիկունները վարժարան կը ժողովին դասախօսութիւնները շարունակելու» (Ժամանակ, 1868, էջ 11)։

Կը թուի թէ 1868ին Ընկերութիւնը կըրցած է ունենալ նոր Թանգարան եւ Գրադարան արժէքաւոր հին Ձեռագիրներով։ Զայդ կը հաստատէ Նաթանեան (Տեղեկագիր.

անդ, էջ 89)։ Կը կոչուէր նաեւ «Անձնուէր Սանուց Ընկերութիւն» եւ 1868ին իր Վարչութիւնը կը կազմէին.

Վարդան Յ. Արգարեանց Ատենապետ
Յովհաննէս Մ. Յ. Շամեանց Ատենադպիր
Ճանօ Պեկեան Վերատեսուչ

(Ժամանակ, 1868 Թ.141, էջ 82)։

1868ին Պոլսոյ Մասիսն կը գրեն Սեբաստիայէն. «Անձնուէր Ընկերութեան ... Թանգարաններ գրեթէ դատարկացաւ. Հազար զրուցէն աւելի արժէքով գիրք ղրկեցինք մինակ Տարէնտէ. նմանապէս Զառա, Թուզլասար, Կովտուն, Ղազիմաղարա, Փաշա գիւղ, Պինկէօլ, Տիվրիկ եւ այլն տեղեր... Սղերդ հետզհետէ գիրք կը կոչէ...» (Մասիս Փոքր, 1869 Թ. 317)։

Սեբաստիոյ «Անձնուէր Ընկերութեան» մեծ բարերար մ'եղած է Գէորգ Զօպանեան, որ «պարտականութիւն համարած է իրեն՝ Ազգին Համարումը Հրաւիրել Ընկերութեան վրայ եւ նորա համար սուակ հաւաքելով դասագրքեր ղրկել... մնտուկ մը գրեանք ղրկած է Ընկերութեանս, ասկէ զատ... ամէն չարաթ Թղթատարով հայերէն եւ գաղիերէն կը ղրկէ եւ մասնաւոր նամակներով ալ Ընկերութեանս գործակալները կը յուսադրէ» (Օրագիր, Կ. Պ. 1870 Թ. 204)։

«Անձնուէր»ը իր գոյութիւնը բաւական երկար ժամանակ պահած է։ 1875ին կը յիշէ

Նաթանեան (Տեղեկագիր, էջ 114), 1878ին Սրուանձտեանց կը գտնէ Ընկերութեանց շարքին մէջ, բայց կ'ըսէ «յառաջ համբաւ եւ արդիւնք ունեցեր է» (Թորոս Աղբար, Անդ, էջ 146)։ 1880ին Իսթամպոլլեանց սխալմամբ 1866ին կը դնէ ծագումը Ընկերութեանս (Մասիս, 1880 Թ. 2560)։ 1888ին տակաւին մարած չէ իր մէջ կեանքի աւիշը ու կը գործէ եւ ունի «Թանգարան, Կիրակի օրեր արհեստաւորաց դասուն դասախօսութիւններ կը լինի» (Հայրենիք, 1888, էջ 372)։ Դադրած ըլլալու է 1895ին։

### 6. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

Կը յիշուի 1868 Յունուարին, երբ արդէն դադրած ու քայքայուած է (Ժամանակ, 1868, էջ 11)։

### 7. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Սեբաստիոյ Ս. Սարգիս Թաղի Ներսիսեան վարժարանի իբրեւ պաշտպան՝ 1870ի սկիզբը կը յիշուի «Ներսիսեան Ընկերութիւն» մը (Փունջ, 1870 Թ. 549, Ապրիլ), որուն ծագումի մասին չենք գտներ որեւէ լուսաբանութիւն։ Ընկերութիւնը 1870 Դեկտեմբերին 1220 ղրշ. կը տրամադրէ քաղաքի վարժարաններուն յետնեալ թոշակներու վճարումին համար (Տե՛ս Փունջ, Կ. Պ. 1870 Թ.650)։ Ընկերութիւնս անծանօթ է Նաթա-

նեանի, Սրուանձտեանցի, Իսթամպօլլեանցի Տօքթ Փաչայեանի:

Ինչպէս ըսինք՝ Ընկերութիւնս պաշտպանն է «Ներսիսեան» վարժարանի: Այդ դպրոցի ուսուցիչնէրը տարի մը անվճար դաս տալէ վերջ՝ հեռացած են, նիւթական չգոյութեան պատճառաւ: Թէ՛ ուսուցիչները եւ թէ «Ներսիսեան Ընկերութիւն»ը խնդրած են քաղաքի «Սենեքերիմեան Ընկերութենէն», որ ազգային կալուածներու եւ պանդոկին եկամուտներէն Ներսիսեան դըպրոցին ալ բաժին հանէ եւ ուսուցիչները վճարուին: Սակայն միջոցները «միայն մէկ դպրոցի կ’ընծայեն», մինչդեռ «քաղաքիս բոլոր դպրոցները հաւասար իրաւունք ունին», կը գրեն Ներսիսեան դպրոցի աշակերտները «բազմաթիւ ստորագրութեամբ» Պոլսոյ Պատրիարքարանին բողոքելով եւ ըսելով թէ փողոցը մնացած ենք (Փունջ, 1870 թ. 549):

«Ներսիսեան Ընկերութեան» հիմնումի մասին մեր կարծիքն հետեւեալն է. 1867ին կը ձեռնարկուի Ս. Սարգիսի Թաղի վարժարանին շէնքին շինութեան (Փունջ, 1867 թ. 166): Նոյն տարի — 1867 — առաջին անգամ ըլլալով՝ կը յիշուի նոյն վարժարանի «Ներսիսեան» կոչուած ըլլալը (Ծիածան, Կ. Պ. 1867 թ. 44): Արդ, տրամաբանական կը գտնենք եզրակացնելու որ 1867ի շէնքի շինութեան առթիւ կազմուած ըլլալու է «Ներ–

սխեան Ընկերութիւն»ը՝ նիւթապէս եւ բարոյապէս սատարելու համար թէ՛ շէնքի շինութեան եւ թէ՛ վարժարանի յարատեւութեան:

## 8· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

1867 Դեկտ. 28ին Սեբաստիայէն Պոլսոյ Ժամանակին գրուած նամակ մը կը հաղորդէ. «Ընթերցասիրաց Ընկերութիւնը, որ նոր կազմուած է, 150 բաժանորդէն 325 բաժանորդ ունեցաւ երկու շաբթուան մէջ եւ հետզհետէ աւելնալու յոյս կայ, վասն զի Սեբաստիոյ հասարակութիւնը մեծ համակրութիւն ցոյց կու տայ ուսման եւ գիտութեան եւ մանաւանդ օրագիր եւ գիրք կարդալու, կարդացողներէն մտիկ ընելու եւ տեղեկութիւն առնելու... Գրեթէ ամէն գիշեր Ընթերցարանը մեծ բազմութիւն կը լեցուի, մանաւանդ երբ փոսթան կու գայ եւ Պոլսէն ազգային թերթերը կը հասնին: 150-200 ունկնդիրներ ուշադրութեամբ եւ առանց չփոթութիւն մը հանելու մտիկ կ'ընեն օրագիրները, որ կարդաւ անձ մը կը կարդայ եւ պէտք եղած տեղն ալ բացատրութիւն կու տայ: Ընթերցարանը բաւական ընդարձակ տեղ մ'է եւ տասնի չափ մոմէ կենֆէ կը վառի: Ազգային երգերն ալ մերթ ընդ մերթ կը հնչուին եւ բարեմիտ ժողովրդեան աշխոյժ ու եռանդ կ'արծարծեն» (Ժամանակ, 1868 Թ. 132, էջ 11):

*«Անձնուէր Ընկերութիւն»ը Թոյլցած ըլլալով՝ «Ընթերցասիրաց»ը անոր դերն ալ ստանձնած է յաջորդ տարիներուն: Սերաստիայէն կը գրեն. «Ընթերցասիրաց Ընկերութիւնը ի քաղաքիս, որ նպատակ ունի* կարդալ գրել սորվեցնել մեր արհեստաւորաց *եւս եւ ընթերցման ճաշակն ընդհանրացնել ի ժողովրդեան*, նոր ուղղութեամբ մը *սկսած է աշխատիլ իւր* անձնուիրութեան մէջ: *Կիւրակէ օրերին ... կրօնի դասուն հետ կա՛ւանդուի Թուաբանութիւն եւ Հայերէն, Տաճկերէն, գաղիերէն ... Ընկերութիւնը* 100*ի չափ* արհեստաւոր աշակերտներ ունի» (Արեւելք, Կ. Պ. 1889 *Թ*. 1834):

1889*էն վերջ յիշատակութիւն մը չենք գտներ: Հաւանօրէն մինչեւ* 1895 *տեւած է*:

9. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867–8)

*Մեզի ծանօթ է լոկ յիշատակութիւն մը անուան* (*Տե՛ս* Մասիս փոքր, Կ. Պ. 1868 *Թ*. 200):

10. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Պոլսոյ մէջ *հիմնուած է* 1868 *Մայիս* 12–*ին*: *Ունի իր* կանոնագրութիւնը, *բաղկացած* 13 *Յօդուածներէ եւ հրատարակուած Պոլսոյ* Օրագիր*ի մէջ*: *Կու տանք քանի մը Յօդուած*.

«*Ա*. Օժանդակ Ընկերութեան *նպատակը Սերաստիոյ* «Սենեքերիմեան Ընկերութեան»

*նպատակին* նիւթապէս օգնել պիտի ըլլայ, *այսինքն՝ Սեբաստիոյ քաղաքի* երկսեռ վարժարանաց նիւթական պիտոյից ապագան ապահովել :

*Բ. Ընկերութեան նպատակն է նաեւ Սեբաստիոյ քաղաքին մէջ* գիշերօթիկ վարժարանի մը հաստատութեանը ձեռնարկել *խորհրդակցութեամբ «Սենեքերիմեան»ի, երբ Ընկերութեանս նիւթական վիճակը այն աստիճանին հասնի, այսինքն՝ Սեբաստիոյ երկսեռ վարժարանաց օգնելէն աւելի ստակ ունենայ :*

*Գ. Ընկերութեանս բաժանորդագինը շաբաթը* 10 *փարայ է ...*

*Է. Ընկերութիւնս բաժանորդագիններէն զատ ունի նաեւ* գանձանակ *մը, որ Թէ՛ Պոլիս եւ շրջակաները պիտի շրջակայի* ...» (Օրագիր, *Կ. Պ.* 1868 *Թ.* 5: — *Տե՛ս նաեւ* Փունջ, 1868 *Թ.* 178, 184: — Մասիս, *Կ. Պ.* 1868 *Թ.* 855) :

*Իր առաջին Վարչութիւնը կը կազմեն.*

| | |
|---|---|
| *Մելքոն Կարապետ* | *Ատենապետ* |
| *Գրիգոր Օննիկեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Նիկողոս Պէնկլեան* | *Ատենադպիր* |
| *Յակոբ Գաբրիէլեան* | *Փոխ–Ատենադպիր* |
| *Յ. Գաբրիէլեան* | *Գանձապետ* |
| *Մանուկ Նազարեան* | *Հաւաքիչ* |
| *Յարութիւն Թօռունեան* | |
| *Գրիգոր Մանուկեան* | |

Գալուստ Մ. Խաչիկեան
Գրիգոր Զատիկեան
Պետրոս Գալուստեան
Յակոբ Թաշճեան
Յակոբ Եօրիկեան
Մանուկ Աղապապեան (Անդ.)։

Կ'երեւայ թէ Ընկերութիւնը կարճ ժամանակի մէջ կրցած է բաւարար նիւթական միջոցներ ձեռք բերել եւ արդէն գիշերօթիկ վարժարանի շինութեան անցնիլ։ Զի 1868 Սեպտեմբերին կը կարդանք Պոլսոյ Մանզումէի մէջ վանեցիի մը սա տողերը. «Ահա ընկեր Վանեցիս. Բաւական կը համարիմ այսչափ ատեն մեր Հայրենեաց դաստիարակութեանը մոռացութեան անկիւնը թաղուիլը. այո՛, բաւական է, վասն զի ... քաղաքք եւ գիւղաքաղաքք եւ փոքրագոյն գաւառք իւրեանց պէտք եղած յառաջադիմութեան ընթացքը ըստ կարի ձեռք առած... Անծանօթ չէ Սեբաստիոյ Բարենպատակ Ընկերութիւնը, որ ի սէր ազգին եւ ի պատիւ իւրեանց Հայրենեաց շքեղ եւ փառաւոր գիշերօթիկ դպրոց մը կառուցած են եւ ընդ այնմ բարեկարգեալ են ընտիր դպրութեամբ» (Մանզումէի Էֆքեար, Կ. Պ. 1868 Թ. 756)։

Ծանօթ չէ թէ ո՛րքան տեւած է Ընկերութիւնս։ 1868էն վերջ յիշատակութիւն չկայ իր մասին։

## 11· ԱՆԱՊԱՏԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–9)

1870 *Մայիս 26 Թուակիր նամակ մը Սեբաստիոյ* Անապատ վանքի *իրադարձութիւններու մասին գրելէ վերջ՝ իբր Յետ Գրութիւն կ՚աւելցնէ․ «Սեբաստիոյ* Անապատ վանքը Ընկերութիւն *մ՚ունի, որուն* անդամները են Պալեօզեան Մ․ Նշան եւ Գասպեան Գրիգոր եւ այլն: *Ասոնք յիշեալ վանքին վանահայր կարգեր են Ուլնեցի Դաւիթ վարդապետը»* (Մանզ․ Էֆքեար, 1870 Թ․ 587) : — *Ուրիշ տեղեկութիւն գտած չենք:*

Փունջ *կը տեղեկագրէ․* «Անապատու վանքին Ընկերութիւնը *կոչումն մը տալով ի պատիւ Դաւիթ վարդապետի՝ կը խնդրեն որ Անապատու վանքը մնայ․ կ՚ընդունուի այս խնդիրը՝ պայման դնելով որ վանքին մէջ փոքրիկ* տպարան եւ դպրոց մ՚ըլլայ: *Ամենայն սիրով կ՚ընդունին այս պայմանները: Հետեւեալ օրը ընկերութեամբ վանք կ՚երթան ... ժողով ու խորհուրդ կ՚ըլլայ: Ընկերութիւնը* 600 *ղրուշի չափ նպաստ մը կ՚ընէ եւ Դաւիթ վարդապետն ալ իր* 500 *ղուրուշ արժող ձին վանքին կ՚ընծայէ: Կը սկսին գործել... Գարուն կու գայ, Սեբաստիացիք կը սկսին վանքը գալ, նուագել, երգել ու պարել ... Դաւիթ Վ․ բողոք կը բառնայ եւ Ընկերութենէն կը պահանջէ որ արգիլուին․ սակայն Ընկերութիւնը չի գործադրեր՝ առարկելով թէ վանքին տուրքը կը պակսի եթէ ասոնք չըլլան: Հետեւաբար Դաւիթ Վ․*

*կը ստիպուի թօթափել իր ոտից փոշին»* (Փունջ, 1871 *Թ*. 699):

## 12. Ս. ՅԱԿՈԲԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–9)

*Հիմնումի տարին չենք կրցած ճշդել: Լոկ հաւանական կը համարինք* 1868–9*ը՝ նման միւսներուն: Այս մասին* Սրուանձտեանց *կը գրէ. «Ուրիշ* բարեբար Ընկերութիւններ *ալ ստակ հանդանակելով՝ շինած էին* Ս. Յակոբայ տաճարը, *կը շինէին* Անապատի տաճարը, *պատած էին* Ս. Քառասուն Մանկունքի *գերեզմանատունը, շէնցնել կ'ուզէին* խունրկըտուր վաֆը, *որուն* 3 *կտոր արտ գնած էին, եւ այլն: Ասոնք ամէնը ստակով յառաջ կու գար եւ ժողովուրդն ալ յօժարութեամբ կու տար այսպիսի նեղ տարի մը» (Գարեգին Վ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար. Ա. Կ. Պ.* 1879, *էջ* 149)*: Ընդգըծուածները ունեցած են իրենց յատուկ Ընկերութիւնը:*

## 13. ԽՈՒՆՐԿԸՏՈՒՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–70)

*Սրուանձտեանցի վերի յաշատակութենէն լոկ կ'իմանանք թէ գոյութիւն ունեցած է այսպիսի Ընկերութիւն մը, որուն մասին գտած չենք ուրիշ ծանօթութիւն մը եւ չենք կրնար ճշդել հիմնումի թուականը: Կը տեսնուի որ միեւնոյն ժամանակաշրջանի մը մէջ երեւան եկած են այս վերոյիշեալ Ընկերութիւնները, որոնցմէ ոմանք Հայ Մամուլի*

մէջ ալ յիշատակութիւն կը գտնեն: 1878ին Ընկերութիւնը «3 կտոր արտ գնած է վանքին համար» եւ միտք ունէր «չէնցնել» վանքը (Թորոս Աղբար, անդ):

## 14. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–70)

1871 Հոկտ. 9ին Մկրտիչ Արքեպ. Խրիմեան, Պատրիարք Կ. Պոլսոյ, կը գրէ. «... Այսու վաւերագրովս յայտ առնեմք, զի Սեբաստիոյ կէս ժամու ճանապարհաւ կից գտնուած յանուն Քառասնից Մանկանց նուիրեալ գերեզմանատեղին շրջապատով գցելու եւ նոյն սրբավայրը, ուր յիշեալ Քառասուն նահատակաց նշխարք կը հանգչին, օտարաց ոտից կոխան ըլլալէ ազատելու համար Սեբաստիոյ մէջ կազմեալ ազգային Ընկերութիւն մի բարեպաշտական ոգւով պատ քաշելու ձեռնարկելով, կիսով չափ աւարտած է» (Հայրենիք, Կ. Պ. 1871 Թ. 71):

Մեղք որ չի տրուիր անունը այս Ընկերութեան, որ Սեբաստիա քաղաքի մէջ հիմնուած եւ անշուշտ տարբեր է եւ աւելի կանուխ հիմնուած քան յաջորդ «Քառասնից Մանկանց Ընկերութիւն»ը, որ միեւնոյն նպատակով եւ աւելի ուշ՝ Պոլսոյ մէջ կազմուած է:

## 15· ՍԵԲԱՍՏԻՈՅ «ՔԱՌԱՍՆԻՑ ՄԱՆԿԱՆՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868–1870)

Հիմնուած է Պոլիս: Կը յիշուի 1871 Հոկտ. 9ին: Խրիմեան Պատրիարք կը գրէ.

«*Մեծարգոյ* Պր. Մարտիրոս Տ. Պետրոսեանի *ջանիւք* Մայրաքաղաքիս Սեբաստացի բարեսէր երիտասարդներէ *բաղկացեալ* Ընկերութիւն *մը կազմուած է* Քառասնից Մանկանց *անուամբ*, *յիշեալ* նուիրական սրբավայրերն շրջապատով պահպանելու, *այլեւայլ տեսակ անլուր անարգանքներէ զերծ մնալու եւ օտարաց ոտից կոխան ըլլալէ ազատելու բարի նպատակաւ: Ուստի արժան համարեցինք հրատարակել Պատրիարքական կնիքով վաւերացեալ վկայականն*» (Հայրենիք, Կ. Պ. 1871 *թ*. 71):

*Ընկերութիւնը Սեբաստիա կը ղրկէ* 2000 *ղուրուշ՝ նպատակին գործադրութեան համար. կը գնէ արժէթուղթեր երկաթուղիի* (Հայրենիք 1873 *թ*. 151): *Ինչպէս տեսանք՝ կը յիշուի նաեւ* 1878*ին* Սրուանձտեանցէ:

16. ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Ժամանակակից թերթերէն ոչ մէկուն քով ծանօթութեան մը հանդիպած ենք:* 1880*ին է որ առաջին անգամ* Սեբաստացի *Նազարէթ Յ. Իսթամպօլլեանց կը յիշէ Ընկերութիւնս իր հետաքրքրական մէկ յօդուածին մէջ, որ կը կրէ խորագիրս.* «Ազգային Ընկերութիւնք Սեբաստիոյ»: *Իսթամպօլլեանց Ընկերութեանս տիտղոսը սա վերնագրով.*— «Դերասանական Ընկերութիւն, հաստատեալ 1870» — *դնելէ վերջ՝ կը գրէ.* «*Սոյն Ընկերութեան նպատակն է գաւառիս ազգայնոց, ի*

*մասնաւորի Սեբաստացւոց* ազգային եռանդ եւ զգացում ներշնչել *թատերական ներկայացումներով*. իւր տրամադրութեան ներքեւ մի օրիորդական վարժարան ունենալով. *վերջապէս ազգային թատեր մատակարարած բարիքները ծաւալել ազգայնոց մէջ ... Թատերական երեկոյթներ տուած է եւ կը տայ*: Տարւոյս շրջանին մէջ թատերական կատակախաղեր եւս տուաւ քաղաքիս Թրքաց Թատերասէր մասին ստիպմամբ: *Ընկերութիւնս կը բաղկանայ* 12 երիտասարդներէ եւ ունի բաւական թատերական գոյքեր» (Մասիս, *Կ. Պ.* 1880 *Թ.* 2560): *Ընկերութիւնը* 1881*ին* *սգահանդէս մը կը սարքէ* Իսքամպօլլեանցի *թարմ հողակոյտին վրայ* (Մասիս, 1881 *Թ.* 2875):

### 17. ԼՈՒՍԱԲԵՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնադիրները Սեբաստիոյ* «Անձնուէր Ընկերութեան» *երբեմնի* աշակերտներն են: *Հիմնումի թուականն է* 1870: *Խօսքը տանք ժամանակակից հայ թերթին*: *Պոլսոյ* Հայրենիք, *որուն խմբագիրը* Սեբաստացի *մ'է*, *կը գրէ* 1873 *Յունիսին*՝ «*Սեբաստիա* Լուսաբեր Ընկերութիւն» *վերնագրի տակ*. «*Ուրախութեամբ սրտի կը հրատարակեմք սոյն Ընկերութեան գոյութեան եւ միանգամայն քաջալերութեան արժանի ձեռնարկը*, *որ* երեք տարիէ ի վեր *յարատեւ կը շարունակէ*... *Լուսաբեր Ընկերութեան անդամները ժողո-*

*վերջեան համարումը գրուող* 12 Անձնուէր աշակերտներ *են, որք ամեն կիւրակէ յետ ատրաման եկեղեցւոյ ազգային յարկի տակ ժամն երկուքէն մինչեւ հինգ* զանազան մատեաններ կարդալով՝ փափաքող ազգայնոց չհասկցած կէտերը բացատրելով՝ Ազգ. եւ Սրբ. Պատմութեանց կը տեղեկացնեն եղեր: *Բաց ի ասկէ, աւելի գովութեան ու քաջալերութեան արժանի է* վկայեալ անկարող աղքատիկ ուսանողաց համար ձրիաբար գիրք, թուղթ, գրիչ, մելան մատակարարելնին, իրենց շաբաթական նուէրներովն եւ բարեսէր առատաձեռն ժողովրդեան նպաստներով» (Հայրենիք, 1873 *թ*. 154):

*Ընկերութիւնը* 1000 *դահեկանի գիրք կ'ապսպրէ Պոլսէն «աղքատիկ ուսանողաց ձրիաբար նուիրելու համար»* (*Անդ*, *թ*. 162):

*Ընկերութիւնս* երկու նիւղ *ունէր. մին* Պոլսոյ՝ *միւսը* Սեբաստիոյ *մէջ. վերջինս ալ* 1870*ին հիմնուած*: Սեբաստիոյ նիւղին *հիմնադիրներէն մին է* խաչատուր Գարապանագեան (*Հայ Հանրագիտակ*, *Պուքրէշ* 1938, *էջ* 310): *Նազարէթ Յ. Իսթամպօլեանց իր յիշեալ յօդուածին մէջ կը գրէ որ Ընկերութիւնը «եթէ կարողութիւնը ներէ, աշակերտաց հանդերձանքն եւս պիտի պատրաստէ: Սոյն Ընկերութենէս կը նպաստաւորին* 100*է աւելի աշակերտներ... մի* Գրավանառանց *եւս ունի, որ եկամտի մի աղբիւր է իւրեան»* (Մասիս, 1880 *թ*. 2567):

*Իսկ* Պոլսոյ ճիւղի *հիմնումը եղած է* 1882 *Սեպտեմբեր 1ին*: 1882*ին վերջը* նոր Գործ. *Ժողովոյ ընտրութիւն կ'ըլլայ ու կ'ընտրուին*.

| | |
|---|---|
| *Մխիթար Գրմըրղեան* | *Ա. Ատենապետ* |
| *Մկրտիչ Տէմիրճեան* | *Բ. Ատենապետ* |
| *Ոսկան Ա. Թէրզեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Ոսկան Մորխուունի* | *Բ. Ատենադպիր* |
| *Նշան Անտոնեան* | *Գանձապահ* |
| *Նշան Սիրապեան* | *Համարակալ* |
| *Տիգրան Մումճեան* | |
| *Նազարէթ Օթուրախեան* | |
| *Երանոս Ումէտեան* | |

*Նոյն* ճպատակն *է տոնցն ալ*. Աղքատիկ մանկանց դաստիարակուիլն ճրիապէս: «*Լուսաբեր Ընկերութիւնն* 12ամեայ Ընկերութիւն մ'է, որ ցարդ կը շարունակուի անձկուն ամեն դժուարութեանց դէմ ի յայտ բերելով բազում արդիւնքներ. *ունի բաւական աշակերտներ*, որք այսօր դասատուութեան փափուկ եւ մեծ պաշտօնին կանչուելով՝ եղած են մի մի թշուառ ընտանեաց միակ յոյսն ու մխիթարանք: ...*այժմ ունի* 150*ի չափ աղքատիկ աշակերտներ*, որոց ուսումնական պիտոյքն կը հայթայթէ ...» (Հայրենիք, *կ. Պ.* 1882 *Թ.* 1211 *Դեկտ.* 28):

1883 *Մարտին Ընկերութիւնը թատերական ներկայացում մը կը կազմակերպէ Բերայի* «Վէրտի» *թատրոնին մէջ, որմէ զուտ*

*չահ կ'ունենայ* 40 *լիրա* (Թէրճէմանը էֆքեար, *Կ. Պ.* 1883 *Թ.* 1861)։

*Ընկերութեանս* Սեբաստիոյ ճիւղը *կանգուն է* 1889*ին եւ յոյսը շատ մը* չքաւոր ընտանիքներու (Արեւելք, 1889 *Թ.* 1711 *Հոկտ.* 9)։ *Կը շարունակէ իր գործունէութիւն* 1905*ին ալ*։ Կ. Ա. Պապասմեան *կը գրէ Սեբաստիայէն* 1905 *Դեկտ.* 26*ին*. «Լուսաբեր Ընկերութիւնը *չորս անհատներու*՝ Ա. Անանիկեան, Ոնոփրիոս Վրդ. (*վախճանած*), Ա. Գարագաշեան, Ա. Տէր-Թադէոսեան 1870*ին կազմած Մարմինն է ... Սըվազի միակ* Գրավաճառը իրենք են ... *Փոխանորդ Վրդ.ը աղուոր ձեռնարկ մըն ալ ըրաւ*, Լսարան *մը հաստատեց*» (Արեւելք, 1905 *Թ.* 5866)։

*Ընկերութիւնը* վերակազմուած *է* 1904 *Հոկտեմբերին*. 1909*ին կը հայթայթէ, դարձեալ*, աղքատ աշակերտներու գրենական պիտոյքները։ *Ունի* Կիրակնօրեայ վարժարան մը, *ուր կու գան բաւական թուով* երիտասարդ արհեստաւորներ տարրական ուսում մ'առնելու *համար*» (Անդրանիկ, *Սեբաստիա* 1909 *Թ.* 18 *եւ* 40)։

Անդրանիկ, 1909 *Հոկտեմբերին անդրադառնալով «Լուսաբեր»ի* 40 ամեակին՝ *կը գրէ*. «*Լուսաբեր ...* 40 *տարուան անցեալ մ'ունենալով նա առաջին օրէն իսկ միակ նպատակի մը ձգտած է*. Ձրի կրթութիւն որբ, անտէր եւ աղքատ երկսեռ ուսանողներու. ուղի մը, ուր ցարդ անսայթաք կը յա-

դատեւէ, բազմաթիւ զարգացած երիտասարդներ տալով Ազգին: *Անոնցմէ շատեր, ամէն դասակարգի մէջ, կարեւոր դիրքեր գրաւած ըլլալով՝ օգտակար հանդիսացած են թէ՛ իրենց եւ թէ Ազգին եւ Պետութեան: Ո՞չ ապաքէն այս տեսակ զգայուն, կրթասէր եւ զգօն երիտասարդներու ներբողելի նախաձեռնութեամբն էր որ կազմուեցաւ Ամերիկայի մէջ* «Լուսաբերի Նպաստամատոյց» *Մարմինը, որ պարբերաբար եւ մարդասիրաբար կը նպաստէ Լուսաբերի աղքատիկ երկսեռ սաներուն ... որոց թիւը* 400 *կ'անցնի այսօր ... Լուսաբեր կը վարէ նաեւ երկու կարեւոր հաստատութիւններ եւս, որոնք դարձեալ ձրի են բոլորովին.—* Կիրակնօրեայ վարժարանը՝ *արհեստաւորներու եւ* Լսարանը՝ *ամէն դասակարգի անհատներու համար* ... 1904 *Հոկտեմբերի սկիզբները, երբ Ընկերութիւնը իր* վերակազմութիւնը *ունեցաւ, մեծագոյն զարկը տուաւ նոյն հաստատութիւններուն»* (Անդրանիկ, 1909 *Թ.* 40):

1911*ին* Հողդար (*Թ.* 14) *կը գրէ որ «Կովտունի Թաղ. խորհուրդը կը խնդրէ որ Լուսաբեր Ընկերութիւնը հայթայթէ* նաեւ Գիւղերու *աղքատ աշակերտաց գրենական պիտոյքն»*:

1912*ի սկիզբը Լուսաբեր կ'ունենայ նաեւ* իգական *ճիւղ մը, իբրեւ առանձին Ընկերութիւն*, «Լուսաբերի Օժանդակ Ընկերու-

թիւն» *անունով* (Հողդար, 1912 *Թ*. 26), *ինչպէս պիտի տեսնենք*։

*Նիւ Եորքի* Ալիս *Թերթը* (1930 *Թ*. 4) 1930*ին հրատարակած է* 1904–8*ի* Լուսաբերի անդամներու խմբանկարը։

18. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Կը յիշուի առաջին անգամ* 1875*ին* Պօղոս Վ. Նաթանեանէն, *որ Սեբաստիա եղած է նոյն տարւոյ Սեպտեմբերին* (*Տե՛ս Տեղեկագրութիւն Ընդհ. վիճակին Սեբաստիոյ. Կ. Պ.* 1877, էջ *Ե*)։ *Ընկերութեանս* նպատակը *նման է* «*Լուսաբեր*»*ի հետ* — «դպրոցի մէջ գտնուող աղքատ տղայոց ձրի թուղթ, գիրք . . . տալէն զկնի տարին անգամ մ'ալ աղքատիկ մանկանց հագուստը շինել կու տայ» (*Նաթանեան, Անդ*, *էջ* 114)։

1880*ին* Խաթամպօլլեանց *միացուցած է* Լուսաբեր–Նպաստամատոյց՝ *իբրեւ մէկ Ընկերութիւն՝ հիմնուած* 1870*ին* (Մասիս 1880 *Թ*. 2560)։ *Արդեօք* 1877*էն վերջ միացա՞ծ էին այդ երկու Ընկերութիւնները*։ 1880*էն վերջ* Նպաստամատոյցը *չի յիշուիր*։

19. ԱՐՇԱԼՈՅՍ ՄԻՈՒԹԻՒՆ (1870–1871)

*Պոլսոյ լաւատեղեակ Թերթը* — Հայրենիք — *կը գրէ* 1871 *Յուլիս* 17*ին*. «*Մեր հայրենակցաց . . . գաւառացի երիտասարդ գաւակունք* իրենց պատւոյն պահպանութեան համար *խմբակ մը կազմեր են* Արշալոյս *ա*–

*նուամբ … կը գովեմք ու կը քաջալերեմք որ* Միութիւնին *յաւիտեան անքակտելի պահեն…»* (Հայրենիք, 1871 *Թ*. 58)։ — *Հայ երկսեռ աշակերտները տեղացի մահմեդական տղոց յարձակումներու դէմ պաշտպանելու նպատակ ունի։ Հիմնումի թուականը ճշդուած չէ։*

20. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Պոլսոյ մէջ՝ 1872*ի առաջին ամիսներուն հիմնուած կ'երեւայ* «Լուսաւորչեան Ընկերութիւն»*ը, որ Սերաստիոյ Հայ* – մահալլէ *թաղի «Լուսաւորչեան» դպրոցի համար շէնք մը շինելու եւ դպրոցի նիւթականը ապահովելու նպատակ ունի։ Օրուան թերթը կը յայտարարէ. «Բերկրութեամբ սրտի կը ծանուցանեմք յարգոյ հայրենակցաց թէ հայրենասիրական հոգով շարժեալ … Սերաստիոյ Հայ – մահալլէի թաղի ուսանողաց համար* վարժարան մը կառուցանելու եւ նորա եկամուտներ հայթայթելու համար *վարժարանի* անուանէն *առնելով* Լուսաւորչեան *անուն* Ընկերութիւն *մ'եւս կազմեցին… Անցեալ Կիւրակէ* առաջին անգամ *ըլլալով* երկու հազար դահեկանէն *աւելի դրամ գոյացաւ … Այս հայրենեաց անուանք* չենք յիշեր այժմ, *որովհետեւ գործել կը սիրեն քան թէ գովուիլ … ամեն Կիւրակէ* Ղալաթիա Տէյիրմէն խանը *պիտի գումարուին…»* (Հայրենիք, 1872 *Թ*. 109, *Յուլիս* 8)։

*Ուրիշ տեղեկութիւն չենք գտներ: Նոր Ընկերութիւն մ'է:*

21. Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872–1873)

*Կը յիշուի* 1875*ին իբրեւ հին. կազմուած է* Ս. Սարգիս եկեղեցւոյ *թաղին մէջ եւ ունեցած* կրպակ *մը, որ* 1875*ին այրած էր: Ընկերութիւնը* 1875*ին* թուլցած՝ *բայց գոյութիւնը կը պահէր (Պօղոս Վ. Նաթանեան, անդ, էջ* 99):

22. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872–1873)

*Սեբաստացի Ահարոն* Մարգարեան *Պոլսոյ* Հայրենիք *թերթէն օրինակ մը կը նուիրէ* Սեբաստիոյ «Հայրենասէր Ընկերութեան» վարժարանին (Հայրենիք, 1873 *թ.* 161 *Օգոստոս* 11):

*Այս է ամբողջ եւ միակ տեղեկութիւնը, զոր այս Ընկերութեան մասին տուած է թերթը: Թէ ե՞րբ եւ որմէ՞ հիմնուած է, ի՞նչ է նպատակը, որո՞նք են իր կանոնները, ի՞նչ վարչութիւն ունի, եւ այլն, ասոնց մասին ոչ մէկ ակնարկ: Ասկէ կը տեսնուի թէ Սեբաստիա քաղաքի մէջ կար դպրոց մը, որուն* պաշտպանն էր «Հայրենասէր Ընկերութիւն»*ը: Ընկերութի՞ւնը բացած էր այդ դպրոցը՝ թէ դպրոցը կար արդէն եւ անոր նպաստելու համար այս Ընկերութիւնը հիմնուած էր: — Ոչ մէկ լուսաբանութիւն:* 1875*էն վերջ ոչ մէկ յիշատակութիւն:*

## 23· ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Հիմնուած է* Պոլիս 1874*ին*: *Հիմնադիրն է* Սեբաստացի Վարագդատ Փթթեան, *որ Պոլսոյ* Փանոսեան վարժարանի *աշակերտած ըլլալով՝ գաղափարը կ'ունենայ* Կիրակնօրեայ *դասընթացք մը բանալ ու Պոլսոյ մէջ* «Թէ՛ Գաւառացի եւ թէ Պոլսեցի որեւիցէ հասակէ ազգայնոց, ձրիաբար գէթ կարդալ, գրել, հաշուել եւ իւրեանց ազգային լեզուն ու պատմութեան վրայ տեղեկութիւններ ուսուցանելու համար» (Ասիա, *Կ. Պ.* 1874 *Թ.* 101):

*Փթթեան օգտուած է* Ասիա *թերթի խմբագիր* Մկրտիչ Փորթուգալեանի *փորձառութենէն ու հմտութենէն եւ անոր խորհուրդով* 1874 *Օգոստոսին բացած է նախ Ղալաթիոյ* Գումիսիոն խանի *մէջ կիրակնօրեայ դասընթացքը՝* հայերէնի, թուաբանութեան եւ ֆրանսերէնի: *Գործին հաստատուն հիմ մը դրած ըլլալու համար՝ Փըթթեան Փորթուգալեանի գործակցութեամբ կը հիմնէ Ընկերութիւն մը, որուն անունը կը դրուի* «Վարագդատեան Ընկերութիւն»: *Սկզբնական «Ծրագիր» մը՝ բաղկացած* 6 *կէտերէ՝ կը գծէ Ընկերութեան ապագայ գործունէութեան ասպարէզը* (Ասիա, *անդ*):

*Ընկերութեան այդ «Ծրագիր»ի հրատարակութիւնը խթան մը կ'ըլլայ* 4 *օրուան մէջ անդամներու թիւը* 20*էն աւելի բարձրացնելու* (Ասիա, *անդ Թ.* 107): *Կը կազմուի Ըն-*

*կերութեան* Կանոնագիրը· *կ՚ընտրուի* Գործադիր Ժողովը: *Ահա վերջինիս կազմը·*

| | |
|---|---|
| *Մկրտիչ Փորթուգալեան* | *Ատենապետ* |
| *Վարագդատ Փթթեան* | *Ատենադպիր* |
| *Գալուստ Նորհատեան* | *Գանձապահ* |
| *Թորոս Զիւլալեան* | *Գրապահ* |
| *Մանուկ Զիլինկիրեան* | *Համարակալ* |

(Ասիա, *անդ՝ Թ·* 131, 135):

*Ընկերութեան* Կանոնագիրը, *որ ամբողջապէս հրատարակուած է* Ասիա *թերթի մէջ* (*անդ՝ Թ·* 131), *կը բաղկանայ* 17 *Յօդուածէ կամ կէտերէ: Կը ներկայացնենք քաղուածաբար քանի մը Յօդուած: Ընկերութեան* նպատակն *է·* Ա· Կիրակի օրերը ձրիապէս դասախօսութիւններ անել ոեւէ հասակէ ազգայիններու· Բ· Ազգային յառաջդիմութեան վերաբերեալ նիւթերու վրայ ատենաբանութիւններ անել: — *Ընկերութեան անդամ եղողը կը պարտի շաբաթական մի բաժինի գին քառասուն փարայ վճարել* (*Յօդ·* 1): — *Ընկերութեան անդամ գրուողները՝ Ընդհ· Ժողովին ալ անդամ կը համարուին* (*Յօդ·* 2)· *Եթէ գաւառներէն դասատուներ ուզուին, Ընկերութիւնը չափաւոր ամսականով դասատուներ կը ղրկէ, սա՛ պայմանով որ Վարագդատեան Ընկերութեան մի ճիւղ համարուի հոն* (*Յօդ·* 15):

1874 *Հոկտ· 8ին Ընկերութեան Ընդհ· Ժողովի Դիւանը կը կազմէին·*

*Յ. Գուրդէն* *Ատենապետ*
*Ս. Թումայեան* *Ատենադպիր*
(Ասիա, 1874 *Թ.* 131):

24. ԱՆՁՆՈՒԷՐ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1875)

*Կը յիշուի* 1875*ին իբրեւ ոչ նոր. կը կոչուի նաեւ* «Բարեսիրական Ընկերութիւն»: Պօղոս Վ. Նաթանեան, *որ միակ տեղեկատուն է, Ընկերութեան մասին կը գրէ* 1875*ին.* «Օժանդակ Անձնուէրի *նպատակն է Կիրակի օրեր հասակաւոր մարդկանց համար կրկին դպրոց բանալով Աստուածաշունչի եւ Աւետարանի դասեր կու տայ հանդերձ բացատրութեամբ: Այս Ընկերութիւնը* բարեսիրական *ալ կը կոչուի*» (*Պօղոս Վ. Նաթանեան, Տեղեկագիր Ընդհանուր վիճակին Սեբաստիոյ. Կ. Պ.* 1877, *էջ* 114–5):

25. ԽՆԱՄԱԿԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1875)

*Հիմնումի տարին չենք գտած: Կը յիշէ Նաթանեան* 1875*ին հետեւեալ տողերով.* «...*Հինգերորդ* խնամակալ Ընկերութեան *նպատակն ալ է* Տանկաց տուներու մէջ խառն բնակող աղքատ եւ անտէր Հայ ընտանեաց համար հայոց թաղերու մէջ տուներ շինել տալով բնակեցնել եւ ըստ կարի խնամել ու տղաքները ալ ճրիաբար դպրոցներու մէջ կրթել» (*Տեղեկագիր, անդ, էջ* 115):

### 26· ԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875–1879)

Պոլսոյ մէջ *հիմնուած՝ ունեցած է* Կանոնագիր: *Կը յիշուի* 1883 Յունուար 21*ին*: *Իբրեւ* թոյլցած *եւ բաղձանք կը յայտնուի* վերակենդանացնել Սեբաստիոյ *մէջ* «որ ոյժ տայ արուեստից, մանաւանդ երկրագործութեան» (Մասիս, 1883 Թ· 3344): *Հիմնումը* 1875–79 *դնելուս պատճառն այն է որ Պոլսոյ «Արուեստասիրաց Ընկերութիւնները» այդ շրջանին երեւան եկած են: — Կանոնագիրը, որքան գիտենք, հրատարակուած չէ*:

### 27· ՍԵԲԱՍՏԻՈՅ ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875–1876)

*Վարագդատ Փթթեան* 1875*ի վերջերը* Սեբաստիա *վերադառնալով հոն ճիւղ մը կը հիմնէ* «Վարագդատեան Ընկերութեան, *որ կը տեւէ երկու տարի*: 1876 *Սեպտ·ին* Մկրտիչ Փորթուգալեան *Սեբաստիա գտնուելով՝ կը տեսնէր Ընկերութեանս բարգաւաճումը եւ կրնար գրել· «Վարագդատ էֆ· Փթթեան* Վարագդատեան *անուն մի* Ընկերութիւն *հաստատած է այստեղ* (*Սեբաստիա*) *որ* հասակաւոր ազգայիններին կիրակնօրեայ ձրի վարժարան բանալէ զատ՝ անչափահասների համար ալ ամենօրեայ վարժարան բացած է, *ուր դասախօսել կտայ հայերէն, Թուրքերէն, Փռանսերէն լեզուներ, Թուաբանութիւն, աշխարհագրութիւն, պատմութիւն, բնագիտական սկիզբներ, եւ այլն: Նաեւ*

*մարմնամարզութիւնի դաս ալ սկսած է։ Այս վարժարանը յուսատու վիճակ ունի*» (Մանզումէի էֆքեար, 1876 *Թ.* 3292, *Հոկտ.* 23)։

1877*ի վերջերը կը դադրի Ընկերութիւնս*՝ վերածուելով «*Համալսարանական Ընկերութեան*» (Մանզումէի էֆքեար, 1878 *Թ.* 3739)։

28. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

«Օժանդակ Ընկերութիւն հաստատեալ 1876*ին*» *վերնագրի տակ կը գրէ Սեբաստացի Նազարէթ Յ. Խաթամպօլլեանց* 1880*ին*. «*Նըպատակն է* Ազգ. վարժարաններու անկարող աշակերտուհեաց դպրոցական պէտքերն հոգալ եւ նոցա ի ձեռագործ արհեստս յառաջադիմելոյն նպաստել։ *Այժմ* (1880*ին*) 50*ի մօտ աղքատիկ սանուհեաց կ՚օգնէ, որք կը պատրաստուին ապագային մէջ բարի եւ կըրթեալ Հայ մայրեր լինելոյ*» (Մասիս, 1880 *Թ.* 2560)։

*Ընկերութիւնս* «*Լուսաբեր*»*ի* իգական *ճիւղը կարելի է համարել եւ այս կապակցութեամբ* 1912*ին կը յիշուի իր իսկական անունով, որ է* «Լուսաբերի Օժանդակ Ընկերութիւն» (Հողդար, *Սեբաստիա* 1912 *Թ.* 26)։

Գէորգ Մ. Գամպուռեանց *յիշած էր Ընկերութիւնս* 1879*ին կոչելով զայն* «Օժանդակ Անձնուէր Ընկերութիւն», «որ իգական սեռի աղքատ աշակերտուհեաց դպրոցական պէտքը կը հոգայ» (Հայրենիք, 1879 *Թ.* 528)։

Անշուշտ նոյնն է Սրուանձտեանցի 1878-ին յիշածն ալ. «Օժանդակ Ընկերութիւն, որ դասագիրք բերել կու տայ Պոլսէն, աղքատաց ձրի եւ կարողաց դիւրագին կ'ընձեռէ» (Թորոս Աղբար, Ա. էջ 146):

## 29. ՀԱՅՐԵՆԱՆՊԱՍՏ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

1879 Յուլիսին Սեբաստիայէն կը գրեն Պոլսոյ Թէրճիմանը էֆքեար թերթին. «Քաղաքիս Հայ մանկիկներէն մի քանիքն երկու տարիէ հետէ Հայրենանպաստ անուն Ընկերութիւն մը հաստատած՝ կ'աշխատին: Անցեալ շաբթու ասոնք իրենց տարեկան հաշիւն Կիւրակէ օր ժողովրդին ի տես Ս. Սարգիս եկեղեցւոյ դուռը ներկայելէն զկնի՝ կ'ազդարարեն ժողովրդեան կէս աւուր միջոցը դպրոց գալ հաճել եւ իւրաքանչիւր ոք զիւր դիտողութիւն ընել» (Թէրճիմանը էֆքեար, Կ. Պ. 1879 Թ. 630):

Հետեւաբար հիմնուած է 1877ին: Իսթամպօլլեանց (Մասիս, 1880 Թ. 2560) լոկ անունով յիշած է Ընկերութիւնս:

## 30. ՀԱՅՐԵՆԱԼՈՅՍ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877?)

Ընկերութեանս հիմնումի տարին չենք կրնար ճշդել: Իսթամպօլլեանց (Մասիս, 1880 Թ. 2560) անունը միայն յիշած է 1880ին «Հայրենանպաստին» հետ: Հաւանական է որ աս ալ 1877ին կազմուած ըլլայ:

31· ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Համալսարանական Ընկերութիւնը *Սեբաստիա քաղաքին մէջ հիմնուած է* 1878 *Յունուար* 1*ին* ։ *Հիմնադիրներու առաջինը կրնայ համարուիլ բնիկ Սեբաստացի* Վարազդատ Փթթեան, *որ իր ուսումը Պոլսոյ մէջ առնելէ յետոյ՝ ընկերակցութեամբ* Մկրտիչ Փորթուգալեանի՝ *նախ Պոլսոյ մէջ կը հիմնէ* «Վարազդատեան Ընկերութիւն»*ը* (1874), 1875*ի վերջերը Սեբաստիա վերադառնալով՝ հոն կը հաստատէ ճիւղ մը «Վարազդատեան»ի, ինչպէս տեսանք վերը ։ Այս վերջին Ընկերութիւնը կը տեւէ երկու տարի, այսինքն՝* 1876–1877*ի վերջը* ։ 1878 *Յունուար* 1*ին «Վարազդատեան Ընկերութիւն»ը կը* վերածուի *«Համալսարանական Ընկերութեան», ինչպէս կը ճշդէ ինքը՝ Փթթեան գրելով* · *«Երբ Պոլիս ձգելով հայրենիք վերադարձայ, անմիջապէս չյապաղեցայ Վարազդատեան Ընկերութեան ճիւղ մի հաստատել, որն որ ամբողջ երկու տարի չարունակելով եւ բաւական յաջողելով եւ այս անգամ աւելի յաջողելով՝ Վարազդատեան Ընկերութիւնը Համալսարանական Ընկերութեան վերածեցինք, մի քանի ազգասէր ու ազատամիտ երիտասարդներու ընկերակցութեամբ»* (Մանզումէի էֆքեար, Կ · Պ · 1878 *Թ* · 3739) ։

*Փթթեան, որ Համալսարանական Ընկերութեան Գործադիր Ժողովի Ատենապետ ընտրուած էր՝ երկրորդ դրութեամբ մը*

*Սեբաստիայէն Պոլսոյ* Մանզումէին *կը տե-ղեկագրէ* 1878 *Մարտ* 25 *թուականով.* «1. *Յունուար* 1878 *կաղանդի օրը, յորում մարդիկ նոր տոմարներ կը կարգադրեն եւ նոր նոր յաջողութիւններ կը բարեմաղթեն իրարու, Սեբաստիոյ երիտասարդութիւնն ալ միեւնոյն աւուր մէջ մի* կանոնագրութիւն *կարգադրելով՝* Համալսարանական *անուն մի* Ընկերութիւն *հաստատեց եւ անոր յառաջ-դիմութեան նորանոր յաջողութիւններ եւ յա-րատեւութիւն մաղթեց, որուն՝ ինչպէս ա-նունէն կ'երեւայ* Նպատակն *է* մի համալսա-րանական վարժարան ունենալ Սեբաստիոյ մէջ *եւ արդէն թէ Գեր. Առաջնորդ Ս. Հօր խրախուսանօք եւ թէ ազգասէր նուիրատուաց գործնական քաջալերութեամբ ըստ պահանջ-ման* կանոնագրութեան՝ Մարտ մէկին *մի նա-խապատրաստական* երկսեռ վարժարան *բա-ցուեցաւ քաղաքիս մէջ, որուն աշակերտելոց թիւն է* Հարիւր յիսուն մանչ *եւ* յիսուն աղ-ջիկ *եւ դասատուք են.* Արժ. Տէր Վարդան Աւագ Քահանայ, Տօքթոռ Յ. Շիրինեան, վարազդատ Փթթեան, Սերոբէ Օտապաշեան, Օհան Մարկոսեան, Նազարէթ Պոլսեցեան (*Իսթամպօլլեանց*), Յարութիւն Զարդա-րեան, Դաւիթ Արամեան, Ազարիա Տէր Յով-սէփեան *էֆէնտիներն ու* Վառվառ, Նոյեմ-զար եւ Զմրուխտ վարժուհիներ, *ուր պէտք եղած գիտութիւններն ու լեզուագիտութիւ-նը դասախօսելէ զատ՝ սկսուած է նաեւ* տա-

բազագործութիւն աղջկանց համար, *որ այժմէն կը գործեն* շալ, խալը տիմի, կտաւ կարմիր եւ ձեռագործներ, *իսկ մանչերու համար քիչ առնէն պիտի սկսուի* ատաղձագործութիւն: *Ինչպէս գիտութիւններն ու ուսումները, նոյնպէս արհեստները պիտի զարգացնէ Ընկերութիւնս մինչեւ որ կարող լինին կատարեալ համալսարանի մը վերածել: Արդէն Ընկերութիւնս սոյն վիճակին մէջ* աշակերտներէն ընդունած ամսականաւը *եւ քաղաքացւոց աջակցութեամբ վարժարանը կառավարելու բաւականութեան մէջ գտնուելով՝ պիտի չուշանայ կարելի եղածին չափ շուտ իր նպատակին հասնելու համար մօտ օրերս մասնաւորապէս մի արժանաւոր անձ ճամբայ հանել ի* Կ. Պոլիս, *ուր ուսումնական եւ գրագէտ անձանց հետ տեսնուելով՝ թէ՛ Համալսարանական վարժարանիս մէջ աւանդելի* Ուսմանց Ծրագիրը *պատրաստել եւ թէ՛ սոյն ուսմանց համեմատ վարժարանին շէնքին ու ձեւին վրայ խորհիլ եւ Ընկերութեանս տեղեկագրել, որպէս զի փութայ Ընկերութիւնս՝ մինչեւ որ ինքը* Համալսարանի *շինութեան սկսի՝* մի Ընկերութիւն հաստատել իր նպատակին աջակից, որ պարտաւոր հաստատուն կալուած մ'ունենայ՝ *նորա եկամուտով Պոլսէն մեզ ցուցած ընթացիկ ուսմանց եւ արհեստներու ծրագրին համեմատ՝ մինչ Եւրոպայի մէջ* երկու ուսանող *ունենալով՝* մաս–

նագէտ դասատուներ պատրաստելու համար ։ *Համալսարանական վարժարանի շինութեան համար արդէն Պոլիս գնացող անձը Ընկերութեանս կողմէ գաւառները անցնելով՝ բարերար անձանց եւ գպրոցասէր ժողովրդեան աստուածեռնութեան պիտի դիմէ, որպէս զի Ընկերութիւնս այժմէն օրինաւոր երկիր մը գնելով սկսի համալսարանական վարժարանի շինութեան ։*

Ի դիմաց Գործադիր ժողովոյ
Համալսարանական Ընկերութեան
Ատենապետ՝ *Վարդգաս Փթթեան*
Ատենադպիր՝ *Համբարձում Ճէվահիրճեան*

(Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1878 *Թ.* 3739, *Ապրիլ* 8) ։

*Ընկերութիւնը շուտով կ'ունենայ* նիւղ մը՝ Պոլսոյ մէջ, *որուն Վարչ. անդամները* — Մ. Զախրեան եւ Խ. Կիրակոսեան — 1878 *Սեպտ.* 11*ին կը գրեն* Պոլսէն. «Սեբաստիոյ Համալսարանական Ընկերութիւնը ... տեղս ունեցած նիւղին *միջոցաւ կը հրաւիրէ բոլոր ազգասէր անձանց ուշադրութիւնը, որպէս զի բարեհաճին իրենց դիմող հանգանակութեան տոմարը եւ ... եկեղեցւոյ դուռը դրուած* թապախը *նուիրատուութեամբ արդիւնաւորելու...*» (Մասիս 1878 *Թ.* 2176, *Սեպտ.* 14) ։ — 1878 *Հոկտ.ին սկիզբը Վարչ. նոր կազմը հրաւէր-դիմում կ'ընէ* Իզմիրի *Հայութեան՝ գրելով. «... Պոլսոյ Սեբաստիոյ Հա-*

*մալխարանական Ընկերութիւնը, որոյ նպատակն է* Փոքուն Հայաստանի մէջ կեդրոնական երկսեռ վարժարան մը հաստատել *եւ արդէն Սեբաստիոյ մէջ վեց եօթը ամսէ հետէ վարժարան մը բացուած ըլլալով՝ կը շարունակուի, միայն կը կարօտի օրինաւոր դրամագլուխի մը, որ պէտք եղած գիտնական գործիքներն ու գիրքերը պատրաստելով՝ դասատուներէն մէկ մէկ մանչ ու աղջիկ բերել Սեբաստիա ու կրթել։ Ահաւասիկ սոյն նպատակաւ հանգանակութիւն բացած է Ընկերութիւնս եւ սոյն փրկաւէտ գործին համար անշուշտ ով որ Հայ է պիտի նպաստէ եւ մանաւանդ նա որ Հայ երիտասարդ է ջան ու աշխատութիւն չպիտի խնայէ։ Ուստի կը հրաւիրենք* Զմիւռնիոյ *զգայուն երիտասարդութիւնը, որպէս զի բարեհաճի յանուն ազգային յառաջդիմութեան իրենց եւ տեղացի վաճառականաց մէջ հանգանակութիւն մը բանալով՝ գոյացած դրամը յանձնեն հոն Մ.* Մամուրեան *էֆէնտիի, յորմէ կը ստանայ Ընկերութիւնս։*

Ի դիմաց Համալս. Ընկերութեան

Ատենապետ՝ *Թադէոս Կ. Թաշճեան*
Ատենադպիր՝ *Խ. Կիրակոսեան*
3 *Հոկտ.* 1878

*Կ. Պոլիս* (Մանզ. Էֆքեար, 1878 *Թ.* 3874)։

*Ընկերութեան* 1880*ի վիճակը կը ներկայացնէ Գործադիր Ժողովի հետեւեալ գրու-*

*թիւնը, գրուած Սեբաստիայէն՝ Պոլսոյ* Մանզումէ*ին* 1880 *Փետրուար* 12/24*ին*.

*Մեծ. Խմբագրապետ Տէր.*

*Քաղաքիս մէջ երկու տարի առաջ Հա*մալսարանական Ընկերութեան *ինչպէս հաստատումը, նոյնպէս հրապարակական թերթերու միջոցաւ իր նպատակը ընթերցողաց ծանօթ է, որ է* մի երկսեռ վարժարան, արհեստանոց, *հասարակաց ընթերցումը դիւրացնելու համար մի* թանգարան *եւ մի* թերթ*ունենալ*: Կիւրակի օրերն ու գիշերները արհեստաւորաց դասախօսել եւ ատենախօսել *եւ ըստ իր յաջողութեան՝ հետզհետէ վարժարանին վիճակը բարձրացնել եւ ջանալ մինչեւ մի* համալսարանի *ձեւ տալ, որուն խիստ պէտք ունի բազմահայ քաղաքս: Երկսեռ վարժարանն Ընկերութեանս հաստատումէն գրեթէ երկու ամիս վերջ բացուեցաւ, ուր կը յաճախեն մինչեւ ցարդ* 80ի *չափ երկսեռ աշակերտներ, որոնց օգտակար եւ ընթացիկ դասեր աւանդուելէ զատ՝* գիշերօթիկ վարժարան *մի եւս յառաջիկայ Մարտ 1ին պիտի հաստատէ Ընկերութիւնս*, ուր աշակերտութեան պիտի ընդունի գիւղացի եւ շրջակայ քաղաքներէն պանդուխտ աշակերտներ: Օրիորդաց համար ոստայնանկութեան հորեր բացուած են: Գիշերները արհեստաւորաց դասախօսութիւնք կը լինին, *որք ոչ նուազ ցերեկեայ աշակերտներէն կը յառաջ-*

*դիմեն: Աշակերտաց Թիւը յիսունի. կը հասնի:* Կիւրակէ օրերու յատկացեալ *ունինք մի* Լսարան, *ուր ամէն Կիւրակէ խուռն բազմութիւն մը կը խռնին եւ անյագ փափաքով կը լսեն եղած* ատենախօսութիւնները, տրամախօսութիւնքն եւ իմաստալից ոտանաւորները, *որոց վերջինը ցերեկեայ փոքրիկ օրիորդք եւ մանչեր կ'արտասանէին: Այս փոքրիկ տղայոց արտասանութեան շնորհիւ* Քամառ–Քաթիպայի *«Ազատ երգերն» գրեթէ բոլոր ընտանեաց բերանին մէջ օրական առած դարձած են: Ահա այսպէս Սեբաստիացի հայ ազգայնոց սրտին մէջ մի նոր շարժում եւ եռանդ կարողացաւ Ընկերութիւնս ներմուծել, որ Ընկերութեանս գոյութեան հետ կապուած՝ հետզհետէ պիտի հաստատի եւ զօրանայ նոյնին սրտին մէջ: Իսկ Ընկերութեանս* Թանգարանը, *ցաւ է ըսել, դեռ օրինաւոր կերպարանք մ'առած չէ, զի տակաւին կը պակսին գիտութեանց գործիքներ եւ նկարներ եւ ուսումնական, գիտնական եւ պատմական գրքեր: Սոյն պիտոյից անհրաժեշտութիւնն Ընկերութիւնս զգալով՝ քանիցս անգամ ազգային թերթերու միջոցաւ ազգասէր անձանց նպաստներ խնդրած եւ բաւական քաջալերուած է, որոյ համար մեր խորին շնորհակալութեան հետ կը փութամք նուիրատու քաղաքաց անուանքն ու գոյացած դրամը հրատարակութեան տալ, որք են.* Նիկոպոլիս (*Տապին Գարահիսար*) 605

դրշ․, Սեբաստիա 1509 *դրշ․*, Ամասիա 363 *դրշ․*, Սամսոն 2145 *դրշ․*, Իւնիա 726 *դրշ․*, Կեսարիա 55 *դրշ․։ Ասոնցմէ զատ Տփղիսի* «Փորձ»*ի խմբագրապետ Մեծ․ Պ․ Արգար Յովհաննէսեանի քով հաւաքեալ նուէր եւ բաժնեգին ըլլալով՝ քանիերեք օսմ․ լիրա եւ տասներկու դահեկան։*

*Ի դիմաց Գործադիր Ժողովոյ*
*Համալսարանական Ընկերութեան*

Ատենապետ՝ *Նշան Թէրզեան*
Ատենադպիր՝ *Վարագդատ Փթթեան*

(Մանզ․ էփճեար, 1880 *Թ*․ 4306)։

Նազարէթ Յ․ Իսթամպօլլեանց *կը գրէ Ընկերութեանս մասին* 1880 *Փետր*․ 5/17*ին*․ «․․․*Իւր խնամոց տակ մի բարեկարգ երկսեռ* Նախակրթարան *ունի* 100 *աշակերտներով*, *որոց* 80*ը թոշակաւոր են եւ* 20*ը անթոշակ*, *չքաւոր լինելոյն համար* ․․․ *Ընկերութիւնս կը պատրաստուի ներկայ տարւոյ Մարտի սկիզբները մի* գիշերօթիկ վարժարան *եւս բանալ*․ ասոր համար մի ընդարձակ յարմար տուն վարձեց եւ ուրիշ պատրաստութիւններ կը տեսնէ։ *Ընկերութիւնս այս մասին ազգասիրաց աջակցութեանը կը կարօտի*» (Մասիս, 1880 *Թ*․ 1560)։

*Նոյն լրագրիչ — Թղթակիցը* 1880 *Մայիս* 24*ին Սեբաստիայէն ցաւով կը տեղեկագրէ*․ «*Համալսարանական Ընկերութիւնը* չկարողացաւ գիշերօթիկ դպրոցը բանալ,

յուսացուած քաջալերութիւնը գտած չլինելուն եւ գիշերօթիկ աշակերտները չամբողջանալուն համար» (Մասիս, *անդ՝ թ.* 2655)։

1880 *Սեպտեմբերի սկիզբը Սեբաստիոյ մէջ կը կազմուի* «Կրթական Միութիւն Փոքր-Հայոց» *անունով Ընկերութիւն մը, որուն նպատակն էր* Սեբաստիոյ նահանգին մէջ կազմուած բոլոր Ընկերութիւնները միացնել, «ի մի ձուլել»։ *Համալսարանական Ընկերութիւնը* կը միանայ *անոր հետ՝ իր ունեցած երկսեռ վարժարանն ալ անոր յանձնելով*։ *Վարագդատ Փթթեան անդամ էր այդ Նոր Ընկերութեան* (Մասիս, 1880 *թ.* 2784 — *Տե՛ս* Նոր Սեբաստիա, *Նիւ Եորք* 1954 *թ.* 5, *էջ* 6–9)։

32. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է* 1878*ի ամրան, դի* 1879 *Ապրիլ* 21*ին* ութը ամիս անցած է *իր հիմնումէն* (Հայրենիք, 1879 *թ.* 560)։ *Վարչական Մարմինը կը գրէ. «Մեր Ազգին կրած ազգի ազգի տառապանքները եւ եւրոպական տէրութեանց ընելիք բարենորոգումները ստիպած են զմեզ մեր գաւառական դրասեղաններու վրայ* Ընկերութիւն մը կազմել, *որն որ նպատակ ունենայ* 1. Ազգ. ներկայացումներով ազգային օգտակար ծառայութիւններ մատուցանել, 2. *Յարդ գործուած եւ գործադրելիք զեղծումներն հարստահարութիւնները հաղորդել լրագրաց։ Ընկերու-*

*թեանս Գործադիր Ժողովը ըստ օրինի իւր Ընդհ. Ժողովէն ընտրուած է եւ կազմու-թենէն սատի բաժանորդութեամբ եւ նուէր-ներով փոքր ինչ պիտոյքներ հայթայթած է ներկայացում տալով, ինչպէս նաեւ մի քանի անգամ ալ տուած է...*

*Ի դիմաց* Արշակունեաց Ընկ.

*Ատենապետ* *Տեսուչ*
*Յ. Մանուէլեան* *Հայկ Ա. Վարդանեան*
21 Օգ. 1879 (Հայրենիք, *անդ*)։

33. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878–1879)

*Աշակերտական Ընկերութիւն մըն է «Օ-ժանդակ Ընկերութիւն»ը, զոր կազմած են Ս. Սարգիս Թաղի* Ներսիսեան վարժարանի *սաները, երբ* 1878–9*ի տարիներուն, ինչպէս կը պատմէ Ընկերութեանս հիմնադիրներէն մին՝* Յովհաննէս Թորիկեան. «*Մեր մանկա-կան ուսանողական օրերուն* Ա. կարգի աշա-կերտներս *ուրիշ կարգերու հետ բաժանոր-դագրութեամբ կազմեցինք* Օժանդակ Ընկե-րութիւնը, *որուն նպատակն էր* ձրի հայ-թայթել մեր աղքատիկ սաներուն մելան, գրիչ, գլխարկ եւ ոտից աման» (Ալիս, *ԺԱ. տարի Թ.* 2, *էջ* 5)։

34. ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* 1879 *Ապրիլ* 22*ին*։ *Հիմնա-դիրներէն մին է* Մանուկ Նորհատեան։ *Սե-*

*բաստիայէն կը գրէ* Գէորգ Մ. Գամպուռեանց 1879 *Ապրիլ 30ին.* «*Այս օրերս մի քանի եռանդուն երիտասարդներ Ընկերութիւն մ'ալ կազմեցին* «Մարդասիրական *անունով, որոյ* նպատակ *խիստ գովելի է, այն է* քաղաքիս մէջ դպրոց մը բանալ : ... *խիստ քիչ կարեւորութիւն տրուած է մեր Ազգին մէջ* Որբանոցի ... որբերը խնամելու եւ դաստիարակելու պէտքն երբեք զգացուած չէ *բաց ի Պրուսայէն եւ Այնթապէն: Սեբաստիոյ այս երիտասարդք ալ ուզելով իրենց ընկերին ծառայութիւն մը մատուցանել, այս բարի գործին ձեռնարկեցին եւ անցեալ Կիրակի, Ապրիլ 22ին, ժողովուրդը* Ս. Ներսիսեան *դըպրոցն հրաւիրեցին, բաժանորդագրութեան մասնակցելու: Իրենց այս հրաւէրը լաւ ընդունելութիւն գտաւ եւ մեծ թուով ժողովուրդք որոշեալ ժամուն դպրոցը հաւաքուեցան. կարճ աղօթքէ մը վերջ Ազգ. երգ մի երգուեցաւ. ապա դպրոցի նոյն աշակերտներէն երկուքը մէկ մէկ հակիրճ ճառախօսութիւններ ըրին, յետոյ Ընկերութեան հիմնադիրներէն Մանուկ էֆ. Նորհատեան Ընկերութեան նպատակին եւ* Կանոնագրոյն *վրայ ազդու ատենաբանութիւն մը ընելով՝ ժողովուրդը բաժանորդագրութեան յորդորեց ... ներկայ գտնուողներէն գրեթէ ամէնը բաժանորդ գրուեցան. յետոյ բաժանորդաց մեծագոյն մասը, որ Ընդհ. Ժողովն է, գաղտնի քուէարկութեամբ իւր Դիւանը*

*կազմեց եւ Գործադիր Ժողովն ընտրեց, որ 12 անդամներէ կը բաղկանայ ... սոյն բարենպատակ գործը Ազգ. յառաջադիմութեան կարեւոր նպատակ մը կը խոստանայ* որբերը խնամելով եւ դաստիարակելով ...» (Հայրենիք, 1874 *Թ*. 528)։

*Գարեգին Վ. Սրուանձտեանցի (Թորոս Աղբար Ա.) յիշած «Ծղնաւորներու» մէկ հատուածն է այս Ընկերութիւնը, որ բողոքականամէտ ըլլալուն՝ Սեբաստիոյ մէջ լաւ աչքով չի դիտուիր։ Ազգ. Վարչ. Խառն Ժողովը կը մերժէ վաւերացնել այս Ընկերութեան* Կանոնագիրը (*Տե՛ս* Մասիս 1879 Թ. 2389)։ 1880*ի սկիզբը Ընկերութիւնը ունի իր յատուկ դպրոցը, որ* ընտելարան *մ'է* (Մասիս, 1880 *Թ*. 2783)։

35. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879–1880)

*Կը յիշուի* 1880 *Փետր*. 17*ին եւ ունի* իւրանուն *դպրոց մը* — Հայկական վարժարան — *ուր կը յաճախեն* 60 *աշակերտներ* (*Տե՛ս* Մասիս, 1880 *Թ*. 2783)։

36. ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ՓՈՔՐ–ՀԱՅՈՑ (1880)

*Կը յիշուի* 1880 *Սեպտեմբերին սկիզբը*։ *Հիմնադիրներն են*. Նշան Թէրզեան, Սիմոն Հէքիմեան, Սէրովբէ Օտապաշեան, Վարագդատ Փթթեան, Նազարէթ Յ. Խութամպօլեան, *որոնք միանգամայն Ընկերութեան* Տնօրէն ժողովը *կը կազմեն*։ Նպատակն *է*,

«Սեբաստիոյ նահանգին մէջ ազգային դաստիարակութիւնը ծաւալել: *Պէտք ջանալ նահանգիս մէջ կազմուած ազգօգուտ Ընկերութիւններն ի մի ձուլել: Ունի մի բարեկարգ երկսեռ վարժարան, որ իւրեան յանձնած է ազգասիրաբար տեղւոյս* Համալսարանական Ընկերութիւնն *եւ ինքն ալ* Կրթական Միութեանս հետ միացած է: *Միութիւնս* Մայր վարժարանի *ներքնասրահին մէջ ամէն կիրակէ ազգային հարկաւոր նիւթերու եւ կենցաղօգուտ խնդրոց վրայ ատենախօսութիւններ կ'ընէ, լրագիր կը կարդայ եւ արհեստաւոր աշակերտաց կը դասախօսէ համառօտաբար հայերէն, ազգ. պատմութիւն, թուաբանութիւն, աշխարհագրութիւն, ազգ. երգեցողութիւն* ... 1881 Մարտ ամսոյն մի գիշերօթիկ վարժարան *պիտի բանայ Ս.* Հրեշտակապետի վանաց մէջ ... *Սոյն գիշերօթիկ վարժարանին մէջ պիտի աշակերտին* իւրաքանչիւր հայ գիւղէ մի աշակերտ *առաջին անգամ: Վերջապէս Միութիւնս պիտի ջանայ* նահանգիս Հայ ժողովուրդն ժամանակիս յայտնի պահանջից համապատասխանող դրից մէջ դնել» (Մասիս, 1880, Թ. 2783): — *Յաջորդ թղթակցութեան մէջ նորութիւն մը չենք գտներ: Որքան գիտենք իր նպատակին չի կրնար հասնիլ Ընկերութիւնը: Գիշերօթիկ վարժարան չի բացուիր:*

### 37. «ՀԱՅ ԶԱՒԱԿՆԵՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Յիշատակութիւնը շատ ուշ՝* 1911*էն է*։ *Բայց որովհետեւ Սեբաստացի ծանօթ դրագէտէ մը եկած է՝ հարկ է որ ընդունինք ճըշդութիւնը*։ Արմենակ Զուգասզեան *կը գրէ* 1911*ին* «Տեղագրական» *վերնագրի տակ տեղեկատուութիւն մ՚ընելով* Սեբաստիա քաղաքի *մասին*. «*Քաղաքիս մէջ* «Հայ զաւակներ» *անունով* Ընկերութիւնը, *որ* 30 տարիէ ի վեր գոյութիւն ունենալով՝ աղքատիկ տղայոց գիրք կը հայթայթէ» (Երկիր, *Ատափազար*, 1911 *Թ*. 11, *Յունիս* 19)։ — *Ուրեմն հիմնուած* 1881*ին՝ կը գործէր տակաւին* 1911*ին*։ *Այսքան է մեր ծանօթութիւնը*։

### 38. ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883–1884)

1879*ին Պոլսոյ մէջ հաստատուած* «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»*ը Հայաստանի մէջ եւ այլուր կազմուած շատ մը նման Ընկերութիւններու նախաօրինակը հանդիսացած է*։ Սեբաստիոյ *մէջ կազմուածը կը կոչուի* «Հայուհեաց Ընկերութիւն»։ *Սեբաստիոյ «Հայուհեաց»ը* երկու անգամ *կազմուած է*։ *Վերջինը տեղի ունեցած է* 1884 *Մայիս* 6*ին*։ *Իսկ առաջինի կազմութեան ճըշգրիտ թուականը չունինք*։ 1884 Մայիս 18ին *գրուած թղթակցութիւն մը կ՚ըսէ*. «իւր նախորդին չնմանի», *որմէ կը հետեւցնենք թէ* 1884 Մայիսէն առաջ *անգամ մը փորձուած է հիմնել «Հայուհեաց Ընկերութիւն» մը, որ*

ձախողած եւ տեւականութիւն չէ ունեցած։ Ե՞րբ տեղի ունեցած է այդ սակայն, 1884ին սկիզբնե՞րը, թէ նոյն իսկ 1883ին։ Ոչ մէկ բացատրութիւն կը գտնենք։ Սա միայն ստոյգ է որ 1884 Մայիս 6էն առաջ սկիզբ եղած է կազմութեան՝ բայց ուէ պատճառով չէ տեւած։

Ահա այդ մասին 1884 Մայիս 18ին Սեբաստիայէն գրուած թղթակցութիւնը. «Կ. Պոլսոյ Հայուհեաց Ընկերութեան մի ճիւղ հաստատուեցաւ աստ մի քանի օր առաջ եւ առաջին նիստն բրաւ. անդամներ որոշուեցան եւ հիմնադիրներն արձանագրուեցան. բայց այս կազմութիւնն երկրորդն է. անդամներ մեծ եռանդ կը ցուցնեն. մեր կողմէն յաջողութիւն կը մաղթենք եւ կը փափաքիմք իւր յառաջդիմութիւն. իցիւ թէ իւր նախորդին չնմանելով, ապադայ սերնդեան բարեբարներ ըլլային ... կը յուսանք որ այս նորակազմ Ընկերութեան յառաջդիմութեան համար ամէն կերպիւ օգնելու կ'աշխատին Սեբաստացի տիկնայք եւ օրիորդք» (Մասիս, 1884 Թ. 3698)։

Ընկերութեանս հիմնուելու առիթի մասին Արեւելք (1884 Թ. 141) հետեւեալը կ'աւանդէ 1884 Յունիսին. «Բողոքական միսիոնարուհիներ Հայոց տուներն յաճախելով՝ գիտութիւն ուսուցանելու պատրուակաւ Աւետարան կը քարոզեն եւ բողոքականութեան գաղափարներով կը տոգորեն զկանայս, ուս–

*տի* Հայուհեաց Ընկերութիւն *մը կազմուեր է, որ կ'աշխատի հեռացնել այդ օտարներն,* հաստատելով քաղաքին վարժարաններ եւ ջանալով ձեռք բերել կարեւոր գրքեր ու բաժնել դասախօս վարժուհեաց եւ աղքատիկ աշակերտուհեաց»:

*Ընկերութեանս մասին կարեւոր աղբիւր մ'է* Հայրենիք *թերթը, որուն մէջ* 1885 *Օգոստոսին Սեբաստիայէն սիրուն թղթակցութիւն մ'ըրած է* Եաղուբ Կիւրիւնցեան՝ *պատմելով մանրամասնութիւններ Ընկերութեանս կազմի եւ գործունէութեան մասին*:

1885 *Յուլիսին կը գրէ Սեբաստիայէն* Տիկին Եաղուբ Կիւրիւնցեան. «... *Սեբաստիան թէպէտ երբեմն իր արական սեռի դաստիարակութեան մասին գովեստից արժանի վիճակ մ'ունեցաւ* ... բայց իգական սեռի դաստիարակութիւնն խիստ արգահատելի վիճակի մէջ կը գտնուէր: *Թէպէտ անուրանալի է թէ քանի մը դպրոցներ բացաւ, սակայն լոկ մատաղ դասն կրթելու կը ծառայէր եւ չափահաս օրիորդները զուրկ կը մնային այս լոյսէն: Սոյն մեծ թերին լեցուցաւ իգական սեռի կրթութեան մեծ ոյժ տալու նպատակաւ* Ն. Տաղաւարեան *էֆ.* անցեալ տարւոյ Մայիս 6*ին* կազմեց *սոտ մի* Հայուհեաց Ընկերութի*ւն նպատակ ունենալով* իգական սեռի դաստիարակութեան, վայելչութեան եւ պարզասիրութեան հոգն ստանձնել ... *Ընկերութեան Գործադիր Ժո-*

*ղովն 12 անդամուհիներէ կը բաղկանայ*, Քաղաքիս առաջնակարգ անձանց կիներէն բաղկացեալ: *Անձնիւր անդամուհի* ունի իւր խորհրդականն արական սեռէ, որոց ամբողջութիւնն կը ներկայացնէ խորհրդականաց ժողովն: *Բաժանորդութեանց թիւն այժմ 400ի մօտ է, որ տարին մի անգամ կը գումարի Գործ. Ժողովոյ ընտրութեան համար: Ընկերութիւնն իւր կազմութենէն մի ամիս վերջ սկսաւ ցոյց տալ իւր արդիւնքը. չափահասից դաստիարակութեան նպաստելու համար* վարժարաններ բացաւ թաղերու կեդրոնական տանց մէջ, *ուր վարժուհիք չաբաթը 3 անգամ այցելութեամբ կը դասախօսեն սկզբնական հմտութեան յատուկ ամեն ինչ՝ անդ հաւաքեալ բազմաթիւ կանանց եւ օրիորդաց: Այժմ գլխաւոր թաղերու մէջ 500է աւելի կիներ եւ օրիորդներ կը դաստիարակուին: Դասախօսութեանց հսկող կարգուած էր Ընկերութեանս Հիմնադիր եւ Տեսուչ* Ն. Տաղաւարեան էֆ., *որ երկու ամիսէ ատդի Պոլիս մեկնած է: Արդարեւ Ընկերութիւնը այն ազնիւ երիտասարդի մեկնման առթիւ խորին վիշտ զգաց, վասն զի նմա կը պարտէր իւր սկզբնաւորութիւն, մանաւանդ իւր յաջողութիւն ... Հայուհեաց Ընկերութիւն իւր անկարող սանուհեաց դպրոցական պէտքերն եւս կը մատակարարէ եւ Ամանորին առթիւ փութաց մի պրակ կառ. նուիրել* Սենեքերիմեան Ընկերութեան *իրաւասու-*

թեան տակ գտնուած իգական սեռի Նախակրթարանին ։ Ընկերութիւնն իւր գտած մեծ ընդունելութիւններէն քաջալերեալ՝ խնդրեց Սենեքերիմեան Ընկերութենէն որ իրենց յանձնուին իգական սեռի երեք վարժարանները, այս տարուան համար դոյզն գումար մը վճարելով ։ Իւր այս օգտաւէտ առաջարկ ընդունելով՝ գրեթէ երկու ամիսէ աստի ընդհանուր հայ իգական սեռի դաստիարակութեան ղեկն, պարծանօք կրնամ ըսել թէ Սենեքերիմեան Ընկերութենէն աւելի կանոնաւորութեամբ կը վարէ Հայուհեաց Ընկերութիւնը» (Հայրենիք, Կ. Պ. 1885 Թ. 21, Օգոստ. ։ — Հմմտ. Արեւելք 1884 Թ. 141) ։

Ընկերութիւնը եռանդով կը շարունակէ իր գործը 1888ին ալ (Հայրենիք, 1888, էջ 362 եւ 372) ։ 1891ին դեռ կը գործէ եւ վարժուհիներ ալ կը հասցնէ (Հայրենիք, 1891 Թ. 62) ։

### 39. ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884–1886)

Կը յիշուի 1888ի ամրան, երբ ունի համանուն դպրոց մը քաղաքին մէջ, որուն չքաւոր աշակերտներուն դպրոցական պիտոյքը կը հոգայ եւ հաստատուած է կիրակնօրեայ Ընթերցարան մը ։ 1888ին գործօն անդամներն են. Սահակ Էգնայեան, Յարութիւն Մանուէլեան, Տիգրան Պէգիրճեան, Միհրան Թաշճեան ; Յարութիւն Զարդարեան (Հայրենիք Կ. Պ. 1888, էջ 362 եւ 372) ։

### 40· ՓՐԿՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884–1886)

*Դոկտ. Կ. Յ. Փաշայեան*, *Պոլսէն* 1888-*ին Սեբաստիա ճամբորդած ըլլալով՝ տեղւոյն վրայ հաւաքած է տեղեկութիւններ եւ գրած Պոլսոյ* Հայրենիքին *մէջ*։ *Արդ*, 1888*ին Սեբաստիոյ մէջ կը գտնէր նա* «Փրկչեան Ընկերութիւն» *մը*, *որ* «*համանուն վարժարանին ընտելարանը կը հոգայ*» (Հայրենիք, *անդ*, *էջ* 362 *եւ* 372)։ *Փաշայեան չէ հետաքրքրուած Ընկերութեան ծագումին եւ այլ պարագաներու մասին*։ *Կը խորհինք թէ հիմնումը կրնայ* 1884–6*ի շրջանին տեղի ունեցած ըլլալ*։ 1888*էն առաջ չեն յիշուիր այս երկու Ընկերութիւնները*։

### 41 ՈՐԲԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1887)

1889 *Սեպտեմբերէն* տարի մը առաջ պաշտօնապէս հաստատուած է *Սեբաստիոյ Առաջնորդէն* (*Տես* Արեւելք, *Կ. Պ.* 1889 *Թ.* 1711)։ *Կրնար*, *ուրեմն*, *անպաշտօն կերպով արդէն* 1887*ին գոյութիւն ունենալ*։ *Ըստ* Փունջի (1889 *Թ.* 2138 *եւ* 2145) *Թղթակցին հիմնումը եղած է* 1887*ին*։ 1888 Հոկտեմբերին որբանոց մը կը հիմնէ *Սեբաստիոյ մէջ*։ *Իր հիմնադիրներն եղած են* «18–25 տարեկան երիտասարդներ, մեծ մասամբ արհեստաւոր դասին պատկանող, մէկ մասն ալ ուսուցչական մարմնէն...»։ (Հայրենիք, *Կ. Պ.* 1892 *Թ.* 123)։

*Ընկերութեանս* նպատակն *եղած է* Սե–

բաստիոյ մէջ Որբանոց մը բանալ (Արեւելք, 1889 *Թ.* 1574) *եւ* «որբերը փիզիքապէս եւ բարոյապէս կրթելով՝ Տէրութեան ու Ազգին օգտակար անհատներ հասցնել» (Անդրանիկ, *Սերաստիա* 1909 *Թ.* 5)։ *Իր ծրագրին մաս կը կազմէ նաեւ «խնամել որբեր* իգական սեռէն, կառուցանել Որբանոց մը, *որուն կցել նաեւ* երկսեռ վարժարան մը» (Արեւելք, *անդ*)։

*Ընկերութեան անդամավճարն է չաբաթական 20 փարա։ Ունեցած է* Կանոնագիր, *որքան գիտենք չհրատարակուած*։ — 1889*ին Մասնաճիւղ մը կ՚ունենայ Պոլիս* (Արեւելք, 1889 *Թ.* 1711)։

*Ընկերութիւնը իր որբանոցի* անպաշտօն *բացումը կը կատարէ* 1888 *Հոկտ.* 16*ին* 4 *որբերով. իսկ* 1888 *Դեկտ.ին մէկ որբ ալ ընդունելով՝ որբերու թիւը կ՚ըլլայ* 5։ *Այս մասին թղթակից մը կը գրէ Սեբաստիայէն* 1889 փետրուարին. «Հայկական Որբանոց մըն ալ բացուեցաւ աստ (*Սեբաստիա*) *իբր* չորս ամիս առաջ ... *հոն ուր մանուկներ կը խնամուին Հաղաբարձութեամբ* Որբասէր անուն Ընկերութեան *մը, որոյ գործունէութեան եւ յարատեւութեան նկատմամբ հաստատուն գաղափար մը կազմելու համար՝ ժամանակ մը եւս պարտիմք դիտել Ընկերութեան գործոց ընթացքն*» (Արեւելք, 1889 *Թ.* 1536)։

*Ընկերութիւնը ամբացնելու համար իր*

*գոյութեան հիմերը՝ եւ չահելու համար ժողովուրդին համակրութիւնը՝* 1889 *Յունուար* 15*ին կը կատարէ իր Որբանոցին* պաշտօնական *բացումը* հանդէսով մը: *Թղթակիցը՝ «Պարոյր» կը տեղեկագրէ* 1889 *Մարտ* 16*ին.* «Որբասէր Ընկերութիւնն *Առաջնորդ Հօր եւ Պատկ. Քաղ. Վարչութեան կողմէ վաւերացեալ* Կանոնագրով միամեայ բաժանորդագրութենէ յետոյ՝ ձեռնարկած է ի գործ: *Թէպէտ կանուխ կը համարէր սկսումն, զի գէթ հինգ որբեր պահելու համար մէկ պատրաստութիւն իսկ չունէր*, ըստ պահանջման Կանոնագրի՝ *սակայն նկատելով թէ* բաժանորդները տակաւ կը նուազին, *խոհեմութիւն սեպեց այսպիսի պարագայի մէջ անյապաղ սկսիլ* իւր նպատակի գործադրութեան, *քանի որ* մնացեալ բաժանորդք ալ կը թախանձէին Որբանոցին *բացումն: Բացման հանդէսը տեղի ունեցաւ ի Մայր եկեղեցւոջ* ներկայ (1889) տարւոյ Յունուար 15ին *կիրակէ առաւօտ յետ աւարտման ժամերգութեան: Երկսեռ բազմութիւն մը խռնուած էր անդ. ամէն աչեր կեդրոնացած էին որբերուն վրայ, որ զառաջինն սկսան երգել. «Ո՛վ Հայր Աստուած եւ Բարերար...» իրենց գողտըր եւ անոյշ ձայնով թնդացնելով գմբէթն սրբազան... Տնօրէն Խորհրդոյ անդամներէն մին կարդաց* Ընկերութեան Տեղեկագիրն, *յետ որոյ ... որբերէն աւագագոյնն «Յիշեցէք Որբերը» խօսագրով մի արձակ բանա-*

տեղծութիւն արտասանեց, ա՛յնքան մելամաղձիկ եւ այնքան յուզիչ շեշտերով որ ի լուր առհասարակ հանդիսականաց աչերէն արտասուաց յորդ կայլակներ կը գլորէին… յետոյ որբերը «Ով Հայր» երգելով՝ հանդէսին վերջ տուին … բաժանորդաց թիւն աւելցաւ» (Արեւելք, 1889 Թ. 1574):

Ընկերութիւնը 1890 Օգոստ. 15ին Որբանոց-դպրոց մը կը բանայ, որուն մէջ կ'ընդունուի 5 ղրուշ ամսականով արտաքին աշակերտ, 8 ոսկի տարեթոշակով՝ գիշերօթիկ աշակերտ (Անդրանիկ, Սեբաստիա 1909 Թ. 8): 1892ին «լուիկ մնջիկ կը գործէ Ընկերութիւնը» (Հայրենիք, 1892 Թ. 123), ունի 17 որբ, որոնցմէ մին գիշերօթիկ է, ատկէ զատ իր դպրոցին մէջ ունի 250 աշակերտ: 1892 Դեկտեմբերին կը ձեռնարկէ կազմել Գրադարան մը՝ հայերէն, ֆրանսերէն եւ տաճկերէն գրքերով, որպէս զի տղաք իրենց պարապոյ ժամերն ընթերցումով օգտակարապէս անցնեն (Արեւելք, 1892 Թ. 2672):

1895ի ջարդերը տակնուվրայ ըրած էին Որբասէր Ընկերութեան կազմն ու Որբանոցի վիճակը: Ընկերութեան անդամներէն ոմանք մեռած եւ ուրիշներ հեռացած էին: 1897ին հարկ կ'ըլլայ Ընդհ. ժողովով նոր Հիմնադրաց ժողով եւ Հոգաբարձութիւն ընտրել: 1897էն վերջ Ազգային Որբանոցի կազմումով նոր Կանոնագրութիւն կը յօրինուի, նոր Հոգաբարձութիւն կ'ընտրուի, որ կը կոչուի

նմանակալութիւն *եւ «Որբասէր Ընկերութեան» անունը մոռացութեան կ'ենթարկուի* (*Տես* Նոր Սեբաստիա, *Նիւ Եորք* 1953 *Թ*. 3, *էջ* 4–12)։

42. ՈՒՍՈՒՄՆԱՍԷՆՉ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Հիմնադիրներէն կը յիշուի* Խորբով Գաբապաճագեան (*Արտոնց Խօսրով*), *որ դեռ իբրեւ դպրոցական կը կազմակերպէ Ընկերութիւնը* 1888*ին* (*Հայ Հանրագիտակ*, *էջ* 310)։ — Մ. Իսպերեան (*Սեբաստացի*) *կը գրէ որ Ընկերութեանս նախնական անունն եղած է* «Արմէնեան *Ընկերութիւն*», *որ հիմնուած է* Գապապաճագեան եւ Թ. Մաղաքեանի *կողմէ՝ նպատակ ունենալով* «զարգացած մարդեր պատրաստել» (Նոր Այգ, *Մարզուան*, 1914 *Թ*. 34)։ *Ընկերութիւնս վաւերացուած է Առաջնորդարանէն՝ անուանափոխութենէն վերջ* (*Անդ*)։

43. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Հիմնուած է* 1888 *Փետրուարին* (Փունջ, 1889 *Թ*. 2138)։

44. ՀԱՅ ՏԻԿՆԱ՞ՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888–1890)

«*Ա. Եղիշէ*» *ստորագրող Սեբաստացի թղթակից մը* 1891*ին Պոլսոյ* Հայրենիք *Օրագիրին* (*Թ*. 62) *կը գրէ*. «*Աղջկանց վարժարանի շինութեան ատեն քանի մը ազնիւ ու բարեսէր* Տիկիններ Ընկերութիւն մը կազ-

մեցին եւ տունէ տուն պտտելով դրամ հաւաքեցին: Կանանցմէ ոմանք ստակ տուփն, ոմանք ալ ճայտունուն ոսկիէն կտրելով տուփն: Վերջապէս գովելի յօժարամտութեամբ եւ բուռն եռանդով տուփն ու տուփն: Այդ Տիկիններր դպրոցին խնամակալութիւնն ալ ընդունեցին, բայց քիչ վերջն ձայներնին կտրաւ ... Կը ցաւինք որ այդ ազնիւ Տիկինները չեն շարունակեր սկսած օգտակար գործերնին ... Կը յուսանք թէ այս տողերը կարդալով Սեբաստիոյ դպրոցասէր Տիկինները պիտի վերստանձնեն աղջկանց վարժարանի խնամակալութիւնը, փոյթեռանդութիւն ցոյց պիտի տան, վարպետ—ուստուններու վարժոցները մէկ երկու Ծաղկոցներու եւ մեծ վարժարանն ալ Նախակրթարանի պիտի վերածեն եւ Հայուհեաց Ընկերութենէն ալ վարժուհի մը պիտի ուզեն՝ ամսականի վճարումը ապահովցնելով»: — Սեբաստիոյ Արամեան վարժարանի շինութիւնը 1890ին սկսած է, ունենալով աղջկանց բաժին մ'ալ (Տե՛ս Հայրենիք 1893 թ. 620): Եթէ վերի ակնարկը աղջկանց վարժարանի մասին է՝ այն ատեն Ընկերութեան հիմնումը կրնայ եղած ըլլալ 1890ին: Կը մնայ սակայն Ընկերութեան անունը անծանօթ:

## 45. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

Հիւանդանոցի Ընկերութիւնը հիմնուած է 1889ի սկիզբները: Իր հիմնադիրներն են

*«Քանի մը բարեսիրտ անձնաւորութիւններ»*, *որոնք* «Ընկերութիւն մը կը կազմեն իրենց մէջ, *նպատակ ունենալով* սրճարաններու եւ պանդոկներու մէջ թշուառութեան, ցաւերու մէջ տուայտող հիւանդներու ձեռք կարկառել եւ խնամել զանոնք»: «Շատ փոքրիկ թուով մը ճամբայ ելլող այս խմբակը, *իրենց համար* շաբաթական պայմանադրական վճարագիններ կ'որոշեն, *որուն հասոյթին տարբեր նուիրատուութիւններ ալ միանալով, հետզհետէ աւելի լայն շրջանակի մէջ գործել կը սկսին. այնպէս որ օրին մէկը բաւական կլորիկ գումարով մը, կարող կ'ըլլան* հիւանդները սրճարանէն հոն փոխադրելու համար տուն մը վարձելու: *Զուտ գութի ազնիւ զգացումէ թելադրեալ այս* Ընկերութիւնը *քիչ ատենէն ընդհանուր համակրութիւն մը կը շահի ամէն կողմէն, այնպէս որ* 1893*ին գետին մը կը գնուի հիւանդանոց մը կանգնելու գաղափարով: Շինութեան գործը կամաց կամաց յառաջ կը տարուի: Այլ եւս անկէ վերջ հետզհետէ յառաջդիմութիւն մը եւ կատարելագործում մը իր բաժինն ունենալով անոր մէջ՝ այժմեան դիրքին կը բարձրանայ», կը գրէ* Տիգրան Փիւրանեան (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1904 *Թ.* 788 *Փետր.*):

Կ. Տէր Խաչատուրեան *կը հաստատէ որ Հիւանդանոցի գոյութիւնը «սոսկ ժողովրդական ձեռնարկ մ'է, յառաջ եկած միայն*

*մարդասիրական աղնիւ զգացումէ»* (Բիւզանդիոն, Կ. Պ. 1906 Թ. 3976)։

1890*ին Ընկերութեան գլխաւոր անդամներն էին.* Տաշճի Խէլօֆ Երիմ, Միհրան Ապանեան, Ստեփան Օտանեան, Ղասապ Ակօ, Նշան Թաշճեան, Խաչատուր Երկանեան, Խաչատուր եւ Մարտիրոս Դեղնածեան (Ալիս, ԺԲ. Թ. 2, էջ 21)։

*Անդամավճարը չարաթական* 20 *փարա էր.* 1906*ին անդամներու թիւն էր* 420. *Կանոնագրութեամբ Հիւանդանոցի Վարչութիւնն ու մատակարարութիւնը յանձնուած էր Ընկերութեան* 420 *բաժանորդաց* Ընդէ. Ժողովին *եւ անոնցմէ ընտրուած Տնօրէն եւ* Քննիչ Խորհուրդոց. *Ընդհ. Ժողովին Դիւանը վերընտրելի էր երեք տարին անգամ մը։ Տնօրէն Խորհուրդը երկամեայ շրջան մ'ունէր եւ ինը անձերէ կը բաղկանար, որոնցմէ վեցը միայն փոփոխելի էին։ Քննիչ Յանձնաժողովը հինգ անդամէ կազմուած էր եւ եռամեայ շրջան մ'ունէր* (Բիւզանդիոն, 1906 Թ. 2958)։

*Սեբաստիոյ Հիւանդանոցին վրայ առանձին գրութիւն մ'ունինք։*

46. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1891)

Ա. Եղիշէ *տորադրող Թղթակից մը Սեբաստիայէն կ'իմանայ Թէ* «Պօլիս գտնուող *Սեբաստացի ուսումնասէր երիտասարդութիւնը կ'աշխատի* «Սեբաստիոյ Ուսումնասի-

բաց Ընկերութիւն» *անունով Միութիւն մը հաստատել, որոյ նպատակը ... Սեբաստիոյ մէջ կրթութեան ծաւալմանը աշխատիլ է։ Պատրիարքարանի բարձր հովանաւորութիւնը վայելելու համար ալ իրենց* կանոնագիրը *վաւերացնել պիտի տան Ազգ. Կեդրոնական Վարչութեանէն»* (Հայրենիք, *Կ. Պ.* 1891 *Թ.* 58 *Հոկտ.* 14)։

47. ՏԱՐԱԳԻՐ ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂԱՑ ՊԱՇՏՊԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1896–1897)

*Հիմնադիրն է* Խոսրով Գարապաճագեան. *հիմնած է* Անգլիոյ *մէջ* (*Հաւանօրէն Լոնդոն*) *եւ տեւած է* 8 *տարի* (Նոր Ազգ, *Մարզուան* 1913 *Թ.* 34, *էջ* 69։ — *Հմմտ. Հայ Հանրագիտակ, Պուքրէշ* 1938, *էջ* 311)։

48. ՍԵԲ. ՀԻՒԱՆԴ. ԵՒ ԱՂՔԱՏ. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897)

*Այսինքն՝* «Սեբաստահայ Հիւանդանոցի եւ Աղքատախնամի Օժանդակ Ընկերութիւն», *հիմնուած է Նիւ Եորք* 1897 *Նոյ.* 18*ին*։ *Հիմնադիրներն են* 33 Սեբաստահայեր (Ալիս, *Նիւ Եորք* 1929 *Թ.* 1 *էջ* 9)։ — *Տե՛ս նաեւ* Ազատամարտ, 1911 *Թ.* 523, *ուր հիմնումը* 1899*ին դրուած է*)։

49. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1899)

*Հիմնուած է* Գահիրէի մէջ 1899*ի ամառը*։ *Տնօրէն ժողովի Գանձապետն է* Մեսիա Մըսըրլեան (Արշալոյս, *Գահիրէ* 1899 *Թ.* 11)։

### 50. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԵՐՈՒԹԻՒՆ (1899–1900)

Կը յիշուի 1900ին լոկ անուան յիշատակութեամբ (Բիւզանդիոն, Կ. Պ. 1900 Թ. 1264)[1]:

### 51. ՈՐԲԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

Կազմուած է Գահիրէ 1900 Դեկտ. 1ին: Իր սկզբնական պատմութեան մասին բան մը չենք գտած: 1906ին Գործադիր ժողովը կը կազմեն.

| | |
|---|---|
| Յ. Հանէսեան | Ատենապետ |
| Յ. Եփրեմեան | Ատենադպիր |
| Ա. Քէօշէյեան | Գանձապահ |
| Յ. Պոտուրեան | Հաշուակալ |
| Ա. Էվլեան | |
| Վ. Ալթունեան | |
| Յ. Բրուտեան | |

(Ազատ Բեմ, Գահիրէ 1906 Թ. 41):

### 52. ԱԶԳ. ՈՐԲ. ԵՒ ՀԻՒԱՆԴ. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1903)

Սեբաստիոյ «Ազգային Որբանոցի եւ Հիւանդանոցի Օժանդակ Ընկերութիւն»ը հիմնուած է Նիւ Եորքի մէջ 1903ին եւ ունեցած Ծրագիր–Կանոնագիր մը, որ բարեփոխուած եւ հրատարակուած է 1906 Նոյ. 17ին: Նպատակն է «Նիւթապէս օգնել Սեբաստիոյ Ազգ.

---

[1] Ընկերութեանս յիշատակութեան հանդիպած ենք Բիւզանդիոնի 1900ի տարւոյն մէջ, բայց թիւը — 1264 — սխալ նշանակում մը կը թուի ըլլալ:

*Որբանոցին եւ Հիւանդանոցին»* (*Ամերիկա-Հայ Տարեցոյցը. Պոստոն* 1912, *էջ* 181)։ — 1910*ին սկիզբը Ընկերութիւնը Սեբաստիա կը գրկէ* 70 *ոսկի եւ այդ առթիւ տեղւոյն թերթը կը գրէ.* «Նիւ Եորքի Օժանդակը մեր Որբանոցին սիւնն է» (Անդրանիկ, *Սեբաստիա* 1910 *Թ.* 57 *Մարտ*)։

53. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908?)

1910*ին կը գրէ* Անդրանիկ (1910 *Թ.* 66 *Մայիս*). «*Տեղւոյս մէջ* կանխաւ գոյութիւն ունեցող «*Կրթասիրաց Միութիւն*»*ը* նորոգուելով՝ *առիթ տուաւ ժամանակէ մը ի վեր ընդհատած* Լսարանի *վերաբացման*»։ *Ատենապետն է՝* Անդրանիկ Ճէվիզեան (*Անդ*)։ *Ծագումը անծանօթ է մեզ։ Թերեւս* 1891*ի* «Ուսումնասիրաց»*ի անուանափոխութիւնը ըլլայ*։

54. ԱՐԱՄԵԱՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Արամեան վարժարանի շրջանաւարտները* 1908*ի վերջը կը կազմեն* «Շրջանաւարտական Միութիւն»*ը, որ* 1909*ի սկիզբէն կու տայ* նուագահանդէսներ՝ *երգախառն եւ բանախօսութիւններով ընդելուզուած* (Անդրանիկ, 1909 *Թ.* 2, *Յունուար* 31)։ *Միութիւնը կ'ունենայ* Գրադարան *մը մատչելի ուսանողներու համար* (*Անդ*)։ 1909 *Հոկտ.ին* Դիւանը *կը կազմէին.*

*Յովհաննէս Մէրպայտարեան* *Ատենապետ*
*Գէորգ Ակեահեան* *Բ. Ատենապետ*
*Նշան Խորէն* *Ա. Ատենադպիր*
*Յովհաննէս Մոսկոփեան* *Բ. Ատենադպիր*
(Անդրանիկ, 1909 *Թ.* 41)։

*Միութիւնը* 1913 *գարնան* կը վերակազմուի (Հողդար, *Սեբաստիա* 1913 *Թ.* 39)։

55. ԱՐՀԵՍՏԱԻՈՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908–9)

*Կը յիշուի* 1909 *Մարտին*։ *Հաւանօրէն* 1908*ի վերջը կամ* 1909*ի սկիզբը կազմուած է*։ *Գործ. ժողովը կը կազմեն.*

*Խ. Տէր Բարդող* *Ատենապետ*
*Խ. Կրտոտեան* *Ատենադպիր*
(Անդրանիկ, 1909 *Թ.* 7 *եւ* 45)։

56. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1909)

*Նիւ Եորքի Սեբաստացիներէն կազմուած է Միութիւնս, որ նպատակ ունեցած է Սեբաստիոյ «Աղքատախնամ»ին եւ «Լուսաբեր»ին նիւթապէս օգնել մերթ ընդ մերթ նպաստներ ղրկելով*։ 1909 *Մարտին կը ղրկէ* 34 *ոսկի* (Անդրանիկ, 1909 *Թ.* 12))։ *Հիմնումի թուականը անծանօթ է մեզ*։ 1910*ի սկիզբները կը ղրկէ Աղքատախնամին* 32 *ոսկի եւ Լուսաբերին նոյնքան* (Անդրանիկ, 1910 *Թ.* 61)։

*Միութեան Դիւանը կը կազմեն.*
*Յ. Ս. Մայեան* *Ատենապետ*
*Մ. Մէռկէռեան* *Ատենադպիր*
*Ս. Տէստէյեան* *Խորհրդական*

Գործ. Ժողովը կը կազմեն.
Յ. Պալպալեան Ատենապետ
Հ. Բարունակեան Ատենադպիր
Տ. Խորիկեան
Ն. Միքայէլեան
Բ. Պօղոսեան
Ն. Մաղաքեան
(Անդրանիկ, 1910 Թ. 70)։

Միութիւնը երկար ատեն չարունակած է իր նպատակը։ Իր Վարչ. Կազմին (1913 տարւոյ) լուսանկարը տուած է Ալիս (Նիւ Եորք 1929 Թ. 6, էջ 16)։

57. ԴԱՐԲԻՆ ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Դարբին արհեստաւորները 1909 Մարտին կը ջանան Միութիւն մը կազմել (Անդրանիկ, 1909 Թ. 12)։ Նոյն տարւոյ ընթացքին կը հիմնեն «Դարբին Բանուորական Միութիւն»ը (Հողդար, 1910 Թ. 4)։

58. ԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

1909 Ապրիլին ունի ընդարձակ սրահ մը, ուր տեղի կ'ունենան ճառախօսութիւններ զանազան նիւթերու շուրջ (Անդրանիկ, 1909 Թ. 15)։ Իր ծագումը կը կարծենք թէ հին չէ. 1909ի առաջին ամիսներուն կազմուած կ'երեւայ։

59. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՈՒՀԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Հռիփսիմեան աղջկանց վարժարանի Շրջանաւարտուհիները 1909 Ապրիլին կը

*կազմեն այս Միութիւնը, որ պիտի հետա-պնդէ «օգտաշատ ու գեղեցիկ նպատակներու իրագործման»* (*Անդրանիկ*, 1909 *Թ*. 17):

60. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇՐՋԱՆԱԻԱՐՏԻՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Սեբաստիոյ բոլոր վարժարաններու Շըր-ջանաւարտներէն կազմուած է: Ծագումը* 1909*ի գարունէն է եւ գաղափարը Արամեան Շրջան. Միութենէն: Կը կազմուի* 1909*ի ամառը: «Միութեան անդամակցողները պէտք է որ ոգելից ըմպելի, ծխախոտ չգոր-ծածեն եւ գպրոցէ յետոյ ալ ինքնազարգաց-ման աշխատող ըլլան, Ազգ. լուսաւորու-թեան եւ դաստիարակութեան ծառայեն»* (Անդրանիկ, 1909 *Թ*. 41, *Հոկտ*. 11): *Միու-թիւնը* կը լուծուի 1913*ի գարնան* (Հողդար, 1913 *Թ*. 39):

61. ԳՈՐԳԻ ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909*ի վերջերը: Նպատակ կը հետապնդէ պաշտպանել իրենց իրաւուն-քը. օգնել անդամուհիներուն*: 1910 *Յունուար* 12*ին կը սարքէ թատերական ներկայացում մը — Արցունքի հովիտը* (Անդրանիկ, 1910 *Թ*. 54): 1912*ին իր Վարչութիւնը կը կազ-մէին՝*

*Ն. Կրտոտեան* — *Ատենապետ*
*Ա. Նահապետեան* — *Ատենադպիր*

(Հողդար, 1912 *Թ*. 32):

62· ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909-10)

*Առաջին անգամ* 1910 *Մարտին կը հանդիպինք իր յիշատակութեան: Կը ներկայացնէ* «Քառասուն Մանկունք» *ողբերգութիւնը՝* «*Աղքատախնամ*»*ի ի նպաստ* (Անդրանիկ, 1910 *Թ*. 57): *Զենք կարծեր թէ շարունակութիւնն ըլլայ սակա* 1870*ին հիմնուածին*, որ 1881էն վերջ չի յիշուիր:

63· ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

1910*ին* Պոլսոյ *մէջ* 40*ի չափ սեբաստացի ուսանողներ կային, որոնք* 1910*ի վերջերը կը կազմեն այս Միութիւնը, որ կ'ունենայ իր* Ծրագիրը՝ *բաղկացած* 31 *Յօդուածէ եւ որուն* ութ *Յօդուածները հրատարակած է* Հողդար (1910 *Թ*. 10): *Ահա նմոյշներ:*

*Յօդ* 1. Նպատակ.— *Պոլսոյ սեբաստացի բոլոր Հայ ուսանողները չփման մէջ դնել. զանոնք Սեբաստիոյ կրթական գործով զբաղեցնելու համար...*

*Յօդ*. 6. Կազմութիւն.— *Միութեան անդամ ըլլալու իրաւունք ունին Պոլսոյ համալսարանական վարժարաններու սեբաստացի բոլոր հայ ուսանողները:*

*Յօդ*. 24. Պարտականութիւն. — *Անդամավճարն է ամսական* 2 *ղրշ. եւ մուտքի՝* 5 *ղրշ.:*

*Միութեան Դիւանի կազմն էր.*

| | |
|---|---|
| *Մ. Թումաճեան* | *Ատենապետ* |
| *Ա. Աճէմեան* | *Ատենադպիր* |

(Հողդար, 1910 *Թ*. 10, *Յունվ*. 15: — *Տե՛ս նաեւ* Ժամանակ, Կ. Պ. 1910 *Թ*. 1039): — «*Միութիւնը բաւականաչափ աշխատեցաւ իր նպատակին ուղղութեամբը քալել ու իր մի-ջոցներուն ներածին չափով ալ օգտակար ըլլալ*», *կը գրէ Պոլսէն* Ա. Ալիխեան (Հող-դար, 1914 *Թ*. 2): *Միութիւնը կը դադրի 1914ի գարնան, երբ ուսանողները ընթացա-ւարտ ըլլալով՝ կը ցրուին* (*Անդ*):

## 64. ՍՈՎԱՄԱՐՏ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմած են* Իզմիրաբնակ *սերաստացի-ներ* 1910*ի գարնան վերջերը*՝ «*օգնելու հա-մար իրենց սերաստացի հայրենակիցներուն, որոնք սկսած են տառապիլ սովին պատճա-ռաւ տիրող թշուառութիւններէն*» (Դաշինք, *Իզմիր* 1910 *Թ*. 27, *Յունիս* 26): *Գանձա-պետն է* Մարտիրոս Գասմանեան (*Անդ*):

## 65. ՍՊԱՌՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

1910 *Ապրիլ* 20*ին Ս. Փրկչայ դպրոցին մէջ գումարուած ժողովի մը մէջ կը հիմնուի* (Անդրանիկ, 1910 *Թ*. 66):

## 66. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՐԿՍԵՌ ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910–1)

*Կը յիշուի* 1911 *Յուլիսին* (Հողդար, 1911 *Թ*. 32):

## 67. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* Պոլիս *եւ բաժանորդական Ընկերութիւն մ'է: Հիմնումը եղած է* 1911

*Մարտին եւ երկու ամսուան մէջ ունեցած է 50 բաժանորդ անդամ ։ Նախապէս կազմուած սերաստացիներու* «Տահակցական Ընկերու- թիւն»*ը միացած է այս նորին հետ* (Հողդար, 1911 *Թ*. 22, *Մայիս* 14) ։

68․ «ԱԼԻՍ» ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնած են Ամերիկեան բարձրագոյն վարժարանի աշակերտները՝ նախաձեռնու- թեամբ* Վարդան Միսիրեանի ։ *Ունեցած է* Ծրագիր–Կանոնագիր *մը ։ Նպատակն է* . «*Օգ- տաշատ բանախօսութիւններով ուսանողնե- րու մէջ մտաւորական եւ բարոյական զար- գացմանը նպաստել եւ դաշտային խաղերով անոնց ֆիզիքականը ուռճացնել*» (Անդրանիկ, 1911 *Թ*. 79, *Մայիս*) ։

69․ «ԼՈՅՍ» ԸՆԹԵՐՑԱՐԱՆ (1911)

*Մշակութ. Ընկերութիւն մըն է, որ* 1911*ի վերջերը բացած էր իր* Ընթերցարանը «*Լոյս*» *անունով, որ մերթ կը կազմակերպէր նաեւ թատերախաղեր* (*Տե՛ս* Հողդար, 1912 *Թ*. 5, 8 *եւ այլն*) ։

70․ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմած են* Արամեան *վարժարանի* աշա- կերտները, 1911*ին վերջերը ։ Կը փափաքին երեկոյթներ տալ, թատերական ներկայա- ցումներ սարքել* «*ժողովուրդին ու վարժա- րանին մէջ յարաբերութիւն մը հաստատե-*

լու մտօք» (Հողդար, 1911 Թ. 2, Դեկտ. 30)։ Միութիւնը կը հրատարակէ խմորատիպ ամսօրեայ թերթ մը «Նշդրակ» անունով (Անդ), որուն քանի մը թիւերը ունի մեր Մատենադարանը։

71. «ՓԱՐՈՍ» ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1911)

Թատերախումբիս ղեկավարներն են Սեբաստիոյ Ամերիկեան Բարձրագոյն վարժարանի հայ ուսանողները։ Ներկայացումներ տալու կը սկսի 1912 Փետրուարին վերջերը։ Կազմը հաւանօրէն 1911ի վերջերն է եղած։

72. «ՊԱՐԹԵՒ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1911)

Կազմուած է 1911 Օգոստոս 1ին։ Հանդէս կու տայ եւ կը ջանայ իր սեպհական «փանփառ»ն ունենալ։ Կ'ըլլան նուիրատուութիւններ (Հողդար, 1913 Թ. 28, 1914 Թ. 8 եւ 12)։ — 1929ին կը վերակազմուի Հալէպի մէջ «Պարթեւ Միութիւն» անունով (Ալիս, Նիւ Եորք 1929 Թ. 1, էջ 7, ուր կայ լուսանկարը Միութեան անդամներու՝ Հալէպի մէջ)։ 1913ին Գրի Գիւտի Յոբելեանի հանդէսին մեծ փայլ տուած է մարզական խաղերով ու մրցումներով (Մարմնամարզ, Կ. Պ. 1913, էջ 220)։

73. ԼՈՒՍԱԲԵՐԻ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

Հիմնուած է 1912 Փետրուար – Մարտին՝ նախաձեռնութեամբ Տիկ. Վարդանոյշ Ապանեանի, որ կը պատմէ 1912 Մայիսին. «Երեք

ամիս է *ջանացած էի* Ընկերութիւն մը կազ-մել· *ճիշդ իմ փափաքիս համաձայն* եօթը ընկերներ գտայ· *գործը բաւական կարգի դնելէ վերջ, երբ տեսանք թէ 35 բաժանորդ-ունեցանք՝ անդամական ժողով մը սարքե-ցինք ու Նոր Վարչութիւն ընտրեցինք: Ապրիլ* 13*ին փայլուն յայտագրով շքեղ հանդէս մը սարքեցինք··· քիչ մը տարօրինակ եղաւ քա-ղաքի հայերուն, բայց ա՛լ համակերպուիլ սկսան թէ կիներուն ալ Ընկերութիւն ունե-նալ անհրաժեշտ է եղեր: Այսօր ունինք* 50 *անդամներ: Ահա ընտրուած տիկիններու անունները·*

*Տիկ· Մարնոս Մէռկէռեան*
*Տիկ· Աղնիւ Ասատուրեան*
*Տիկ· Միւշկիւնազ Թաշճեան*
*Տիկ· Մարիցա Ծամլեան*
*Տիկ· Մարիամ Վարդապետեան*
*Տիկ· Սաթենիկ Վարդապետեան*
*Տիկ· Աղաւնի Գնտածեան*
*Տիկ· Արմենուհի Գոնտաճեան*
*Տիկ· Վարդանոյշ Ապաճեան*

(Հողդար, 1912, *Թ*· 26 *Օգ*· 1):

*Տիկ· Ապաճեան իր հիմնած Ընկերու-թեան* անունը *աննուղղակի յիշած է* «Լուսա-բերի Օժանդակ» *գրելով սկիզբը: Կը չեշտուի հոդ թէ* «առաջին կնոջական Ընկերութիւնը *եղաւ քաղաքիս*» (Հողդար, *անդ*): *Բնակա-նաբար* սխալ է *այդ յայտարարութիւնը թէ «առաջին կնոջական Ընկերութիւնն» է սա-*

կա: *Տիկինը կ՚անդրադառնայ իր նախնեաց* «Հայուհեաց Ընկերութիւն»*ը* 1884*ին*:

*Յաջորդ շրջանի թերթերուն մէջ ոչ մէկ ակնարկի կը հանդիպինք Ընկերութեանս մասին, որ պաշտպանն էր* Կիրակնօրեայ աղջկանց վարժարանին:

74. ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Կը հիմնուի* 1912 *ամրան՝ յատուկ* Կանոնագրով, *որ չէ հրատարակուած: Նպատակն է. «Պաշտօնը աւելի օգտակարապէս եւ խղճմտօրէն կատարելու, իրենց դիրքը բարձրացնելու... նիւթական կացութիւննին փճացումէ փրկելու եւ անոր ստացումը վայելուչ, պատուաբեր եւ հաստատ հիման մը վրայ դնելու համար»* (Հողդար, 1912 *Թ.* 27):

75. ՇՐՋԱՆԱԽԱՐՏԻՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*Կազմած են «Լուսաբեր Ընկերութեան» Կիրակնօրեայ գիշերային վարժարանի Շրջանաւարտները* (Հողդար, 1914 *Թ.* 46, *Փետրուար* 22):

76. «ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶ. ԱԿՈՒՄԲ (1912)

*Հիմնուած է* 1912 *Յունիս* 2*ին*՝ 12 *անձերու նախաձեռնութեամբ: Ունի* Ծրագիր-Կանոնագիր: *Նպատակն է «Սեբաստիոյ հին եւ նոր խաղերը մշակել ու կատարելագործել»* (Մարմնամարզ, *Կ. Պ.* 1913 *Թ.* 8–9, *Օգոս.*): *Գործ. ժողովը կը կազմեն՝* Լեւոն Տաղաւա-

րեան (*Ատենապետ*) Ե. Խանլեան (*Ատենադպիր*) (Մարմնամարզ, *անդ*)։

77. Ե. Ք. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912?)

*Կը յիշուի 1914ին, բայց աւելի հին ըլլալու է, զի կ'ըսուի թէ բացած էր* Արիեստանոց (Նոր Այգ *Մարզուան* 1914, *էջ* 130)։

78. ՍԵԲԱՍՏ. ԱԶԳ. ՀԱՍՏԱՏ. ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Դիտրոյիտի (*Ամերիկա*) *եւ շրջակայից Սեբաստացիները կազմած են* «Սեբաստիոյ Ազգային Հաստատութեանց Օժանդակ Միութիւն»*ը նպատակ ունենալով նիւթապէս օգնել Սեբաստիոյ* Հիւանդանոցին, Աղքատախնամին, Որբանոցին եւ Լուսաբերին (Հողդար, 1913 *Թ*. 36, *Ապրիլ* 13)։

79. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏԻՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Հռիփսիմեան Արիեստանոցի Շրջանաւարտները *են որ* 1913*ի ամրան կը կազմեն այս Միութիւնը* (Հողդար, 1913 *Թ*. 52, *Օգոստ.*)։

80. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնուած է* 1913 *Նոյ*. 15*ին Նիւ Եորքի մէջ։ Նպատակն է՝* Սեբաստիոյ ազգային վարժարաններուն օժանդակել։ *Ծուտով կ'ունենայ* 50 *անդամ* (Հողդար, 1913 *Թ*. 34)։

81· ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Տարբեր է նախորդ «Կրթասիրաց»էն։ Ասիկա հիմնուած է* Ամերիկա՝ 1913 Դեկ-*տեմբերին «քանի մը ամխներէ ի վեր»* (Հող-դար, 1913 *Թ*· 38)։ *Միութիւնը* 1913 Դեկ-*տեմբերին ունէր արդէն* 10*ի չափ ճիւղեր եւ* 150*ի մօտ անդամներ* (*Անդ*)։

82· ՎԵՐԱԾԻՆԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հիմնուած է Ամերիկա* 1919*ին, վաւե-րացուած Նիւ Եորքի կառավարութենէն ու գործի սկսած նոյն տարւոյ* Մայիսին։ *Իր* նպատակն *է Հայաստանի մէջ* Նոր Սեբաստիա *մը չինել*։ *Ունեցած է* Կանոնագիր։ *Ամսական անդամավճարն է* 25 *սենտ*։ 50 *դոլար տուողը կ'ըլլայ* պատուոյ անդամ։ 1926*ին ունէր* 22 *Մասնաճիւղեր*։ — *Միութիւնը իր առաջին տարիէն կը սկսի հրատարակել իբրեւ «Պաշ-տօնական Տեղեկաբեր»*՝ «Ալիս» *պարբերա-կանը, որ կը տեւէ մինչեւ* 1934։ 1935*ին Միութիւնը կը սկսի հրատարակել* «Նոր Սե-բաստիա» *պարբերականը, զոր մինչեւ օրս կը շարունակէ*։

*Ձեռքի տակ չունինք Միութեան հիմնա-դիրներու կամ դէթ առաջին Վարչ*· *Մարմին-ներու անունները*՝ չունենալով Մատենագա-րանիս մէջ «Ալիս»ի եւ «Նոր Սեբաստիա»ի Ա–Զ· տարիներու թիւերը։ *Կու տանք յա-ջորդ տարիներէն Միութեան* Կեդրոնական վարչութեան ցանկեր։ *Հետեւեալը կազմն է Միութեան* 1931–32*ի Կեդ*· *Վարչութեան*·

| | |
|---|---|
| *Յովհաննէս Պապակեան* | *Ատենապետ* |
| *Արշակ Եաղուպեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Հայկազն Ղազարեան* | *Ատենադպիր* |
| *Հրանդ Մխսխայեան* | *Փոխ–Ատենադպիր* |
| *Մկրտիչ Գոնտրաճեան* | *Գանձապահ* |
| *Վարագդատ Ակինեան* | *Հաշուակալ* |

խորհրդականներ

*Յովսէփ Սանսիվաս*
*Մեսիա Կիւզիւրեան*
*Մուշեղ Մէրկէրեան*

1936–1937ի Կենդր. Վարչութիւնը

| | |
|---|---|
| *Արմենակ Վարդապետեան* | *Ա. Ատենապետ* |
| *Արամ Զարդարեան* | *Բ. Ատենապետ* |
| *Հրանդ Յ. Մխսեայեան* | *Քարտուղար* |
| *Յովակիմ Տաղաւարեան* | *օգն. Քարտուղար* |
| *Բիւզանդ Պոյաճեան* | *Գանձապահ* |
| *Յարութիւն Պալեօզեան* | *Հաշուապահ* |

խորհրդականներ

*Մեսրոպ Պաճաղեան*
*Վահան Ղազարեան*
*Յովհաննէս Պապակեան*
*Պարգեւ Զուգասըզեան*
*Մեսիա Կէզիւրեան*

1942–1943ի Կենդր. Վարչութիւնը

| | |
|---|---|
| *Մեսրոպ Պաճաղեան* | *Ատենապետ* |
| *Մայք Պօյաճեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Յովհ. Զարդարեան* | *Քարտուղար* |
| *Մեսիա Կէզիւրեան* | *Գանձապահ* |

| | |
|---|---|
| *Թորոս Գեւոնեան* | *Հաշուեքննիչ* |
| *Պարգեւ Զուգասըրգեան* | *Խորհրդական* |
| *Համբարձում Մաղաքեան* | *Խորհրդական* |

(*Տե՛ս* Նոր Սեբաստիա, 1943 *Թ*. 3)։

Ներկայիս՝ 1959ի Կեդր. Վարչութիւնը

| | |
|---|---|
| *Մեսրոպ Պաճագեան* | *Ատենապետ* |
| *Յովհ. Պապակեան* | *Փոխ-Ատենապետ* |
| *Գաբրիէլ Սերոբեան* | *Ատենադպիր* |
| *Համբարձում Խթիկեան* | *Գանձապահ* |
| *Երուանդ Ալեքսանեան* | *Հաշուապահ* |
| *Համբարձում Մաղաքեան* | *Խորհրդական* |
| *Զարեհ Սահակեան* | *Խորհրդական* |
| *Մկրտիչ Գոնտրաճեան* | *Խորհրդական* |
| *Գէորգ Թ. Պալեան* | *Գործ. Քարտուղար* |

*Միութեան կոթողական գործը կ'ըլլայ ներկայ Հայաստանի մէջ շինութիւնը* Նոր Սեբաստիոյ, *ուր կը փոխադրէ բազմաթիւ Սեբաստացիներ քաղաքէն ու գիւղերէն* (*Տե՛ս* Ալիս 1930–34)։ *Միութիւնը այդ կապակցութեամբ շատ մը արտասահմանի Ընկերութիւններն ու Միութիւնները* (*Սեբաստիոյ*) *կը զօդէ իրեն հետ ու նոյն գաղափարին յաջողութեամբ գլուխ ելլելու օժանդակներ կը դարձնէ*։

*Միութեան երկրորդ կարեւոր ձեռնարկութիւնն է — տարիներէ ի վեր փայփայուած — Սեբաստիոյ* Պատմագրքի *կամ* Յուշամատեանի *մը հրատարակութիւնը, որուն տպագրութիւնը կը յուսանք շուտով ողջունել ոչ շատ հեռաւոր ժամանակի մէջ*։

*«Վերաշինաց Միութիւն»ը վերոյիշեալ Միութիւններն իրեն զօդելէն վերջ կոչուած է* «Համասեբաստահայ Վերաշինաց Միութիւն»՝ *որ արտասահմանի «Հայրենակցական Միութիւններէն»* ամէնէն օրինակելին, ամէնէն համերաշխը եւ ամէնէն աւելի գործօն ու իր հայրենակիցներուն օգտակար եղող Միութիւնն է։ *Իցի՜ւ բոլոր «Հայրենակցականները» օրինակ առնէին* համերաշխութեան *«Համասեբաստահայ Վերաշինաց»էն, որուն կը մաղթենք երկա՜ր տարիներ։*

83. «ԱՅԳ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1921)

*Հիմնուած է* 1921 *Մարտ* 1*ին* Նիւ Եորքի *մէջ։ Հիմնադիրներն են* 1915*ի տարագրութենէն վերապրող սեբաստացի երիտասարդներ։* 1930*ին ունէր* 40 *անդամ։ Կը սարքէր հանդէսներ, ներկայացումներ, դաշտագնացութիւններ, եւ այլն։ Իր գլխաւոր փափագներէն մին էր* Նոր Սեբաստիա *աւանին մէջ բանալ* Արամեան վարժարանը, *որուն համար կոկիկ գումար մ'ալ հաւաքած էր* (Ալիս, 1930 *Թ.* 4, *էջ* 16)։

*Միութեան անդամներու խմբանկար մը տուած է* «Ալիս» (*Անդ*, *էջ* 17)։

84. ՆՈՐ-ՍԵԲԱՍՏԻՈՅ ՀԱՄԱԳ. ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

*Նիւ Եորքի «Ալիս» կը գրէ* 1926 *Փետրուարին. «Անկէ* քանի մը ամիս առաջ... *քանի մը Միութիւններ իրար եկան* եւ գոնէ

մեր բնկորներ Հայաստանի սահմաններուն մէջ որոշ տեղ մը հաւաքելու գաղափարին շուրջ համաձայնութեան գալով կազմեցին «Նոր Սեբաստիոյ Համագործակցական Ընկերութիւնը»... *Համագործակցականի անդամակցելու միակ պայմանն է* կազմակերպուած Միութիւն մը ունենալ, որ Սեբաստիոյ նահանգի որեւէ մէկ մասի Հայերէ կազմուած ըլլայ» (Ալիս, 1926 *թ.* 1, *էջ* 1–2)։ *Ահա իր Գործ. Մարմինը.*

| | |
|---|---|
| *Արամ Զարդարեան* | *Ա. Ատենապետ* |
| *Համբարձում Գարակէօզեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Հրաչեայ Գամպուրեան* | *Բ. Ատենապետ* |
| *Հրանդ Յ. Մեսիայեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Յարութիւն Պալեօզեան* | *Գանձապահ* |

խորհրդականներ

*Խաչիկ Քէօսէյեան*
*Հայկազն Գ. Ղազարեան*
*Մարկոս Խաչմանեան*
*Տիկ. Վարդանոյշ Ապաճեան (Անդ.)*։

## ՍԵԲԱՍՏԻՈՅ ԳԻՒՂԱՔԱՂԱՔՆԵՐ ՈՒ ԳԻՒՂԵՐ

### ՏԱՐԷՆՏԷ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

#### 1· ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Հիմնուած է* 1868 *Դեկտեմբերին նախաձեռնութեամբ* Կարապետ Շամշեանի։ 1869

*Յունուար 21ին ունէր 200 բաժանորդ եւ կը ստանար նուէրներ* (Փոքր Մասիս, 1869 *Թ*. 315: — *Հմմտ*. *Մամուլ*, 1869, *էջ* 19):

## ՄԱՆՃԸԼԸՔ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

### 1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Կազմուած է* 1868*ի վերջը* (Մամուլ, 1869, *էջ* 19: — Փնջիկ, *Կ*. *Պ*. 1869 *Թ*. 261):

## ՁԱՐԱ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

### 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1888)

*Կը յիշուի* 1889 *Մարտին: Նպատակն է «Բարուոքում Ազգ. վարժարանի բարոյական եւ կրթական վիճակին, կ'օգնէ աղքատ ուսանողաց»* (Արեւելք, 1889 *Թ*. 1569):

### 2. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնուած է* 1911 *Ապրիլին՝ դպրոցի շէնք մը շինելու համար*: 1911 *Հոկտ.ին ունէր* 200 *անդամ եւ* 50 *ոսկիի չափ հաւաքած էր* (Ազատամարտ, *Կ*. *Պ*. 1911 *Թ*. 707):

### 3. «ՀԱՅՐԵՆԻՔ» ԸՆԹԵՐՑԱՏՈՒՆ (1911)

1911*ի վերջերը կրցած է կազմակերպուիլ եւ* Մուրատի *օժանդակութեամբ բանալ* «Ընթերցատուն»*ը*, *ուր կը ստանայ զանազան հայ թերթեր* (Հողդար, 1913 *Թ*. 43):

## ԱԶԻԶԻԷ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

### 1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Կը յիշուի* 1912 *Ապրիլին*։ *Ունեցած է* կանոնագիր *մը*։ *Նպատակն է «Տեղւոյն երիտասարդութեան մտաւոր եւ բարոյական մակարդակը բարձրացնել»* (Հողդար, *Սեպտեմ* 1912 *Թ*· 37)։

## ԴԱՒՐԱ ԳԻՒՂ

### 1· … Ընկերութիւն (1871)

*Դժբախտաբար կ'ըսուի միայն*· «Դաւիթ վրդ· Ընկերութիւն մը հաստատեց *եւ դպրոց բացաւ* Դաւրայ Գիւղի մէջ» (Փունջ, Կ· Պ· 1871 *Թ*· 669)։

## ԲԻՒՐԱԿՆ (ՊԻՆԿԷՕԼ) ԳԻՒՂ

### 1· ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875–6)

*Կազմած են* Պոլսաբնակ *Բիւրակնցիք՝ իրենց Գիւղին մէջ* դպրոց մը բանալու համար։ 1876 *Փետր*·*ին արդէն դպրոցի հիմնարկէքն ըրած են*։ *Ընկերութեան ներկայացուցիչն է* Վարդան Մարկոսեան (Հայրենիք, 1876 *Թ*· 286)։

### 2· ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878–9)

*Կը յիշուի միայն* Մասիսի (1880 *Թ*· 2560) *քով* 1880 *Փետրուարին եւ որեւէ լուսաբանութիւն չի տրուիր*։

# ԱՂՏՔ–ԱՂՏԵՂ, ՅԱՂԹ (ՏՈՒԶԱՍԱՐ) ԳԻՒՂ

## 1. ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Պոլսաբնակ *Տուզասարցիք Ընկերութիւն մը կը հիմնեն՝ նպատակ ունենալով իրենց Գիւղին մէջ մանչերու եւ աղջկանց կրթութեան հոգ տանիլ: Օրուան Պատրիարք* Ներսէս Արքեպ. Վարժապետեանի *պատիւ մ'ընելու համար՝ Ընկերութիւնը կը յորջորջեն* «Ներսէսեան *Ընկերութիւն*» (Թէրճէմանը էֆքեար, *Կ. Պ.* 1879 *Թ.* 500: — *Հմմտ. նաեւ* Մասիս, *Կ. Պ.* 1880 *Թ.* 2560):

## 2. «ՍԵՆԵՔԵՐԻՄԵԱՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1893)

*Հիմնած են* Պոլսաբնակ *Յաղթեցիք՝ նպատակ ունենալ հայրենի Գիւղին մէջ դպրոց մը շինել: Հիմնադիրներէն կը յիշուին.*

*Օսկեան Մարգարեան*
*Սահակ Պասմաճեան*
*Նշան Պասմաճեան*
*Օսկեան Յակոբեան*
*Մկրտիչ Գլաւանեան*
*Համբար Լեֆեան*

*Ընկերութիւնը գումար մը կը ղրկէ Գիւղ եւ դպրոցի շէնքը կը սկսի հիմնուիլ ու յառաջ տարուիլ, բայց կը խափանուի տեղական իշխանութենէն ու կը կազմալուծուի նաեւ Ընկերութիւնը* (*Տրդատ Տրդատեան, Յաղթը եւ Յաղթեցիները. Պոսթըն* 1959, *էջ* 145–6):

### 3· ՏՈՒՋԱՍԱՐ ԳԻՒՂԻ ՈՒՍՈՒՄՆ· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Ամերիկա գաղթող Յաղթեցիք կազմած են «Ուսումնասիրաց Ընկերութիւնը» 1910ին՝ հաւանօրէն Պրաւիդենսի մէջ, ուր գումարուած է Ընկերութեան առաջին ժողովը (Տրդատեան, անդ՝ էջ 146)։ Ընկերութեան նիւթական նպաստներով Գիւղին մէջ կը շինուի եռայարկ շէնք մը դպրոցի համար (Ալիս, 1926 Թ. 1, էջ 3։ — Տրդատեան, անդ՝ էջ 147)։

1917ին գումարուած Պատգ. ժողով մը Ընկերութեան անունը կը փոխէ հետեւեալի. «Սեբաստիոյ Յաղթ Գիւղի Վերաշինաց Միութիւն», որ կ՚ունենայ 8 Մասնաճիւղեր (Յ. Խաչմանեան, Ամերիկահայ Հանրագիտակ. 1925, էջ 486։ — Տրդատեան անդ՝ էջ 149)։

Միութիւնը մինչեւ օրս կանգուն է եւ կը գործէ։

## ՈՒԼԱՇ ԳԻՒՂ

### 1· ԼԵՒՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Հիմնած են Պոլսաբնակ պանդուխտ Ուլաշցիք 1878 Յունուար 1ին։ Ունեցած է Կանոնագիր մը, որ լոյս տեսած է Թէրճէմ. էֆքեարի (1879 Թ. 661) մէջ. կը բաղկանայ 31 Յօդուածէ, որուն առաջինը կ՚ըսէ. «Ընկերութեանս նպատակն է Սեբաստիոյ Ուլաշ Գիւղի վարժարանին յառաջդիմութիւնն եւ Ս. եկեղեցւոյ պայծառութիւնն»։ Տարեկան

*անդամատուրքն է 5 ղուրուշ* (*Յօդ.* 4: — *Տե՛ս նաեւ* Լրագիր, *կ. պ.* 1879 *թ.* 1065):

## ԽԱՆՃԱՐ ԳԻՒՂ

### 1. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Նժդեհ Խանճարցիք են հիմնած* Պոլսոյ *մէջ՝ Գիւղի երկսեռ դպրոցին նպաստելու համար* (Թէրճէմ. էֆքեար, 1879 *թ.* 500): *Նախաձեռնողն է* Դաւիթ Գըրմըզեան: *Հիմնումը եղած է* 1879*ի առաջին ամիսներուն*: *Կը դրկէ* 100 *ոսկի* (*Անդ*):

## ԲՐԱԲԵՐԴ ԳԻՒՂ

### 1. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878–9)

*Հիմնումը եղած կրնայ ըլլալ* 1878–9*ին*, *դի* 1878*ին հոն կար* «Մամիկոնեան» *դպրոցը* (*Թորոս Աղբար*, *էջ* 175): *Պոլսոյ մէջ կազմուած է*: *Հիմնադիրները* 1882 *Փետրուարին համդանակութիւն մ'ընելով՝ քաջալերուած են կարեւոր գումարով մը*: *Ընկերութեան նպատակն է Գիւղի դպրոցի բարեկարգ վիճակը*: *Գործ. ժողովը կը կազմէին.*

*Նախագահ Ս. Մխիկեան Ատենապետ*
*Մանուկ Կ. Ումէտեան Ատենադպիր*
(Մասիս, 1882 *թ.* 3136):

1883*ին Վարչութիւնը կը կազմեն* Ստեփանոս Խանեան եւ Յովի. Եայլայեան (Մասիս, 1883 *թ.* 3458):

2· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910–12)

*Կը լիչուի* 1914 *Ապրիլին* ։ *Հիմնուած է թէ՛ Գիւղին եւ թէ Ամերիկայի մէջ* (Հող-դար, 1914 *Թ*. 2) ։

## ԲՐԴՆԻՔ ԳԻՒՂ

1· ԱՆԱՐԱՏ ՑՂՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

*Սեբաստիոյ Առաջնորդ* Ներսէս Արքեպ· Հալէպեան *հիմնած է Բրդնիքի* «Անարատ Ցղութեան Ընկերութիւնը» 1859*ին* «յօգուտ յառաջդիմութեան դպրոցին, *որ առջի բերան չուտով յառաջ գնաց, բայց քանի մը տարիէն ընդդիմութիւններ եւ հակառակութիւններ ծագելով բոլորովին անհետացաւ*» (Հայաստանի Կոչնակ, 1960 *Թ*. 30, *էջ* 714) ։

2· ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1904–5?)

*Հիմնուած է* Պոլսոյ *մէջ, գուցէ* 1904–1905*ին* ։ *Կը յիշուի* 1908*ին* (Մէնմուայը Ախպար, *Կ*. *Պ*. 1908 *Թ*. 4627) ։

3· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1905)

*Կազմուած է* Միլփրդի (*Ամերիկա*) *մէջ* 1905 *Ապրիլ 9ին* ։ 1914 *Մարտ* 27*ին* վերակազմուած *է Ֆիչպուրգի* (*Ամերիկա*) *մէջ* «Ուսումնասիրաց Ընկերութիւն» *անունով* ։ Կը վերակազմուի *դարձեալ* 1917 *Սեպ*. 2*ին իբրեւ* «Աղքատախնամ Ընկերութիւն», *իսկ* 1919 *Ապրիլ* 20*ի Ընդհ*. *Ժողովը* (*Ֆիչպուրգ*)

*կ'որոշէ Ընկերութիւնը կոչել վերջնականա-պէս* «Վերաշինաց Միութիւն»։ *Այս Միու-թիւնը ունի իր* Ծրագիր–Կանոնագիրը, *հրա-տարակուած առանձին հատորիկով* 1919*ին*։ *Ունի* 75 *Յօդուած, որոնցմէ յիշենք քանի մը հատը*. «*Միութեանս նպատակն է սատարել երկրի՝ Հայաստանի՝ վերաշինութեան գոր-ծին*» (*Յօդ*. 1). «*Օգնել արտասահման գըտ-նուող ժրաջան, բայց դժբախտացած եւ կամ քրօնիկ հիւանդութեան ենթակայ որեւէ կա-րօտ Բագրատունիքցիի*» (*Յօդ*. 9) *Անդամա-վճարն է* (*այրերու*) *մուտք՝* 5 *դոլար եւ ամ-սական՝ մէկ դոլար* (*Յօդ*. 15)։ *Միութեանս* կեդրոնը Պոլիս *փոխադրուած է* (Ժողո-վուրդի Ձայնը, 1920 *Թ*. 636)։

## ԽՈՐՍԱՆԱ ԳԻՒՂ

### 1. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908?)

*Խորսանայէն* Աշոտ *կը գրէ* 1909 *Օգ.ին*. «*Հոս մենք* Բարեսիրական Ընկերութիւն *մը* ունէինք, *որուն նպատակն էր* օգնել աղքատ-ներուն եւ աջակցիլ կրթական գործին» (Ան-դրանիկ, 1909 *Թ*. 35, *Օգ*. 29։ — *Հմմտ*. Հողդար, 1911 *Թ*. 17)։

### 2. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

1909*ի վերջերը թէ՛* Պոլսոյ *եւ թէ* Ամերի-կայի *մէջ կը հիմնուի Ընկերութիւնս՝ նպա-տակ ունենալով* «Գեղին մէջ աղջկանց վար–

ժարան մը հաստատել» (Ժամանակ, Կ. Պ. 1910 *Թ*. 371, *Յունուար* 12)։ *Թերթը կը չեշտէ որ Ընկերութիւնը բաւական դրամ հաւաքելով՝ Գիւղ զրկած եւ աղջկանց վարժարանը բացուած է*։ — Պ. Ն. Ճանիկեանի *միջոցաւ* 1912*ի սկիզբը Գիւղին մէջն ալ կը հաստատուի նոյնանուն Ընկերութիւնը, որ կ'ունենայ* 18 *անդամ* (Հողդար, 1912 *Թ*. 5։ — *Հմմտ*. 1913 *Թ*. 44)։ *Իր կանոնագիրը հաստատել կը տրուի* (Ազատամարտ, 1912 *Թ*. 877)։

## ԳՈՋՀԻՍԱՐ — ՂՈՋԱՍԱՐ ԳԻՒՂ

### 1. ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

«*Գիւղին վարժարանին ի նպաստ* Կ. Պոլսոյ *մէջ կազմել* Կրթական Միութիւն»*ը ճանչցուելու համար խնդիր կ'ըլլայ Պատրիարքարանի դիմել* (Հողդար, 1911 *Թ*. 1, 17)։ *Ընկերութեան* կանոնագիրը *կը հաստատուի Ուսում. եւ Տնտես. Խորհուրդներէն* 1914 *Ապրիլին* (Ժամանակ, 1914 *Թ*. 1791)։

### 2. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1924)

*Կը կազմուի* 1924 *Ապրիլին* Մարսէյլի *մէջ* 16 *անդամով*։ *Զորս տարուան մէջ եռանդուն կ'աշխատի եւ օգտակար կը հանդիսանայ Միութիւնը իր հայրենակիցներուն* (*Տե՛ս* Յառաջ, *Փարիզ* 1928 *Թ*. 632)։

## ԽՈՐՈԽՈՆ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Հիմնած են Ամերիկայի պանդուխտները* Միլֆըրդի *մէջ* 1909 *Նոյ.* 1*ին*, *ունենալով իր* Ծրագիր–Կանոնագիրը : *Գիւղին մէջ կը բանայ* Արամեան երկսեռ վարժարանը : 1917 *Մարտ* 1*ին կը վերածուի* «Վերաշինաց Միութեան» (Ալիս, *Նիւ Եորք* 1926 *Թ.* 1, 4) ։

## ԿՈՎՏՈՒՆ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Ազատամարտ (1909 *Թ.* 106) *կը գրէ* 1909 *Հոկտ.* 27*ին.* «Պոլսոյ *մէջ գտնուող Կովտունի գիւղացիները Միութիւն մը կազմած են* օգնելու համար իրենց գիւղի դպրոցին : *Այդ Միութեան անդամները պարզ աշխատաւորներ են, որոնք իրենց ճակտին քրտինքին մէկ մասը, իրենց օրապահիկէն կտրելով, կ'ուզեն յատկացնել իրենց գիւղացիներուն լուսաւորութեան գործին ... Միութիւնը պիտի աշխատի բանալ իր սեփական միջոցներով* աղջկանց դպրոց *մըն ալ ... Վարչութիւնը կը բաղկանայ հետեւեալ անձերէն. Դանիէլ Միքայէլեան, Ղուկաս Փիլաւեան, Միրիճան Վլիկեան, Մկրտիչ Գէչիկեան, Հայրապետ Մուշմուլեան, Կարապետ Հայթայեան»* : *Թերթին անծանօթ եղած է Ընկերութեան* անունը : *Ո՛չ թէ* Միութիւն՝ *այլ* Ընկերութիւն *մ'է ան, այսինքն՝* «Ուսում–

նասիրաց Ընկերութիւն»։ *Թղթակից մը* 1914*ին կը գրէ որ* «Արտասահմանի մէջ *կարգ մը* «Ուսումնասիրաց»ներ *կազմուած են»* (Հողդար, 1914 *Թ*. 10)։ *Այո՛* Պոլսոյ *եւ* Ամերիկայի *մէջ*։ *Պոլսոյ «Ուսումնասիրաց Ընկերութիւն»ն է* Ազատամարտի *ակնարկածը*, *իսկ Ամերիկայինը պիտի տեսնենք քիչ վարը*։ — *Ընկերութիւնս կը յաջողի բանալ* աղջկանց դպրոցը, *բայց հարկ եղած գուրգուրանքը չգտնելով՝ Թղթակից մը գիւղէն կը գրէ որ ան* անմխիթար վիճակի մէջ ինկած է 1913*ին* (Հողդար, 1913 *Թ*. 46)։ — Գիւղին մէջ ալ *կը կազմուի համանուն Ընկերութիւնը* (Հողդար, 1914 *Թ*. 10)։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* Պրաւիդենսի (*Ամերիկա*) *մէջ* 1911 *Նոյ.ին*։ *Կոմիտէի մէջ* ջրաղաց մը *կը շինէ* (*Վահան Համբարձումեան*, *Գիւղաշխարհ*. *Փարիզ* 1927, *էջ* 262)։ 1917 *Ապրիլ* 15*ին կը վերածուի* «Վերաշինաց Միութեան» (*Անդ*, *էջ* 264) *եւ կ'ունենայ չատ մը Մասնաճիւղեր* (*Անդ*, *էջ* 266)։

## ՊԱՐՏԻԶԱԿ ԳԻՒՂ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1914)

*Կը յիշուի* 1914 *Ապրիլին*, *բայց աւելի հին ըլլալու է* (Հողդար, 1914 *Թ*. 2)։

## ԿԱՄԻՍ ԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1916)

*Հիմնուած է* Վատերտաուն *քաղաքին մէջ* (*Ամերիկա*) *եւ* 1916*ին հայ գաղթականներուն կը յատկացնէ* 645 *ոսկի* (Արարատ, *էջմիածին*, 1916, *էջ* 321)։ *Անշուշտ աւելի հին է իր ծագումը*։

## ԳՈԹՆ ԳԻՒՂ

### 1. Ս. ՄԵՍՐՈՊԵԱ՞Ն ԴՊՐՈՑԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1912)

*Ընկերութեանս յիշատակութիւնը կը գտնենք միայն* Ամերիկահայ Հանրագիտակի (1925, *էջ* 494) *մէջ, բայց հեղինակը հոդ ո՛չ Ընկերութեան* անունը *յիշած է եւ ոչ ալ հիմնումի տարին տուած*։ *Ընկերութիւնը մինչեւ* 1919 *գոյութիւն ունեցած՝ յետոյ* կազմալուծուած է. 1925*ին ջանք կ'ըլլայ վերականգնելու. Վարչական անձեր կը յիշուին՝* Թ. Ճերմակեան, Մ. Բաբիլեան. *ունեցած է* 15–20 *անդամ եւ Գիւղ ղրկած է* 4–500 *դոլար* (*Հանրագիտակ, անդ*)։

## 40 ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

### 1. ԱՐԾՐՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմած են* «Սեբաստիոյ 40 Գիւղերէն *Պոլիս* գտնուող ազգայինք, *որոյ նպատակը պիտի լինի Սեբաստիոյ մէջ* հողագործական

վարժարան մը բանալ», *կը գրէ Պոլսոյ* Մասիս (1879 *Թ*. 2350, *Յունիս*)։

*Հիմնումի Թուականն է* 1879 *Յունուար*։ 1879 *Յունուար* 24 *Թուականով* Ազդ. *մը Հրատարակելով՝ Ընկերութեան «ատենական» Ատենապետը՝* Թորոս Կէտիկեան *եւ Ատենադպիր՝* Յ. Ա. Ջառացեան՝ *կը գրեն*. «Սեբաստիոյ քաղաքէն եւ գիւղերէն միացեալ *մի քանի երբարք* Ընկերութիւն *մը կազմած են* «Արծրունեաց» *անուամբ*, նպատակ ունենալով Սեբաստիոյ համայն Գիւղերու Հայ եղբարց մի գիշերօթիկ դպրոց ունենալ» (Մասիս, 1879 *Թ*. 2239: — Թէրճէմ. էֆքեար, 1879 *Թ*. 471)։

*Խմբագրողներս* (Մասիս, 1880 *Թ*. 2560) *Ընկերութիւնս կ'անուանէ* «*Արծրունեաց* Երկրագործական *Ընկերութիւն*»։

1882*ին* Ռէթէոս Թ. Մուրատեան *կը գրէ Պոլսէն*. «*Արծրունեաց Ընկերութեան նպատակն է* Հրեշտակապետի վանաց Ս. Մեսրոպ տաճարին մէջ գիշերօթիկ դպրոց հիմնել եւ անդ դաստիարակել իւրաքանչիւր գիւղէ մի ուսանող։ *Ընկերութեան առջի մէկ տարուան արդիւնքն եղած է* 80 *ոսկւոյ գումար մը*, *որ մէկ կողմէն զարգանալով էր*, *մինչդեռ* անտարբերութիւնն վրայ հասնելով՝ կոխոտեց զայն եւ արգիլեց նորա յառաջդիմական քայլերը ... գիւզացիք ... միահամուռ ձայնով դպրոց կը գոչեն եւ կը խոստանան նորահաստատ դպրոցին տարեկան ուտեստը եւ այլ

պէտքերը իրենց կողմէ հոգալ...» (Մասիս, 1882 *Թ.* 3373)։

*Մուրատեան հոգ կ'իմացնէ որ Ընկերութեան նախորդ Ատենապետն եղած է* Մխիթար Գրըմըզեան, *որ «անձնուրաց ճգամբք» աշխատեր է* երկու կուսակցութեանց բաժնուած *անդամները միացնել*։

*Ընկերութիւնը չէ հասած իր նպատակին* (*Հմմտ.* Արեւելք, 1887 *Թ.* 1098։ — Հայրենիք, 1891 *Թ.* 62)։

## ԵԴԵՍԻԱ (ՈՒՐՖԱ)

### 1. ԱԲԳԱՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1850)

*Ե՞րբ հիմնուած է* Եդեսիա–Ուրֆայի *առաջին եւ հնագոյն կրթական Ընկերութիւնը*։ — *Չունինք ստոյգ տեղեկութիւն*։ Աբրահամ Քհնյ. Արեւեան *կը յիշէ Աբգարեան Ընկերութիւն» մը, որ 1850 Հոկտեմբերին* «Նորակազմ» *է եւ որուն պաշտպանութեան կը յանձնուի Եդեսիոյ մէջ նոր բացուած դպրոցի մը հովանաւորութիւնը* (Արամ Հայկազն, *Դիւցազնական Ուրֆան, Պէյրութ* 1955, 269)։ *Ասկէ առաջ ուրիշ Ընկերութեան մը յիշատակութեան չենք հանդիպիր*։

### 2. ՔՐԻՍՏՈՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1855)

*«Սկանակ Բանասէր» Եդեսիա – Ուրֆայի մէջ երեք հնագոյն Ընկերութիւններ կը յիշէ, որոնք* 1855*ին գոյութիւն ունէին*։ *Ատոնցմէ*

*մէկն է* «Քրիստոնեան Ընկերութիւն»*ը, որուն նպատակն էր՝* համանուն վարժարանին *նիւթապէս նպաստել* (Արեւելք, *Կ. Պ.* 1898 *Թ.* 3854):

*Ընկերութիւնս եւ իր վարժարանը կը յիշուին արդէն 1857ին «Քրիստոնեան» վարժարանի ուսուցիչ* Գրիգոր Գապպանեանի *կողմէ, որ կը պատմէ թէ նոյն վարժարանի մէջ 1857ին սկիզբը բացուած է նաեւ* գիշերային դասընթացք *մը մեծերու համար, ուր կը յաճախեն* 35 *հոգի* (Մասիս, *Կ. Պ.* 1857, *Թ.*269):

1858*ին Ընկերութեանս կը միանան «Ադդէեան եւ «Թադէոսեան» Ընկերութիւնները՝ կազմելով նոր Ընկերութիւն մը՝ հետեւեալ տիտղոսով* — Քրիստոնեան ազգային միաբանեալ նոր Ընկերութիւն — *որ խնկականին մէջ «Քրիստոնեան Ընկերութիւնն է՝ նոր յորջորջմով: Ասիկա կը տեսնուի նաեւ անկէ որ* 1858 *Օգոստոսին կը գրուի թէ. «Եղեսիոյ վիճակին Առաջնորդ արժ. Տ. Խորայէլ Ծ. Վ. Եղեսիոյ դպրատունները բարեկարգելով՝ անոնց կանոնաւոր շարունակութեան համար* Քրիստոնեան Ընկերութիւնը նոր կանոններով վերահաստատեց» (Մասիս, 1858, *Թ.* 341):

### 3. ԱԴԴԷԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1855)

*Ուրֆայի* համանուն *վարժարանի նպաստամատոյց Ընկերութեանս հիմնումը կը դրուի նոյնպէս* 1855*ին* (Արեւելք, *անդ, Թ.*

3854)։ Գապամաճեան 1857 Փետրուար 21ին գրած թղթակցութեան մէջ (Մասիս, 1857, Թ. 269) կ'իմացնէ որ Եդեսիոյ «Ադդէեան» վարժարանը «Քրիստոսեան» վարժարանի մէջ բացուած գիշերային դասընթացքի յաջողութիւնը տեսնելով՝ 1857 Յունուար 10ին ինքն ալ կը բանայ գիշերային դասընթացք մը։

Ընկերութեանս առաջին յիշատակութիւնը կ'ըլլայ երբ արդէն կը ձուլուի ուրիշ երկու Ընկերութիւններու հետ, ինչպէս պիտի տեսնենք։

## 4. Ս. ԹԱԴԷՈՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856–1857)

«Սկսնակ Բանասէր»ի համաձայն (տե՛ս Արեւելք, անդ՝ Թ. 3854) Ուրֆայի «Ս. Թադէոսեան Ընկերութիւնն» ալ 1855ին հաստատուած է։ Կը թուի թէ «Սկսնակ Բանասէր»ի կարծիքը ճշդումի կարօտ է։ 1857 Ապրիլի սկիզբը Եդեսիայէն գրուած հանրագիր մը կ'իմացնէ թէ տեղւոյն Առաջնորդ Զաքարիա Ծ. Վ. արդէն գոյութիւն ունեցող դպրոցները բարեկարգեր եւ իր կողմէ ալ նոր Ընկերութիւն մը — Ս. Թադէոսեան — հիմներ եւ նոյնանուն դպրոց մըն ալ բացեր է։ Այս բացատրութիւնը կը ցուցնէ նախ թէ «Ս. Թադէոսեան Ընկերութիւն»ը «Քրիստոսեան» եւ «Ադդէեան» Ընկերութիւններէն յետոյ հիմնուած է. երկրորդ՝ այս վերջին թղթակցութիւնը կ'ապացուցանէ թէ «Ս. Թադէոսեան

*Ընկերութիւն»ը* 1857*ի Ապրիլին* ճոր քաճ *մըն էր ։ Աւելցնենք նաեւ թէ Գրիգոր Գալպաքճեան իր* 1857 *Փետրուար* 21*ի թղթակցութեան մէջ, «Քրիստոսեան» եւ «Ադդէեան» վարժարաններու յիշատակութեան առթիւ,* չի յիշեր *«Ս. Թադէոսեան» ը ։ Հետեւաբար հաւանական կը մնայ ընդունիլ թէ «Ս. Թադէոսեան Ընկերութիւն»ը հիմնուած է* 1856–1857*ին ։*

*Ահա այս մասին* Մասիսի *մէջ գրուածը.* *«Եղեսիոյ հայ ժողովուրդը բազմաթիւ ստորագրութեամբ նամակ մը ուղղելով Ամենապատիւ Ս. Պատրիարք Հօր, իրենց խորին շնորհակալութիւնն ու երախտագիտութիւնը կը յայտնեն վիճակին Առաջնորդ Արժ. Տ. Զաքարիա Ծ. Վ.էն, որ գովելի ջանքով* արդէն գտնված *դպրոցները բարեկարգեր եւ* յանուն Ս. Թադէոս Առաքելոյ Ընկերութիւն եւ դպրոց մըն ալ հաստատել տուեր է» (Մասիս, 1857, *Թ.* 274, *Ապրիլ* 25) ։

5. ՔՐԻՍՏՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԻԱՐԱՆԵԱԼ ՆՈՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

*Ընկերութիւնս ձուլումն է նախորդ* — Քրիստոսեան, Ադդէեան, Թադէոսեան — *Ընկերութիւններուն ։ Այս ձուլումը տեղի ունեցած կ'երեւայ* 1958*ի սկիզբները ։ Ժամանակակից հայ թերթը կը տեղեկագրէ* 1958 *Ապրիլ* 3*ին. «Եղեսիայէն գրուած նամակները բերկրառիթ լուրեր կու տան տեղւոյն հայ*

ժողովրդեան ուսումնասիրական ջանքերուն վրայ, որոնց անձանձիր քաջալերող եւ ձեռնտու եղած է Եղեսիոյ այժմեան բարեխնամ Առաջնորդ Գեր. Տ. Իսրայէլ Ծ. վարդապետը: Քրիստոսեան, Թադէոսեան եւ Ադդէեան անուններով յիշեալ քաղաքին մէջ հաստատուած ուսումնասիրական Ընկերութիւնները՝ բարեջան առաջնորդին խորհրդով միաբանելով՝ մէկ Ընկերութիւն եղեր են Քրիստոսեան Ազգային միաբանեալ նոր Ընկերութիւն անունով, որուն յարատեւ հաստատութեանը համար ալ Գեր. Առաջնորդը իմաստուն եւ օգտակար Կանոններ շինած է, որոնք պատրիարքական հաւանութեամբ հաստատելով՝ Ընկերութեան բոլոր անդամներէն ստորագրուեր են եւ հիմա Ընկերութիւնը եռանդուն ազգասիրութեամբ եւ գովելի միաբանութեամբ Եղեսիոյ վարժարաններուն բարեկարգութեանն ու պայծառութեանը կը դրաղի» (Մասիս, 1858, Թ. 323):

6· ···ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

1858 Դեկտ. 25 թուականով կը ծանուցանէ Մասիս (Թ. 361). «Արժանապատիւ Տ. Եփրեմ Ծ. Վ. Եղեսիոյ Ս. Սարգսի վանից վանահայր անուանեցաւ: Յիշեալ Վ.ը Եղեսիոյ վանից նորոգ շինութեան համար հազար հոգիէ բաղկացեալ Ընկերութիւն մը կազմած է եւ արդէն նոյն Ընկերութեան ազգասիրական նպաստիւքը վանքին շինութեանը պէտք

*եղած բոլոր նիւթերն ալ պատրաստած է։ Իր նպատակն է՝* շինուելիք վանքին մէջ դպրոց մը հաստատել շրջակայ գիւղերուն մանկունքը կրթելու համար։ *Այս Ընկերութիւնը նաեւ յատուկ սնտուկ մը հաստատած է* քաղաքին աղքատները խնամելու համար»։

*Ընկերութեանս* անունը *կը մնայ անծանօթ*։

## 7. ՌՈՒԲԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Հիմնուած է* 1863 *Ապրիլին։ Այս մասին ունինք ժամանակակից լրատեղեակ Հայ Թերթին վկայութիւնը, որ կը գրէ* 1864 *Փետրուարին. «Եղեսիայէն գրուած նամակ մը կը ծանուցանէ մեզ թէ երկար ժամանակէ ի վեր տեղւոյն Լուսաւորչական Հայոց շատերուն վրայ աղքատութիւն տիրած ըլլալով, իրենց առեւտրական գործերուն համար տեղւոյն այլազգիներէն հարիւր ղուրուշին ամսական* 5 *ղուրուշ տոկոս վճարելով փոխառութիւններ ընելու հարկադրուած էին*։ Այսպիսի ծանր եւ չափազանց տոկոսով փոխառութեանց վնասակար հետեւանքներէն աղքատ հասարակութիւնը ազատելու համար, անցեալ տարի ապրիլ ամսոյ մէջ *տեղւոյն առաջնորդ Գեր. Գրիգոր Ս. Արք.ը* Ռուբինեան անուամբ Ընկերութիւն *մը հաստատեր է այս նպատակաւ որ* Ընկերութեան անդամքը հաւաքուած դրամոց գումարը պէտք ունեցող հասարակութեան փոխ տրուի հարիւրին հա–

բիւր փարայ տոկոսով ։ *Այս Ընկերութիւնը վեց տարի շարունակելէ ետեւ*, յետ այնորիկ հաւաքուած ստակին արդիւնքն ալ տեղւոյն վարժարանին եւ անկար աղքատաց օժանդակութեան պիտի գործածուի ։ *Արդէն Ընկերութիւնը* 13,500 *զուրուշ հաւաքեր է եւ ունեցած բաժանորդաց թիւն ալ* 332*ի հասեր է եւ օր քան զօր ալ աւելնալու վրայ է ։ Ասոնք երեք կարգի բաժնուած ինքնայօժար սիրով ոմանք վաթսուն փարայ, ոմանք քառասուն եւ ոմանք քսանական փարայ շաբաթական կը վճարեն եղեր անթերի*» (Մասիս, 1864, *թ*. 625) ։

*Ընկերութիւնը* 1866 *Մայիս* 1*ին կը բանայ* «Թուքինեան վարժարանը», *որ կը տեւէ երկար տարիներ իր հովանիին տակ* ։ 1877*ին վարժարանի տասնումէկերորդ տարեդարձը կը տօնուի փառաւոր եւ աննախընթաց հանդէսով մը* (*տե՛ս* Մասիս, 1877 *թ*. 1086) ։

*Թուքինեան Ընկերութիւնը Ուրֆայի ամենաերկարատեւ Ընկերութիւնն է* ։ 1882 *Ապրիլին թղթակից մը կը գրէ*. «*Թուքինեան եւ* Որդիք–Թուքինեանց *Ընկերութիւնները, համանուն* Թուքինեան վարժարանը նորաշինելէն *յետոյ իբրեւ մի միացեալ մարմին կը գործէր, բայց Ընկերութենէն* անկախ պատճառներով *կրթական գործոց նկատմամբ իւր ձեռներէցութիւնը դադրեցնելու* պարտաւորուած էր երեք տարիներէ ի վեր... *Նոր անդամոց յաւելմամբ եւ ինչ ինչ կարե–*

*ւոր տնօրէնութեանց շնորհիւ* Նորոգ կազմակերպեալ *նորէն ձեռք կ՚առնու համանուն վարժարանի վարչութիւնը»* (Մասիս, 1882 *թ*. 3188)։

1883 *Մայիս* 1*ին*, *վարժարանի* 17*րդ տարեդարձին — վարժարանին մէջ կը բանայ* կիրակնօրեայ Լսարան *մը*, «*ուր գոհութեամբ կը յաճախէ հասարակութիւնն*, *որ ստուգիւ կարօտ էր մի այսպիսի հաստատութեան*» (Մասիս, 1883 *թ*. 3503)։ *Թղթակիցը կը գնահատէ Ընկերութեան արդիւնաշատ գործունէութիւնը*, *որ զոհողութիւններով լի եղած է*։ «17 *տարիներէ ի վեր զոհողութեամբ կանգուն կը պահէ համանուն վարժարանը*, *որ Եղեսիոյ միակ ընկերական եւ յարատեւ կրթական հաստատութիւնն է*» (Մասիս, 1883 *թ*. 3519)։

*Ընկերութեան երկարամեայ գործօն անդամ եղած է* Գէորգ Կ. Ոսկերիչեան, *Պոլսոյ* Մասիսի *թղթակիցը* (Մասիս, 1884 *թ*. 3724)։

1886*ին Ընկերութեան Ընդհ. Ժողովը դրամական հանգանակութիւն մը կատարելով իր ունեցած դրամագլուխին վրայ կը բարդէ եւ շահագործելով կը ջանայ հաւասարակշռել իր տարեկան ելեւմուտքը*։ *Այս առթիւ մասնաւորապէս կը շեշտուի Ընկերութեան օգտին համար ի գործ դրած ջանքը* Մ. Գաբրիէլ Կէմճեանի (Արեւելք, Կ. Պ. 1886 *թ*. 680)։

1889ին կանգուն է Ընկերութիւնը. իր վարժարանը — ծաղկոց եւ նախակրթարան — կը վարէ Գէորգ Կ. Ոսկերիչեան՝ օգնական ունենալով Յակոբ Աթթարեանը. վարժարանը լաւ վիճակի մէջ է (Փունջ, Կ. Պ. 1889 Թ. 2162, Յուլ. 12)։

8. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Կազմուած է 1863 Յուլիսին։ Հիմնումի առիթ տուած է «Ապահով ճամբայ» անունով գրութիւն մը, որ կը յորդորէ ժողովուրդը կրթելու համար դպրոցներ բանալ։ Ընկերութեան վարչութիւնը («խորհրդականք») նամակ մը գրած է, զոր կը հրատարակէ Մանչեստրի Երկրագունդը։ Կը հաստատենք. «...Ապահով ճամբայ ըսուած տետրակը... անպատմելի ուրախութիւններ կը բերէ։ Եւ արդ ահա այս գեղեցկախօս տետրակին միջոցով յԵդեսիա Լուսաւորչական անուամբ Ընկերութիւն մը հաստատեցինք երեք հարիւրէն աւելի անձերով բաղկացեալ... կը ջանանք որ դպրոցներ բանանք եւ մեր մաքին դիտաւորութիւնը ճիշդ այս է որ Հայոց զաւակունքները ձրի կարդան դպրոցի մէջ եւ անոնց կարդացած գրքերը ձրի ըլլան. ասոնց ամէնուն ծախքը Ընկերութեանս գումարանիէն պիտի ըլլայ եւ ասկէ զատ աղքատաց ալ բաժիններ պիտի ելլէ. վարժարաններուն ամսականները գումարանիէն պիտի ըլլայ... ի պայծառութիւն ազգիս կիրակիները դպրոց մը բանալով՝ խորհըր–

*դականներով եւ տասնապետներով կը նըստինք, դալած եւ երթած չարաթականներնիս կը ժողուենք... աս գործիս վերայ ջանացող տասը խորհրդական եւ քանհինգ տասնապետներ կայ, որ ասոնց ամէն մէկին տասը, տասնուհինգ նեֆերներ կայ... այս Ընկերութեան ըսկսումը հինգ ամիս ըլլալով, մինչեւ հիմա ունեցած ըստակնիս* 6070·80*ի չափ արծաթնիս եղած է... Ն. Ծ. խորհրդականք* Լուսաւորչական Ընկերութեան. *Տէօքմէճի Կարապետ, Տարաղճեան Գէորգ, Մըրճանեան Սարգիս, Ջուլհակ Յարութիւն, Մչահան Եօթնեղբայրեան, Գասապօղլի Գէորգ, Թէնէքէճեան Յակոբ, Վաճառական Տօնովագ, Գուլաճեան Մելքոն, Պօյաճեան Պօղոս, Գումբանիայի գրագէտները՝ Յակոբ Արեւեան, Գէորգ Ապուհայատեան. յԵդեսիա* 1863 *Դեկտեմբերի* 9*ին*» (Երկրագունտ, *Մանչեստր* 1864 *թ.* 3, *էջ* 4–5):

*Լուսաւորչական Ընկերութեան արժանիքն է Ուրֆայի առաջին* աղջկանց վարժարանի *բացումը եւ անոր վրայ հսկողութիւնը* (*տե՛ս* Վարագայի Հավատիս, *Կ. Պ.* 1865 *թ.* 140: — Փունջ, *Կ. Պ.* 1889 *թ.* 2170):

1874*ին Ընկերութեան Վարչութիւնը կը կազմէին.*

*Յակոբ Թէնէքէճեան*
*Վրթանէս Տ. Գասպարեան*
*Յարութիւն Թաւուրեան* (Փունջ, 1874 *թ.* 948):

Պեգասեան Թռչնիկ (Կ. Պ. 1865 *Թ.* 26) *1865ին Եղեսիոյ կրթական վիճակին վրայ խօսելով՝ կ՚ըսէ թէ հոն* չորս Ընկերութիւններ կան, *«որոնց ունեցած սակին գումարը ութսուն հազար դահեկանի կը հասնի»:* *Դժբախտաբար չի տար թերթը այդ չորս Ընկերութիւններուն անունները:*

### 9. ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865–1869)

*Ընկերութիւնս առաջին անգամ կը յիշուի* 1870 *Մարտին* (*Տե՛ս* Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1870 *Թ.* 1229), *«Լուսաւորչական» եւ «Վշտակիր» Ընկերութեանց հետ: Հիմնումի* թուականը *եւ* նպատակը *անծանօթ կը մնան: Նկատի առնելով որ* 1865*ին Եղեսիոյ մէջ* չորս Ընկերութիւն կար (*Տե՛ս* Պեգասեան Թռչնիկ, 1865 *Թ.* 26), *հաւանական չէ որ «Աւետարանական»ը* 1865*էն առաջ հիմնուած ըլլայ:*

### 10. ՎՇՏԱԿԻՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865–1869)

*Առաջին անգամ եւ* լոկ անունով *յիշուած է Ընկերութիւնս* 1870*ին* (Մանզ. էֆքիար, 1870 *Թ.* 1229): *Ուրիշ ծանօթութիւն չենք գտած:*

### 11. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Մասիս (1869 *Թ* – 949 *Փետրուար*) *կը գրէ. «(Եղեսիա) երեսունի չափ ուսումնասէր անձինք իրենց հայրենակցաց մէջ ուսում եւ կրթութիւն ծաւալելու ազնիւ նպա-*

տակաւ Անձնուէր Ընկերութիւն մը կազմելով՝ Կ. Պոլսոյ Անձնուէր Ընկերութեան հետ կապուելու խնդիր դրած են... Վերոյիշեալ նորահաստատ ճիւղն արդէն իր արդեամբ դպրոց մ'ալ մատակարարել սկսած է, որով կը ցուցնէ թէ կարեւոր նպաստ պիտի մատուցանէ Եդեսիոյ ազգային մտաւորական զարգացմանը»:

Ընկերութիւնս հաւանօրէն 1868ի վերջերը հիմնուած է: Մինչեւ 1878 իր մասին յիշատակութեան մը չենք հանդիպիր: 1878ին իր վարժարանը ունի, որուն վերատեսուչն է Մուրատեան (Հայրենիք, Կ. Պ. 1878 թ. 422):

1882ին Թղթակից մը կը տողէ Եդեսիա-Ուրֆայէն. «Քաղաքիս Անձնուէր անուն Ընկերութիւնը, որ ժամանակէ մը ի վեր դադրած էր՝ վերջերս վերակազմուիլ սկսաւ: Կը փափաքինք որ քաջալերութիւն գտնելով կարող լինի Ազգ. դպրոցներէն մին կառավարել, որք մեծ մասամբ անխնամ վիճակի մէջ են» (Մասիս, 1882 թ. 3208):

## 12. ՋՐՈՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869–70)

Կազմուած է անջրդի թաղերուն ջուր հոգալու համար: Յաջողած է կարեւոր գումար մը հայթայթել (Արեւելք, 1888 թ. 1258): Մանրամասնութիւն կը պակսի:

### 13· ՀԱՒԱՔԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Եղեսիայէն* 1870 *Մարտ* 30*ին գրուած նամակ մը իմացնելէ յետոյ թէ հոն ներքին մեծ խռովութիւններ ծագած ըլլալով՝ տեղական Ընկերութիւններն ալ հալածանքի ենթարկուած են՝ ի վերջոյ կ'աւելցնէ· «Բայց առ այժմ մեր փափաքը անցեալը իմացնելը չէ, այլ այժմեան խնդիրներն·* Լուսաւորչական, Աւետարանական, Վշտակիր Ընկերութիւններէ երկերկու մարդ *տեղ մը գալով* Հաւաքական Ընկերութիւն *մը ըրինք*, մանաւանդ դպրոցներուս վերակացու ըլլալով վարժապետին եւ աշակերտաց պակասութիւններուն, *ամսականներուն հոգածութիւն ընել· Անամք եւ այլն*, Հաւաքական Ընկերութիւն» (Մանզ· էփ·, 1870 *թ*· 1229)։

### 14· ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Հիմնուած է* 1871 *Յուլիս* 22*ին։ Իր նպատակի մասին Եղեսիայէն կը գրեն·* «Ա· Աղքկանց դպրոց մը ունենալ· Բ· Տեղւոյս Հայոց կրած նախատինքն Սրբազան Հօր (*Պատրիարք*) իմացնել· Գ· Արքունի տրոց համար բանտարկեալ աղքատները ազատել։ *Ամէն բաժանորդ կանխիկ կէս կամ մէկ լիրա պիտի վճարէ Ընկերութեան սնտուկին եւ յետոյ չաբաթականը պիտի չարունակէ։ Թէ խորհրդականը եւ թէ ատենապետը տարին անգամ մը բաժանորդներէն պիտի ընտրուի քուէիւ*» (Մանզումէի էփքիար, 1871 *թ*· 1691)։

*Ընկերութիւնը ներկայացուցիչ կ՚ունենայ* Պոլիս, Հալէպ եւ Անթէպ (*Անդ*)։

1871*ի աշնան տուն մը կը գնէ Ընկերութիւնը՝ հետեւեալ նպատակով*. 1. *Գիշերները չափահաս արհեստաւորներու տաճկերէն սորվեցնելու*, 2. *Շաբաթ իրիկունները լրագիր կարդալու եւ արքունի օրէնքները լսելու*, 3. *Երկուշաբթի իրիկունները Ընկերութեան հաշիւները տեսնելու*, 4. *Ցորեկները* 25 *մանուկներու հայերէն դաս տալու եւ* 5. *Կիրակիները փափաքողներու դասատուութիւն ընելու համար* (Մանզ. էֆքիար, 1872 *թ*. 1815)։ *Սակայն Թուրքերը, գլխաւորութեամբ հոճայի մը, արգելք կ՚ըլլան Ընկերութեան այս ծրագրին գործադրութեան, ինչպէս Ընկերութեան անդամները կը գրեն* 1871 *Դեկտ*. 20*ին, նամակի մը մէջ* (*Տե՛ս*, Մանզումէ, *անդ*)։

15. ԲՈՂԲՈՋ ՀԱՅԿԱԶՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

1872 *Փետրուար* 19*ին Ուրֆայէն գրուած նամակէ մը կը քաղէ Պոլսոյ* Հայրենիք *հետեւեալ տեղեկութիւնը*. «*Սիրտ ի խինդ կ՚իմանանք որ խումբ մը* 14 – 16 *տարեկան Հայրենասէր եւ ուսումնասէր Հայ երիտասարդք* «Բողբոջ Հայկազն անուն Ընկերութիւն *մը կազմած են*, Հայկազեան Ընկերութեան մէկ ճիւղը, որ դարձեալ նպատակնին ընթերցասիրութիւնը տարածել եւ աղքատաց ճրի գիրք

տալ, Թանգարան մը հաստատել, եւայլն է» (Հայրենիք, 1872 *թ.* 93)։

*Հիմնուած կ'երեւայ* 1872*ին սկիզբը*։

### 16. ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Անստորագիր թղթակից մը Ուրֆայէն գրուած նամակի մը մէջ տեղւոյն Դաւիթ Ծ. Վ.ի դէմ* Հայրենիք*ի մէջ գրուած նամակի մը պատասխանելով՝ կը գովէ եւ վեր կը հանէ Դաւիթ Վ.ի ազգօգուտ գործունէութիւնը եւ այդ առթիւ կ'աւելցնէ.* «...Համազգային անունով Ընկերութիւն մի հաստատեց, որոյ ջանից շնորհիւ հաւաքուած ստակները մեծ դպրոցին ծախուց պիտի գործածէ» (Փունջ, *Կ. Պ.* 1872 *թ.* 765)։

*Նամակը գրուած է* 1872 *Նոյեմբեր* 20*ին, իսկ Դաւիթ Ծ. Վ. իբրեւ Պատրիարք. Փոխանորդ Ուրֆա կը հասնի* 1872 *Մարտին* (*Հմմտ.* Հայրենիք, 1872 *թ.* 93)։ *Որով Ընկերութեան հիմնումը ըլլալու է* 1872*ի գարնան կամ ամրան*։

### 17. ՅՈՎՍԷՓԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Կը յիշուի* 1872 *Յուլիս* 10*ին՝ Ուրֆայէն գրուած անստորագիր նամակի մը մէջ, զոր հրատարակած է* Փունջ։ *Հիմնումի թուականը կը համարինք* 1872 *Մայիս–Յունիս*։ *Ահա նամակագրի տուած տեղեկութիւնը.* «...*Աւելորդ չեմ համարիր այս առթիւ համառօտ տեղեկութիւն մը տալ տեղւոյն* Յով-

սէփեան Ընկերութեան *վրայ*։ 12 *պատուարժան անդամներէ բաղկացեալ Վարչութիւն մի եւ հարիւրէն աւելի բաժանորդ ունի*։ Այս Ընկերութեան նիւթական ու բարոյական խնամոց տակ կը գտնուի իրեն համանուն վարժարան մի, յորում 70ի չափ ուսանող կայ, դասատուն է Մեծ. Վ. Խաչատուր Պուլուտեան» (Փունջ Օրագիր, Կ. Պ. 1872 *Թ*. 46)։

18. ՈՐԴԻՔ ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Հիմնուած է* 1877 *Մարտ* 1*ին*։ *Նախաձեռնարկն ու հիմնադիրն է* Ռուբինեան վարժարանի *ուսուցիչ* Գէորգ Կ. Ոսկերիչեան՝ *նպատակ ունենալով. «Ռուբինեան վարժարանի եւս աւելի զարգացման համար ջանք եւ ճիգ ի գործ դնել»* (Մասիս, 1877 *Թ*. 1981։ — Փունջ, 1877 *Թ*. 1181)։

*Տեղւոյն Թաղական Խորհուրդը կը գրէ. «Այս նորակազմ Ընկերութիւնը, որ երեւելի ու ազգասէր երիտասարդներէ ու պատանիներէ կը բաղկանայ՝ քիչ աւուր մէջ մեծ համբաւ ստացած է»* (Մասիս, *անդ*)։

*Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը կազմուած է Ռուբինեան վարժարանի սաներէն։ Գ. Կ. Ոսկերիչեան* 1878*ին կը գրէ Պոլիս թէ «Ռուբինեան» եւ «Որդիք – Ռուբինեանց» Ընկերութիւնները միացեալ ջանքերով ձեռնամուխ եղած են Ռուբինեան վարժարանի համար* նոր շէնք մը կառուցա-

նելու: 1878 *Մայիս 14էն քանի մը օր վերջ հին չէնքը կը փլցնեն՝ աշակերտները Առաջնորդարանի վերնայարկը զետեղելով ու նոր չէնքին հիմնադրութեան հանդէսը կը կատարեն*: «*Յիշատակութեան արժանի են, կ՚ըսէ Ոսկերիչեան, ազգասէր Ռուբինեան Ընկերաց ջանքն ու անվհատ ճգունքն*» (Մասիս, 1878 *թ*. 2143):

19. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

«Արեւեան» *վարժարանի ուսուցիչ* Յակոբ Արեւեան, 1878 *Յունուար* 11 *թուակիր նամակով կը գրէ*. «*Ուրախութեամբ սրտի կը ծանուցանեմ որ մօտ օրերս* Վարդանանց Ընկերութիւն *մըն ալ հիմնեցաւ Արեւեան դպրոցի մէջ, որոյ նպատակն է* ընթերցասէր որբ եւ աղքատիկ տղայոց հոգատարութիւն ընել, անոնց կարդալու, գրելու թուղթ, գրիչ եւ հանդերձ հոգալ: *Տաճկերէնի դասատու Գրիգոր էֆ. Տէր – Յովհաննէսեանը դպրոցին մէջ կարգեցին որ ձրի դասատուութիւն ընէ տաճկերէն փափաքողաց: Մօտ օրերս նոյն Կանոնագիրը եւ Խորհրդականաց անուանքն ալ կը ղրկուի առ ի հրատարակութիւն*» (Նոր Դար, *Կ. Պ.* 1878 *թ*. 2235):

1878 *Մարտ* 19*ին նամակ մը ուղղելով Պոլսոյ* Հայրենիքին՝ *Տ. Գրիգորեան (վերատեսուչ* Աբրահամեան վարժարանի) *եւ Մուրատեան (վերատեսուչ* Անձնուէր վարժա-

բանի) զարմանք կը յայտնեն Արեւեանի յայտնութեան վրայ եւ իրական չեն համարեր այդ տեսակ Ընկերութեան մը գոյութիւնը (Տե՛ս Հայրենիք, 1878 թ· 422)։

Նոյնպէս 1878 Ապրիլ 10 թուակիր նամակի մը մէջ (Տե՛ս Մասիս, 1878 թ· 2120) Կարապետ Յ· Արսէնեան Եղեսիայէն կը տողէ, «1· Եղեսիոյ մէջ «Արեւեան» անունով դպրոց չկայ, այլ «Ազգային դպրոցն» է, որուն մէջ Արեւեան պարզ ուսուցիչ մըն է եւ իրաւունք չունի իր անունով կոչելու ազգային վարժարան մը, 2· Դպրոցին մէջ «Վարդանանց Ընկերութիւն» մը հիմնուած չէ։ Արեւեան չի կրնար հաստատել անոր գոյութիւնը»։

Ինչպէս կը տեսնուի հակամարտութիւն մը կայ Արեւեանի եւ իր հակառակորդներուն միջեւ։ Մին կը պնդէ Ընկերութեան հիմնուած ըլլալը, միւսները կը ժխտեն։ Դժբախտաբար ուրիշ կողմէ լուսաբանութեան մը հանդիպած չենք։

## 20· ԱՂՔԱՏԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

1880ի Հայաստանի մեծ սովին առթիւ Եղեսիայէն գրուած սրտաճմլիկ նամակի մը մէջ կը գրէ Արամ· «...Իրաց այս վիճակին մէջ եթէ սակաւիկ մը մխիթարական երեւոյթ կայ՝ ան ալ Աղքատաց Ընկերութեան մասնախորհուրդին տարած ջանքն ու հոգածութիւնն է։ Խեղճերը իրենց յոյսը անոնց

*վրայ դնելով օգնութիւններ կը խնդրեն, բայց նորէն անդարմանելի է»* (Մանզումէի էֆքեար, 1880 *թ.* 1338):

*Ուրիշ տեղ յիշատակութիւն մը չենք գտած:*

21. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԽՈՐԷՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Կազմուած է* 1880 *Մայիս* 20*ին եւ նուիրուած Եղեսիոյ Առաջնորդ* Խորէն Սրբազանին (Մասիս, 1880 *թ.* 2659): — *Ա. Յ. Բրուտեան կը գրէ* 1881*ին.* «1880 *տարւոյ մէջ մեծ խումբ մը ուսումնասէր անձերէ բաղկացեալ* Ուսումնասիրաց... *անունով* Ընկերութիւն *մը կազմելով՝ ջանացին նոր ուղղութեամբ կանոնաւորել դպրոցս, բայց թափուած այնքան աշխատութիւնք անյաջող ելք մը ունեցան»* (Հայրենիք, 1881 *թ.* 929:

22. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Բրուտեանի թղթակցութենէն կ՚իմանանք թէ կազմուած է* 1880*ին* «յօգուտ եւ ի դաստիարակութիւն Եդեսիոյ անուս որդւոց»: *Հիմնադիրներն են, Գրիգոր Մեսրովպեան, Գրիգոր Պիլէզիքճեան, Գէորգ Գալայճեան, Գրիգոր Ռումզալեցի, Մելքոն Էֆէնտի, Մ. Գէորգ Թարխանեան, Մեսրովպ Մեսրովպեան, Յակոբ Թաշճեան, Յա–*

*կոբ Թէրզեան, Սարգիս Եէմէնիճեան, Սի-մաւոն Քիլէճեան ։ Ունեցած է իր* հիմնական կանոնագիրը (Հայրենիք, 1881 թ. 933) ։

23. ԲԱՐՈՅԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Հիմնուած է* 1886*ի սկիզբները ։ Իր Ա-տենապետն է* Կարապետ Պիճոյեան (Փունջ, 1886 *Թ*. 2003) ։

24. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Կազմուած է* 1889 *Յունուար* 1*ին ։ Հիմ-նադիրներն են* 50–60 *տուն* Հայ Կաթուղիկէ-ները, *նպատակ ունենալով*. «Իւրեանց աղ-քատաց ամէն պէտքերն հոգալ» (Փունջ, 1889 *Թ*. 2159 *Յուլիս* 15) ։ *Ամսական* 1 – 50 *ղուրուշ վճարող կայ եւ կը գոյանայ* 600 *ղու-րուշի չափ գումար մը* (*Անդ*) ։

25. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

1890 *Փետրուարին* «Դեռափթիթ *Ընկե-րութիւն*» *մ՚է եւ ունի դպրոց մը իր խնամ-քին տակ, որուն* վեցամսեայ *քննութեան հանդէսը կը կատարէ* (Փունջ, 1890 *Թ*. 2192) ։

26. ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1899)

*Ընկերութիւն մ՚է բաժանորդական, յի-շուած* 1899*ին* Սուրհանդակի եւ Բիւզանդիո-

*նի քով, որոնցմէ վերջինին մէջ Թղթակիցը կը գրէ. «Խումբ մը բարեսէր երիտասարդներ, որք* ժամանակէ մը ի վեր խնայողական Ակումբ մը հաստատած էին, *վերջերս իրենց հաշիւները կարգադրելով, տրամադրելի կեցած* 9000 *ղուրուշէն* 3000 *ղուրուշն Ազգ. Բարեգործական Հաստատութեանց նուիրեցին, իրենց նախապէս ունեցած պայմանագրութեան համեմատ»* (Բիւզանդիոն, Կ. Պ. 1900 *թ.* 1108):

27. ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1901)

1903*ի վերջերը Եղեսիայէն կը գրէ* Գ. Կ. Ո. *ծանօթ Թղթակիցը.* «Երկու տարիէ ի վեր *գոյութիւն ունեցող* Եկեղեցասիրաց հաստատութիւնը, *որ Ազգ. Որբանոցի քանի մը շրջանաւարտ սաներուն օգնեց*, երկրորդական կրթութեան հետեւելու, *իր ընթացքը անսայթաք շարունակելով՝ վարժարանաց նիւթական մատակարարութեան զորավիգներէն մին եղաւ»* (Սուրհանդակ, Կ. Պ. 1903 *թ.* 1487, *Դեկտեմբեր*): — *Ծանօթ է թէ Համիտի շրջանին կը գգուշանային* «Ընկերութիւն» *բառը գործածելէ: Հետեւաբար՝* «Հաստատութիւն», «Ակումբ», *եւ այլն:*

*Ըստ* Արամ Սահակեանի (*Դիւցազնական Ուրֆան, Պէյրութ* 1955, *էջ* 550) *Ընկերութիւնս հիմնուած է* 1901*ին՝ «Միացեալ վարժարանի տնօրէն* Տանատ Տաֆէնեանի *ջանքերով: Այս Միութեան անդամները շաբաթա-*

*կան մեթալիկ մը վճարելով, տարեկան գումար մը մէջտեղ կը բերէին եւ ընդունակ աշակերտներ կը ղրկէին գոլէճները»:*

*Պոլսոյ* Փունջ (1903, *Յունուար* 11) *կը գրէ. «Ուրֆայի մէջ տարիէ մը ի վեր* Եկեղեցասիրաց *անուամբ կազմուած* Ակումբին միամեայ *մանրամասն հաշիւը տրուեր եւ տեսնուեր է որ* 7410 *ղուրուշ գոյացեր է* շաբաթական 10 փարայով, *որ վճարեր են Ակումբին մասնակցողները: Այդ Ակումբին* նպատակն *է* օգնել վարժարանաց մատակարարութեան, անոք մանկանց խնամոց եւ Մատենադարանի զարգացման»:

*Ակումբս ունէր* այրերու, կիներու եւ օրիորդներու *զատ զատ* ճիւղեր:

1905*ին Թղթակից մը կը գրէ Ուրֆայէն. «Տեղւոյս Եկեղեցասիրաց հաստատութիւնը, ըստ* Կանոնական սովորութեան, *այս տարի ալ իր հաշիւները հրապարակաւ ներկայեց հասարակութեան: Առաջնորդ Հայրը (Անանիա Վ. Հազարապետեան) նախագահեց հաշուետուութեան: Կ'ամփոփենք.* Մուտք. — *Նախորդ տարեշրջանէն փոխանցուած գումար* 6411 *ղուրուշ*, արանց *վճարքներէ (շաբաթական տասը փարա)* 4145, կանանց *վճարքներէ* 866, օրիորդաց *վճարքներէ* 974, *դրամարկղի շահեցումէ* 768 *ղրուշ, գումար* 13,164 *ղրշ.:* Ելք. — *Ծախք Եկեղեցասիրաց Ակումբի* արանց ճիւղին՝ 3174 *ղրուշ*, *ծախք* կանանց ճիւղին՝ 781, *ծախք* օրիոր–

դաց նիւդին՝ 1050, *պատրաստ դրամագլուխ* 8159 *ղրուշ, գումար* 13,164 *ղրուշ։ Եկեղեցասիրաց Ակումբի գլխաւոր նպատակներէն մէկն է եկեղեցիին օգտակար մշակներ պատրաստելու համար քահանայացուներու կրթութեան ու պատրաստութեան օգնել»* (Սուրհանդակ, 1905 *թ.* 1833)։

28. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1902 – 3?)

*«... Կազմուած ուսուցիչ Յակոբ Աթթարեանի, Գարեգին Ոսկերիչեանի եւ Կարապետ Բրուտեանի ջանքերով, իր շուրջ հաւաքած էր արհեստաւոր դասակարգը», կը գրէ Սահակեան (Դիւցազնական Ուրֆան, անդ՝ էջ* 550), *առանց ճշդելու հիմնումի տարին եւ նպատակը։*

29. ՎԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1902 – 4?)

*Հիմնումի թուականը անստոյգ։ Գլխաւոր նպատակը եղած է. «Ս. Սարգիս վանքը վերածել կրթական օճախի մը» (Դիւց. Ուրֆան, էջ* 551)։

30. ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Բացած է գիշերային* լսարան *մը* (Ազատամարտ, *կ. Պ.* 1909 *թ.* 114)։

31. ԳԻՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Նպատակն է աւերակ եւ ամայացած գիւղերն*

ու դաշտերը գնել ու շէնցնել ։ Ունէր 100 անդամ (Ազատամարտ, Կ. Պ. 1910 Թ. 215) ։

32. ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911?)

*Հիմնումի առիթ տուած է Պոլսոյ «Մարմնամարզ» թերթը* (1911–14) ։ *Ժամանակը չի ճշդուիր ։ Հիմնադիրներէն կը յիշուին Սարգիս Սփէնչեան, Յարութիւն Սարգիսեան, Գէորգ Տողրամաճեան, Գրիգոր Հատիկեան* (*Դիւց. Ուրֆան, էջ* 750–1) ։

33. ԿՐԹԱՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* 1911 *Ապրիլին ։ Կը նպատակէ յարմար շէնք մը պատրաստելու Մանկապարտէզին ։ Նոյնպէս կ'օժանդակէ աղջըկանց դպրոցի համար պատշաճ շէնքի մը հայթայթման* (Բիւզանդիոն, 1912 *Թ.* 4648), *որուն շինութիւնը մասամբ կ'աւարտէ* 1913–*ին* (Բիւզանդիոն, 1913 *Թ.* 5052) ։ *Միութեանս հիմնադիրն է Առաջնորդ՝ Տէր Արտաւազդ Ծ. Վ.* (*Անդ*) ։

34. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1914)

*Կը յիշուի* Արարատէն (*Վաղարշապատ* 1915, *էջ* 511), 1914–5*ի տարիներուն* ։

35. ՈՒՐՖԱՅԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* Հալէպի *մէջ* ։ 1920–1*ին կը ջանայ նպաստել հայրենակիցներուն՝ գդես–*

*տեղէն եւ դրամ դրկելով* (Ժողովուրդի Ձայնը, *կ. գ.* 1921 *թ.* 726) ։ *Վերակազմուած է* 1923*ին* (*Տե՛ս Դիւցազն. Ուրֆան, էջ* 1256) ։

36. ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Հիմնուած է* Հալէպի *մէջ հետեւեալներէ. Արշակ Ոսկերիչեան, Գէորգ Տատեան, Լեւոն Եօթնեղբայրեան* (*Տե՛ս Դիւց. Ուրֆան, էջ* 1259–63) ։

37. ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1934)

*Կազմուած է* Հալէպ*ի մէջ* 1934 *Յունուարին* (*Տե՛ս այս մասին Դիւցազն. Ուլրֆան, էջ* 1264 – 7) ։

38. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1954)

*Կազմած են Ուրֆա – Կարմուճցիներ* (*Դիւցազն. Ուրֆան, էջ* 1272) ։

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՍԵՒԵՐԵԿ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

1. ՆԱՐԵԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

*Ուրֆայի* Սեւերակ *կամ* Սեւերեկ *Գիւղի* Նարեկեան Ընկերութիւնը *հիմնուած է Ուրֆայի Առաջնորդ* Խորայէլ Ծ. Վարդապետէն 1858*ի ամրան*։ Մասիս (1858 *թ.* 341, *Օգոստոս* 7) *պատմելով թէ յիշեալ Վ.ը թեմական*

այցելութեան մ՚առթիւ ամէն տեղ բարեկարգութիւններ ըրեր է՝ խօսքը մասնաւորելով Սեւերակի վրայ՝ կը գրէ. «Գլխաւորապէս Սեւերակ գիւղաքաղաքը գացած ժամանակը իւր ազդու քարոզներովն ու համոզիչ յորդորներովը հնացեալ դժտութիւններն ու երկպառակութիւնները ժողովրդեան մէջէն անհետ ընելով՝ քրիստոնէական եղբայրսիրութիւնը մէջերնին հաստատեր, եկեղեցւոյն եկամտից եւ ծախուց հաշիւները, որ երկար ժամանակէ ի վեր տեսնուած չէր՝ տեսեր եւ կարգի դրեր, դպրոցը բարեկարգեր, եկեղեցւոյն կիսակործանած սենեակները նորոգեր ու դպրոցին յարատեւ պայծառութեան ու բարեկարգութեանը համար Նարեկեան անուամբ Ընկերութիւն մը հաստատեր է՝ տասնեւչորս եկեղեցական ու աշխարհական ջանասէր ու բարեբարոյ անձինք Հոգաբարձու եւ Տեսուչ կարգելով, որոնք թէ՛ եկեղեցւոյն եւ թէ դպրոցին վերաբերեալ ամէն գործերը ժողովով եւ հաստատեալ Կանոնաց համաձայն պիտի տնօրինեն ու ի գործ դնեն»:

## 2. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

Մասիս (1885, էջ 715) 1885 Փետրուարին կը գրէ. «Սեւերեկի Դպրոցասիրաց Ընկերութիւնը շնորհակալութեամբ կը ծանուցանէ թէ տեղւոյն Քաղաքական Ժողովոյ Ատենապետ Յովհաննէս Աղա՝ իր որդւոյն Կիրակոս էֆ.ի հարսանեաց առթիւ 500 ղրուշ

նուիրեր է յիշեալ Ընկերութեան»։ Հիմնուած ըլլալու է 1884ին (Տե՛ս Արեւելք, 1885 թ. 334)։

## ՊԻՐԵՃԻԿ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

### 1. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

Եղեսիոյ Պերեճուկ կամ Պիրեճիկ Գիւղաքաղաքի մէկ Ընկերութեան յիշատակութիւնը կը գտնենք Մասիսի քով, որ կը գրէ. 1858ին, խօսելով Տ. Եփրէմ Ծ. Վ.ի գործունէութեան մասին. «Նոյն բարեջան Վ.ը Եղեսիայէն 18 ժամ հեռու Պէրէճուկ ըսված գիւղաքաղաքին մէջ ալ դպրոց մը հաստատած է Ընկերակցութեամբ եւ հիմա եկեղեցի մըն ալ հիմնելու դիտաւորութիւն ունենալով՝ թէ՛ այս եւ թէ Ս. Սարգսի վանքին եւ եկեղեցւոյն շինութեանը վերաբերեալ կայսերական հրովարտակներն ալ այս օրերս ստացաւ» (Մասիս, 1858 Դեկտեմբեր 25)։ Ընկերութեան անունը կը մնայ անծանօթ։ Ան պաշտպանն էր նորաբաց դպրոցին։

## ԿԱՐՄՈՒՆՋ ԳԻՒՂ

### 1. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878 – 9)

Թղթակից մը 1881ին կը գրէ Եղեսիայէն, Կարմունջի վրայ խօսելով. «Եթէ մխիթարական բան մը կայ, այն ալ խումբ մը

*երիտասարդներէ բաղկացեալ* «Հայրենասիրաց» Ընկերութեան յարատեւելն է, *որոյ մասին* անցեալյն մէջ ակնարկութիւն բրած եմ» (Մասիս, 1881 *թ*․ 2928)։ *Դժբախտաբար անկարող եղանք նախորդ տարիներուն մէջ գտնել այդ* «ակնարկութիւնը»։ *Հաւանական կը թուի որ հիմնումը եղած ըլլայ* 1878–9*ին*։ *Ընկերութեան* նպատակն *էր*․ «*Կրթական ձեռնարկներու համար նիւթական փարկ պատրաստել*» (Մասիս, 1881 *թ*․ 2928)։

*Հիմնադիրներէն առաջինը եղած է* Յակոբ Ն․ Պարտիզպանեան (Մասիս, 1882 *թ*․ 3233)։

1882*ին* «*Ընկերութեան անդամք Կիրակի օրերը մէկ տեղ կու գան՝ լրագիր եւ ուրիշ օգտակար հրատարակութիւններ կարդալով՝ լսարանի չաւիղ մը կը պատրաստեն ի Կարմունջ*»։ *Ընկերութիւնը կը յուսայ ի մօտոյ դպրոց մը բանալ* (Մասիս, 1882 *թ*․ 3233), *որուն ծախքերը կ՚երաշխաւորէ ինքը* (Մասիս, 1883 *թ*․ 3519)։

*Կ՚երեւայ թէ Ընկերութեանս անունը* 1883*էն վերջ վերածուած է* «Ուսումնասիրաց»*ի*, *ինչպէս կը յորջորջուի* 1884*ին* (Արեւելք, 1884 *թ*․ 184) *եւ* 1886*ին* (*Տե՛ս* Հայրենիք, 1886 *թ*․ 2080)։

1884 *Յուլիսին Կարմունջի նորակառոյց եկեղեցւոյն օծման առթիւ Խորէն Մխիթարեան Սրբազան բացումը կը կատարէ նաեւ Կարմունջի դպրոցին*, *որուն համար այնքան*

*աշխատանք տարած էր Ընկերութիւնը* (*Տե՛ս* Արեւելք, 1884 *թ*. 184) ։

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908 – 9)

*Կը յիշուի* 1909*ին* (Ազատամարտ, *կ*. *պ*. 1909 *թ*. 52) ։

3. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1934)

*Հիմնուած է* Հալէպ ։ *Հիմնադիրներն են*. *Յովսէփ Փախանեան*, *Սողոմոն Արծիւեան*, *Մելքոն Կարկոցեան*, *Հայրապետ Խաչերեան*, *Ներսէս Ներսէսեան*, *Մկրտիչ Խալաֆեան* ։ *Միութիւնը յետոյ կոչուած է* «Կարմունի Հայրենակցական Միութիւն» (*Տե՛ս Դիւ-ցազն. Ուրֆան*, *էջ* 1264 – 70 ։)

## ԳԱՄՐՇԼԻ ԳԻՒՂ

1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1934?)

*Հիմնումի տարին չէ ճշդուած* ։ *Նոր Միութիւն մը կ'երեւայ* (*Տե՛ս Դիւցազն. Ուր-ֆան*, *էջ* 1271) ։

## ԱՅՆԹԱՊ

1. ԹԱՆԳԱՐԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

*Հիմնուած է* 1858*ին* (Սուրիահայ Տարե-գիրք, 1925, *էջ* 120 ։ — Եփրատ, 1947 *թ*. 2862) ։ *Նախաձեռնող կը համարուին* Յարու-թիւն վարժապետ Կիւլէսէրեան, Խաչատուր

Փօղարեան եւ Գէորգ Սիւլահեան (Պատմութիւն Անթէպի Հայոց, Ա., էջ 569)։

*Հնութեան մէջ առաջին յիշատակութիւնը կը գտնենք* Մասիսի (*Կ. Պ.* 1864 *Թ.* 676) *քով, ուր* 1864 *Դեկտ.* 31*ին Այնթապէն գրուած նամակ մը կը տեղեկագրէ որ Այնթապի* 1000 *ընտանիք կազմող Հայերը «չորս վարժարան կամ դպրոց ունին, որոնց մէջ* 300 *տղայք կը գտնուին, բայց բանիբուն վարժապետ մը չունենալուն համար լոկ կարդալ գրելէ աւելի բան մը չեն կրնար սորվիլ։ Այս վհճակին դարման մ'ընելու համար* ասկէց հինգ տարի առաջ ԹԱՆԳԱՐԱՆ *անունով* Ընկերութիւն *մը կազմուեր է, բայց* երեք տարուան մէջ *Հայքի* 10,000 *դուրուշի չափ դրամ հաւաքելէ ետեւ՝ ծանծրանալով կամ մանաւանդ յուսահատելով* ցրուեր է *ի տրտմութիւն ժողովրդեան»։*

*Հնութեան մէջ ոչ մէկ յիշատակութիւն կայ թէ Ընկերութիւնս կոչուած ըլլայ նաեւ* «Մարդասիրական Ընկերութիւն» *ինչպէս կը պնդէ յօղուածագիր մը* (Պատմութիւն Անթէպի Հայոց, *Ա.*, *էջ* 659)։

*Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը* դադրած է երեք տարի վերջ, 1861*ին*։

2· ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Վերոյիշեալ նամակագիրը շարունակելով իր տեղեկութիւնը՝ կը գրէ որ Այնթապի Առաջնորդ* Մկրտիչ Սրբազան *քաղաքին «ազ-*

*դառէր երեւելեաց եւ Թաղական Խորհրդոյ անդամոց հետ խորհրդակցելով՝* 1864 *Դեկտ. 15ին ընդհ. ժողով մ'ընելով՝ Ս. Առաջնորդին ազդու յորդորանօքն ու առաջարկութեամբը* Սահմանադրական Ուսումնասէր *անուամբ* Ընկերութիւն *մը կազմուեր է, որուն անմիջապէս բաժանորդ գրուեր է Ս. Առաջնորդն՝ ամէնէն առաջ ինք տասն լիրա նուիրելով: Անոր նայելով՝ Նազարեան Մ. Նազար աղան* 20 *լիրա, որդին Մ. Նիկողայոս* 10 *լիրա, Ղարամանուկեան Մ. Մանուկ* 23 *լիրա... եւ ուրիշ ներկայ գտնուողներն ալ... բաժանորդ գրուելով* 280 *լիրայի գումար մը գոյացուցեր են...* 14 *Հոգաբարձու ընտրեր են, որոնց ջանիւքը բաժանորդագրութիւնը շարունակելով՝ մինչեւ Դեկտ.* 27 *չորս հարիւր երեսուն լիրայի հասեր է... կը յուսացուի որ* 7—800 *լիրա կրնայ գումարուիլ, որուն վրայ աւելցնելով* դադարեալ Թանգարանի Ընկերութեան 100 լիրայի չափ ըստակը *եւ* 100 *լիրա մ'ալ եկեղեցւոյն սնտուկէն առնուելով՝* 1000 *լիրայի դրամագլուխ մը պիտի գոյանայ եւ... արդիւնքը վարժարանաց ամսականին պիտի յատկանայ»* (Մասիս, *անդ*):

Ժամանակակից *այս տեղեկատուութեան վրայ այլ եւս չենք կարծեր թէ արժէք մ'ունենայ այն կարծիքը թէ «Թանգարանի Ընկերութիւն»ը* 1863ին վերածուած ըլլայ «Ուսումնասիրաց Ընկերութեան» (*Պատմ. Անթէպի Հայոց, Ա.*, *էջ* 415):

*Ընկերութիւնս կը յիշէ նաեւ* Հայրենիք (1879 *թ.* 587) *եւ կ'ըսէ որ* արդիւնք ունեցած է կրթական գետնի վրայ ։

3. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Կը կոչուի նաեւ* «Վարդանեան» ։ *Հնագոյն յիշատակութիւնը Պոլսոյ* Մասիսէն *ունինք, ուր Ընկերութիւնս 1874ին* «Վարդանանց» *կը յորջորջուի* (Մասիս, 1874 *թ.* 1518) ։

*Վարդանանց Ընկերութիւնը հիմնուած է 1867 Փետր. 23ին Այնթապի մէջ տեղի ունեցած* Վարդանանց տօնակատարութեան *առթիւ, զոր ժամանակակից թղթակից մը նկարագրած է 1867 Մարտ 11ին Պոլսոյ* Ժամանակ *թերթին մէջ,* առանց Ընկերութեան անունը տալու ։ *Այդ Ընկերութեան սկզբնական նպատակներէն մին էր* «դպրոցաց աղքատ տղայոցը հագուստ մատակարարել», *երկրորդ՝* լաւ ուսուցիչ բերել տեղւոյն վարժարանին համար, *երրորդ՝* «Թանգարան մը (*Ընթերցարան–Գրադարան*) բացած է, *ուր հաւաքուած են 300 ընտիր գրքեր*», *չորրորդ՝ բացուած է* գիշերային վարժարան մը՝ չափահասներու համար, *ուր 30է աւելի աշակերտներ կը յաճախեն* (Ժամանակ, *Կ. Պ.* 1867, *թ.* 111, *էջ* 56) ։

*Հաւանական է որ Ընկերութիւնը իր* Թանգարանի *կազմակերպութեամբ սկիզբը կոչուած ըլլայ նաեւ* «Սրբոց Վարդանանց Թան–

գարանի Ընկերութիւն» (*Պատմ. Անթէպի Հյց.*, *Ա. էջ* 666), *որուն Նախագահն եղած է, կ'ըսուի,* Գրիգորիս Վ. Աբարդեան, *Ատենապետ՝* Յովհաննէս Լուսարարեան: *Ընկերութեան անունը կարճ ատենէն կրճատուած է սակայն* «Վարդանանց Ընկերութիւն» *յորջորջումին, որուն վարիչները կը յիշուին. Կարապետ Նազարեան, Գէորգ Սիւլահեան, Խաչատուր Պօղարեան, Յովհաննէս Եաղուպեան, Յակոբ Թէրզիպաշեան, Կարապետ Եաղսըզեան, Աւետիս Տէր-Պետրոսեան, Աւետիս Տէր-Մելքոնեան:*

*Ընկերութիւնը ունեցած է իր* Կանոնագրութիւնը, *որ զարմանալիօրէն չէ հրատարակուած նոյն իսկ «Պատմութիւն Անթէպի Հայոց» մէջ, ուր հետեւեալ յօդուածները միայն կը գտնենք. ա) Շաբաթական նուագագոյն մէկ մեթալիք տուրք վճարել. բ) Շաբաթը երեք օր գիշերային դպրոց պահել. կարդալ չգիտցողներուն կարդալ սորվեցնելու համար. գ) Պայման է հայերէն խօսիլ. դ) Ընտանեկան դաստիարակութիւնը ապահովելու համար* բանալ աղջկանց յատուկ դպրոց մը. *ե) Երբ բաւարար դրամագլուխ գոյանայ՝* սեպհական դպրոց մը բանալ նաեւ մանչերու համար, որբ ու աղքատ տղաքը ձրիօրէն կարդացնելու համար» (*Պատմութիւն Անթէպի Հայոց, անդ՝ էջ* 666):

Գիշերային վարժարանը *անմիջապէս կը բանայ Ընկերութիւնը, ինչպէս տեսանք, արդէն 1867ին.* աղջկանց դպրոցի *բացումը կը*

յետաձգուի, անոր տեղ 1874ին կը բացուի Վարդանանց Մեսրոպեան Սանուց վարժարանը՝ մանչերու համար, որ առաջին տարին կ՚ունենայ 30 աշակերտ (Տե՛ս այս մասին Պատմ. Անթէպի, անդ՝ էջ 667): Այս վարժարանի աշակերտները կը հրատարակեն ձեռագիր ամսաթերթ մը՝ «Դրախտ» անունով՝ 15—20 օրինակ:

Ընկերութիւնը այդ վարժարանէն զատ ունէր նաեւ Կիրակնօրեայ Լսարան մը եւ կուտար մերթ թատերական ներկայացում (Անդ՝ էջ 668):

Ինչպէս շեշտեցինք վերը՝ Ընկերութեան սկզբնական նպատակներէն մին եղած էր աղջկանց դաստիարակութիւնը: Ահա այս մասէն թղթակիցի մը գրածը Այնթապէն 1879 Դեկտ. 21ին «10—12 տարիէ ի վեր «Վարդանանց» անուն Ընկերութիւն մը կը շարունակէ հոս, որ նպատակ ունի գլխաւորաբար աղջկանց դաստիարակութիւնը... Թէպէտ քանի տարի առաջ Մեսրոպեան անուամբ թաշակաւոր դպրոց մը բացած էր, չյաջողեցաւ դէթ 4րդ շրջանը աւարտել, որ 5 տարուան համար էր... այժմ կը ջանայ իւր բուն նպատակին, այն է՝ աղջկանց վարժարանի բացման» (Հայրենիք, Կ. Պ. 1879 թ. 588):

Ընկերութեան հիմնադիրներէն մին է Յ. Լուսարարեան, որուն մեծադիր պատկերը «Վարդանեան» վարժարանի մէջ կախուած էր (Հայրենիք, 1884 թ. 1652) եւ երկրորդը՝

Նիկողայոս Նազարէթեան, *որ միշտ պաշտպան ու քաջալերող եղած է Ընկերութեան* (Արեւելեան Մամուլ, *Իզմիր* 1884, *էջ* 320)։

*Վարդանանց Ընկերութիւնը* 1881*ին ձեռնարկած է* յատուկ դպրոցի շէնք մը կառուցանել (Մասիս, 1881 *Թ*. 2991)։ *Կը ջանայ բանալ* Նախակրթարան *մը*, *որուն մէջ* «*օտար դպրոցաց մէջ աւանդուած բոլոր դասերն ալ պիտի ուսանին… Գրենական եւ ուրիշ դպրոցական պիտոյք Ընկերութեան կողմէն պիտի տրուին…*» (Մասիս, 1882 *Թ*. 3111)։ — Վարդանեան Նախակրթարանը *կը բացուի* 1882 *Փետր*. 1*ին եւ կ'ունենայ* 30 *աշակերտ* (Մասիս, 1882, *Թ*. 3155), *ուր կ'աւանդուին*. *Հայերէն*, *Թրքերէն*, *պատմութիւն*, *աշխարհագրութիւն*, *թուաբանութիւն*, *քրիստոնէական վարդապետութիւն*, *մատմարզ եւ գեղագրութիւն* (Մասիս, 1883 *Թ*. 3442)։ *Իսկ Իզմիրի թերթը կը գրէ* 1884 *Յունիսին*. «*Այնթապի մէջ ուրախալի երեւոյթ մ'է դնել* Վարդանանց Ընկերութիւնը, որ 17 տարի առաջ հաստատուած է կրթութիւն ծաւալելու նպատակաւ… *այժմ դպրոց մ'ունի*, *ուր* 50 *աշակերտ ուսում կ'ընդունին… Ընկերութեան գործոց մի անդամն է* Պ. Վ. Քիւրքճեան» (Արեւելեան Մամուլ, *Իզմիր* 1884, *էջ* 319)։ — 1885*ին վարժարանը ունէր* 75 *աշակերտ եւ* 9 *ուսուցիչ* (Արեւելք, 1885 *Թ*. 385)։

1890*ին* Արեւելք (1890 *Թ*. 1809) *կը գրէ*. «*Վարդանեան Ընկերութիւնը հաստատուած*

*է 1867ին... իր հրապարակային գործունէու-թիւնը կը սկսի* 1882ին Վարդանեան Կրթա-րանին *բացմամբ*, որ Կիլիկիոյ բոլոր վար-ժարանաց բարձրագոյնը հանդիսանալով, *գովելի արդեամբ պսակուած է հիմնադիր-ներու աշխատութիւնը... Վարդանեան Ըն-կերութիւնը... ամէնէն առաջ* քաղերական ընտիր ներկայացումներով ժողովրդեան բա-րոյական կարողութիւնը կրթելու ջանահնար եղած է. *առաջին Լսարանը նաեւ հաստա-տելով*՝ Այնթապցիներու մտաւորապէս զար-գացման նոր զարկ մը տուած է...»:

1908ին *Այնթապի մէջ* Հայկական Բարձ-րագոյն Վարժարան *մը հիմնելու նպատակին «Վարդանեան Ընկերութիւն»ը կը յատկացնէ «իր պահեստի գումարը»*՝ 1000 *ոսկի* (Բիւ-զանդիոն, Կ. Պ. 1908 *Թ*. 3745):

*«Վարդանանց»ը Այնթապի ամէնէն եր-կարատեւ Մշակութային Ընկերութիւնն ե-ղած է եւ տեւած* 1867—1915:

4. ԼԵՒՈՆԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867—70)

*Յիշատակութիւնը կ'ընէ Պոլսոյ* Մասիս 1874 *Մարտին եւ այն՝ Այնթապի* Վարդա-նանց Ընկերութեան *հետ եւ անոր կապակ-ցութեամբ* (Մասիս, 1874 *Թ*. 1518):

*Ուրիշ տեղ յիշուած չէ*:

5. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—1)

Մասիսի *մէջ Թղթակից մը* 1874 *Մարտ* 14*ին կ'իմացնէ թէ Այնթապի մէջ գոյութիւն*

ունեցած է «քանի տարիէ ի վեր հաստատուած Աղքատախնամ Ընկերութիւնը, որուն ձեռօք բաշխուած շաբաթականներուն շնորհիւ թէ՛ քաղաքին մէջ թէ՛ տուները եւ թէ եկեղեցւոյ դուռը երբեք մուրացիկ աղքատ մը չգտնուիր...» (Մասիս, 1874 թ. 1518):

Ասկէ վերջ Հայ թերթերու մէջ որեւէ յիշատակութիւն չըլլար Ընկերութեանս մասին: Շուտով դադրա՞ծ էր:

6. ԱՆՁՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—1)

Գործակցական, բաժանորդական Ընկերութիւն մ՚է, հիմնուած «Վարդանանց Թանգարանի Ընկերութեան» կողմէ: Հիմնումի թուական չի յիշուիր, բայց կ՚ըսուի թէ տեւած է մինչեւ 1875, քոլերայի տարին (Պատմ. Անթէպի Հայոց, Ա., էջ 668):

Բաժնեվճարն էր մէկ մէճիտ, որմէ գոյացած էր 400 ոսկի եւ երեք թաղերու մէջ բացուած էին Նպարավաճառի խանութներ («Թանգարան Տիւքէնի»), որոնցմէ կը գնէին Ընկերութեան անդամները: Ընկերութիւնը ունեցած է 300 անդամ: Տեւած է մինչեւ 1875:

7. ԹՈՒՐԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871—2)

Հիմնադիրն է Ատուր Աղա Նիզիպլեան: Հիմնադրութեան տարին կը համարուի 1871—2 (Պատմ. Անթէպի Հյց., Ա., էջ 662): Նպատակն եղած է երիտասարդութիւնը անբարոյութենէ հեռու պահել: Ունեցած է

Գրադարան եւ Ընթերցարան: *Կը տեւէ տասը տարի եւ կու տայ մերթ ներկայացումներ ալ* (*Անդ*, *էջ* 511—2):

8· ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Հայրենիք (*Կ· Պ·* 1872 *Թ·* 124) 1872 *Հոկտ· 21ին կը գրէ·* «*Այնթապի* նորակազմ Հայրենասիրաց Ընկերութեան *վրայօք ալ հետեւեալ ուրախալի տեղեկութիւնն ստացած եմք: Վեց պատուարժան ազգայինք, որք են Սարգիս Վարդապետեան, Նահապետ Նահապետեան, Յովհաննէս Զնօղեան, Յակոբ Զ· Փերոնեան, Յովհաննէս Ղարայեան եւ Յակոբ Մ· Մելքոն Փիրենեան, որ այլեւայլ տեղէ Այնթապ պանդխտած են*, իրենց Հայրենեաց մէջ ընթերցանութիւնը տարածելու համար *Ընկերութիւն մը կազմեր եւ բաւական գումար մը ձեռք բերեր են*, մանաւորապէս հասարակաց Թանգարան (*Գրադարան–Ընթերցարան*) մը հաստատելու նպատակաւ»:

*Ուրիշ տեղեկութիւն չունինք:*

9· ԵԴԵՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Մկրտիչ Կաթողիկոսի Կիլիկիոյ* Գիշերօթիկ Վարժարանի *սաները «Երեց» եւ «Կրտսեր» խումբերու բաժնուած էին: Կրտսերները, որոնց մէջ էին Վահան Քիւրքճեան, Նազարէթ Ներսէսեան, Ռափայէլ Մինասեան կամ Դերձակեան*՝ 1874ին *իրենք իրենց մէջ փոքրիկ Ընկերութիւն մը կը հիմնեն* «Եդե–

մեան» անունով, որուն նպատակն էր ծառայել Հայ Ազգին բարելաւութեան եւ եթէ պայմանները թոյլատու ըլլան՝ տպարան մը հաստատելով օգտակար հրատարակութիւններ ընել (Պատմութիւն Անթէպի Հայ., անդ՝ էջ 740):

Հազիւ տարի մը տեւած՝ կը դադրի:

10. ԱԴԵՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

«Եդեմեան» Ընկերութեան դադարումէն անմիջապէս վերջ, 1875ին, հիմնուած է «Ադենական Ընկերութիւն»ը: Հիմնադիրներէն յիշենք. «Գիշերօթիկ վարժարանի» Տեսուչ՝ Նշան Թէրզեան, Մ. Գրիգոր Լէյլէկեան, Կարապետ Ջէրպէճեան, Կարուճ Մէրճէնեան, Համբարձում Հաճընլեան, Ղուկաս Տէմիրճեան, Միսաք Գոչունեան, Մինաս Պալեան, Միքայէլ Բերիացի, Ռափայէլ Մինասեան, Յակոբ Գալճեան, եւ այլն (Տե՛ս Պատմ. Անթէպի Հայ., Ա., էջ 740 եւ 753): — Ընկերութիւնը կը հրատարակէ խմբագրական ամսաթերթ մը՝ «Ադեն»:

Ընկերութեան անունը ունեցած է զանազան ձեւեր — Ատենական, Ադենական, Ադինական, Աթենական: Հնութեան մէջ առաջին յիշատակութիւնը կը գտնենք Հայրենիքի քով, 1879ին, ուր թղթակից մը՝ Ա. Հայկազն՝ 1879 Դեկտ. 21 թուակիր նամակի մը մէջ կը գրէ Այնթապէն. «Ատենական անուամբ Ընկերութիւն մը եւս կայ, որոյ հիմնարկութիւնը Գիշերօթիկ վարժա-

բանի աշակերտացմէ ըլլալով՝ *Թէպէտ սա-կէ առաջ* իրենց մէջ սահմանափակեալ էր *եւ նպատակնին* գաղտնի պահուած, *սակայն այս տարի Հաճեցան անդամները ընդհանուրի վերածել զայն: Այժմ բաւական անդամներ ունեցած է... Ատենական Ընկերութիւնը նը-պատակ դրած է իրեն* Որբանոցի մը հաս-տատութիւնը» (Հայրենիք, 1879 *Թ.* 588):

*Ընկերութիւնը* 1881*ին վերջերը* 15 *որ-բերով կը բանայ իր* Որբանոցը, *որ* 1885*ին կը վերածուի* Որբանոց—Դպրոցի՝ *ցերեկօթիկ աշակերտներով* (Արեւելք, 1885 *Թ.* 383: — Փունջ, 1885 *Թ.* 1930: — Երկրագունտ, Կ. *Պ.* 1887, *էջ* 159: — Արաքս, *Պետերբուրգ* 1888, *էջ* 60): *Յաջորդ տարիներու մէջ Ա-դենական Որբանոց—Դպրոցը կը դառնայ* Ադենական Վարժարանի՝ *պահելով նաեւ որոշ թիւով որբեր: Վարժարանս ունէր Մանկոցի, Նախակրթարանի եւ Կրթարանի բաժիններ, ունենալով* Կիրակնօրեայ Լսա-րան *եւս: Վարժարանը իր անդրանիկ Շրջա-նաւարտները կու տայ* 1892*ին* (*Տե՛ս ընդար-ձակօրէն՝ Պատմ. Անթէպի Հայ., անդ՝ էջ* 742—59):

*Ընկերութիւնս տեւած է մինչեւ* 1915:

## 11. ԳԻՆԵՀԱՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

1879 *Մարտ* 2*ին Այնթապի* Ներսէսեան Վարժարանին *մէջ* Դոկտ. Գարեգին *կը խօսի* արբեցութեան *բազմադիմի վնասներուն վը-րայ: Ներկայ են* 500 *ունկնդիրներ: Ճառա-*

*խօսութենէ վերջ կը կազմէ* Գինեհատական Ընկերութիւնը, *որուն շատեր կ'անդամագրուին, քիչ ատենէն ատոնց թիւը բարձրանալով 40ի*: *Պոլսոյ* Փունջ *թերթը, որ այս տեղեկութիւնը* Աւետաբերէն *առնելով կը քաղէ՝ կ'աւելցնէ որ* «անդամք կը ստորագրեն Ընկերութեան ուխտը եւ իրենց վկայականը կը կախեն տան մէջ, որպէս զի հիւրք ըմպելեաց չապասեն...» (Փունջ, 1879 *թ*. 1384):

### 12. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ՊԱՐԶԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Այնթապի* Ազգային Հայկանուշեան վարժարանի *տեսուչ* Արմենակ վարժապետ Պաղտասարեանի եւ Տէր Եղիշէ Քիլիսլեանի *նախաձեռնութեամբ խումբ մը դպրոցասէր տիկիններ 1879ին հիմը կը դնեն Այնթապի առաջին կնոջական ընկերութեան* — Հռիփսիմեանց Պարզասիրաց Ընկերութեան, *որուն նպատակն էր. ա) Տարածել իգական սեռի դաստիարակութեան, բ) Որբուհիներ կարդացնել, գ) Հրաժարիլ պչրասիրութենէ, շռայլութենէ, տօնական օրերու մսխումներէն ու զինարբուքներէն, դ) Պարզասիրութիւնը ընել իրենց կոչալ* (*Պատմ. Անթէպի Հայ.*, *Ա.*, *էջ* 760):

*Ընկերութեան Խնամակալ Մարմինոյն անդամուհիներն էին.* Ֆէրիտ Լէյլէկեան, Էլմաստ Քիւրքճեան, Լուսիա Ղազարեան, Խանըմ Լէյլէկեան, *որոնց անձնական օրի-*

*նակը եւ տարած աշխատանքը խթան կ'ըլլան շատերուն եւ կ'արժանանան ընդհանուր քաջալերանքի, որով կարճ ժամանակին Ընկերութիւնը կարող կ'ըլլայ* 50—60 *սանուհիներ պահել* Հայկանուշեան *վարժարանի մէջ, իսկ* 1881*ին* կը բանայ նոյն իսկ սեպհական աղջկանց Ծաղկոց մը, *ինչպէս կը պատմէ Այնթապի թղթակից մը* 1881 *Դեկտ.* 30*ին, գրելով. «...Քաղաքիս գեղեցիկ սեռին մէջ մի ազնիւ խումբ բաւական ժամանակէ ի վեր կը ձգտի ազգասիրական զգացումով մը ծառայել Հայութեան: Այս համակրելի խումբը, որ* Հռիփսիմեան Պարգասիրաց Ընկերութիւն *անուամբ կը ճանչցուի*, գրեթէ երկու տարիէ ի վեր կազմուած է *եւ գործի եւս սկսած*: Նպատակն՝ *ինչպէս անունէն կը յայտնուի*՝ պարգասիրութեան օգտաւէտ սկզբան տարածումն է: *Ընկերուհիք* շաբաթական եւս կը վճարեն, *որոյ արդեամբ* բացած են մի օրիորդական Ծաղկոց եւս, *ուր կը կրթուին* 40*ի մօտ ուսանողներ, տարեկան փոքրիկ թոշակ մը վճարելով: Սոյն ազնիւ գործը յառաջ տանելու համար միաբանող Տիկնանց մէջ կան նաեւ հարուստ ազգայնոց բամբիշք եւս, որք փոխանակ այլ նմանեաց հետեւելով կրթական ձեռնարկ մը առ ոչինչ համարելու՝ զայն կը քաջալերեն իրենց ընկերակցութեամբ: Պարտ անհրաժեշտ է շնորհակալութեամբ՝ յիշել նաեւ* զԱրժ. Տ. Եղիշէ քահ. եւ զՊատ. Ա. Պաղտասարեան *դասատու*

*Հայկանոյշ դպրոցին՝* իբրեւ ուղիչ աշխատողներ յիշեալ Պարզասիրաց Ընկերութեան» (Մասիս, 1882 *Թ*. 3087)։

1883*ի սկիզբը Ընկերութիւնը հրապարակային հանդէսով մը կը տօնէ իր* չորրորդ *տարեդարձը։ Ունի* 250 *անդամուհի*, 50 *օսմ. ոսկի դրամագլուխ եւ* 60 *աշակերտուհիով յատուկ դպրոց մը։ Գործադիր Ժողովի անդամ է* Տիկին Եղսա Նազարէթեան (Մասիս, 1883 *Թ*. 3442։ — Հայրենիք, 1884 *Թ*. 1692)։

1887*ին թղթակից մը գովեստով վեր կը հանէ «Նազարեան, Ղազարեան, Լէյլէկեան, Պաղտասարեան, Պալեան եւ այլ ազնիւ դերդաստանաց վերաբերեալ համեստափայլ Տիկինները, որք մեծ գոհողութեամբ կը յարատեւեն, իրենց նուիրական գործոյն մէջ»* (*Արեւելեան Մամուլ, Իզմիր*, 1887, *էջ* 100—1)։ — *Ընկերութիւնը* 1888*ին ունէր* 300 *անդամուհի եւ կը կառավարէր* հինգ աղջկանց դպրոց՝ 250 *աշակերտուհիներով* (Արաքս, *Պետերբուրգ* 1888, *էջ* 60)։

*Թղթակից մը* 1889*ին կը տեղեկագրէ Այնթապէն. «Այնթապի* աղջկանց ազգային վարժարանը, մի քանի տարիէ ի վեր յանձնուած էր Կանանց Հռիփսիմեանց Ընկերութեան։ *Վերջինը այլեւս չկարենալով տանիլ ծախքերը, կը հրաժարի զայն մատակարարել։ Սոյն Ընկերութիւնն ունի արդէն* իր մասնաւոր Ծաղկոցները» (Արեւելք, 1889 *Թ*. 1572)։ — *Ընկերութիւնը պահ մը յորջորջուա՞ծ է նաեւ «Հռիփսիմեանց* Ընթերցա–

սէր *Ընկերութիւն»․ զի այս ձեւով կը յիշէ զայն* Արեւելք (1890 *Թ*․ 1846)։ — 1898*ին նոր Ծաղկոց մը եւս կը բանայ Ընկերութիւնը, որ կ'ունենայ* 70—80 *աշակերտ* (Արեւելք, 1898 *Թ*․ 3802)։

*Հռիփսիմեանց—Պարզասիրաց Ընկերութիւնը ունէր իր* Կիրակնօրեայ Լսարանը, *կիներու յատուկ։ Ամէն տարի* Ս․ Հռիփսիմեանց *տօնին սովորութիւն ըրած էր յատուկ հոգեհանգստեան պաշտօն կատարել տալ Ընկերութեան հիմնադիրներուն ու անդամներուն համար։ Կը սարքուէր բացառիկ հանդէս մ'ալ եւ այդ առթիւ սրահին ճակատը կը կախուէր* Ս․ Հռիփսիմէ Կոյսին *նկարը (հաւանօրէն գործ Արմենակ Վարժապետին․ ներկայիս այդ նկարը դեռ գոյութիւն ունի եւ սեփականութիւնն է Այնթապի* Կրթասիրաց Վարժարանին, *Հալէպ*)։

*Կը թուի թէ Ընկերութիւնս իր գոյութիւնը պահած է որեւէ ձեւով մինչեւ* 1915*ի արհաւիրքի օրերը*։

## 13․ ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կազմուած է* 1883*ին Այնթապի* Բահան թաղին *մէջ։ Հիմնադիր կը յիշուի* Յակոբ Գարամանուկեան։ *Ահա թղթակիցի մը տեղեկատուութիւնը Այնթապէն* 1884 *Նոյ*․ 20 *թուական նամակով․ «Քաղաքիս կրթական Ընկերութեանց մէջ կը սկսի փայլիլ* Հայկազնեան Ընկերութիւնն *ալ, որ Բահէն բազմահայ թաղին մէջ էր։ Այս Ընկերութիւնը՝*

*թէեւ* նորակազմ, *բայց* միամեայ գործերուն մէջ *ցուցուցած է մեծ գործունէութիւն եւ գոհացուցիչ արդիւնք*։ Երեսուն աշակերտներէ բաղկացած դպրոց մը բացած է, *ուր ընտելարանի կարեւոր դասեր կ՚աւանդուին*։ *Երեսուն լիրայի չափ մուտք մ՚ունեցած է մէկ տարուան մէջ եւ փոքրիկ գումար մ՚աւելցուցած*» (Հայրենիք, 1884 *Թ.* 1692)։ — *Ընկերութեան Գործադիր Ժողովի անդամ մ՚է* Գրիգոր Մանուշեան (Արեւելեան Մամուլ, 1887, *էջ* 100)։

*Տեւած կ՚երեւայ գոնէ մինչեւ* 1895։

### 14. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Պոլսոյ* Փունջ *միակն է որ Ընկերութեան մասին տուած է ծանօթութիւն մը*։ *Իր տեղեկատուութիւնը* 1885 *Փետր.* 4*էն ըլլալուն՝ կը կարծենք թէ հիմնումի տարին* 1884 *ըլլալու է*։ *Ահա* Փունջի *թղթակցին գրածը Այնթապէն. «Ի բացում ժամանակէ հետէ հայաբնակ թաղ մը զուրկ էր ուսմանէ եւ կարօտ կանոնաւոր դպրոցի. հուսկ ուրեմն շնորհիւ ազգասէր անձանց ոգեւորեցաւ* Արամեան Ընկերութիւնն *եւ հրաւիրեց աշխատասէր երիտասարդ մը, որոյ գործակցութեամբ կ՚արդիւնաւորի Ընկերութիւնը*» (Փունջ, 1885 *Թ.* 1930)։

### 15. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

Արեւելք 1886 *Փետր.* 25*ին կը գրէ. «Ազգային Ընկերութիւնք եւս* մի տարի հետէ

*առաւել գործունէութիւն ցուցին*: Ներսէսեան Վարժարանը խնամելու համար նոր Ընկերութիւն մը կազմուեցաւ...» (Արեւելք, 1886 *Թ.* 660):

*Դժբախտաբար Թերթը չի տար* անունը *այդ նորակազմ Ընկերութեան, որ ուրիշ Թերթերէ ալ չէ յիշուած: Կազմութիւնը եղած է 1885ին, զի այդ գրութեան մէջ քիչ առաջ ըսուած էր Թէ* 1886 Յունուարի թիւին *մէջ կարդացած էր* սխալ բաներ Այնթապի մասին, *որոնց դէ՛մ է որ ինքը կը գրէ*:

16. ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1886—7)

*Հիմնած են* Վարդանեան Կրթարանին *Սաները, որոնք ունեցած են իրենց սեպհական խմորատիպ Թերթը՝* Աստղիկ Վարդանեան, *որ տեւած է* 1888—1914, *մերթ փոխելով այդ անունը* Խոհեր*ի*՝ (1908—10): *Կը կոչուի նաեւ, եթէ չենք սխալիր*, «Շրջանաւարտից Միութիւն» (*Պատմ. Անթէպի, Հյց.*, *էջ* 731 *եւ* 712 *ծանօթ.*):

17. ՀԱՅԱԽՕՍ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886—7)

*Կազմուած է Այնթապի* «Կեդրոնական Թուրքիոյ Գոլէճ»*ի շրջանակին մէջ* «թրքախօս Հայ ուսանողները հայերէն խօսակցութեան վարժեցնելու համար» (*Պատմ. Անթէպի Հյց.*, *Ա.*, *էջ* 846): *Ունեցած են Գրադարան մը՝ հայերէն ընտիր գրքերով: Գո-*

լէճի ուսանողութիւնը հրատարակած է «Սէտայը Հագիքար» անունով խմորատիպ մը:

18. ԿՐՕՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1887)

Հիմնած են Վարդանեան Կրթարանի աւագ դասարանի աշակերտները եւ իրենց գաղափարակից երիտասարդներ: 1891—6ին վերածուած է «Կղերասիրաց»ի (Տե՛ս Պատմ. Անթէպի Հայ., Ա., էջ 763), իսկ 1900ին կը կոչուի «Եկեղեցասիրաց»: Հիմնադիրներէն են. Գրիգոր Թավուգճեան, Գարեգին Պօղարեան, Նուրիճան Նիգիպլեան, եւ այլն (Անդ, էջ 763 ծանօթ., 775 ծանօթ. եւ 890: — Տե՛ս նաեւ Սուրհանդակ, Կ. Պ. 1900 Թ. 416):

19. ՈՒՍԱՆՈՂԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1887—8?)

Կազմած են «Կեդրոնական Թուրքիոյ Գոլէճ»ի աշակերտները, որոնք ունեցած են նաեւ «Գրական», «Մարզական» եւ ուրիշ Միութիւններ ալ (Պատմ. Անթէպի Հայ., Ա., էջ 846):

20. ՇՐՋԱՆԱՒԱՐՏԻՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1887—8?)

Նոյնպէս «Գոլէճ»ի Սաները կազմած են «ջանալով մէկ կողմէն Գոլէճի դրամագլուխըն աւելցնելու եւ միւս կողմէն տարուէ տարի օգնելու կարօտ ուսանողաց» (Անդ):

## 21. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Կազմուած է 1888 Յուլիս—Օգոստոսին։ Հիմնադիրներն են Այնթապի Հայ Տիկինները։ Փունջի (1889 Թ. 2167) մէջ 1889 Օգոստոս 25 թուակիր թղթակցութեան մը մէջ ըսելէ յետոյ թէ Յուլիսին Աղենական վարժարանի տարեկան քննութիւնները տեղի ունեցած են՝ կը գրուի. «Մի օր յետոյ Կանանց Բարեսիրական նորակազմ Ընկերութեան տարեգլխոյ հանդէսը կատարեցաւ... Մարիամ Տիկ. Տ. Ղազարեան շատ ընտիր ատենաբանութիւն մը կարդաց...»։

Ուրիշ ծանօթութիւն չունինք։

## 22. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

Կը կոչուի նաեւ «Ընթերցասէր Հայուհեաց Ընկերութիւն» (Փունջ, 1890 Թ. 2190)։ Կազմած են Հայկանուշեան վարժարանի Շրջանաւարտուհիները՝ Տէր Կարապետ Կիւլիւզեանի քաջալերանքով։ Մինչեւ 1889 տարին այդ վարժարանը տուած էր 40 Ընթացաւարտ։ Ընկերութեան նպատակն էր. «Ընտիր գրեանք ունենալ եւ իրենց մայրենի լեզուն տածել եւ տարածել» (Փունջ, 1889 Թ. 2167)։ Կամ՝ ինչպէս Բիւզանդիոնի (1889 Թ. 776) քով կը սահմանուի՝ «Ընթերցասիրութիւնը տարածել իգական սեռին մէջ»։ Արեւելքի թղթակիցը կը գրէ 1890 Փետր. 22ին. «Աղջկանց Ազգ. Վարժարանը, ճըշմարիտ է ըսել թէ զգալի ծառայութիւններ ըրած է ազգին, թէեւ նուազ ծախքով եւ

մանկավարժական հմտութեան նուազ յաւակնութեամբ: Այս վարժարանի աշակերտուհիք՝ մաքուր հայերէն լեզու եւ մշակեալ միտք ստացած են, եւ նոցա կազմած՝ Ընթերցասէր Ընկերութիւնը, Այնթապի գեղեցիկ սեռին համար ընտիր նորութիւն մ'է, որ պատիւ կը բերէ Ընկերուհեաց, թէ՛ հիմնադիր Արժ. քահանային եւ թէ Նախորդ-տնօրէնին» (Արեւելք, 1890 Թ. 1846):

Որքան կ'երեւայ մինչեւ 1899 տեւած է (Հմմտ. Բիւզանդիոն, 1899 Թ. 776):

### 22ա. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1890)

Կը յիշուի 1908ին (Բիւզանդիոն, 1908 Թ. 3745):

### 23. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1895)

1870ական թուականներու «Աղքատախնամը» (Մասիս, 1874 Թ. 1518) ա՛լ բնաւ չի յիշուիր յաջորդ ժամանակներու Հայ Մամուլին մէջ: Սակայն 1895ին գոյութիւն ունէր Այնթապի մէջ «Աղքատախնամ Ընկերութիւն» մը, որուն Վարչութիւնը կազմուած էր Լուսաւորչական եւ Բողոքական անձերէ (Տե՛ս այդ կազմին պատկերը՝ Պատմ. Անթէպի Հյց., Ա., էջ 904): Այս վերջինը նո՞ր Ընկերութիւն էր՝ թէ այն հին Ընկերութեան շարունակութիւնն է: Չունինք հաւաստիք:

## 24· ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897—8)

Արեւելքի (1898 Թ. 3802) մէջ միայն հանդիպած ենք Ընկերութեանս յիշատակութեան։ Կը թուի թէ 1897—8ին Այնթապի երեք թաղերուն մէջ Ծաղկոց կը բանայ, որոնց մէջ կան 150 աշակերտուհիներ։ Կ'երեւայ թէ Տիկնանց Ընկերութիւն մ'էր։

## 25· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897—8)

«Խումբ մը գոլէճական ուսանողներ... իգական սեռի բարձրացման համար Լսարան մը կը հաստատեն 1896ի վաղորդայնին։ Լսարանը... յատուկ էր միմիայն կանանց... Լսարան յաճախող Տիկիններ՝ խանդավառուած՝ կ'որոշեն հիմնել նոր Ընկերութիւն մը Կրթասիրաց անունով, որուն նպատակներէն մէկը պիտի ըլլար աջակցիլ աղջկանց դաստիարակութեան գործին... Նախաձեռնող Տիկինները կ'ըլլան Եփրոս Լէյլէկեան, Ովսաննա Թոսունեան, Երիցուհի Մ. Տէր Մելքոնեան, Եւգինէ Բանձարճեան, Նուրիճան Նիգիպլեան... Հայկանոյշ Մանուշակեան, Զարուհի Գարակէօզեան» (Պատմ. Անթեպի Հայ., Ա., էջ 762—3)։

Ընկերութիւնը 1898ին կը բանայ Այնթապի երկրորդ Աղջկանց Նախակրթարանը — Կրթասիրաց Վարժարան — որ կ'ունենայ 150ի չափ աշակերտուհի։ — Ընկերութիւնս տեւած է մինչեւ 1915։ Պատերազմէն վերջ կը շարունակուի Հալէպի մէջ՝ «Միութիւն»

կոչուելով եւ կը շարունակէ դեռ իր կրթական գործը։

26. ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)

1898ի գարնան հիմնուած կ'երեւայ։ Նոյն տարւոյ Սեպտ.ին կը գրէ Թղթակից մը Այնթապէն. «Որբանոց մը հաստատելու մասին դեռ լուր մը չառնուած՝ արդէն հոս Որբախնամ անունով Ընկերութիւն մը գոյութիւն առած էր։ Գոհութեամբ կ'իմանանք թէ այդ Ընկերութիւնը պիտի աջակցի Որբանոցին, երբ սա հաստատուի» (Արեւելք, 1898 Թ. 3802)։

Մանրամասնութիւն կը պակսի։

27. ՔՐԻՍՏՈՍԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1900)

Կազմուած է 1900ի աշնան։ Հիմնադիրները 20 տարեկան երիտասարդներ են։ Նպատակն է. 1. Քրիստոնէական կրօնի գաղափարականին համեմատ բարձր կեանք մը ապրիլ, 2. Աւետարանի սկզբունքները Հայ ժողովուրդին մէջ տարածելով՝ հոգեւոր կեանք զարգացնող առողջ մթնոլորտ մը ստեղծել, 3. Նորահաս սերունդին ծանօթացնել Հայ եկեղեցւոյ դարաւոր արժէքներն ու ժառանգութիւնները, եւ այլն (Տ'ես Պատմ. Անթէպի Հայ., Ա., էջ 481—91)։

28. ՇՐՋԱՆԱՒԱՐՏՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1907)

Այնթապի Ամերիկեան Աղջկանց Վարժարանի 366 Շրջանաւարտուհիները կազ-

*մած են այս Միութիւնը* (Պատմ· Անթէպի *Հյց·, անդ՝ էջ* 873), *որուն գործի մասին ոչ մէկ տեղեկութիւն կը տրուի*:

### 29· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

*Հիմնուած է* Ամերիկա, 1911 *Յուլիսին՝ նախաձեռնութեամբ Այնթապի* Վարդանանց *եւ* Եկեղեցասիրաց *Ընկերութիւններու Ամերիկա գրկած ուսանողներու: Նպատակն է՝ Այնթապի մէջ բանալ* Կիլիկեան Բարձրագոյն Վարժարան մը: *Վարժարանը կը բացուի* 1912 *Սեպտ·* 19*ին* Կիլիկեան Ճեմարան *անունով* (*Տե՛ս Պատմ· Անթէպի Հյց·, անդ՝ էջ* 777—97):

### 29ա· ՀԱՅ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնուած է* 1913 *Ապրիլին*: 1913 *Սեպտ·* 25*ին Միութիւնը կ՚ընտրէ «ինն անդամէ Վարչական ժողով մը, որ պիտի աշխատի ուսուցչաց մտաւորական յառաջդիմութիւնն ապահովելու համար: Ա·— Սարքել կրթական դասախօսութիւններ· Բ·— Կազմել* Մադենադարան *մը· Գ·— Եւ ունենալ* «Թերթ *մը»* (Բիւզանդիոն, 1913 *Թ·* 5166):

### 30· ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913—4)

*Կազմած են* Կիլիկեան *ուսանողները, որոնք լոյս կ՚ընծայէին* «Կիլիկիա» *անունով*

պարբերական մը խմորատիպ (Պատմ. Անթէպի Հայ., անդ՝ էջ 796 ծանօթ.)։

### 31. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913—4)

Հիմնուած է Այնթապի մէջ։ Կը յիշուի 1914 Մարտին, երբ կ'ուզէ հանդանակութիւն մ'ընել Վարժարանի շինութեան համար (Ժամանակ, Կ. Պ. 1914 Թ. 1741)։ Ուրիշ ծանօթութիւն չունինք։

### 32. ՀԱՅԱԽՕՍԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

Երիտասարդներ հիմնած են՝ նպատակ ունենալով հայերէն խօսակցութիւնը ընդհանրացնել Այնթապի մէջ (Պատմ. Անթէպի Հայ., Բ., էջ 480)։

### 33. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1915)

Բոստոնի (Ամերիկա) մէջ կազմուած է հետեւեալներէ. Արմենակ Մահսերեճեան, Արմենակ Եաղուպեան, Արմենակ Աստուրեան, Գէորգ Գատէնճեան, Եւսեփ Պարսամեան, Նազար Պարսամեան, Նազար Եաղուպեան, եւ այլն (Պատմ. Անթէպի, անդ, Բ., էջ 515)։

1924ին Միութիւնը կը վերակազմուի «Ամերիկաբնակ Այնթապցիներու Միութիւն» անունի տակ (Անդ, էջ 514—5)։

34· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1915—6)

*Կազմած են* Բուէնոս Այրէս (*Արժէնթին*) *բնակող Անթապցիներ՝ օգնութիւն հասցընելու համար տարագրուած հայրենակիցներուն* (*Անդ*, *էջ* 567)։

35· ՀԱՅ «ԱՐԱՐԱՏ» ՄԱՐՄՆ· ԱԿՈՒՄԲ (1921)

*Հիմնուած է Անթապի մէջ* 1921 *Յուլիս* 15*ին*, *նախաձեռնութեամբ* Յ· Մոմճեանի։ *Գաղթականութեան պատճառաւ փոխադրուած է յետոյ* Հալէպ։ *Ահա իր Վարչութեան անդամները*· *Յ*· *Տափօեան*, *Թ*· *Եարըմեան*, *Ե*· *Թանաչեան*, *Գ*· *Տէր Մկրտիչեան*, *Ա*· *Համալեան*, *Մ*· *Սապունճեան* (Սուրիահայ Տարեցոյց, *Հալէպ* 1925, *էջ* 282)։

36· ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1922)

*Անթապցիներու առաջին* Հայրենակցական Միութիւնը *կազմուած է* Բէյրութի *մէջ* 1922*ին*, *որ ունեցած է իր Ծրագիր–Կանոնագիրը* (*Պատմ*· *Անթ*· *Հյց*·, *Բ*·, *էջ* 574)։

37· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1924)

*Կազմած են* Բուէնոս Այրէսի *Անթապցի երիտասարդներ՝ վառ պահելու համար ազգային եւ Անթապցիական ոգին* (*Անդ*, *Բ*·, *էջ* 569)։

38· ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1926)

*Հիմնած են պաղթական Անժայրմեր* Փրէզնոյի (*Ամերիկա*) *մէջ, որ կ'ունենայ իր ամսաթերթը* — Փարոս Հայաստանեայց (*Անդ, Բ., էջ* 647)։

39· ԱՅՆԹԱՊԻ ՀԱՅԵՐՈՒ ՇԱՀԱԿՑ· ՄԻՈՒԹԻՒՆ (1945)

*Կազմած են* Բրազիլիոյ *Նժդեհ Այնթապցիները* (Յառաջ, *Փարիզ* 1953 *Թ*· 2420)։

ՏԻԱՐՊԷՔԻՐ

1· ԱՂՔԱՏԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

Մէճմուայը Հավատիս*ի թղթակիցը Տիարպէքիրէն կը գրէ*· «Անկէ տարի մը առաջ *հոս* Աղքատասէր Ընկերութիւն *մը հիմնուեցաւ, որուն անդամ գրուեցան* 300 *հոգի եւ* 80,000 *ղուրուշ դրամ հաւաքուեցաւ, որով* 140 *աղքատի թէ՛ ուտելիք–խմելիք եւ թէ հագուստ հոգացուեցաւ եւ անոնց աղաքնալ ձրի կը կրթուին*»: (Մէճմուայը Հավատիս, *Կ*· *Պ*· 1857 *Թ*· 188)։

*Հիմնումը եղած է* 1856 *Մարտին*։ *Ասիկա, մեր կարծիքով, հնագոյն Ընկերութիւնն է* Տիարպէքիր*ի*։

*Պոլսոյ* Մասիս (1857 *Թ*· 267) *եւս* 1857 *Մարտ 7ին կը տեղեկացնէ*· «*Տիգրանակերտէն* (*Տիարպէքիր ըսել կ'ուզէ*) *գրված նա–*

*մակները լուր կու տան թէ... Տէր Յակոբ Ծ. Վ.ին յորդորանօքն ու բարեջան հոգողութեամբը տեղւոյն ժողովրդեան* արհեստաւորաց *կարգէն պատուաւոր... անձինք ջանացեր Ընկերութիւն մը հաստատեր են* «Աղքատասիրաց Ընկերութիւն» *անունով, որուն նպատակն է աղքատներն ու անկարները խնամել»*: — Մասիս (1857 *Թ.* 274) *երկրորդ անգամ գրելով նոյն Ընկերութեան վրայ՝ կը ճշդէ անունը* — «Աղքատասէր» *եւ կ'ըսէ որ անդամները* ամսական եւ շաբաթական վճարումներ *կ'ընեն Ընկերութեան*:

*Ունեցած է մեծ կալուածներ* (Փող, *Կ. Պ.* 1872 *Թ.* 48):

1879*ին թղթակից մը* «Բարեպաշտական Աղքատաց Ընկերութիւն» *կ'անուանէ զայս եւ հիմնուած է, կ'ըսէ,* 1853*ին* (Թէրճէմանը էֆքեար, *Կ.Պ.* 1879 *Թ.* 553), *ինչ որ* սըխալ *է*:

## 2. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Մէճմուայը Հավատիս (*անդ*) *շարունակելով իր տեղեկատուութիւնը՝ կ'ըսէ որ Տիարպէքիրցիք տեսնելով* Աղքատասէր Ընկերութեան *յաջողութիւնը՝* «այս տարի Մարտ 1ին *հիմնեցին* Լուսաւորչական Ընկերութիւնը, *որ շուտով ունեցաւ 40 անդամ եւ հաւաքուեցաւ* 15,000 *ղուրուշէն աւելի գումար մը, որով բացին* մեծ դպրոց մը, *հոգացին տնօրէն, օգնական մը եւ ուրիշ ուսու-*

ցիչներ, որով 200 տղաք սկսան ուսում առնել այս Նորաբաց դպրոցին մէջ։ Ատկէ զատ 2 եկեղեցիի մէջ ալ 2 աղջկանց դպրոց բացուեցաւ, ուր 70 եւ 50 աղջիկներ կը կըրթուին»։

Այս տեղեկութիւնը կը հաստատէ նաեւ Մասիս (1857, Թ. 274), միայն Ընկերութեան անունը «Ս. Լուսաւորչի» կը կոչէ եւ աղջկանց դպրոցները բացուած են, կ'ըսէ, Ս. Կիրակոս եւ Ս. Սարգիս եկեղեցիներուն մէջ։ Մասիս (1858, Թ. 329) անգամ մըն ալ յիշելով Ընկերութիւնս՝ զայն կը յորջորջէ «Լուսաւորչեան» եւ կ'աւելցնէ որ Ընկերութիւնը՝ անդամներէն 12ը ժողովքի անդամ ընտրած եւ 24ը Գործակալ անուանած է, որոնց վրայ 4 հոգի գլուխ դրած է, որոնցմէ առաջինն է սեղանաւոր Մուրատ Աղա Մուրատեան։

### 3. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Պոլսոյ ժամանակ (1867, էջ 32) կը յիշէ Ընկերութիւն մը, որ 1866ին պաշտպանն է դպրոցի մը, որուն կը նուիրէ Խարբերդցի Յովհաննէս Եաղճեան 120 ղուրուշ։ Դժբախտաբար չի տար թերթը Ընկերութեան անունը, որ ըստ մեզ նոր Ընկերութիւն մ'ըլլալ կը թուի։

### 4. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866—68)

Հայ Կաթողիկէ Ընկերութիւն մըն է։ Հնագոյն յիշատակութիւնը Պոլսոյ Հայ Կա-

*Թողիկէ* Բուզնամէի Մէճմուայը Հավատիս (1871, *Թ.* 611, *Յունուար* 19) *թերթէն ունինք, որուն գրութեան ձեւէն կը հասկցուի թէ* բաւական հին *Ընկերութեան մը մասին կը գրէ: Ահա թերթին գրածը, որուն ստորագրած են* «Եղբարք Լուսաւորչեան Ընկերութեան». «*Տեղւոյս* Լուսաւորչեան Ընկերութիւնը *իր* Կանոնաց *համեմատ* աս տարի ալ իր տարեկան ժողովոյն խանդէսը կատարելու *համար գումարեցաւ* Մանկասարեան Մկրտչին *տունը: Հանդէսը* ըստ սովորութեան *սկսաւ. Յունուար* 6*ին Ուրբաթ գիշեր լուսը Շաբաթ ժամը* 1*ին եւ աւարտեցաւ* 6½*ին... տաղասաց աղօթմէ եւ սպասաւորներէ ի զատ* 98 *անձէ բաղկացած էր...»: — Ընկերութեան Վարչականներն են. Թովմաս Տիշչէքէնեան, Ռափայէլ Մալկըռանեան, Գասպար Չէլէպեան, Յովհաննէս Մ. Ենովքեան, Մկրտիչ Մանկասարեան, Մկրտիչ Տէմիրճեան* (*Անդ*):

1879*ին Թոյլցած էր Ընկերութիւնը, թէեւ* 200 *ոսկիի գոյք ունէր* (Թէրճէմանը Էֆքեար, *Կ. Պ.* 1879, *Թ.* 553):

### Ճ. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Արդէն* 1868 *Հոկտ.ին կը ծանուցանէ* Մասիս (1868, *Թ.* 872) *թէ Տիարպէքիրի մէջ ալ համակրութիւն գտած է* «Անձնուէր Ընկերութիւնը», *միայն տեղւոյն Առաջնորդ Յակոբ Եպիսկոպոսը կը հակառակի: Բայց*

քիչ յետոյ Փոքր Մասիս (1869, Թ. 328, Մարտ 18) կը ծանուցանէ թէ «Անձնուէր Ընկերութեան ճիւղ մը հաստատուեր է Տիարպէքիրի մէջ եւ ունեցած վեց անդամէ բաղկացեալ Ուսումնական ժողով մը եւ 24 անդամէ ալ Ընկերութեան ժողով կազմուեր է, ուսուցչաց թիւը 12ի, ուսանողաց թիւը 70ի հասեր է. ամէն Կիրակի օր դասատուութիւններ կ'ըլլան»: — 1869 Ապրիլի սկիզբը Ընկերութեան անդամներու թիւը 40ի բարձրացած էր արդէն (Մասիս, 1869, Թ. 359: — Տե՛ս նաեւ Մամուլ, Կ. Պ. 1869, էջ 47, 137, 355):

1879ին Ընկերութիւնը ունէր Թանգարան (Գրադարան–Ընթերցարան) մը՝ 400 գրքերով, դպրոց մը՝ 30 աշակերտով եւ 90 ոսկիի արժէքով տուն մը. ներքին անդամները, որ ղեկավարներն են՝ «Հոգաբարձու» կը կոչուին եւ 24 հոգի են (Թէրճիւմանը էֆքեար, Կ. Պ. 1879, Թ. 553):

6. ՈՐԴԵՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—70)

Առաջին յիշատակութիւնը 1871 Մայիսէն ունինք, երբ արդէն իր յատուկ դպրոցն ունի. կը կոչուի «Որդեսէր» կամ «Որդեսիրաց» Ընկերութիւն. Տիարպէքիրի մէջ «միայն Որդեսիրաց Ընկերութեան դպրոցն է յառաջադէմ եւ ամէն դժուարութեանց դիմադրելով անվհատ կը յարատեւէ». դպրոցին վարժապետն է Թովմաս Ջաւզաւաք-

նեան (Հայրենիք, Կ. Պ. 1871, Թ. 50)։ — 1872ին դպրոցը փակուեր է Առաջնորդ Յակոբ Եպիսկոպոսէն (Հայրենիք, 1872, Թիւ 125)։

7. ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հիմնուած է 1871 Մայիսին, նպատակն է. «Նոր դպրոց մը բանալ երեսուն աշակերտաց համար եւ կիրակնօրեայ Ընթերցարան մը եւ մէջը ուսմանց եւ գիտութեանց վերաբերեալ գրքերով լեցուն Թանգարան մը ունենալ» (Հայրենիք, 1872, Թ. 84)։

Ահա Ընկերութեան կենդր. Վարչութիւնը.

| | |
|---|---|
| Մ. Թովմաս Պ. Ղուկասեանց | Ատենապետ |
| Գէորգ Կ. Զախրճեան | Ատենադպիր |
| Մկրտիչ Ապտալեան | Գանձապետ |

Գործադիր ժողով

Թովմաս Մոմճեան
Կարապետ Քէօրօղլեան
Մկրտիչ Պողոսեան
Յակոբ Թոփրահանեան
Կարապետ Տապաղեան
Մկրտիչ Գարակէօզեան
Մ. Գրիգոր Աղճեան
Կարապետ Ոսկերիչ (Հայրենիք, 1872, Թ. 84)։

1872ին կը ջանայ դպրոց մը բանալ, զոր կ'ուզէ յետոյ գիշերօթիկի վերածել (Փաշ,

կ. Պ. 1872, Թ. 48)։ 1875ին վերջերը կը բանան այդ դպրոցը Մայր եկեղեցւոյ մէջ։ 1878ին կը դադրի Ընկերութիւնը, որ ունեցած էր 80 անդամ։ 1878 Սեպտեմբերին Փիլիպպոս Սրբազան կը վերակազմէ Ընկերութիւնը, որ 1879ին կ՚ունենայ 25 աշակերտով դպրոց մը, ինչպէս նաեւ Թանգարան մը՝ 100 կտոր գրքերով։ Ընկերութեան Կանոնագիրը վաւերացուած է կենդր. Ուսումն. Խորհուրդէն (Թէրճիւմանը էֆքեար, 1879, Թ. 553)։ Տեսած չենք կանոնագիրը, որ հաւանօրէն հրատարակուած չէ։

### 8. ԸՆԹԵՐՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872—75)

Կը յիշէ Պոլսոյ Թէրճիւմանը էֆքեար (1879, Թ. 553) իբրեւ հին Ընկերութիւն մը։ Նպատակն եղած է. Ջափահաս անկիրթներու դաստիարակութիւնը։ Մանրամասն ծանօթութիւն տրուած չէ։

### 9. ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874—81)

Հիմնած են Տիարպէքիրի Հայ Բողոքականները։ 1879ին «կարեւորութենէ զուրկ» կը համարի Թղթակիցը (Թէրճիւմանը էֆքեար, անդ)։

### 10. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Կազմուած է 1877ին՝ նպատակ ունենալով բանալ դպրոց մը Ս. Սարգիս թաղին մէջ։ 1879ին կը բանայ այդ դպրոցը, որ կ՚ու-

*նենայ* 30 *աշակերտ* (Թէրճ. էփ., *անդ*)։ *Ուիշտ եղած է Թղթակիցը իր տեղեկատուու-թեան մէջ*։

11. ՊԱՏԱՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—78)

Թատերական *Ընկերութիւն մ'է*։ «Ազգային Պատմութենէն ներկայացումներ կ'ը-նէին» (*Թորոս Աղբար*, *Բ*. *էջ* 216)։

12. ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է* 1878 *Սեպտեմբերին սկիզբը*։ *Հիմնադիրներն են*. Դոկտ. Պետրոս Չպուքճեան, Սիմէոն Հէքիմեան, Դաւիթ վաղարշ Մժիկեան *եւ ուրիշներ*։ *Նպատակն է*. Ազգ. երկսեռ գիշերօթիկ վարժարան մը բանալ։ 1879*ին* Լսարան *մը բանալու ձեռ-նարկած են* (Թէրճ. էփքեար, *անդ*)։ *Անծա-նօթ կը մնայ Ընկերութեան ապագան*։ *Հայ կաթողիկէներ եւ բողոքականներ անդամ էին* (*Թորոս Աղբար*, *Բ*., *էջ* 216)։

13. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—79)

*Կը յիշուի* 1879 *Ապրիլ* 15*ին եւ* չ'ըսուիր թէ նոր է։ *Նպատակ ունի*՝ «Որբ տղոց դաս-տիարակութիւնը» (Թէրճէմանը էփքեար, 1879, *Թ*. 553)։

14. ԻՐԱԻԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Կազմուած է* 1879*ի սկիզբները* (Մա-սիս, 1879, *Թ*. 2385)։ *Իր նպատակն է*.

«Իրաւանց պաշտպան կանգնիլ» (Թէրճ. էֆ-ճեար, *անդ*։ — Լրագիր, *Կ. Պ.* 1879, *Թիւ* 1027)։

15. ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1885)

*Կը յիշուի 1885ին իբրեւ* հին Ընկերու-թիւն (Արմէնիա, *Մարսէյլ* 1885, *Թ.* 37) *եւ ոչ մէկ ծանօթութիւն կը տրուի նպատակին ու գործին վրայ*։

16. ԸՆԹԵՐՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1885)

*Վերինին հետ 1885ին կը յիշուի լոկ անու-նով՝ իբրեւ* թոյլցած Ընկերութիւն (Արմէ-նիա, *անդ*)։

17. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1885)

*Կը յիշուի միայն* Արեւելքէն (1885, *Թ.* 383) *եւ դժուար է կարծել թէ Տիար-պէքիրի* առաջին *Ընկերութեան* — 1856ին — *շարունակութիւնն ըլլայ*՝ ձեւափոխու-թեամբ։ *Աւելի հաւանական է որ 1880ական թուականներուն հիմնուած ըլլայ*։ *Այս պա-րագային ալ անըմբռնելի կ՚ըլլայ թէ ինչ մի-ջոցաւ տէր դարձած է 1885ին* 4—5 հազար լիրայի։ *Զի* Արեւելք *կը գրէ*. «Աղքատախնամ Ընկերութեան, որ 4—5 հազար լիրայի կա-րողութեան շահովն աղքատներուն ապուր կ՚եփէ եւ կը բաշխէ» (*Անդ*)։ — *Ուրիշ տեղէ ծանօթութիւն չունինք*։

18· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1905)

*Հիմնուած է* Զըլսի (*Ամերիկա*) *մէջ* 1905 *Փետր․* 21*ին* «բարձրագոյն վարժարան մը հիմնելու համար»։ *Ունեցած է* 39 *Յօդուածէ բաղկացած* Կանոնագիր *մը*։ *Անդամավճարն է* 1 *դոլար* (*Մուշեղ եպիսկոպոս*, *Ամերիկա-հայ Տարեցոյց*․ 1912, *էջ* 182)։

19· ՀԱՅ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* 1908*ին* (Ազատամարտ, *Կ․ Պ․* 1909, *Թ․* 53։ — Յառաջ, *Կարին* 1909, *Թ․* 32)։

20· ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնած են Տիարպէքիրի* Հայ Բողոքականները (Յառաջ, *անդ*)։

21· ԶԱՐԳԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմած են Տիարպէքիրի* Հայ Կաթողիկէները (Յառաջ, *անդ*)։

*Հիմնադիրներէն են․* Տիգրան Պասալեան, Մկրտիչ Պազալեան, Տիկին Նուարդ Պազալեան։

22· ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* Ս․ Սարգիս թաղին մէջ *եւ արդէն* 1908*ին ունի* կիրակնօրեայ ու գիշերային դասախօսութիւններ եւ Լսարան (Յառաջ, *անդ*)։

23· ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Հիմնած են Աղջկանց վարժարանի* Նոր Նրջանաւարտուհիները 1909*ին եւ ունի իւր* կիրակնօրեայ դասախօսութիւնը եւ Լսարանը (Յառաջ, անդ) ։

24· ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է* 1910*ին* (Ազատամարտ, 1910, *Թ*· 243) *եւ ունի իր* Գրադարանը *եւ մէկ–երկու թերթ ալ կը ստանայ* (Յառաջ, *կարին* 1911, *Թ*· 29) ։

25· ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է* «Հայ Ուսումնասիրաց Ընկերութեան» *շրջանակին մէջ եւ ազգային դպրոցին մէջ* 40 *աղքատ աշակերտի պէտքերը կը հոգայ* (Ազատամարտ, 1910, *Թիւ* 177) ։

26· ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910—12)

*Կը յիշուի* 1912*ին եւ որ օգնած է* «Յառաջդիմական» Միջնակարգ Վարժարանին (Յառաջ, *անդ*՝ 1912, *Թ*· 108), *որուն ծագումը նոր է* ։

27· ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՎԵՐԱՇԻՆԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է* 1910*ին* Փրէզնոյ*ի* (*Ամերիկա*) *մէջ եւ եղած է կեդրոնական միութիւնը, որ կազմած է նաեւ Յանձնախումբ՝ Պատմագրքի հրատարակութեան համար* ։

### 28. ՏԻԳՐ. ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ԶԱՐԳԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911)

«Տիգրանակերտի Հայ Կաթոլիկ Զարգասիրաց Ընկերութիւն»ը ճիւղ մըն է Տիարպէքիրի մէջ 1908ին կազմուած նոյնանուն Ընկերութեան՝ հիմնուած Նիւ Ճըրզիի (Ամերիկա) մէջ 1911 Սեպտեմբերին եւ ունի իր կանոնագիրը, բաղկացած 19 Յօդուածէ եւ հրատարակուած 1952ին, որուն երկրորդ Յօդուածը կ՚ըսէ. «Ընկերութեանս նպատակն է Հայ Կաթոլիկ Ազգայնոց մտաւորական, բարոյական, ֆիզիքական, ընկերային եւ տնտեսական զարգացումին համար աշխատիլ բոլոր հոգւով եւ եռանդեամբ ըստ չափու եւ կարողութեան իւր նիւթականին» (Յօդ. 2). տարեկան անդամավճարն է մէկ դոլար (Յօդ. 5)։

Հիմնադիրներն են. Պետրոս Պուրունեան, Յովսէփ Պուրունեան, Յովհաննէս Պուրունեան, Տիկին Մինա Պուրունեան, Փօղոս Պուրունեան, Տիկ. Մինա Մալկրանեան, Թոգալլամ Պանոֆի, Տիգրան Բալաչիչեան։

### 29. ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Հիմնուած է 1918ի սկիզբը Նիւ Եորքի մէջ եւ ունեցած է 5 մասնաճիւղեր՝ 479 անդամով (Երեւան, Կ. Պ. 1919, Թ. 24, Յունիս 2)։ Ունեցած է ճիւղեր Կովկաս, Միջագետք եւ Եգիպտոս։ Մեծապէս օգտակար

եղած է իր համաքաղաքացիներուն համար (Ժամանակ, 1913, Թ. 3659)։ — Պոլսոյ «Հայրենակցական»ը 1920ին կը սկսի (Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 616)։

### 30. ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Ժամանակ (1920, Թ. 3775) կը գրէ 1920 Մարտ 13ին. «Եգիպտոսի մէջ գտնուող Տիգրանակերտցիներ Միութիւն մը կազմած են, գլխաւոր նպատակ ունենալով օգնել իրենց հայրենիքի որբերուն, որոնք 650 են թիւով ու կը պատսպարուին շնորհիւ Ամերիկայի Մասնաճիւղերու ջանքերուն»։ Հաւանօրէն 1919ի վերջերը հիմնուած է։

## ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՋԵՐՄՈՒԿ ԳԻՒՂ

### 1. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1874)

Պոլսոյ Ասիա թերթը (1874, Թ. 113) 1874 Սեպտեմբերին կը գրէ. «...Ջերմուկի Եկեղեցական Ընկերութեան նպատակն է մի եկեղեցի կանգնել Ջերմուկի մէջ... Ընկերութիւնը 25—30,000 դուրուշի չափ հաւաքած է այս նպատակին համար...»։

Հիմնումը շատ հին ըլլալու է, ինչպէս կը տեսնուի։ Ուրիշ տեղ հանդիպած չենք իր մասին։

# ՀԱՅՆԻ ԳԻՒՂ

## 1. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (իբր 1882)

Հաւանօրէն 1882ին հիմնուած է։ Անդամավճարն էր շաբաթական 5 կամ 10 փարա։ Նպատակն էր դպրոցին օգնել։ 1882ին ունէր 80 անդամ եւ 150 լիրա (Բենիամին Ժամկոչեան, Հայնի, Պէյրութ 1952, էջ 260—61)։

## 2. ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908—09)

Ժամկոչեան (անդ., էջ 441) հիմնումի թուական կը համարէ 1908—09։

## 3. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908—09)

Ըստ Ժամկոչեանի (անդ., էջ 441) հիմնուած է 1908—09ին։

## 4. ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911—12)

Ժամկոչեան (անդ., էջ 409) միայն կը յիշէ Ընկերութիւնը, առանց անդրադարձային տեղեկութեան։

## 5. ՎԵՐԱՇԻՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1915)

Հիմնուած է Միացեալ Նահանգներու Մանչեստր քաղաքի մէջ եւ ունեցած 5 ճիւղեր։ 1941ին վերակազմուելով՝ կոչուած է «Հայնիի Հայրենակցական Միութիւն» (Ժամկոչեան, անդ., էջ 379)։

6. ԵՌԱՆԴԱՄԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1928)

*Կազմուած է* Հալէպ՝ 1928*ին* առաջ (*Անդ*, *էջ* 401):

## ԱՐԴԸՆԻ ԳԻՒՂԱՔԱՂԱՔ

1. ԼՈՒՍԱՏԱՐԱԾ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Հիմնուած է* Յովհաննէս Նաճարեանի *միջոցաւ* (Փունջ, *կ*. *Պ*. 1889, *Թ*. 2160, *Յուլ*. 22):

2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

Պրովիդենսի (*Ամերիկա*) *մէջ* 1909*ին վերջը հիմնուած է՝ հայրենի քաղաքին կըրթական գործին սատարելու համար: Հաւաքած են* 100 *դոլար*, *իսկ* Կիրակոս Վարդապետեան *իր ամբողջ դրամը կը կտակէ Ընկերութեան* (Բիւզանդիոն, 1910, *Թ*. 4040):

## ՔՆԻԱԹ ԳԻՒՂ (Սլիվան)

1. «ՎԱՐԱԺ» ԳԻՒՂԱՑԻԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* 1911*ի սկիզբը: Կը ձեռնարկէ բանալ* կիրակնօրեայ լսարան մը (Ազատամարտ, 1911, *Թ*. 641):

2. ԿԱՐՄԻՐ ԽԱՉ (1911)

*Հիմնուած է 1911ին տեղւոյն* կինեբուն համար (Ազատամարտ, *անդ*):

## ՏԷՕՐԹ–ԵՕԼ (Զօք–Մարզուան)

1. «ՍԻՍՈՒԱՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

*Կը յիշուի* 1914*ին, երբ ունի* փուտբոլի 2 *խումբ — «Լեւոն» եւ «Ռուբէն» — անունով* (Մարմնամարզ, *Կ. Պ.* 1914, *էջ* 3 *եւ.* 22):

*

## ՍՂԵՐԴ

1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868—69)

*Մեզի ծանօթ հնագոյն Ընկերութիւնն է սակայն Սղերդի մէջ, ուր կը յիշուի* 1869 *Հոկտեմբերին: Թղթակից մը կը գրէ Սղերդէն Պոլսոյ* Քրիստոստուր Ղազարոսեանին, *որ «Անձնուէր Ընկերութեան» գլխաւոր տաճողն եղած է.* «Անձնուէր Ընկերութեան *դասախօսութիւնները կը շարունակուին… լուր օրերու ամէն առաւօտները չափահաս մարդիկ կու գան դասերնին կ'առնեն ու կ'երթան փաճառանոց: Իսկ կիւրակէ օրերը..*

40, 50 *եւ* 60 *տարեկան մարդիկ անգամ ձեռուընին մէկ մէկ գիրք առած կը կարդան... Քարերն անգամ կ'աղաղակեն թէ մեր Ազգին մէջ առ այժմ անկէց աւելի հասարակաց օգտակար հաստատութիւն չկայ... Փառք* Անձնուէր Ընկերութեան *հիմնադրաց... Անձնուէր Ընկերութիւնը մեր ազգին տունը կը շինէ, աղքատութիւնը կը հալածէ...»* (Փունջ Օրագիր, *Կ. Պ.* 1869, *Թ.* 425, *Հոկտ.* 6):

Կարապետ Քէմալիկեան 10 *ոսկի կը նուիրէ Սղերդի «Անձնուէր»ին* (*Անդ, թիւ* 454): — *Ընկերութիւնը ունեցած է ե՛ւ իր հալածիչները, սակայն՝ «Սղերդի Անձնուէր Ընկերութիւնը զարմանալի համբերութեամբ իր դասերը կը շարունակէ եւ* շրջակաները նոր ճիւղեր հաստատել ի զատ՝ գիւղօրէից մանկանց դպրոցներուն վարժապետներ կը կարգէ՝ անոնց թոշակն իր աղքատիկ գանձէն հայթայթելով... *այս գաւառին Հայ ժողովուրդը* ամբողջ քրդախօս ըլլալով՝ այս առաջին անգամն է գրեթէ որ իր մայրենի լեզուն կը թոթովէ շնորհիւ Անձնուէր Ընկերութեան» (Մասիս, *Կ. Պ.* 1870, *Թ.* 970):

*Ընկերութիւնը մինչեւ* 1872 *կը շարունակէ իր գործունէութիւնը եռանդով, բանալով շատ մը գիւղերու մէջ դպրոց* (*Տե՛ս* Մանզումէի Էֆքեար, *Կ. Պ.* 1874, *Թ.* 2646): *Նոյն գործը յետոյ ուրիշ անունի տակ շարունակած է, ինչպէս պիտի տեսնենք:*

## 2. ԲԱՐԵՐԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Հիմնուած է* 1871 *Յունիս* 20*ին*։ Նպատակն *է*. «Դպրոցը միշտ հաստատուն պահել, *լեզուազուրկ Քիւրտիստանին ուսմունք չեղած տեղերը ուսմունք, դաստիարակութիւն եւ լուսաւորութիւն տարածել, անտէր եւ աղքատ տղաքներն հագցնել, կերակրել եւ դաստիարակել... Ընկերութեան Խորհրդոյ մշտնջենաւոր անդամները* 20 *հոգի են, որ այս բանին ձեռնարկած են եւ եմք.*

*Գէորգ Մուրատեան*

*(Ատենապետ)*

*Մ. Մելքոն Յարութիւնեան*

*Մ. Խաչատուր Ղարիպեան*

*Սաֆար Մելքոնեան*

*Եուսուֆ Մ. Կարապետեան*

*Մ. Աւետիս Մ. Սիմոնեան*

*Համբարձում Պետրոսեան*

*Աղգօ Միրզայեան*

*Գէորգ Ղարիպեան*

*Մ. Աւետիս Մուրատեան*

*Տընհէ Մ. Խաչմանեան*

*Գրաթօ Յարոյեան*

*Սիմոն Մ. Յարութիւնեան*

*Օհան Յարութիւնեան*

*Մ. Ասատուր Մուրատեան*

*Պօղոս Միրզայեան*

*Սարգիս Նազրկանեան*
*Ղազար Տէր Կարապետեան*
*Ադամ Բուշիճանեան*

*Պապէ Յաննոյեան* (Հայրենիք, կ. պ. 1872, թ. 93):

*Ընկերութիւնը կ'ունենայ նաեւ* Կիրակնօրեայ Ընթերցարան (*Անդ*)։ *Կ'ըլլան նուիրատուութիւններ ալ* (*Անդ*, թ. 113)։ — *Անծանօթ է տեւողութիւնը*։

## 3. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

1868—69*ին հիմնուած «Անձնուէր Ընկերութիւնը»*՝ 1874*ին ձեւափոխուած կը գտնենք*։ Մանզումէի *մէջ* 1874 *Հոկտ*. 9 *թուական գրութեան մը մէջ կը յիշուի «Սղերդի Անձնուէր* Ընթերցասիրաց *Ընկերութիւն»ը*, *որ ունի իր յատուկ* վարժարանը՝ 50 *աշակերտով* (Մանզումէի էֆքեար, կ. պ. 1874, թ. 2646)։ *Կը կարծենք թէ նախորդ Ընկերութիւնը այս կերպով ձեւափոխուած՝ նոր Ընկերութիւն մը կազմուած եւ կամ այս ձեւի տակ նախորդը ատեն մը շարունակուած է*։ *Այս վերջին անունին ուրիշ տեղ չենք հանդիպած*։

## 4. ...ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

*Սղերդի Առաջնորդ* Եղիշէ Վ. Չանըյեան *կը պատմէ* 1914 *Դեկտեմբերի* 2*ին*. «*Նոյեմ*–

*բեր 30ին ժողովուրդը Առաջնորդարան հրաւիրեցինք եւ* անննեցուկ ու աղքատ ընտանեաց օգնելու համար Ընկերութիւն մը կազմեցինք: *Անոր անմիջապէս 30 անձեր անդամակցեցան 10էն 30 ղրշ. մուտքերով եւ կէսէն 1 ղրշ. չաբաթավճարներով...»* (Ժամանակ, *Կ. Պ.* 1915, *Թ.* 2033, *Յունուար*):

Անունը *կը մնայ անծանօթ*:

## 5. ՍՂԵՐԴԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1919—20)

Պոլիս *կազմուած է* 1919—20ին: *Ահա Վարչութիւնը.*

| | |
|---|---|
| *Դոկտ. Պ. Վարժապետեան* | *Նախագահ* |
| *Աւ. Թ. Կորկիսեան* | *Անդամ* |
| *Ս. Էմիրեան* | *Անդամ* |
| *Ա. Կարապետեան* | *Անդամ* |
| *Պ. Ապտըլըահեան* | *Անդամ* |
| *Մ. Յովհաննէսեան* | *Անդամ* |
| *Ն. Ջատոյեան* | *Անդամ* |

(Թէոդիկ, *Ամէն. Տար.* 1921, *էջ* 372):

1920ին 100 *ոսկի կը նուիրէ Անկախութեան փոխառութեան* (Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ.* 1920, *Թ.* 633):

# ԳԻՒՂԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ
# ՌԸՆՏՈՒԱՆ ԳԻՒՂ[1]

## 1. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է* 1869 *Յուլիս–Օգոստոսին* : *Կազմած են* 12 *Յօդուածէ բաղկացած* «Հրահանգ» *մը* (*անշուշտ իր* Կանոնագիրը) : *Նոյնպէս Վարչութիւն մը՝* 12 *հոգիէ կազմուած*, *որոնցմէ քանի մը հատը կը յիշուին*·

*Կարապետ Վարդանեան* — *Տեսուչ*
*Մ. Մարտ. Տէր Կարապետեան* — *Ատենապետ*
*Մ. Կարապետ Վարժապետ* — *Ատենադպիր*
*Գրիգոր Օնինեան* — *Գանձապետ*

(*Տե՛ս* Օրագիր, *Կ. Պ.* 1869, *Թ.* 38) :

*Հիմնումի նախաձեռնողն եղած է* Սեբաստացի Յովակիմ (Փունջ Օրագիր, *Կ. Պ.* 1869, *Թ.* 423, *Հոկտ.* 2) :

*Միրախորեան* 1883*ին կը գրէ որ Ռընտուանցիք* «Մի քանի տարի յառաջ *ինքնաբերաբար կազմած են* Անձնանուէր *անուամբ մի* Ընկերութիւն, *որ կրնայ իւրեանց խամրոցն իրօք ծաղկոցի վերածել*» (Մանուէլ Միրախորեան, *Նկարագրական ուղեւորութիւն ի Հայաբնակ գաւառս. Ա. Կ. Պ.* 1884, *էջ* 68) :

---

[1] Ռնտուան *յիշած ենք* Բաղէշի *տակ* (*տես*, *էջ* 58, *սակայն Սղերդ եւ Բաղէշ իրարմէ հեռու չեն եւ Ռնտուան երկուքին ալ կրնար վերաբերիլ*, *ատկէ դատ՝ դայն կարեւոր* հնութեամբ մը *կը յիշենք հոս* :

Ընկերութիւնը իր կրթական արդիւնաւոր աշխատանքը կը շարունակէ նաեւ 1881—82ին (Մասիս, Կ. Պ. 1881, Թ. 3029, 3203)։ 1881ին ունեցած է 200 ոսկւոյ դումար մը (Մասիս, 1882, Թ. 3203)։

## ՀԱԶՐՈՅ–ՀԶՈՒ ԿԱՄ ԽԶՈՒ ԳԻՒՂ

### 1. ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869?)

Ընկերութեանս հիմնումի թուականը որոշապէս չէ յիշուած։ Միրախորեան (Անդ՝ էջ 68), որ Թրնտուանի 1869ին հիմնուած «Անձնուէր Ընկերութեան» հիմնումի թուականի վրայ խօսելով — 1883ին — անորոշ կերպով «մի քանի տարի յառաջ» ըսելով դոհ եղած է՝ Հզուի «Սանասարեան Ընկերութեան» հիմնումի համար ալ կը գրէ. «մի քանի տարի յառաջ կազմուած է գոլեյլ եռանդեամբ» (Մանուէլ Միրախորեան, անդ, էջ 72)։ Հետեւաբար կարելի է կռահել թէ Հզու–Հազրոյի այս Ընկերութիւնն ալ 1869ին հիմնուած ըլլայ։ Հիմնադիր կը յիշուի Կարապետ Վ. Մալխասեան (Մասիս, 1881, Թ. 3029)։

Ընկերութիւնը բաւական երկար ատեն հոգ ու խնամք ունեցեր է Գիւղի դպրոցին վրայ (Միրախորեան, անդ)։ — Տեւած ըլլալու է մինչեւ 1880։ Գիւղին դպրոցը այս Ընկերութիւնը չինած է ուսուցիչ Կարապետ

Տէր խաչատուրեանի *Հակողութեամբ* (Արեւելք, Կ. Պ. 1885, Թ. 325)։

2. ՕԳՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1881)

*Կը յիշուի 1881 Հոկտեմբերին. հիմնադիրը վերոյիշեալ* Կարապետ Վ. Մալխասեան (Մասիս, 1881, Թ. 3029)։ *Ուրիշ ծանօթութիւն կը պակսի։ Կը տեւէր* 1883*ին* (Մասիս, 1883, Թ. 3516)։

3. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1881)

*Հիմնադիրն է Կարապետ Վ. Մալխասեան եւ միայն* 1881*ին կը հանդիպինք իր յիշատակութեան* (*Տե՛ս* Մասիս, 1881, *Թիւ* 3029)։ *Միրախորեան չի յիշեր իր ծանօթ գործին մէջ*։



